ՕՏԱՐ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ
ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՎ ՀԱՅԵՐԻ ՄԱՍԻՆ

6

ИНОЯЗЫЧНЫЕ ИСТОЧНИКИ
ОБ АРМЕНИИ И АРМЯНАХ



АКАДЕМИЯ НАУК АРМЯНСКОЙ ССР
ИНСТИТУТ ИСТОРИИ

ВИЗАНТИЙСКИЕ ИСТОЧНИКИ

II

# КОНСТАНТИН ПОРФИРОРОДНЫЙ

ПЕРЕВОД С ОРИГИНАЛА,
ПРЕДИСЛОВИЕ И ПРИМЕЧАНИЯ
Р. М. БАРТИКЯНА

ИЗДАТЕЛЬСТВО АКАДЕМИИ НАУК АРМЯНСКОЙ ССР
ЕРЕВАН 1970

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱ
ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ

ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐ

Բ

# ԿՈՍՏԱՆԴԻՆ ԾԻՐԱՆԱԾԻՆ

ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆ ԲՆԱԳՐԻՑ
ԱՌԱՋԱԲԱՆ ԵՎ ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ
ՀՐԱՉ ԲԱՐԹԻԿՅԱՆԻ

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱՅԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1970

Գրքում տրվում են բյուզանդական հայազգի կայսր Կոստանդին VII Ծիրանածնի աշխատություններից՝ Հայաստանին և հայերին վերաբերող բաժինների, նույն հեղինակի գրչին պատկանող Մակեդոնական հարստության հիմնադիր՝ հայազգի Վասիլ I կայսեր ընդարձակ կենսագրության, ինչպես և Քրիստոսի «Անձեռագործ պատկերի» մասին երկի ամբողջական թարգմանությունները:

Նշված աշխատությունները անգնահատելի արժեք են ներկայացնում IX և X դարի առաջին կեսի հայոց պատմության, հայ-բյուզանդական հարաբերությունների, հայերի՝ Բյուզանդիայում խաղացած դերի ուսումնասիրության համար:

Գիրքն ունի ընդարձակ առաջաբան և մանրամասն ծանոթագրություններ:


МАТЕНАДАРАН EDITORIAL

ՄԱՏԵՆԱՇԱՐԻ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ

Հայկական ՍՍՀ ԳԱ ակադեմիկոսներ Ս. ԵՐԵՄՅԱՆ (գլխավոր խմբագիր),
Ա. ՂԱՐԻԲՅԱՆ, Հայկական ՍՍՀ ԳԱ թղթակից-անդամ Լ. ԽԱՉԻԿՅԱՆ,
Հ. ԻՆՃԻԿՅԱՆ, Գ. ՍԱՐԳՍՅԱՆ (գլխավոր խմբագրի տեղակալ), Հ. ՓԱՓԱԶՅԱՆ,
Հ. ԲԱՐԹԻԿՅԱՆ (գիտական քարտուղար)

Հատորի խմբագիր

Ս. Մ. ԿՐԿՅԱՇԱՐՅԱՆ

1—6—4

# ԿՈՍՏԱՆԴԻՆ ԾԻՐԱՆԱԾԻՆԸ ԵՎ ՆՐԱ ԳՐԱԿԱՆ ԺԱՌԱՆԳՈՒԹՅՈՒՆԸ

867 թ. սեպտեմբերի 23-ին, գիշերվա երրորդ ժամին, Կոստանդնուպոլսի սբ. Մամասի պալատում տեղի ունեցավ մի զարհուրելի ոճրագործություն։ Հայազգի Վասիլը իր համախոհների օգնությամբ սրախողխող արեց հարբած վիճակում գտնվող Միքայել III կայսեր, Ամորիական հարստության վերջին ներկայացուցչին։ Միքայելն այն ժամանակ ընդամենը 28 տարեկան էր։ Բյուզանդական կայսրության գահը բարձրացավ Վասիլը, հիմնադիրը դառնալով Մակեդոնական կոչված հարստության, որի օրոք Բյուզանդական կայսրությունը հասավ իր հզորության գագաթնակետին։ Կայսրության գայիսոնը այդ հարստության ձեռքում մնաց ամբողջ 190 տարի։

Հայազգի անձնավորության բյուզանդական գահին տիրանալը պատահական երևույթ չէր։ Դա դեպքերի բնականոն զարգացման արդյունքն էր, դեպքեր, որոնք սկսեցին զարգանալ դրանից բազում դարեր առաջ։ Հայաստանի անկախության վերացումից հետո, հայազգի գործիչները ստիպված էին ծառայության մեջ մտնել Պարսկաստանում և Բյուզանդիայում իրենց հայրենիքը երկու մասի բաժանած ախոյանների մոտ։ Հայերը Պարսկաստան և Բյուզանդիա էին դիմում նաև որպես քաղաքական ապաստան հայցողներ։ Բյուզանդիայի տիրապետությունից փախչողները ապաստան էին խնդրում Պարսկաստանում, իսկ պարսկական տիրապետությունից փախչողները՝ Կոստանդնուպոլսում։ Միայն Պրոկոպիոս Կեսարացին հիշատակում է երկու տասնյակ հայ զորավարների անուններ, որոնք իրենց սխրագործություններով աչքի ընկան Բյուզանդական կայսրության թշնամիների դեմ մղված մարտերում։ Նրանց մեծ մասը պարսկական տիրապետությունից Բյուզանդիա անցած փախստականներն էին։

571 թ. ապստամբության ճնշումից հետո բազմաթիվ հայ գործիչներ Կարմիր Վարդան Մամիկոնյանի գլխավորությամբ ան-

ցան Բյուզանդիա և Պերգամոնում հիմնադրեցին հայկական ամենավաղ գաղութներից մեկը Բյուզանդիայում[1]։

Հերակլիոս կայսեր թագավորության ժամանակ (610—641) հայազգի Մանվելը Եգիպտոսի praefectus augustalis էր։ Հայազգի բազմաթիվ այլ զինվորականներ ծառայել են նույն կայսեր զորքերում։ Նրանցից մեկը, Վահանը, իր գլխավորած զորքերի կողմից նույնիսկ կայսր հռչակվեց Յարմուկի ճակատամարտի (636) նախօրյակին։ Հայ իշխաններն արդեն սկսում են կարևոր դեր խաղալ կայսեր արքունիքում։ Նրանք նույնիսկ փորձ են անում Հերակլիոսին տապալելու։ Հայազգի Վալենտին Արշակունին էր, որ 641 թ., Հերակլիոսի մահից հետո, նպաստեց, որ գահին

---

[1] Հենց այս գաղութից էր 711—713 թթ. բյուզանդական գահին տիրացած Փիլիպիկոս Վարդանը։ Այս գաղութի մասին մանրամասն տե՛ս *H. Gelzer*, Pergamon unter Byzantinern und Osmanen, Abhandlungen der Königlich Preussischen Akademie der Wissenschaften, Berlin, 1903։ (Հ. Գելցերի սույն երկի հայերին վերաբերող նյութի հայերեն թարգմանությունը՝ «Հայ հասարակությունն ի Պերգամոն և Պերգամացին կայսերական գահի վրա» վերնագրով տե՛ս «Հանդէս ամսօրեայ», 1907, № 8. սյուն. 225—228)։ Հայերի գործունեության մասին Բյուզանդիայում և հայ-բյուզանդական հարաբերությունների մասին ընդհանրապես կարելի է նշել. *Ф. И. Успенский*, Патриарх Иоанн VII Грамматик и Русь-дромиты у Симеона Магистра, Журнал Министерства Народного Просвещения, т. 267, 1890, № 1։ Կ. Տեր-Սահակյան, Հայ կայսերք Բյուզանդիոնի, հատ. Ա-Բ, Վենետիկ, 1905։ Նույնի, Հայազգի անծանոթ մնացած հեղինակներ։ Հայերը բյուզանդական գրականության մեջ, «Բազմավէպ», 1906, էջ 53—56։ Նույնի, Հայերը բյուզանդական մատենագրության մեջ, «Բազմավէպ», 1908, էջ 385—392, 433—440, 481—486, 545—550, 1911, էջ 16—23։ Նույնի, Վարդ Հայկազն, «Բազմավէպ», 1911, էջ 375—380։ Նույնի, Un document arménien de la généalogie de Basile Ier, Byzantinische Zeitschrift, Bd. XX, 1911, p. 165—176; *F. W. Bussell*, The Roman Empire, vol. II, London, 1910, p. 333—483; *J. Laurent*, L'Arménie entre Byzance et l'Islam, Paris, 1919; *H. Grégoire*, An Armenian Dynasty on the Byzantine Throne, Armenian Quarterly, 1 (1946), p. 4—21. Ն. Ադոնց, Արտավան Արշակունի, Պատմական ուսումնասիրություններ, Պարիս, 1948։ Նույնի, Վարդ Մամիկոնյան (856—866), նույն տեղում։ Նույնի, Մամիկոնյան իշխանուհին բյուզանդական գահի վրա, նույն տեղում։ Նույնի, Վասիլ Հայազն (Մեծագործ կայսր (867—886), նույն տեղում։ Նույնի Армения в эпоху Юстиниана, С.-Петербург, 1908; Նույնի, La Bible Arménienne et sa portée historique, In „Celebration solennelle du quinzième centenaire de la traduction arménienne de la Bible", Paris, 1938; Նույնի, Role of the Armenians in Byzantine Science, „The Armenian Review, 3, № 3, 1950. p. 55—73; Ն. Ադոնցը այս նյութի շուրջ ֆրանսերեն մի շարք արժեքավոր հոդվածներ ունի, հրատարակված եվրոպական այլևայլ հանդեսներում, որոնք



Քրիստոսը թագադրում է Կոստանդին VII Ծիրանածինին
(Մանրամասնությունները տե՛ս էջ XXVIII, ծան. 1 )

*տիրանա Կոստանդ II-ը։ Վալենտինն ի վերջո որոշում է ինքը կայսր դառնալ, բայց անհաջողության մատնվելով մահապատժի է ենթարկվում։ Կոստանդ II-ի մահից հետո հայազգի Մժեժ Գնունին (Միզիզիոս) իր զորքերի կողմից կայսր հռչակվեց։*

*Արաբական տիրապետության ժամանակ հայոց գաղթը դեպի Բյուզանդիա ավելի մեծ ծավալ ստացավ, հատկապես երբ սոցիալական ճնշման հետ միաժամանակ սկսվեց կրոնական հալածանքը։ Եթե սկզբում հայ նախարարները, ազնվականությունն ու զինվորականությունն էր գաղթում Բյուզանդիա, ապա VII—VIII դարերում աշխատավորությունը զանգվածորեն դիմում էր այնտեղ, արաբական սարսափներից փրկվելու համար։ Գաղթա-*

---

*վերջերս լույս տեսան Լիսաբոնում առանձին գրքով։ Տե՛ս* *N. Adontz*, Etudes Arméno-Byzantines, Lisbonne, 1965; *S. Der-Nersessian*, Armenia and the Byzantine Empire, Cambridge, 1945; Idem, Armenia in the Tenth and Eleventh Centuries, In The Proceedings of the XIIIth International Congress of Byzantine Studies, London-New York-Toronto, 1967, p. 427—431։ *R. Grousset*, Histoire de l'Arménie, des origines à 1071, Paris, 1947։ *P. Charanis*, The Armenians in the Byzantine Empire, Lisboa, 1963։ *(Նույնի հայերեն թարգմանություն. Դոկտ.* Պ. Խարանիս, *Հայերը Բյուզանդական կայսրության մեջ, թարգմանեց* Հայկ Պերպերյան, *Վիեննա, 1966)*։ Idem, A note on the ethnic origin of the emperor Maurice, Byzantion, t. 35 (1965), p. 412—417; *(Սույն հոդվածի հայերեն թարգմանությունն իրականացրել է բանասեր Հ. Պերպերյանը. «Մավրիկ կայսեր ազգային ծագումին մասին»։ Տե՛ս Խարանիսի «Հայերը Բյուզանդական կայսրության մեջ» աշխատության հավելվածում, էջ 126—136)*։ *Е. Э. Липшиц*, Византийский ученый Лев Математик, Византийский Временник, т. II, 1949, стр. 106—149; Վ. Կ. Իսկանյան, *Հայ-բյուզանդական քաղաքական հարաբերությունների պատմությունից (10—11-րդ դդ.), Երևանի Վ. Աբովյանի անվան Հայկական պետական մանկավարժական ինստիտուտի գիտական աշխատությունների ժողովածու, 6, 1957, էջ 97—156*։ Ա. Գ. Աբրահամյան, *Համառոտ ուրվագիծ հայ գաղթավայրերի պատմության, հատ. Ա, Երևան, 1964*։ *C. Toumanoff*, Studies in Christian Caucasian History, Georgetown, 1965; Idem, Armenia and Georgia, In The Cambridge Madiaeval History, vol. IV, The Byzantine Empire, Part 1, Byzantium and its neighbours, Cambridge, 1966, p. 593—637; Idem, The Background to Mantzikert, In the Proceedings of the XIIIth International Congress of Byzantine Studies, London-New York-Toronto, 1967, p. 411—426. *P. Speck*, Γραικία und 'Αρμενία. Das Tätigkeitsfeld eines nicht identifizierten Strategen im frühen 9 Jahrshundert, Jahrb. Österr. Byz. Ges., Bd. 16 (1967), S. 71—91; *(Գարեգին Հովսեփյանը մի ղեկուցում է կարդացել «Հայոց դերը Բյուզանդական կայսրության մեջ» թեմայով (տե՛ս «Հայաստանի կոչնակ», 1939, էջ 269), բայց մեզ հայտնի չէ հրատարակվել է այն, թե ոչ։*

*վանների մեծ մասը հաստատվում է պատմական Փոքր Հայքում և հայացնում այն զուտ հայկական շրջանները, որոնք հռոմեական և բյուզանդական բազմադարյան տիրապետության ժամանակ սկսել էին հունանալ։ Կոստանդին Ծիրանածինի ժամանակ արդեն բացարձակապես հայացել էին Արմենիակների, Սեբաստիա, Խարսիանոն, Կոլոնիա, Խաղտիք, Լիկանդոս բանակաթեմերը։ Ծիրանածինը դրանք «Հայկական բանակաթեմեր»* (’Αρμενιακὰ θέματα) *է անվանում, տարբերելով «Հռոմեական բանակաթեմերից»։*

*752 թ. հայերի հոծ զանգվածներ Մելիտենեից և Թեոդոսուպոլսից գաղթեցվում են նաև Թրակիա և Մակեդոնիա, որտեղ հիմնադրում են մարդաշատ գաղութներ։ Հենց այդ ժամանակաշրջանում էր, որ Բյուզանդիայում ծավալվեց պավլիկյան շարժումը, որը VII դարի կեսերին ծագել էր Արևմտյան Հայաստանում։ Աղանդավորների և աղանդապետների ճնշող մեծամասնությունը հայեր էին։*

*Հայ նախարարների գաղթը չի դադարում։ 774 թ. արաբների դեմ բարձրացված անհաջող ապստամբությունից հետո հայ բարձրաստիճան գործիչները ստիպված են լինում փախչել Բյուզանդիա, արաբների հաշվեհարդարից փրկվելու համար։*

*Բյուզանդիայում ապաստան գտած հայ տարրը կյանքի ամենատարբեր բնագավառներում, հատկապես ռազմական, շուտով աչքի է ընկնում։ Հայերը սկսում են գրավել ռազմական ամենաբարձր դիրքերը։ Նրանք դառնում են VII դարում առաջացած բյուզանդական ռազմական շրջանների՝ բանակաթեմերի զորավարներ։ Բյուզանդական կայսրության կարևորությամբ ու չափերով երկրորդ բանակաթեմը «Արմենիակների» էր կոչվում, այդ բանակաթեմում, ինչպես և հարևան շրջաններում ապրող հայերի պատճառով։ Արմենիակների բանակաթեմի ռազմական ուժերը հայերից էին բաղկացած*[1]*։ Պատկերացնելու համար Արմենիակների բանակաթեմի ընդգրկած շրջանները բավական է նշել, որ մինչև X դարի սկզբները նրա հողերից կազմակերպվեցին Խարսիանոն, Խաղտիք, Կոլոնիա և Սեբաստիա բանակաթեմերը։ Արմենիակների բանակաթեմը այդ ժամանակ էլ շարունակում էր իր գոյությունը, թեև ավելի փոքր սահմաններում։ Հայերով էր բնակեցված նաև 899—912 թթ. միջև կազմակերպված «Միջագետք» բանակաթեմը։*

---

[1] Theophanis Chronographia ed. *C. de Boor*, Lipsiae, 1883, t. I, p. 469.

Հնարավոր չէ այստեղ մեկ առ մեկ թվարկել հայազգի այն գործիչներին, որոնք մինչև Մակեդոնական հարստության հիմնադրումը աչքի ընկան բյուզանդական կյանքի այլևայլ բնագավառներում, հատկապես ռազմական՝ շատ անգամ որոշելով կայսրության ճակատագիրը։ VIII դարում Փոքր Ասիայի բանակաթեմերի մեծ մասի զորավարները հայեր էին։ Անատոլիկոն բանակաթեմի զորավարը Լևոն III Իսավրացու փեսա հայազգի Արտավազդն էր, որ քիչ էր մնացել տիրանար բյուզանդական գահին։ Լևոն III-ի թոռան՝ Լևոն IV-ի ժամանակ Տաճատ Անձևացին Բուկելլարների բանակաթեմի զորավարն էր։ Նույն ժամանակ բյուզանդական առաջին, ամենակարևոր ու ամենամեծ բանակաթեմի՝ Անատոլիկոնի զորավարը Արտավազդ Մամիկոնյանն էր։ Կոստանդին VI-ի ժամանակ Արմենիակների բանակաթեմի զորավարն էր Վարդասը, մի քիչ հետո նշանավոր Ալեքսիոս-Մուսելեն (Մուշեղ)։ Հայկական ծագում ուներ այդ ժամանակներում հանդես եկած Սկլերոսների ընտանիքը, որի անդամներից մեկը՝ Վարդասը դարձավ Թրակեսիոն բանակաթեմի զորավար։ Նույն ընտանիքից մի այլ Վարդաս Նիկեփոր I կայսեր օրոք դարձավ Անատոլիկոն բանակաթեմի զորավար։

IX դարում պատկերը ամենևին էլ չի փոխվում։ Հայերն արդեն տիրանում են գահին։ 813 թ. հայազգի Լևոնը. Լևոն V-ի անվան տակ ութ տարի իր ձեռքում է պահում կայսրության գայիսոնը։ Նա Բյուզանդիան դուրս բերեց այն դժվարին վիճակից, որ գտնվում էր Նիկեփոր I-ի ժամանակ։

Միքայել II-ի որդի Թեոփիլոսը ամուսնացավ հայազգի Թեոդորայի հետ, որն իր ամուսնու մահից հետո շուրջ տաս տարի կառավարեց պետությունը՝ իր որդու Միքայել III-ի մանկահասակ լինելու պատճառով։ Միքայել III-ի թագավորության վերջին շրջանում երկրի փաստական իշխանությունը գտնվում էր Թեոդորայի եղբոր՝ Վարդասի ձեռքում, որն ստանալով կեսարի բարձրագույն պատվաստիճանը, պետք էր կայսր հռչակվեր, եթե Միքայել III-ը անզավակ վախճանվեր։ Վարդասի երկու եղբայրները՝ Անտիգոնոսն ու Սմբատը նույնպես կարևոր դեր էին խաղում Բյուզանդիայում, ինչպես և նրանց հայրը՝ Մարինոսը, որ դրունգարի և տուրմարխի աստիճաններին էր արժանացել։ Թեոդորայի մի փեսան՝ Կոստանդին Բաբուցիկոսը ստացել էր մագիստրոսի բարձրագույն աստիճանը և վիգլայի դրունգար էր։ Թեոդորայի մյուս փեսան՝ Արշավիրը պատրիկ էր և մագիստրոս։ Արշավիրի

*երկու որդիները՝ Ստեփանոսն ու Վարդասր դարձան մագիստրոսներ։ Թեոդորայի հորեղբայր Մանվելը Արմենիակների բանակաթեմի զորավարն էր Լևոն V-ի ժամանակ։ Պակաս դեր չէր խաղում և Թեոդորայի մյուս եղբայր Պետրոնասը, որը 863 թ. կարևոր հաղթանակ տարավ արաբների դեմ, որից հետո վերջիններիս դեմ մղվող երկարատև պատերազմի նախաձեռնությունը անցավ կայսրության ձեռքը։ Պետրոնասի որդի Մարիանոսը նույնպես աչքի ընկավ ռազմական բնագավառում։ Այդ ժամանակաշրջանում իրենց խոսքն էին ասում և զուտ հայերից բաղկացած զորամասերը, որոնց վրա էին գլխավորապես հենվում հայազգի վերոհիշյալ գործիչները։*

*Հայտնի բյուզանդագետ Ջենկինզը գրում է. «Բյուզանդիայի ռազմական հզորությունը, ռազմական կազմակերպությունը և ռազմական հանճարը, այն հուսալի և ամուր հիմքը որի վրա էր խարսխված բովանդակ փայլուն վերնաշենքը, ամբողջովին հայկական էր։ Դա գործունյա, շատ տաղանդավոր այդ ժողովրդի ճակատագիրն էր, որ իր պատմական մեծագույն նվաճումները ի սպաս դրեց ոչ սեփական կայսրության և ոչ սեփական մի մշակույթին։ Իններորդ դարի կեսերից մինչև տասնմեկերորդ դարի սկիզբը քաջ և նվիրված զորավարների շարքում վեց մեծ ղեկավարներ աչքի ընկան որպես բյուզանդական միջին շրջանի պատմության նյութական մեծության ճարտարապետներ։ Նրանք են Վասիլ Ա-ը, Ռոմանոս Ա-ը, Հովհաննես Գուրգենը (Կուրկուասը), Նիկեփոր Բ-ը (Փոկասը), Հովհաննես Ա-ը (Չմշկիկը) և Վասիլ Բ-ը։ Քաջ հայտնի է, որ բոլորն էլ հայկական ծագում ունեին»[1]։*

*Հայերը տեր ու տիրական են դառնում ոչ միայն քաղաքական ու ռազմական ասպարեզին, այլև հոգևոր ու մշակութային։ Կեսար Վարդասն էր, որ հիմնադրեց առաջին համալսարանը Բյուզանդիայում՝ նշանավոր Մագնավրան, և այդ համալսարանի, ժամանակակից տերմինով ասած, ռեկտորը հայազգի Լևոն փիլիսոփան էր, որ միաժամանակ աստղաբաշխ էր, մաթեմատիկոս, երկրաչափ և երաժիշտ։ Նրա համբավը տարածվել էր մինչև Բաղդադ՝ խալիֆաների արքունիքը։ 832—843 թթ. Կոստանդնուպոլսի պատրիարքական աթոռին նստեց Հովհաննես Քերականը, նույնպես հայազգի, Բյուզանդիայում անուն հանած աստղաբաշխ Բա-*

---

[1] *R. J. H. Jenkins*, The Byzantine Empire on the eve of the Crusades, London, 1953, p. 11—12.

դարատի որդին, Արշավիր պատրիկի եղբայրը և Լևոն փիլիսոփայի հորեղբորորդին։ Հովհաննես Թեոփիլոս կայսեր ուսուցիչն էր, և այդ կայսրն էր, որ իր ուսուցչին նստեցրեց պատրիարքական աթոռին։ Բայց այս ժամանակաշրջանի, ապա և բյուզանդական բազմադարյան մշակույթի լուսապսակը պատրիարք Փոտն էր, բյուզանդական և համաշխարհային մշակույթի այդ ռահվիրան, որի հայկական ծագումը նույնպես վեճի առարկա չէ։ Նա հայազգի Թագուհի Թեոդորայի և կեսար Վարդասի փեսա Արշավիրի քրոջ՝ Իրենեի որդին էր[1]։

Ահա այսպիսին էր վիճակը Բյուզանդիայում նշված ժամանակաշրջանում։ Ամենուրեք հայեր, հայեր, որոնք (ինչպես կտեսնենք ստորև) օտարացած չէին, իրենց մայրենի լեզուն չէին մոռացել, չէին ուրացել իրենց հայկական ծագումը, այլ, ընդհակառակը, ընդգծում էին այն։ Այս բոլորից հետո հասկանալի է, որ Վասիլի գահ բարձրանալը պատահական երևույթ չէր։ Դեպքերի զարգացումն այնպես էր ընթանում, որ այդ բազմաթիվ հայերից ամենակարողն ու ամենահզորը պետք է տիրանար գահին։ Եվ բյուզանդական գայիսոնին տիրացավ Մակեդոնիայում ծնված, հասարակ ընտանիքի զավակ Վասիլ հայը, ֆիզիկապես հզոր, մտավոր արտակարգ ընդունակություններով օժտված, համառ, իր նպատակին հասնելու գործում ոչ մի բանի առաջ կանգ չառնող, միջոցների մեջ խտրություն չդնող Վասիլը[2]։

---

[1] Փոտի մասին հին և նոր գործերից ամենից կարևորներն են *J. Hergenröther*, Photius, Patriarch von Konstantinopel, Regensburg, 1867—1869; *F. Dvornik*, The Photian schism, History and Legend, Cambridge, 1948.

[2] Հույնականավոր բյուզանդագետ ակադեմիկոս Կ. Ամանտոսը իր Ἱστορία τοῦ Βυζαντινοῦ Κράτους (τόμ. Β΄. ἐκδ. Β΄. Ἀθῆναι. 1957, σ. 21) երկում ամեն ջանք թափում է ժխտելու համար Վասիլ Ա-ի հայկական ծագումը. հիմնականում հենվելով նրա մոր ոչ հայկական (Պանկալո) անվան վրա։ Հակառակ դրան, Ամանտոսը ընդունում է Վասիլի «խառն ծագումը» (μεικτὴ καταγωγή), ցույց չտալով, թե ինչի խառնուրդ էր նա։ Նա գրում է, որ «ավելի շուտ բարբարոսությունը, որով Վասիլը սպանեց Միքայել III-ին, և նրա կենսունակությունն են վկայում խառը ծագման մասին, քան պատմական վստահելի տվյալները»։ Ամանտոսին կարելի էր հիշեցնել զտարյուն հույն կայսրուհի, աթենուհի Իրինեին, որ իշխանության տիրանալու համար չխորշեց կուրացնել իր հարազատ որդուն անգամ, Կոստանդինին (797), այն Իրինեին, որին բյուզանդական պատմիչները իր այդ արարքի համար համեմատում են Մեդեայի հետ։

Վասիլի և նրա ժամանակաշրջանի մասին տե՛ս Կ. Տեր-Սահակյան, Հայ կայսերք Բյուզանդիոնի, հատ. Ա։ *А. Васильев*, Византия и арабы, Поли-

Վասիլին վիճակված էր շարունակել արաբների դեմ մղվող դարավոր պայքարը։ IX դարում Աֆրիկայի արաբները Միջերկրականի տերն ու տիրականն էին դարձել, գրավել Կրետե կղզին և սկսել Սիկիլիայի նվաճումը։ Հարավային Իտալիայի և Սիկիլիայի արաբները սկսեցին տարածվել նաև երկրի խորքերը։ Նրանք հասան և պաշարեցին նույնիսկ Դալմատիայի Ռաուսիոն (Ռագուզա) քաղաքը։ Վասիլը իր ծովակալ Նիկետաս Օորիֆասի գլխավորությամբ նավատորմիղ ուղարկեց նրանց դեմ և կարողացավ կանգնեցնել արաբների առաջխաղացումը։ Նույն Օորիֆասը հաջողությամբ մարտնչեց նաև Կրետեի արաբների դեմ, որոնց նավատորմիղը սպառնում էր նույնիսկ Կոստանդնուպոլսին։ Օորիֆասի պայքարը շարունակեց ծովակալ Նասարը։ Արաբները ժամանակավոր պարտություններից հետո նոր ուժով հարձակվում և դրժվարին դրության մեջ են դնում կայսրությունը։ Նրանց հաջողվում է 878 թ. գրավել Սիկիլիայի մայրաքաղաք Սիրակուսան, ինչպես և Բարի քաղաքը Իտալիայում։ Բյուզանդիայի վարկը վերականգնեց զորավար Նիկեփոր Փոկասը, որ 885 թ. կարողացավ արաբներից գրավել Իտալիայի մի մասը, և կազմակերպել այնտեղ երկու բանակաթեմ՝ Կալաբրիայի և Լանգոբարդիայի։

Ավելի դժվարին էր կայսրության պայքարը Աբբասյանների դեմ՝ Փոքր Ասիայում և Ասորիքում, որին անձնական մասնակցություն ունեցավ հենց Վասիլ կայսրը։ Բացի արաբներից, այստեղ

---

тические отношения Византии и арабов за время Македонской династии, С. Петербург, 1902. Նույնի, Происхождение императора Василия Македонянина, Виз. Временник, т. XII, 1906։ *G. Der-Sahaghian*, Un document arménien de la genéalogie de Basile Ier. *A. Vogt*, Basile Ier empereur de Byzance et la civilization byzantine à la fin du IXe siècle, Paris, 1908 *J. Laurent*, L'Arménie entre Byzance et l'Islam, Paris, 1919; *N. Bees*, Eine unbeachtete Quelle über die Abstammung des Kaisers Basileios I des Mazedoniers, Byzantinisch-Neugriechische Jahrbucher, Bd. IV, 1923; *H. Grégoire*, Michel III et Basile le Macedonien dans les inscriptions d'Ancyre, Byzantion, t. V, 1929—1930, p. 327--346; *N. Adontz*, L'âge et l'origine de l'empereur Basile Ier, Études Arméno-Byzantines, Lisbonne, 1965, p. 47—.109; Նույնի, La portée historique de l'oraison funèbre de Basile Ier par son fils Leon VI le Sage, Études Arméno-Byzantines, p. 111—123։ Նույնի, Վասիլ Հայազն, Մեծագործ կայսր, Պատմական ուսումնասիրություններ։ *G. Ostrogorsky*, Histoire de l'État Byzantin, Paris, 1956; История Византии, т. II, М., 1967, стр. 174—178: *Gy. Moravcsik*, Sagen und Legenden über Kaiser Basileios I, Dumbarton Oaks Papers, No. 15 (1961), p. 59—126.

*կայսրության համար մեծ սպառնալիք էին դարձել պավլիկյան-աղանդավորները[1]։ Նրանք դեռևս Լևոն V-ի (813—820), Միքայել II-ի (820—829), Թեոփիլոսի (829—842) և հատկապես վերջինիս կնոջ՝ Թեոդորայի տմարդի ու ահավոր հալածանքներից խուսափելով ապաստան էին գտել արաբների մոտ։ Նրանց փախուստը Բյուզանդիայից, որ սկսվել էր դեռևս նշանավոր աղանդապետ Սերգիոսի օրոք IX դարի 20-ական թվականների վերջում և 30-ական թվականների սկզբում, լայն ծավալ ստացավ հետագայում։ Պավլիկյանները արաբա-բյուզանդական սահմանի վրա, Մելիտենեի ամիրա Օմար իբն Աբդալլահ ալ-Ակտայի օգնությամբ կառուցում են մի շարք ամրոցներ ու քաղաքներ, այդ թվում Տիվրիկը, և արաբների հետ դաշնակցած դառնում են կայսրության ահն ու սարսափը։ Նրանք կազմակերպում են իրենց կանոնավոր զորաբանակները և, արշավելով Բյուզանդիա, ավարի առնում բազում շրջաններ։ Այս տարիներին է, որ հանդես են գալիս պավլիկյանների նշանավոր զորահրամանատարներ Կարբեասն ու Խրիսոքիրը։ Վերջինս այնքան համարձակություն ու կարողություն է ունենում, որ իր զորքերով հասնում է մինչև Նիկիա և Նիկոմեդիա։*

*871 թ. Վասիլը արշավելով նրանց մայրաքաղաք Տիվրիկի դեմ, ծանր պարտություն է կրում և հազիվ ազատվում գերի ընկնելուց։ Միայն հաջորդ տարին, Վասիլի զորավարներին հաջող-*

---

[1] *Պավլիկյանների մասին նորագույն գործերից տե՛ս* M. Loos, Deux contributions à l'histoire des Pauliciens, Byzantinoslavica, No XVII, fasc. I, 1956; No XVIII, fasc. 2, 1957; Idem, Le mouvement Paulicien à Byzance, Byzantinoslavica, No XXIV, fasc. 2, 1963, No XXV, fasc. I, 1964; Idem, Ou en est la question du mouvement Paulicien?, Българска Академия на науките, Известия на Института за история, т. 14—15, 1964; Ἰωαν. Ἀναστασίου, Οἱ Παυλικιανοί, Ἡ ἱστορία καὶ ἡ διδασκαλία των ἀπὸ τῆς ἐμφανίσεως μέχρι τῶν νεωτέρων χρόνων, Ἀθῆναι, 1959; **Հ. Բարթիկյան**, *Պավլիկյան համայնքի կազմակերպության հարցի շուրջը, Պատմա-բանասիրական հանդես, 1958, 3, նույնի,* Источники для изучения истории павликианского движения, Ереван, 1961; *К. Юзбашян*, К истории павликианского движения в Византии в IX в., „Вопросы истории религии и атеизма", т. IV, 1956; *Е. Э. Липшиц*, Очерки истории византийского общества и культуры, VIII—первая половина IX в., Москва-Ленинград, 1961; *Nina G. Garsoïan*, The Paulician Heresy, A study of the origin and development of Paulicianism in Armenia and the eastern provinces of the Byzantine Empire, Paris, 1967; **Ս. Տ. Մելիք-Բախշյան**, *Հայաստանը 7—9-րդ դարերում, Երևան, 1968, **Ե. Գ. Տեր-Մինասյան**, Միջնադարյան աղանդների ծագման և զարգացման պատմությունից, Երևան, 1968, էջ 114—148։*

*վում է կոտրել պավլիկյանների դիմադրությունը և արյան մեջ խեղդել նրանց շարժումը, որ ավելի քան երկու դար փորձանք էր դարձել կայսրության գլխին։*

*Պավլիկյաններին ճնշելուց հետո բյուզանդական զորքերը կովի բռնվելով արաբական ուժերի հետ, շարունակում են այն պայքարը, որ փոփոխական հաջողություններով մղվում էր դեռ Վասիլ I-ի նախորդ՝ Միքայել III-ի օրոք։ Բյուզանդական զորքերը, հայազգի զորավար Պետրոնասի գլխավորությամբ, 863 թ. կարողացել էին շահել Պոսոնի կարևոր ճակատամարտը, որտեղ սպանվել էր Մելիտենեի ամիրա Օմար իբն Աբդալլահ ալ-Ակտան։ Բայց արաբները դեռ վտանգավոր էին կայսրության համար։ Վասիլին հաջողվում է գրավել Սամոսատ քաղաքը, ապա և Զապետրան, անցնել Եփրատ գետը և հասնել Մելիտենե, որին սակայն չկարողացավ տիրանալ։ Վասիլը ամրապնդում է իր դիրքերը արևելքում և այստեղ է ահա, որ բյուզանդացիները առաջին անգամ, երկար դադարից հետո, հարաբերության մեջ են մտնում հայերի հետ, որոնք ազատագրվել էին արաբների լծից և քաղաքական անկախություն ձեռք բերել։ Օգտվելով արաբա-բյուզանդական 7-ամյա պատերազմից (856—863) Աշոտ Բագրատունին 862 թ. իրեն իշխանաց իշխան էր հռչակել, իսկ 885 թ. նաև թագավոր։ Վասիլը շատ էր շահագրգռված բարեկամական հարաբերություններ հաստատելու Աշոտ Բագրատունու հետ, հասկանալի է, արաբների դեմ դաշնակից ունենալու համար։ Ավանդությունը հաղորդում է, որ Վասիլը նույնիսկ ցանկացել է թագադրվել Աշոտ Բագրատունու ձեռքով։ Իհարկե, այդ բանին դեմ չէր և հայոց իշխանաց իշխանը։ Նա ևս տվյալ շրջանում կողմնակից էր ունենալ բյուզանդական օժանդակությունը՝ իր դիրքերն ամրապնդելու համար։ Եռանդուն աշխատանք էին տանում նաև հոգևոր պետերը։ Զաքարիա I Զագեցի կաթողիկոսը և Փոտ պատրիարքը դեռ Վասիլի գահ բարձրանալուց առաջ երկար նամակագրություն ունեին եկեղեցիների միության խնդրի շուրջը, բայց քանի որ Բյուզանդիայի հոգևոր պետը ուզում էր իրեն ենթարկել հայոց եկեղեցին, ընդունել տալով Քաղկեդոնի դավանանքը, բանակցությունները ավարտվեցին անարդյունք[1]։*

[1] *Զաքարիայի և Փոտի թղթակցության առանձին նմուշներ մեզ հասել են։ Տե՛ս Գիրք թղթոց, Թիֆլիս, 1901, էջ 279—294, Նաև* Православный Палестинский Сборник, Выпуск 31, С. Петербург, 1892, стр. 179—226:

Վասիլը, իհարկե, Հայաստանը դիտում էր ոչ միայն որպես իր դաշնակից։ Նրա հիմնական նպատակը Հայաստանը նախ վասալական կախման մեջ առնելն էր, ապա նաև նվաճելը, քանի որ Վասիլը թեև ծագումով հայ էր, այնուամենայնիվ նա բյուզանդական կայսր էր, նախ և առաջ շահագրգռված կայսրության շահերով։ Վասիլ Ա-ն իրեն Արշակունի հռչակեց, թեև նրա երակներում արշակունյան արյան մեկ կաթիլ անգամ չկար։ Ընդունված է ասել, որ Վասիլն այդ քայլին դիմելով, նպատակ ուներ իր հասարակ ծագումը սքողել, իր գահ բարձրանալն օրինականացնել։ Դա շատ հնարավոր է, բայց հիմնական դրդապատճառը այդ չէր։ Ուսումնասիրելով IX—XI դդ. հայ-բյուզանդական հարաբերությունների պատմությունը, դժվար չէ համոզվել, որ Վասիլի այդ քայլը շատ հեռուները գնացող նպատակներ ուներ, այն է՝ Հայաստանը գցել վասալական կախման մեջ, այդ ձևով ավելի դյուրին կլիներ նվաճել այն։ Հայաստանում Արշակունիների հարստության դոյության ժամանակ Հայաստանի բոլոր նախարարությունները տիրող հարստության վասալներն էին, այդ թվում և IX դարում վերապրած և կիսանկախ իշխանություններ հաստատած Բագրատունիները, Արծրունիները, Անձևացիք, Սյունիները

---

Նաև Ն. Ակինյան, Թուղթ Փոտայ պատրիարքի առ Զաքարիա կաթողիկոս Հայոց Մեծաց, Հանդես Ամսօրյա, 1968, հունվար- մարտ, սյունակ 65—100։ Այդ հարցի վերաբերյալ տե՛ս նաև Ա. Տեր-Միքելյան. Հայաստանյայց եկեղեցին և բյուզանդյան ժողովոց պարագայք, Մոսկվա, 1892։ *A. Ter-Mikelian*, Die armenische Kirche in ihren Beziehungen zur byzantinischen vom IV bis zum XIII Jahrhundert, Leipzig, 1892; (Այս աշխատությունը սուր քննադատության ենթարկվեց Ա. Երհարդի կողմից։ Տես Byzantinische Zeitschrift, Bd. VI, (1897), S. 177—179); Der Brief des Photios an Aschot und dessen Antwort. Uebers. von Agnes Finck und Eznik Gjandschezian, Zeitschrift fur armenische Philologie, 2 (1903), S. 1—12; *H. Thopdschian*, Politische und Kirchengeschichte Armeniens unter Asot I und Sembat I nach armenischen, arabischen, syrischen und byzantinischen Quellen bearbeitet, Berlin, 1905; Մ. Օրմանյան, Ազգապատում, հատ. Ա, մասն Բ, Բեյրութ, 1959, սյունակ 971 և հտ. (Բ հրատարակություն)։ Լ. Արևյան, Զաքարիա կաթողիկոս և Փոտ պատրիարք կ. Պոլսո, Բարդեն կաթողիկոս և հայ եկեղեցվո բաժանման հարցը ընդհանուր եկեղեցիեն։ «Բազմավէպ», 1915, էջ 161—169։ Փ. Թուռնըպըլ, Հայաստան և հայ եկեղեցական պատմություն, Վենետիկ, 1930, էջ 41—42։ *V. Grumel*, Regestes, No 473, 515—615։ Նույնի L'envoye de Photius au catholicos Zacharia, Revue des Etudes Byzantines, t. XIV, (1956), p. 169—173; *J. Darrouzes*, Notes d'epistolographie et d'histoire des textes, Revue des Etudes Byzantines, t. XII, (1954).

և մյուսները։ Իրեն Արշակունի համարելով, հասկանալի է, Վասիլը հանդես էր գալիս որպես այդ բոլորի սյուզերենը, ցանկանում de jure կախման մեջ գցել նրանց։ Մեր միտքը հաստատվում է Բյուզանդիայի արտաքին գործոց նախարարության գրասենյակում թխված մի «տեսությամբ», համաձայն որի իբրև թե պարթևների արքա Արշակի առաքինության և ձեռք բերած մեծ փառքի շնորհիվ, օրենք դարձավ, որ այսուհետև պարթևներին, հայերին և մարերին թագավորեն բացարձակապես Արշակի տոհմի ներկայացուցիչները կամ նրա շառավիղները[1]։ Նպատակը պարզ է։ Քանի որ Վասիլն իրեն Արշակի շառավիղն էր համարում, հասկանալի է, որ այդ մտացածին «օրենքի» համաձայն նա պետք է թագավորեր ի միջի այլոց նաև հայերին։ Ինչպես տեսնում ենք, կեղծիքը բավական սրամիտ էր։

Դա, իհարկե, դարավոր ստրկությունից հազիվ ինքնուրույնություն ձեռք բերած հայ իշխանների և ժողովրդի համար փայլուն ապագայի նախերգանքը չէր կարող հանդիսանալ. նրանք ամենևին էլ չէին ուզում մի տիրոջի ձեռքից հազիվ ազատված, մի ուրիշի ձեռքն ընկնել, թեկուզ և քրիստոնյայի։

Այսպիսով, ոչ միայն հայ-բյուզանդական եկեղեցական հարաբերությունները որևէ շոշափելի արդյունք չտվեցին, այլև քաղաքական, թեև փոխադարձ շփումները տվյալ ժամանակաշրջանում բավական գործոն էին։

Եկեղեցական հարցում Վասիլ կայսեր առաջին գործն եղավ Փոտին հեռացնել պատրիարքությունից և նրա տեղը վերահաստատել Իգնատիոսին։ Պատճառն այն էր, որ Փոտը սերտ կապեր ուներ կեսար Վարդասի (որին ես, ի միջի այլոց, Վասիլը սպանեց), ինչպես և Միքայել III-ի հետ, հետևաբար Վասիլի քաղաքական հակառակորդն էր։ Բացի այդ, Վասիլն ուզում էր բարելավել իր փոխհարաբերությունները Հռոմի պապի հետ, մի բան, որին արգելք էր կանգնած Փոտը։ 869 թ. եկեղեցական ժողովում Փոտը դատապարտվեց, նզովվեց և աքսորվեց Բոսպորի ափին գտնվող մի վանք, թեև Վասիլը շուտով ետ կանչեց և իր երեխաների դաստիարակության գործը նրան վստահեց։

IX դարի վերջում նորից օրակարգի հարց են դառնում միաբնակ երկաբնակ վեճերը։ Ամենայն հավանականությամբ պատահական չէ այն, որ Վասիլի, Լևոնի և Ալեքսանդրի հրապարակած

[1] Theophanes Continuatus, p. 212—213; Cedrenus, t. II, p. 183.

*էպանագոգե կոչված Դատաստանագրքում հենց սկզբում, որտեղ խոսվում է կայսեր մասին, մանրամասնորեն տրվում են քաղկեդոնական դավանանքի սկզբունքները, որոնց պետք է կայսրը հետևի, թեև բացառված չէ, իհարկե, այն, որ Վասիլը լինելով հայ, ուզում էր ընդգծել իր ոչ հայադավան լինելը։*

*Վասիլը շատ մեծ աշխատանք տարավ հարևան երկրներում քրիստոնեության տարածման համար, հատկապես Դալմատիայում, ինչպես և Հունաստանում բնակվող սլավոնների մեջ։ Վասիլն էր, որ առաջին անգամ փորձեց քրիստոնեությունը տարածել նաև ռուսների մեջ։ Այդ քաղաքականությունը, հասկանալի է, ուներ ոչ միայն կրոնական դրդապատճառներ։ Քրիստոնեության տարածման հետ մեկտեղ Բյուզանդիան տարածում էր նաև իր քաղաքական ազդեցությունը։*

*Վասիլը մեծ ջանքեր թափեց կանոնավորելու բյուզանդական դատավարությունը։ Նա «կերակուր և ռոճիկ» սահմանեց դատավորներին՝ նրանց կաշառակերության առաջն առնելու համար։ Իսկ բյուզանդական իրավունքի ասպարեզում նրա տարած աշխատանքը իսկապես որ տիտանական էր։ Այդ գործին նա մասնակից դարձրեց մի շարք հայազգի գործիչների և առաջին հերթին պատրիարք Փոտին և օրենսգետ Սիմբատիոսին (Սմբատին), ինչպես և այլ մասնագետների, որոնք կեսար Վարդասի հիմնադրած և Լևոն փիլիսոփայի կողմից ղեկավարվող Մառնավրայի համալսարանի սաներն էին[1]։*

*Վասիլն աչքի ընկավ նաև իր շինարարական գործունեությամբ, որի մասին ամենայն մանրամասնությամբ խոսում է իր թոռ Կոստանդին Ծիրանածինը՝ Վասիլ կայսեր կենսագրության մեջ։*

*Վասիլ I-ը վախճանվեց 886 թ.։ Նրան հաջորդեց երկրորդ որդին՝ Լևոնը[2], Լևոն VI անվան տակ (Վասիլի անդրանիկ որդին՝*

---

[1] *Իրավունքի ասպարեզում Վասիլի կատարած աշխատանքի մասին ավելի մանրամասն տե՛ս սույն գրքի Վասիլ I-ի կենսագրության կցված ծանոթագրություններում։*

[2] *Լևոն* VI-*ի մասին տե՛ս.* Կ. Տեր-Սահակյան, *նշվ. աշխ., հատ. Ա։ Նաև* *Н. А. Попов*, Император Лев VI и его правление в церковном отношении, М., 1892; *M. Mitard*, Études sur le règne de Léon VI, Byzantinische Zeitschrift, Bd. 12 (1903); *N. Adontz*, La portée historique de l'oraison funèbre de Basile I par son fils Léon VI le Sage, Études Arméno-Byzantines, Lisbonne, 1965, p. 111—123; *A. Vogt*, La jeunesse de Léon VI,

*Կոստանդինը վախճանվել էր 879 թ.), որին դեռևս 870 թ. Վասիլը հռչակել էր կայսերակից։ Լևոն VI-ը արտակարգ զարգացած անձնավորություն էր (նա Փոտի աշակերտն էր), դրա համար միջնադարյան հեղինակները նրան «Իմաստուն»* (Σοφός) *կամ «Իմաստասեր»* (Φιλόσοφος) *տիտղոսով են հիշատակում։ Զբաղված լինելով գիտությամբ, նա քաղաքական և ռազմական հարցերից հեռու էր կանգնած, այդ բոլորը վստահելով իր մեծամեծներին, և առաջին հերթին հայազգի Ստիլիանոս Զաուցային, որի դուստրը՝ Զոեն, Լևոնի կինն էր։ Հենց այս Զաուցան էր, որ հռչակվեց «Կայսերահայր»* (Βασιλεοπάτωρ), *մի տիտղոս, որ հենց Զաուցայով մուտք գործեց Բյուզանդիա։ Զաուցան Լևոն VI-ի ժամանակ այն դերն էր խաղում, ինչ կեսար Վարդասը Միքայել III-ի ժամանակ։*

*Լևոն VI-ի թագավորության ամբողջ շրջանը անցավ անդադար պատերազմների մեջ։ Եթե Վասիլի ժամանակ կայսրության թշնամիները հիմնականում արաբներն էին և պավլիկյանները, ապա Լևոնի ժամանակ առաջին գծում հանդես եկան բուլղարները։ Սիմեոն ցարը գահ բարձրանալով, միանգամայն նոր դիրք բռնեց Բյուզանդիայի հանդեպ։ 894 թ. Սիմեոնը ներխուժեց Թրակիա։ Բյուզանդիան բուլղարների դեմ ռազմական դաշինք կնքեց հունգարացիների հետ (բյուզանդական աղբյուրներում հունգարացիները կոչվում են թուրքեր), որոնք կարողացան թիկունքից հարձակվելով, պարտության մատնել բուլղարների ցարին։ 895—896 թթ. բուլղարների և Բյուզանդիայի միջև կնքված հաշտությունը երկարատև չէր։ Պեչենեգների օգնությամբ հաղթելով հունգարացիներին, Սիմեոնը նորից հարձակվեց Բյուզանդիայի վրա։ Բյուզանդական զորքերը գլխավորում էր Փոտի ազգական, նույնպես հայկական ծագում ունեցող Լևոն Կատակալոնը, որը, սակայն, պարտվեց Բուլգարոֆիգոնի ճակատամարտում (896)։ Պատերազմը շարունակվեց մինչև 899 թ., երբ երկու ախոյանների միջև նորից հաշտություն կնքվեց։ Հայտնի է, որ հաշտություն է կնքվել նաև 904 թ., մի բան, որ ցույց է տալիս, թե 899 թ. կնքված հաշ-*

---

le Sage, Revue Historique, 174 (1934), p. 389 sqq.; *P. Noaille* et *A. Dain*, Les Novelles de Leon VI le Sage, Paris, 1944; *G. Ostrogorsky*, Histoire de l'Etat Byzantin, Paris, 1956; *М. Я. Сюзюмов*. Экономические воззрения Льва VI, Византийский Временник, т. XV, 1959, стр. 33–4[illegible]; История Византии, т. II, М., 1967, стр. 178—182.

*տությունը ժամանակավոր բնույթ է ունեցել։ Մինչև 913 թ. բուլղարների և բյուզանդացիների միջև տիրում է խաղաղություն։*

*Լևոն VI-ի օրոք Բյուզանդիայի համար սպառնալիք են դառնում նաև ռուսները։ Նրանք առաջին անգամ իրենց նավերով երևացել էին Կոստանդնուպոլսի ափերին՝ դեռևս 860 թ.։ Ռուսները 907 թ. իշխան Օլեգի գլխավորությամբ նորից են հայտնվում Կոստանդնուպոլսի առաջ։*

*Արաբները, օգտվելով Բյուզանդիայի՝ բուլղարների դեմ պատերազմում զբաղված լինելուց, 904 թ. իրենց նավատորմիղով անսպասելիորեն հարձակվում և գրավում են Թեսաղոնիկե քաղաքը, ավերում ու կողոպտում այն, իսկ բնակչությանը գերեվարում։ Արաբ ծովահենների դեմ պայքարը գլխավորում է պատրիկ Հեմերիոսը, որին հաջողվում է 910 թ. մեծ ծովամարտում հաղթել արաբներին։ Բայց պատերազմի հետագա ընթացքը անհաջող էր բյուզանդացիների համար։*

*Ցամաքում Լևոն VI-ը արաբների դեմ արժանահիշատակ ընդհարումներ չի ունեցել։ Երկու կողմից էլ պարզապես ավարառուական բնույթի արշավանքներ են եղել։ Հիշատակություն կա, որ հաշտություն է կնքվել Մելիտենեի, Տարսոնի և այլ ամիրաների հետ, ընդ որում ասվում է, որ երկու ամիրա հարկատու դարձան Բյուզանդիային։ Ինչ վերաբերում է Աֆրիկայի արաբներին, ապա նրանք հասնում են որոշ հաջողությունների, 902 թ. ավարտելով Սիկիլիայի նվաճումը և ասպատակ սփռելով մինչև Հռոմ։*

*Լևոն VI-ը վախճանվեց 912 թվականի մայիսի 12-ին։ Կայսր հռչակվեց նրա կրտսեր եղբայր Ալեքսանդրը, որի կայսերակիցն էր Լևոն VI-ի յոթամյա որդի Կոստանդին Ծիրանածինը (905—959 թթ.)*[1]*։ Ալեքսանդրը թագավորեց ընդամենը 13 ամիս և վախ-*

---

[1] *«Ծիրանածին» մակդիրը բյուզանդագիտության մեջ բացատրվում է երկու ձևով։ Մեկ, թե նա ծնվել է բյուզանդական արքունիքի «Ծիրանի» դահլիճում, և երկրորդ, որ նա ծնվել է, երբ իր հայրը ծիրանի էր հագած, այսինքն կայսր էր։ Կոստանդին Ծիրանածինի կյանքի և գրական գործունեության մասին հարուստ գրականություն կա։ Հին ու նոր գործերից ամենակարևորներն են.* *А. П. Зернин*, Жизнь и литературные труды имп. Константина Багрянородного, Харьков, 1858; *A. Rambaud*, L'Empire grec au dixieme siecle. Constantin Porphyrogenète, Paris, 1870; *F. Hirsch*, Kaiser Constantin VII Porphyrogennetos, Berlin, 1873; *K. Krumbacher*, Geschichte der byzantinischen Litteratur, München, 1897; *В. Латышев*, К вопросу о литературной деятельности Константина Багрянородного, Византийский Временник, т. 22 (1915 1916), стр. 13—20; *N. Iorga*, Médaillons d'histoire litteraire by-

*ճանվեց 913 թ. հունիսի 6-ին։ Մանկահասակ Կոստանդնի համար ստեղծվեց խնամակալական մի ամբողջ խորհուրդ, որի մեջ կարևոր դեր էին խաղում Լևոն VI-ի կին Զոեն*[1]*, Կոստանդնի մայրը, (Ալեքսանդրը նրան վանք էր ուղարկել, բայց այդ կայսեր մահից հետո, 914 թ. նա նորից դուրս էր եկել), և պատրիարք Նիկողայոս Միստիկոսը*[2]*։*

*Կոստանդին Ծիրանածինի առաջին մենիշխանությունը տևեց 913 թ. հունիսի 7-ից մինչև 920 թ. դեկտեմբերի 17-ը։ Այդ ժամանակամիջոցում կայսրությունը նորից զբաղված էր բուլղարների դեմ մղվող արյունալի պատերազմով։ Ցար Սիմեոնը, մեծ զորքի գլուխն անցած, 913 թ. հասավ մինչև Կոստանդնուպոլսի պարիսպների տակ, բայց չկարողացավ գրավել քաղաքը և ետ վերադարձավ։*

*Բյուզանդիան բուլղարների դեմ դաշինք է կնքում պեչենեգների հետ, որոնք, թանկարժեք նվերների դիմաց, պետք է Սիմեոնին հարվածեին թիկունքից։ Հակառակ այդ բոլորին, Սիմեոնին հաջողվում է 914 թ. սեպտեմբերին ստիպել Ադրիանուպոլսի զորավար հայազգի Պանգրատուկասին* (Παγκρατούκας ὁ 'Αρμένης) *քաղաքն իրեն հանձնել։ Կայսրուհի Զոեն ստիպված էր Սիմեոնին բազմաթիվ նվերներ տալ քաղաքը ետ ստանալու համար։ Զոեն Սիմեոնին հաղթահարելու համար ի վերջո որոշում է հաշտու-*

---

zantine, 10. L'œuvre de Constantin Porphyrogénète, Byzantion, t. 2 (1925), p. 260—266; *S. Runciman*, The emperor Romanus Lecapenus and his Reign, Cambridge, 1929; *G. Ostrogorsky*, Histoire de l'État byzantin, Paris, 1956; *G. Garitte*, Constantin VII Porphyrogénète (né dans la Porphyra, c.-à-d. d'un père empereur), empereur de Byzance (944—959), Dictionnaire d'Histoire et de Géographie Ecclésiastiques, XIII (1954) p. 615—617; *Gy. Moravcsik*, Byzantinoturcica, Bd. I, Die byzantinischen Quellen der Geschichte der Türkvölker, Zweite durchgearbeitete Auflage, Berlin, 1958, S. 356 sqq.; *M. E. Colonna*, Gli storici bizantini dal IV al XV secolo, I, Storici profani, Napoli, 1956, p. 27—35; *А. Д. Люблинская*, Источниковедение истории средних веков, Ленинград, 1955, стр. 268—271. *P. Lemerle*, L'encyclopédisme à Byzance à l'apogée de l'empire, et particulièrement sous Constantin VII Porphyrogénète, Cahiers d'histoire mondiale, 9 (1966), p. 596—616.

[1] *Այս Զոեն Ստիլիանոս Զաուցայի դուստրը չէ, այլ Զոե Կարբոնոպսիան, Լևոն VI-ի չորրորդ կինը։ Լևոնը չորս անգամ ամուսնացավ։ Զաուցայի դուստրը Լևոնի երկրորդ կինն էր։*

[2] *J. Gay*, Le patriarche Nicolas le Mystique et son rôle politique, Mélanges Charles Diehl, t. I, Paris, 1930.

*թյուն կնքել արաբների հետ, որպեսզի կարողանա արևելքի բոլոր ուժերը տեղափոխել բուլղարների դեմ մղվող պայքարում, ինչ որ և կատարվում է։ Բյուզանդական զորքերի սպարապետն էր հայազգի մագիստրոս Լևոն Փոկասը, Նիկեփոր Փոկասի եղբայրը, որը «սակայն ավելի աչքի էր ընկնում իր արիությամբ, քան թե խոհեմությամբ»*[1]*։ Բուլղարների դեմ ուղարկվեցին նաև Վարդաս Փոկասը, հայկական զորաբանակով Մելիասը (Մլեհը) և արևելյան բոլոր բանակաթեմերի զորավարները։ Կատաղի ճակատամարտ է տեղի ունենում Աքելոոս գետի ափին (917), որտեղ բյուզանդական զորքերը գլխովին ջախջախվում են։ Այս ճակատամարտում զոհվում է Աղոտոս ('Αζωτος, Աշոտ, թե՞ Ազատ— Հ. Բ.) անունով հայազգի մի նշանավոր զորավար, որ գլխավորում էր էքսկուբիտոսների կայսերական թիկնապահ զորքը*[2]*։ Շատ քչերն են փրկվում, այդ թվում և Մլեհը, որ անցնելով արևելք, հսկայական գործունեություն է ծավալում արաբների դեմ (տե՛ս ստորև)։*

*Այս ժամանակաշրջանում Բյուզանդիայի արտաքին քաղաքականության մեջ կարևոր տեղ է գրավում Հայաստանը։ Ցանկանալով օգուտ քաղել Յուսուֆ ոստիկանի ասպատակությունների հետևանքով ստեղծված ծանր վիճակից, Բյուզանդական կայսրությունը պատրիարք Նիկողայոսի միջոցով*[3] *(աթոռակալել է 901 թ. մարտի 1-ից մինչև 907 թ. փետրվարը, և 912 թ. մայիսի 15-ից մինչև 925 թ. մայիսի 15-ը) մի քանի անգամ դիմեց հայոց կաթողիկոս Հովհաննես Դրասխանակերտցուն և հայոց թագավորին, օգնություն խոստանալով, որի դիմաց սակայն նկատի ուներ Հայաստանը կայսրությունից վասալական կախման մեջ գցել։ Բյուզանդական կառավարությունը նույնիսկ Կոստանդնուպոլիս հրավիրեց Սմբատ I-ի որդի Աշոտ II Երկաթին, որին մեծ պատիվնե-*

[1] Theophanes Continuatus, Bonnae, 1838, p. 388.

[2] De Thematibus, § 12.

[3] *Մեզ են հասել Նիկողայոս Միստիկոսի մի քանի թղթերը՝ ուղղված կաթողիկոս Հովհաննես Դրասխանակերտցուն և Սմբատ I թագավորին։ Բացի այն թղթերից, որոնց մասին հիշատակում է և ընդարձակ մեջբերումներ կատարում հայոց կաթողիկոսը իր «Հայոց պատմություն»-ում, հայտնի են երկու թուղթ ևս, որոնք հասել են հունարեն բնագրով։ Այդ մասին մանրամասն տե՛ս* Հ. Մ. Բարթիկյան, *Կոստանդնուպոլսի պատրիարք Նիկողայոս Միստիկոսի 101-րդ և 139-րդ թղթերը, ուղղված հայոց կաթողիկոս Հովհաննես Դրասխանակերտցուն և Սմբատ I թագավորի, Պատմա-բանասիրական հանդես, 1966 թ., № 4։*

րով ընդունեց կայսրուհի Զոեն (ὃν ('Ασώτιον) παραγενόμενον ἡ δέσποινα καὶ μετὰ πολλῆς τιμῆς ὑπεδέξατο)[1]։ Դա 914 թ. սեպտեմբերից առաջ էր[2]։

Կոստանդին VII Ծիրանածին կայսեր մանկահասակությունը պատճառ դարձավ, որ բարձրաստիճան զինվորականների կողմից գահին տիրանալու բազմաթիվ փորձեր կատարվեն, որոնք սակայն հաջողություն չունեցան։ Այդպիսի պայմաններում հսկայական ազդեցություն ձեռք բերեց ծովակալ Ռոմանոս Լեկապենոսը, որի հայրենիքը Արմենիակոնն էր (τῆς ἑαυτοῦ πατρίδος τῆς τῶν 'Αρμενιακῶν)[3]. Լեկապենոսը նախ իր դստեր՝ Հելենեին կնության տվեց երիտասարդ կայսեր և դարձավ բյուզանդական կայսրության պատմության մեջ երկրորդ «կայսերահայրը»։ Մի փոքր անց նա հռչակվեց կեսար։ Կայսրուհի Զոեն, Կոստանդնի մայրը, հաշտ աչքով չէր նայում Ռոմանոսի օրեցօր հզորանալուն։ Բայց Ռոմանոսի համար դժվար չէր Զոեին նորից վանք աքսորել, մեղադրելով նրան իրեն թունավորելու փորձ կատարելու մեջ, ինչ որ, իհարկե, բացառված չէր։ 920 թ. դեկտեմբերի 17-ին Ռոմանոսը ձեռամբ Կոստանդին Ծիրանածինի և պատրիարք Նիկողայոսի կայսր է հռչակվում[4]։

Փաստացի ամբողջ իշխանությունն անցավ Ռոմանոս Լեկապենոսի ձեռքը։ Կոստանդինը թեև կայսերակից էր և պետական պաշտոնական փաստաթղթերում հիշվում էր Ռոմանոսից առաջ, բայց և այնպես Ռոմանոսի ձեռքում մի խաղալիք էր և շատ շուտով հեռացվեց պետական գործերից և ստիպված իրեն նվիրեց գրական գործունեության։ Աղբյուրների տվյալների համաձայն Ռոմանոսի քառորդդարյա թագավորության ամբողջ ընթացքում Կոստանդին Ծիրանածինը գտնվում էր Ռոմանոսի «ենթակայության» կամ «հպատակության» մեջ (ὢν ἐν ὑποταγῇ)[5]։ Ռոմանոսը օգտվելով իր դեմ ուղղված մի դավադրությունից, որ կատարվել էր Կոստանդինի կողմնակիցների կողմից, Կոստանդինին նույնիսկ կայսրերի շարքում երկրորդ տեղն է իջեցնում, առաջինը վերապահելով իրեն. թեև դա պարզապես երդմնազանցություն էր[6]։

---

[1] Theoph. Cont., p. 387.

[2] Մանրամասն տե՛ս N. Adontz, Asot Erkat' ou de Fer, Études Armeno-byzantines, p. 265 և հտ.։

[3] Theoph. Cont., p. 419.

[4] Ibid., p. 397—398.

[5] Ibid., p. 381.

[6] Ibid., p. 400—401.

*Ռոմանոսը շտապեց կայսերակից հռչակել և իր որդիներին՝ Քրիստափորին (921 թ. մայիսի 20-ից մինչև 931 թ. օգոստոս), Ստեփանոսին և Կոստանդինին[1] (924 թ. դեկտեմբեր)։ Նա այն աստիճան առաջ անցավ, որ ուզեց կրկնած լինել Վասիլի I-ին և իր 16-ամյա որդի Թեոփիլակտոսին պատրիարք հռչակեց (933 թ. փետրվարի 2-ին։ Աթոռակալեց մինչև 956 թ. փետրվարը)։*

*Ռոմանոս I Լեկապենոս կայսեր թագավորության ամբողջ ժամանակաշրջանը[2] անցավ անդադար պատերազմների մեջ, որոնք կայսրությունը մղում էր և՛ Արևմուտքում, և՛ Արևելքում։ Աբբասյան հարստությունը դեպի անկում էր գնում և Բյուզանդիայի համար արդեն նախկին վտանգը չէր ներկայացնում։ Բյուզանդական կայսրությունը, օգտվելով իր դարավոր ախոյանի թուլացումից, սկսեց ծավալել իր նվաճողական քաղաքականությունը, որի սկիզբը Վասիլ I-ն էր դրել։*

*Ռոմանոս I-ը բյուզանդական զորքերի սպարապետ (գոմեստիկոս) նշանակեց հայազգի Հովհաննես Կուրկուասին (Գուրգեն), այն ամենաընդունակ զորավարին, որը բյուզանդական աղբյուրներում կոչվում է Նոր Տրայանոս և Բելիսարիոս[3]։ Նա քսաներկու տարի անընդմեջ* (ἀδιάδοχος). *922 թ. մինչև 944 թ. վարեց այդ պաշտոնը և իր զորավարական տաղանդով կարողացավ Բյուզանդական կայսրության սահմանները հասցնել մինչև վերին Եփրատ և Տիգրիս, նա «կրկնապատկեց կայսրության հողերը», գրավեց հազար քաղաք, ասում է Թեոփանեսի Շարունակողը։ Այդ բանին նպաստեց նախ և առաջ այն հանգամանքը, որ 927 թ., Սիմեոն*

---

[1] *Այս Կոստանդինին Ռոմանոսը ամուսնացրեց ծագումով հայ* (ἐκ γένους τῶν 'Αρμενιακῶν) *պատրիկ Ադրիանոսի դուստր Հելենեի հետ։* (Thoph. Cont., p. 423)։ *Իսկ Կոստանդնի որդուն՝ Ռոմանոսին, պապ Ռոմանոսը ամուսնացրեց Հովհաննես Կուրկուասի դստեր Եվփրոսինեի հետ (նույն տեղում, էջ 426)։*

[2] *Ռոմանոս Լեկապենոսի մասին տե՛ս հետևյալ ուսումնասիրությունները.* Կ. Տեր-Սահակյան, *նշվ. աշխ., հատ. Բ։ St. Runciman,* The emperor Romanus Lecapenus and his reign, Cambridge, 1929; *(վերահրատարակվել է 1963 թվականին)։ H. Grégoire,* Notules, Byzantion, t. VIII, 1933, p. 572 sqq.; *М. А. Шангин,* Письма Арефы—новый источник о политических событиях в Византии 931—934 гг., Византийский Временник, т. I, 1947, стр. 235—260; *V. Laurent,* Un portrait inédit de Roman Ier Lecapène, „Festschrift W. Sas-Zaloziecky", Graz, 1956; *G. Ostrogorsky,* Histoire de l'Etat Byzantin, Paris, 1956; История Византии, т. II, М., 1967, стр. 183—186.

[3] Theoph. Cont., p. 427.

*ցարի մահից հետո, Բյուզանդիային հաջողվեց խաղաղություն հաստատել բուլղարների հետ և իր ամբողջ ուշադրությունն ու ուժը կենտրոնացնել արաբների դեմ մղված պայքարում։ Բյուզանդական զենքի կարևորագույն հաջողություններից էր նշանավոր Մելիտենե քաղաքի գրավումը (934 թ.) Հովհաննես Կուրկուասի և հռչակավոր Մելիաս-Մլեհի կողմից։ Վերջինս գլխավորում էր հայերից բաղկացած զորք՝* (μετὰ τῶν 'Αρμενίων)[1]*։ Միակ լուրջ խոչընդոտը Բյուզանդիայի համար արևելյան ճակատում Համդանյան հարստության պատկանող, Մոսուլի և Հալեպի ամիրա Սայֆ ալ-Դաուլան էր, որ 938 թ. սեպտեմբերին վերին Եփրատում պարտության մատնեց Հովհաննես Կուրկուասին։ Այդ խոչընդոտը սակայն ժամանակավոր բնույթ ուներ*[2]*։*

*Բուլղարական պատերազմը մինչև 927 թ. շարունակվեց նախկին կատաղությամբ։ Սիմեոնի զորքերը 920 թ. հասնում էին մինչև Կոստանդնուպոլսի պարիսպների տակ։ Հերթական մի ճակատամարտի ժամանակ իր պրոտոմանդատորի հետ ջրասույզ է արվում հայազգի պատրիկ, ծովակալ* (δρουγγάριος τῶν πλοΐμων) *Ալեքսիոս Մուսելեն, որը մասնակցում էր պատերազմին «իր ժողովրդով»* (μετὰ τοῦ λαοῦ αὐτοῦ)[3]*, հասկանալի է հայերով։ Բուլղարներին հաջողվում է նորից գրավել Ադրիանուպոլիս քաղաքը և գերել նրա զորավարին։ Ռոմանոսին ի վերջո հաջողվում է հաշտություն կնքել ցար Սիմեոնի հետ, որը շատ չանցած, 927 թ. վախճանվում է։ Նրա մահով բուլղարա-բյուզանդական հարաբերությունների մեջ բեկում է առաջանում։ Սիմեոնի որդի ցար Պետրոսը և նրա աներձագ-խնամակալ Գեորգը իրենց բանակցությունները Ռոմանոսի հետ վարում էին ի միջի այլոց մի վանականի միջոցով, որի անունն էր Կալոկիրիս, ծագումով հայ* (τῷ γένει 'Αρμενιακόν)[4]*։*

*Ռոմանոսի օրոք, 944 թ. Կոստանդնուպոլսի վրա նավատորմիղով նորից հանդես եկան ռուսները իշխան Իգորի գլխավորությամբ, բայց պարտություն կրելով, ցրվեցին Բյութանիա նահանգով մեկ։ Նրանց դեմ պայքար մղեցին և մեծ ջարդ տվեցին*

---

[1] Theoph. Cont., p. 416.

[2] *Համդանյանների մասին մանրամասն տե՛ս M. Canard,* Histoire de la dynastie des Hamdanides, Alger, 1951; Idem: Les Hamdanides et l'Arménie, Annales de l'Insitut d'Études Orientales, t. VII, 1948, p. 77—94.

[3] Theoph. Cont., p, 401.

[4] Theoph. Cont., p. 412.

հայազգի զորավարներ Վարդաս Փոկասը և վերևում հիշված Հովհաննես Կուրկուասը[1]։

Ռոմանոսի թագավորության ընթացքում կայսեր կյանքի դեմ բազմաթիվ ոտնձգություններ և նրան տապալելու փորձեր են եղել։ Դրանցից կարելի է նշել այն դավադրությունը, որի կազմակերպիչներն էին «ոմն Ադրիանոս Խալդ» (այսինքն Խաղտիքից, հավանաբար հայ) և «մեծահարուստ» Տաճատ Հայը (Τατζάκης կարդա՝ Τατζάτης) 'Αρμένιος πλούσιος πάνυ)[2]։ Նրանց դրդողն էր Խաղտիք բանակաթեմի զորավար Վարդաս Բոյիլասը (ելնելով անունից նույնպես հայ)։ Նրանք գրավում են Բայբերդ (Παϊπερτε) ամրոցը։ Ռոմանոսը նրանց դեմ է ուղարկում Հովհաննես Կուրկուասին, որին հաջողվում է ճնշել ապստամբությունը։ Դավադրության պարագլուխներին նա կուրացնում է և գրավում նրանց ունեցվածքը։ Միաժամանակ հաջողվում է փախչել Տաճատին, որը սակայն ստանալով անձեռնմխելիության մասին երաշխիքներ, հանձնվում է։ Նրան բանտարկում են Մանգանայի «տանը», բայց փախուստի դիմելու փորձի մեջ բռնվելով, կուրացվում է։ Ռոմանոս կայսրը խնայեց միայն Վարդաս Բոյիլասին, որովհետև նա «իր բարեկամն էր»[3]։

Մի դավադրություն, այնուամենայնիվ, հաջողություն ունենում է։ Դրա կազմակերպիչները Ռոմանոսի որդիներն էին։ Նրանց, ամենայն հավանականությամբ, դրդել էր Կոստանդին Ծիրանածինը։ Գահընկեց անելով իրենց հորը, աքսորում են Պրոտե կղզին, որտեղ և նա 948 թ. հունվարի 15-ին վախճանվում է։ Դավադիրների թվում էր և Մանվել Կուրտիկը, ամենայն հավանականությամբ որդին այն Հայ Կուրտիկի (ὁ Κουρτίκης ὁ ἐξ 'Αρμενίων), որ սպանվեց Կոստանդին Ծիրանածինի դեմ կազմակերպված Կոստանդին Դուկասի դավադրության ճնշման ժամանակ[4]։ Կոստանդին Ծիրանածինը մի քանի օր թագավորեց Ռոմանոսի որդիների՝ իր աներձագների հետ, բայց շուտով նրանց ձերբակալեց և մայրաքաղաքից աքսորեց։ Այսպիսով, 945 թ. հունվարի 27-ին Կոստանդինը, Կոստանդին VII անվան տակ ստանձնեց միանձնյա իշխանությունը։

---

1 Ibid., p. 423—425.
2 Ibid., p. 404.
3 Theoph. Cont., p. 404.
4 Նույն տեղում, էջ 383։

*Կոստանդին Ծիրանածինը պաշտոնների նոր բաժանում կատարեց։ Հայազգի Վարդաս Փոկասին մագիստրոսի բարձր աստիճանը շնորհելով, նշանակեց բյուզանդական զորքերի սպարապետ (դոմեստիկոս)*[1]*։ Մանվել Կուրտիկը դարձավ պատրիկ և վիգլայի դրունգար։ Ծիրանածինի ժամանակ արքունիքում՝ մեծ դեր էին խաղում ծագումով Մամիկոնյան Թոռնիկյանները* (οἱ λεγόμενοι Τορνίκιοι), *որոնց օգնությամբ Կոստանդինին հաջողվեց չեզոքացնել Ռոմանոս Լեկապենոսի որդիներին. Նրանց աքսորեցին Պրոտե կղզին ու վանական ձեռնադրեցին*[2]*։*

*Ռոմանոսի թագավորության վերջին շրջանում շնորհազրկված Հովհաննես Կուրկուասը Ծիրանածինի օրոք նորից պատիվների է արժանանում։ Մենք հանդիպում ենք նրան արաբների հետ բանակցություններ վարելիս՝ ռազմագերիների փոխանակման շուրջ*[3]*։ Այս ժամանակ է, որ նորանոր հայ գործիչներ են հանդես գալիս, ինչպես Մուշեղ-Ռոմանոսը* (Μουσελὲς Ρωμανός)[4]*։*

*Կոստանդին Ծիրանածինի օրոք մեծ զարգացում են ապրում գիտությունները։ Ինքը լինելով անչափ կրթված մարդ, շատ էր հովանավորում գիտությունները և առաջին հերթին հռետորությունը, փիլիսոփայությունը, երկրաչափությունը, աստղաբաշխությունը, արվեստը*[5]*։ Նա հատուկ ուշադրություն դարձրեց կեսար Վարդասի հիմնադրած համալսարանին, որ նոր ծաղկում ապրեց։ Ծիրանածինը աչքի ընկավ և իր շինարարական գործունեությամբ։ Նա կառուցեց պալատներ, եկեղեցիներ, ծերանոցներ և այլն, որոնց մասին հիացմունքով են խոսում ժամանակակից հեղինակները։*

---

[1] *Նույն տեղում, էջ 436, 445։ Տարիներ հետո, երբ Վարդաս Փոկասը «ծերացավ», կայսրը այդ պաշտոնը տվեց Վարդասի որդուն, Նիկեփորին, որ պատրիկ էր և Բյուզանդիայի խոշորագույն բանակաթեմի՝ Անատոլիկոնի զորավար։ Այս Նիկեփոր Փոկասը հետագայում դարձավ կայսր (963—969 թթ.)։ Նույն տեղում, էջ 459։*

[2] Theoph. Cont., p. 437։ *Մի փոքր անց Ռոմանոսի որդիներից Կոստանդինին, փախուստի դիմելու և ապստամբություն բարձրացնելու փորձի մեջ բռնելով, սպանում են։*

[3] Theoph. Cont., p. 443.

[4] *Նույն տեղում, էջ 443։ Այս Ռոմանոս-Մուսելեի ժառանգական դարձած հսկայական կալվածների մասին տե՛ս C. E. Zachariae a Lingenthal,* Jus graeco-romanum, vol. III, p. 312, n. 48; *Հմմտ.* История Византии, т. II, М., 1967, стр. 122.

[5]. Theoph. Cont., p. 446.

*Արտաքին քաղաքականության մեջ կայսրությունը շարունակեց արաբների դեմ մղվող պատերազմը, և՛ Ասորիքում, և՛ Աֆրիկայում: Կիբիրեոտների զորավար Վասիլ Հեքսամիլիտոսի գլխավորությամբ բյուզանդական զորքերին հաջողվում է պարտության մատնել Տարսոնի ծոցից դուրս եկած արաբական նավատորմիղը և հեղուկ կրակով հրկիզել այն: Իտալիայում դրությունը բավական բարդ էր: Լանգոբարդիան և Կալաբրիան ապստամբություն էին բարձրացրել կայսրության դեմ, միանալով արաբներին: Ծիրանածինը պատրիկ Մարիանոս Արգիրոսի գլխավորությամբ զորաբանակ ուղարկեց և ճնշեց նրանց: Մարիանոսը գրավեց ապստամբած Նեապոլիս քաղաքը: Բյուզանդական նավատորմիղը պարտության մատնեց նաև Աֆրիկայի արաբների նավատորմիղը: Թեոփանեսի Շարունակողի ասելով, և՛ Եգիպտոսի ամիրան, և՛ Ասորիքի ամիրան (խալիֆան) այդ բոլորից հետո Կոստանդին կայսեր հետ հաշտություն կնքեցին[1], թեև մի փոքր անց ցույց է տալիս, որ Ասորիքի արաբների դեմ շարունակվում են պատերազմական գործողությունները: Բյուզանդական զորաբանակները գլխավորում էր Վարդաս Փոկասի որդին, Նիկեփոր Փոկասը, որը լինելով պատրիկ և Անատոլիկոն բանակաթեմի զորավար, ստացել էր հոր պաշտոնը, դառնալով սպարապետ:*

*Բյուզանդական զորքերը Վասիլ պատրիկի գլխավորությամբ գրավում են Սամոսատ քաղաքը և հսկայական ավար վերցնում: Պակաս հաջողություն չի ունենում և Նիկեփոր Փոկասի եղբայրը, պատրիկ Լևոնը, որին Կոստանդին Ծիրանածինը, ինչպես տեսանք, իր առաջին մենիշխանության ժամանակ մագիստրոսի բարձր պատվաստիճանն էր շնորհել և նշանակել Անատոլիկոն բանակաթեմի զորավար: Այն ժամանակ էր, որ իր սխրագործություններով հռչակվեց հայազգի զորավար Թեոփիլոսը, Հովհաննես Կուրկուասի հարազատ եղբայրը, որն ի վերջո կարողացավ արաբների ձեռքից գրավել Թեոդոսուպոլիս-Կարին քաղաքը (949 թ.)[2]: Թեոփիլոսը դարձավ Խաղտիք բանակաթեմի զորավարը[3]:*

---

[1] Theoph. Cont., p. 455.

[2] *Նույն տեղում, էջ 428: Թեոփիլոսը հետագայում, Նիկեփոր Փոկասի թագավորության օրոք, դարձավ մագիստրոս և սխոլերի դոմեստիկոս (սպարապետ): Նույն տեղում: Հովհաննես Ձմշկիկը այս Թեոփիլոսի թոռն է:*

[3] *Նույն տեղում, էջ 428:*

*Ռոմանոս I Լեկապենոսի թագավորության և Կոստանդին Ծիրանածինի երկրորդ մենիշխանության ժամանակ բավական լայն ծավալ են ստանում հայ-բյուզանդական փոխհարաբերությունները։ Բյուզանդիան շարունակում է իր գործուն քաղաքականությունը հայոց, առաջին հերթին իր հարևան Տարոնի հայկական իշխանության նկատմամբ։ Պակաս եռանդ չի ցուցաբերում կայսրությունը և Ապահունիքում հաստատված կայսիկ ամիրաների, ինչպես և վրացիների նկատմամբ (տե՛ս ստորև)։ Հովհաննես Կուրկուասը բազում արշավանքներ է կատարում Կարին-Դվին ուղղությամբ, թեև ոչ միշտ հաջողությամբ։*

*Կոստանդին VII Ծիրանածինը վախճանվեց 959 թ. նոյեմբերի 15-ին, գահը թողնելով իր անչափահաս որդի Ռոմանոսին և վերջինիս մոր՝ Հելենեին։ Թեոփանեսի Շարունակողը տալիս է Կոստանդին կայսեր արտաքինի մանրամասն նկարագրությունը։ Նա բարձրահասակ էր, ուներ կաթի նման սպիտակ մորթ, երկար դեմք, վարդագույն այտեր, գեղեցիկ, ուրախ աչքեր։* Նա արծվաքիթ էր (γρυπὸς ἤτοι ἐπίριν), *երկարավիզ։ Նա նոճիի նման ուղիղ հասակ և լայն ուսեր ուներ*[1]*։*

* *
*

*Մակեդոնական հարստության տիրապետության ժամանակաշրջանում է՛լ ավելի է խորանում գյուղացիների ճորտացման պրո-*

[1] Theoph. Cont., p. *468. Կոստանդին VII Ծիրանածինի արտաքինի մասին լավ պատկերացում է տալիս մինչև օրս պահպանված նրա պատկերը, որ X դարի կեսերին փորագրվել է փղոսկրե մի տախտակի վրա և, հավանաբար, գրքի կազմ է եղել։ Պատկերը մեջ է բերված սույն գրքի սկզբում։ Փղոսկրե այդ տախտակը, որ ձեռք է բերել իշխան Ա. Ուվարովը էջմիածնում, մինչև 1932 թ. պահվում էր Մոսկվայի Պետական պատմական թանգարանում։ Այժմ գտնվում է Ա. Ս. Պուշկինի անվան կերպարվեստի թանգարանում (Մոսկվա)։ Տախտակի բարձրությունն է 18,6 սմ, իսկ լայնությունը՝ 9,5 սմ։ Խնդրո առարկա պատկերով զբաղվել են բազմաթիվ ուսումնասիրողներ։ Տե՛ս P. Jurgenson*, Ein neues Denkmal des byzantinischen Porträts, Byzantinische Zeitschrift, Bd. 26, 1926, SS. 78—80; *A. Goldschmidt* und *K. Weitzmann*, Die byzantinischen Elfenbeiskulpturen, Bd. II, Berlin, 1934, № 35, SS. 35, 36, Taf. XIV; *J. Beckwith*, Two Exhibitions of Byzantine Art. The Burlington Magazin, №667, vol. C, 1958, p. 338, pl. 9; Idem, The Art of Constantinople. An Introduction, London, 1961, p. 67, pl. 80; *D. Talbot Rice*, The Art of Byzantium, London, 1959, p. 313, pl. 96. Apud *А. В. Банк*, Византийское искусство в собраниях Советского Союза, Л.-М., 1966, стр. 18, 299, табл. 124, 125.

ցեսը։ Գյուղացիությունը խնդրո առարկա շրջանում երկու մեծ խմբերի էր բաժանված—«պարիկոսներ», որոնք լինելով հողազուրկ, մշակում էին խոշոր կալվածատիրոջ հողերը, որոնց վրա էլ ապրում էին, և ազատ համայնական գյուղացիություն, որ օրեցօր զիջում էր իր դիրքերը խոշոր հողատերերի առաջ։ Խոշոր հողատերերը (δυνατοί —ուժեղներ) արդեն իրավունք էին ստացել գնելու ազատ գյուղացուն պատկանող հողը, մի բան, որ անցյալի կայսրերը, ի պաշտպանություն միլիոնավոր հարկատու բնակչության, արգելել էին։ Նոր օրենքի համաձայն համայնքին պատկանող այն հողակտորները, որ երեսուն տարվա ընթացքում չէին մշակվում, դառնում էին պետության սեփականությունը և որպես կանոն վաճառվում էին խոշոր հողատերերին։ Այս բոլորը է՛լ ավելի էին խորացնում ազատ գյուղացիության ապրած ճգնաժամը։ Գյուղացիությունը, բացի հարկեր վճարելուց պետությանն էր մատակարարում նաև զինվորներ։ Այդ զինվորները, որպես կանոն, պետությունից հող էին ստանում։ Ազատ գյուղացիության աստիճանական նվազումը առաջացրեց և ստրատիոտների (զինվորական դասի) թուլացում, որը, հասկանալի է, պետության ռազմական հզորության թուլացում էր նշանակում։ Ռոմանոս Ι Լեկապենոս կայսրը շատ լավ էր հասկանում թե ինչ հետևանքներ կունենա այդ պրոցեսը։ Նա գիտակցում էր, որ գյուղացիական հողատիրությունը բավարարում է պետության երկու կարևոր պահանջները, այն է՝ ապահովում է պետական գանձարանը դրամական միջոցներով, իսկ բանակը՝ զինվորներով։ Այդ երկուսն էլ պիտի կրճատվեին, եթե կրճատվեր ազատ գյուղացիության քանակը։ Ռոմանոսը 922 թ. օրենք հրապարակեց, որի համաձայն ազատ գյուղացիների հողը կարող էր գնել միմիայն նրանց ազգականը, հարևանը, համագյուղացին, և վերջիններիս չգոյության դեպքում միայն այդ հողը կարող էր վաճառվել կողմնակի մարդու։ Դինատներին արգելվում էր գնել, կամ որևէ այլ ճանապարհով տիրանալ գյուղացու հողին։ Նախորդ երեսուն տարիների ընթացքում ստրատիոտներից գնված հողը պետք էր վերադարձվեր նախկին տերերին։ Այս օրենքը, սակայն, չունեցավ այն արդյունքները, ինչ ակնկալում էր Ռոմանոսը ուստի և հետագայում նույն բովանդակությամբ նորանոր օրենքներ հրապարակվեցին։

Մակեդոնական հարստության ժամանակաշրջանը բնորոշ է խոշոր կալվածատիրության ուժեղացմամբ։ Աղբյուրները հիշա-

տակում են այնպիսի խոշոր հողատերեր, որոնց ունեցվածքը համեմատվում է նույնիսկ կայսեր կարողության հետ։ Այդպիսին էր պելոպոնեսցի ազնվական մի կնոջ Դանիելիսի հարստությունը։ Նա Պելոպոնեսի մեծ մասի սեփականատերն էր, ուներ հազարավոր ստրուկներ և ճորտեր[1]։ Այդպիսի խոշոր հողատերերից էր և Եվստաթիոս Բոյիլասը, որին բյուզանդական կառավարությունը աքսորել էր Կղարջք, տալով նրան հսկայական կալվածքներ, ստրուկներ, ճորտեր և այլն[2]։

Խնդրո առարկա ժամանակաշրջանում լայն տարածում ունեցավ նաև եկեղեցական և վանական հողատիրությունը։ Պատկերամարտության պարտությունից (843) հետո սկսեց ավելի ու ավելի հզորանալ վանական դասը և պատրիարքի դերը։ Միայն մայրաքաղաքում հաշվվում էր շուրջ երեսուն հազար վանական։ Նրանք ունեին լայնատարած կալվածքներ, որոնց վրա պարիկոսներ էին աշխատում։

Զարգացում ապրեցին քաղաքները և քաղաքային կյանքը, հատկապես ծովափնյա, մի բան, որ գլխավորապես կապված էր Էգեական և Ադրիատիկ ծովերում բյուզանդական գերիշխանության տարածման հետ։ Ծաղկում ապրեցին համքարությունները և արհեստները։

Կայսրության խոշորագույն քաղաքներն էին Կոստանդնուպոլիսն ու Թեսաղոնիկեն, որտեղ առևտուր էին անում ամենահեռավոր երկրներից ժամանած առևտրականները։ Զարգացում ապրեցին նաև Աթենքն ու Կորնթոսը, Տրապիզոնն ու Արծնը։ Արհեստավորներն ըստ իրենց մասնագիտության միավորվում էին համքարությունների մեջ, որոնք նաև առևտրական կազմակերպություններ էին։ Համքարությունների ղեկավարները միաժամանակ քաղաքապետի (էպարքոսի) անմիջական օգնականներն էին։ Շատ հաճախ համքարության ղեկավարի ընտրությունը կախված էր քաղաքի էպարքոսի կամքից։ Պետությունը ամեն կերպ օժանդակում էր արհեստների և առևտրի զարգացմանը, քանի որ իր եկամուտների մեծ մասը կուտակվում էր դրանցից հավաքած հարկերից։

---

[1] Տե՛ս նույն աշխատության մեջ, էջ 101։

[2] Նրա մասին մանրամասն տե՛ս Հ. Բարթիկյան, Եվստաթիոս Բոյիլասի կտակը որպես Հայաստանի և Վրաստանի պատմության կարևոր սկզբնաղբյուր, Բանբեր Մատենադարանի, № 5, 1960։

*Մակեդոնական հարստության ժամանակաշրջանում վերանում են քաղաքային ինքնավարության վերջին նշույլները։ Քաղաքային կուրիաները (խորհուրդները) փակվում են, քաղաքային վարչության անդամների ընտրովիությունը վերանում։ Սենատը զրկվում է օրենսդրության մշակման աշխատանքներին մասնակցելու իրավունքից*[1]։

---

[1] *Այս շրջանի սոցիալ-տնտեսական հարաբերությունների մասին մանրամասն տե՛ս* *G. Ostrogorsky*, Agrarian conditions in the Byzantine Empire in the Middle Ages, The Cambridge Economic History of Europe from the decline of the Roman Empire, Cambridge, 1942, p. 194—223; *Նույնի*, Pour l'histoire de la feodalite byzantine, Bruxelles, 1954; *Նույնի*, Quelques problèmes d'histoire de la paysannerie byzantine, Corpus Bruxellense Historiae Byzantinae, Subsidia II, Bruxelles, 1956; *Նույնի*, К истории иммунитета в Византии, Византийский Временник, т. XIII, 1958, стр. 55—107: *A. Marava*, Recherche sur la vie des esclaves dans le monde byzantin, Athenes, 1950; *G. Rouillard*, La vie rurale dans L'Empire byzantin, Paris, 1953; *А. П. Каждан*, Рабы и мистии в Византии в IX—XI вв., Ученые Записки Тульского гос. педагогического института, II, 1951, стр. 63—85; *Նույնի*, Крестьянские движения в Византии в X в. и аграрная политика императоров Македонской династии, Виз. Вр. т. V, 1952, стр. 73—98; *Նույնի*, Цехи и государственные мастерские в Константинополе в IX—X вв., Виз. Вр., т. VI, 1953, стр. 132—155; *Նույնի*, Социальный состав населения византийских городов в IX—X вв., Виз. Вр., т. VIII, 1956, стр. 85—96; *Նույնի*, К вопросу об особенностях феодальной собственности в Византии в VIII—X вв, Виз. Вр., т. X, 1956, стр. 48—65; *Նույնի*, Формирование феодального поместья в Византии X в., Виз. Вр., т. XI, 1956, стр. 98—122; *Նույնի*, Василики как исторический источник, Виз. Вр., т. XIV, 1958, стр. 56—66; *Նույնի*, Некоторые нерешенные проблемы социально-экономической истории Византии, Вопросы истории, 1958, № 10, стр. 79—96; *Նույնի*, Деревня и город в Византии в IX—X вв, Очерки по истории византийского феодализма, М., 1960; *Նույնի*, Экскуссия и экскуссаты в Византии X—XII вв., Византийские очерки, М., 1961, стр. 186—217; *Е. Э. Липшиц*, К вопросу о городе в Византии в VIII—IX вв., Виз. Вр., т. VI, 1953, стр. 113—131; *Նույնի*, О путях формирования феодальной собственности и феодальной зависимости в балканских и малоазийских провинциях Византии, Виз. Вр., т. XIII, 1958, стр. 28—55; *Նույնի*, Несколько замечаний о Василиках как источнике, Виз. Вр., т. XIV, 1958, стр. 76—80; *М. Я. Сюзюмов*, О социальной сущности законодательства „Василик", Виз. Вр., т. VI, 1953, стр. 72—87; *Նույնի*, О правовом положении рабов в Византии, Ученые записки Свердловского гос. педагогического института, вып. 11, 1955; *Նույնի*, Василики как источник для внутренней истории Византии, Виз. Вр., т. XIV, 1958, стр. 67—75; *Նույնի*, Византийская книга эпарха, М., 1962; *К. А. Осипова*, Развитие феодальной

* *
*

*Կոստանդին Ծիրանածինը եթե որպես կայսր ոչնչով չէր տարբերվում բյուզանդական այլ կայսրերից, եթե նրա քաղաքական ու ռազմական գործունեությունը, հակառակ իր կենսագիրների ծաղկազարդման, ոչնչով աչքի չէր ընկնում, ապա իր գրական ու մշակութային գործունեությամբ նա բացառիկ երևույթ է ոչ միայն բյուզանդական հազարամյա պատմության, այլև միջնադարի պատմության մեջ ընդհանրապես*[1]*։ Ծիրանածինի անձնավորության լավագույն բնութագիրը տվել են նրա ոչ հեռու ժամանակակից-*

---

собственности на землю и закрепощение крестьянства в Византии X в., Виз. Вр., т. X, 1956, стр. 66—80; *Նույնի*, Аллиленгий в Византии в X в., Виз. Вр., т. XVII, 1960, стр. 28—38; *Р. Браунинг*, Рабство в Византийской империи (600—1200 гг.), Виз. Вр., т. XIV, 1958, стр. 38—55; *Д. Ангелов*, О некоторых вопросах социально-экономической истории Византии, Вопросы истории, 1960, № 2; *P. Lemerle*, Esquisse pour une histoire agraire de Byzance: les sources et les problèmes, „Revue Historique", t. 219, 1958, p. 32—74, 254—284, t. 220, 1958, p. 43—94; Сборник документов по социально-экономической истории Византии, М., 1951, стр. 127 и сл.; История Византии, т. II, М., 1967, стр. 115 и сл.

[1] Կոստանդին Ծիրանածինի աշխատությունների մասին կա հսկայական գրականություն։ Ամենամանրամասն մատենագիտությունը տե՛ս հետևյալ գործերում։ *Gy. Moravcsik*, Byzantinoturcica, Bd. I, Die byzantinischen Quellen der Geschichte der Türkvölker, Zweite durchgearbeitete Auflage, Berlin, 1958, S. 360—361, 367—379, 382—386, 389—390; *M. E. Colonna*, Gli storici bizantini dal IV al XV secolo, I, Storici profani, Napoli, 1956, p. 28—30։ «Բանակաթեմերի մասին» աշխատության ռուսերեն ամբողջական թարգմանությունը իրականացրել է Պալաուսովը. տե՛ս *Палаусов*, Чтения в Императорском Обществе истории и древностей российских при Московском университете, 1858, июль-сентябрь, III, 4, стр. 1—32: «Բանակաթեմերի մասին» երկի այս թարգմանությունը, ինչպես և «Կայսրության կառավարման մասին» գործը վերահրատարակվել է Գ. Լասկինի առաջաբանով։ Տե՛ս Сочинения Константина Багрянородного „О фемах" (De Thematibus) и „О народах" (De administrando imperio) с предисловием Г. Ласкина, М., 1899: Վ. Վ. Լատիշևը Կոստանդին Ծիրանածինի աշխատություններից թարգմանել է «Կայսրության կառավարման մասին» երկի Կովկասին և Մերձսևծովյան շրջանին վերաբերող հատվածները, «Բանակաթեմերի մասին» երկից մեկ էջ, որը վերաբերում է Խերսոնին, իսկ «Բյուզանդական արքունիքի արարողությունների մասին» երկից երկու էջ՝ ռուս իշխանուհի Օլգայի Կոստանդնուպոլիս այցելության վերաբերյալ։ Տե՛ս Известия византийских писателей о Северном Причерноморье, Известия государственной Академии истории материальной культуры, Выпуск 91, М.-Л., 1934.



Թեոփիլոս



Թեոդորա



Միքայել III և Թեոդորա



Միքայել III և Թեկլա



Վասիլ I Մակեդոնացի



Վասիլ I և Կոստանդին



Կոստանդին և Եվդոկիա



Լևոն VI

Բյուզանդական ոսկեդրամներ։ (Մեծացված են)
(Պետական էրմիտաժ)



Լեոն VI և Կոստանդին VII
Ծիրանածին



Քրիստոսը թագադրում է
Ալեքսանդրին



Կոստանդին VII
Ծիրանածինն իր մոր՝
Զոեյի հետ



Կոստանդին VII
Ծիրանածին և Ռոմանոս I
Լեկապենոս



Ռոմանոս I Լեկապենոս
և Կոստանդին VII
Ծիրանածին



Քրիստոսը թագադրում է
Ռոմանոս I-ին



Կոստանդին VII
Ծիրանածին



Կոստանդին VII
Ծիրանածինն իր որդու
Ռոմանոս II-ի հետ

Բյուզանդական ոսկեդրամներ (Մեծացված են)

ները։ XI դարի հեղինակ Սկիլիցան նրա մասին գրում է. «Ինդիկտիոնի 6-րդ տարին՝ հուլիս ամսին իր մահկանացուն կնքեց և նրանց հայրը՝ Ռոմանոսը ու թաղվեց Միրելեոնում։ Իսկ Ծիրանածինը մեջտեղից վերացնելով կասկածելիներին, իր ձեռքն առավ ողջ ինքնակալական իշխանությունը։ Նույն ինդիկտիոնի սուրբ Զատկի օրը նա իր որդի Ռոմանոսի գլխին թագ դրեց։ Արարողությունը տեղի ունեցավ ձեռամբ պատրիարք Թեոփիլակտոսի։ Մարդիկ հույսեր էին տածում, որ եթե (Կոստանդինը) միահեծան թագավորի, արիություն հանդես կբերի և կայսրության վերաբերող հարցերին ավելի եռանդուն կվերաբերվի, բայց նա թուլամորթ դուրս եկավ և իր վրա դրված հույսերը ամենևին չարդարացրեց։ Նա տարվեց հարբեցողությամբ, չէր սիրում դժվար գործ բռնել. նա անհաշտ էր զանցագործների հանդեպ և անողոք պատուհասող։ Նա ղեկավար մարդկանց ընտրության հարցում անտարբեր էր, նրանց առաջ էր քաշում ոչ թե ելնելով բարեմասնություններից, ինչ որ ապացույց է մեծափառ իշխանություն [կրողների]։ Նա իշխանությունը, լինի ռազմական թե քաղաքական, առանց ստուգելու տալիս էր պատահական մարդկանց։ Քաղաքական ամենաբարձր պաշտոնները նա տալիս էր ռամիկ ու արատավորված մարդկանց։ Այդ հարցում նրա վրա շատ էին ազդում իր կին Հեղենեն և պարակիմոմենոս Վասիլը, ովքեր նախապատրաստեցին պաշտոնները վաճառքի առարկա դառնալու գործը»[1]։

Սկիլիցան, այնուամենայնիվ, ստիպված է խոստովանել Ծիրանածինի բարեմասնությունները ևս. «Այնուամենայնիվ,—շարունակում է նա,—Կոստանդինը բարի գործեր էլ կատարեց։ Նրա հոյակապ և հիանալու արժանի արարքները կարողացան ստվեր գցել նրա պակասություններից շատերի վրա և սքողել դրանք։ Նա անձնական ջանքերով կյանքի կոչեց կառավարողների անհոգության և տգիտության պատճառով բազում տարիների ընթացքում կորստյան մատնված գիտությունները, այն է թվաբանությունը, երաժշտությունը, աստղաբաշխությունը, երկրաչափությունը, տարածաչափությունը, և բոլորից բարձր կանգնած փիլիսոփայությունը։ Նա յուրաքանչյուր [գիտության] համար որոնեց և գտավ լավագույն և ընտիր ուսուցիչների, նա [աշակերտելու] ընդունեց և ուսման տվեց ամենից ընդունակներին։ Այդպիսով նա

[1] Georgii Cedreni Historiarum Compendium, t. II, Bonnae, 1839 p. 325—326.

*կարճ ժամանակամիջոցում վտարեց տգիտությունը և պետական կարգը վերափոխեց դեպի ավելի իմաստունը։ Նա ուշադրություն դարձրեց նաև արհեստների վրա և նրանք էս բարձր զարգացման հասցրեց»*[1]։

*Կոստանդին Ծիրանածինի մեզ հասած ամենակարևոր աշխատությունը «Կայսրության կառավարման մասին»* (De Administrando Imperio) *երկն է։ Նշված խորագիրը պատկանում է հրատարակիչ Մեուրսիուսին։ Բնագրում այն ունի բավական ընդարձակ վերնագիր. «Կամավն Քրիստոսի, հավիտենական թագավորի, Հռոմայեցիների կայսր Կոստանդինն իր որդուն՝ աստվածապսակյալ և ծիրանածին կայսր Ռոմանոսին»* (Κωνσταντίνου τοῦ ἐν Χριστῷ βασιλεῖ αἰωνίῳ βασιλέως ʽΡωμαίων πρὸς τὸν ἴδιον υἱὸν ʽΡωμανὸν τὸν θεοστεφῆ καὶ πορφυρογέννητον βασιλέα)։ *«Իմաստուն որդին ուրախացնում է հորը,—գրում է Ծիրանածինը իր խնդրո առարկա երկի առաջաբանում, դիմելով Ռոմանոսին,—իսկ գուրգուրացող հայրը ուրախանում է իր ողջամիտ որդով... Լսի՛ր դու այժմ ինձ, որդի՛, յուրացնելով այս գիրքը, դու խոհեմ մարդկանց շրջանում իմաստուն կհամարվես, իսկ իմաստունների շրջանում՝ խոհեմ։ Դու նախ կիմանաս, թե ո՞ր ժողովուրդը ի՞նչ օգուտ կամ վնաս կարող է տալ Հռոմայեցիներին, այդ ժողովուրդներից յուրաքանչյուրի դեմ ո՞ր ժողովրդին կարելի է պատերազմի հանել և պարտության մատնել... [Դու կիմանաս] այդ ժողովուրդների յուրահատկությունների մասին, նրանց ծննդաբանության և ապրելակերպի, նրանց բնակեցրած շրջանի տեղադրության, կլիմայի, աշխարհագրության,, մի ժողովրդի մյուսից ինչքան հեռավորության վրա գտնվելու, նրանց՝ Հռոմայեցիների և այլ ժողովուրդների միջև երբևիցե տեղի ունեցած դեպքերի մասին և վերջապես թե ինչ տեղի ունեցավ մեր թագավորության ժամանակ, ամբողջ հռոմեական իշխանության մեջ որևէ ժամանակ կատարված փոփոխությունների մասին։ Ահա, ես այդ մասին էի մտածում և ցանկություն ունեցա, որ դա քեզ, իմ սիրելի որդուն, հայտնի դառնա, որպեսզի դու իմանաս յուրաքանչյուր [ժողովրդի] առանձնահատկությունների մասին և հնարավորություն ունենաս նրանց օգտագործել, սերտ կապեր հաստատել նրանց հետ, կամ էլ հակադրվել նրանց և պատերազմով [հաղթահարել]...»։*

*Վերոհիշյալ առաջաբանը, ինչպես և աշխատության վերնագիրը պարզ ցույց են տալիս, որ Ծիրանածինի խնդրո առարկա*

[1] Ibidem, p. 326.

ծրկը լայն հրապարակման ենթակա չէր։ Դա մի ձեռնարկ էր, որդուն հասցեագրված, և պատահական չէ, որ ավելի ուշ շրջանի բյուզանդական հեղինակներին այդ աշխատությունը հայտնի չէ, ինչպես և այն հանգամանքը, որ տվյալ երկի միայն մեկ գրչագիր է հայտնի բյուզանդագիտությանը։

«Կայսրության կառավարման մասին» աշխատությունը ստորաբաժանվում է 53 գլուխների[1], ընդ որում հակառակ կայսեր ունեցած որոշակի ծրագրին, երկի կառուցվածքի մեջ կան անհամաչափություններ, կրկնություններ, ապա նաև հակասություններ և սխալներ[2]։ Աչքի է զարնում այն, որ առանձին ժողովուրդների մասին շատ քիչ բան է ասված, թեև ակնկալվում էր հակառակը, օրինակ բուլղարների կապակցությամբ։

«Կայսրության կառավարման մասին» աշխատության առանձին մասերը շարադրվել են տարբեր ժամանակներում և այդ մասին պարզ վկայում են աշխատության մեջ հանդիպող թվական տվյալները։ 13-րդ և 51-րդ գլուխներում ցույց է տրված, որ Ռոմանոս Լեկապենոսն արդեն հանգուցյալ է. դա վկայում է, որ տվյալ գլուխները կարող են գրված լինել 948 թ. հունվարի 15-ից հետո։ 27-րդ և 29-րդ գլուխներում հեղինակը նշում է աշխարհի արարչագործության 6457 թ., որ համապատասխանում է մ. թ. 948/949 թթ.։ 44-րդ գլուխը գրված է 6460 թ. (951/952 թթ.), ինչպես այդ մասին նշում կա այնտեղ։ Այդպիսով պարզ է դառնում, որ խնդրո առարկա գործը շարադրվել է 948—952 թվականների ընթացքում[3]։

«Կայսրության կառավարման մասին» աշխատության բովանդակությունը ցույց է տալիս, որ կայսրն ունեցել է երկու նպատակ. նախ իր ժառանգին տալ գործնական ցուցմունքներ՝ արտաքին դիվանագիտական գործերը վարելու համար և երկրորդ՝ տալ Բյուզանդական կայսրությունը շրջապատող ժողովուրդների պատմությունը, մի բան, որ իր ավարտին չհասցվեց։

---

[1] Ուսումնասիրողների կարծիքով «Կայսրության կառավարման մասին» աշխատությունը գլուխների է բաժանվել հետագայում։ Տե՛ս *J. B. Bury*, The treatise „De administrando imperio", Byzantinische Zeitschrift, Bd. XV, H. 3—4, 1906, p. 531—533.

[2] Տե՛ս *М. В. Левченко*, Очерки по истории русско-византийских отношений, М., 1956, стр. 182—184.

[3] *J. B. Bury*, op. cit., p. 518.

*Որդուն ուղղված նախաբանը, ամեն մի բաժնի և ենթաբաժնի սկզբում ասվածները բերում են այն եզրակացության, որ Կոստանդին Ծիրանածինն է այս երկի միակ խմբագիրը, թեև կասկածի ենթակա չէ, որ կայսրն ունեցել է օգնականների մի ամբողջ խումբ, որն իրեն օժանդակել է նյութի հավաքման, ինչպես նաև առանձին բաժինների մշակման գործում։*

*Կոստանդին Ծիրանածինի այս երկի ստեղծման համար օգտագործված աղբյուրներից ոչ բոլորն են հայտնի։ Զգալի տեղ է գրավում Թեոփանես Խոստովանողի նշանավոր «Ժամանակագրությունը» հատկապես արաբներին նվիրված բաժնում, ապա նաև Գեորգ Վանականի «Ժամանակագրությունը»։ Իբերիային (Արևմուտքի) և Իսպանիային վերաբերող գլուխների շարադրման համար օգտագործված է Ստեփանոս Բյուզանդացու աշխարհագրական բառարանը։ Կասկածի ենթակա չէ, որ Ծիրանածինը օգտագործած պիտի լինի անգնահատելի արժեք ներկայացնող այնպիսի մի աղբյուր, ինչպիսին է արքունի դիվանատունը և հատկապես նրա «Բարբարոսաց դիվանը»* (σκρινίον τῶν βαρβάρων), *որտեղ ի միջի այլոց պահվում էին նաև դեսպանական զեկույցներ և այլն։*

*Կայսրը որպես կանոն ամենայն ճշգրտությամբ է վերարտադրում իր աղբյուրների ընձեռած նյութը, նա որևէ փոփոխություն չի մտցնում, չի աշխատում վերացնել տարբեր աղբյուրների հաղորդած տեղեկությունների միջև նկատվող հակասությունները։ Նրա մոտ հավաստի, շատ արժեքավոր նյութի կողքին կարելի է գտնել երկրորդական, երրորդական, նույնիսկ ամենևին հավատ չներշնչող տեղեկություններ*[1]*։*

*«Կայսրության կառավարման մասին» աշխատության 1—13-րդ գլուխները քննության են առնում պեչենեգների, ուզերի, խազարների, ալանների, ռուսների, բուլղարների և թուրքերի (իմա՛ հունգարացիների) փոխհարաբերությունները միմյանց և կայսրության միջև, մանրամասն ցույց է տրված, թե ո՞ր ժողովրդին կարելի է լարել մեկ ուրիշի դեմ, Բյուզանդական կայսրությունը նրանց հնարավոր ոտնձգություններից զերծ պահելու համար։*

*14—42-րդ գլուխներից բաղկացած ստվար բաժնում տրվում է արաբների մանրամասն պատմությունը։ Սկզբում խոսվում է Մուհամմեդ մարգարեի ծննդաբանության մասին, ապա տրվում է*

---

[1] Տե՛ս Gy. Moravcsik, նշվ. աշխ., էջ 367։

Ցաթեմյանների տոհմի պատմությունը, Իսպանիայի, Իտալիայի և Դալմատիայի նախապատմությունը։ Արաբների պատմության կապակցությամբ Ծիրանածինն օգտվում է Թեոփանեսի «Ժամանակագրությունից», մեջ բերելով և փաստեր, որոնք սերտ առնչություն ունեն հայ ժողովրդի պատմության հետ[1]։ Այս բաժնի 27-րդ գլուխը նվիրված է Լանգոբարդիայի բանակաթեմին, որի պատմությունը թեև բերված է ոչ լրիվ, և, բացի այդ, բովանդակում է բազում կոպիտ սխալներ, այսուհանդերձ մեզ համար արժեքավոր է հայազգի նշանավոր զորավար, Հուստինիանոս կայսեր (527—565) գանձապահ Նարսեսի մասին մեջ բերված շատ հետաքրքրական զրույցով։

Դալմատիային նվիրված բաժնում խոսվում է արաբների այդ նահանգի վրա կատարած արշավանքի և Վասիլ I Մակեդոնացու նրանց դեմ վարած պատերազմների մասին, դեպքեր, որոնց մենք հանդիպում ենք նաև Վասիլ I կայսեր կենսագրության մեջ, որի թարգմանությունը տեղ է գտել այս հատորում։ Ծիրանածինն այնուհետև շարադրում է խրվաթների, սերբերի պատմությունը և նրանց երկրի աշխարհագրությունը, ինչպես և նրանց հարևան ժողովուրդների, ավարների, բուլղարների, պեչենեգների, թուրքերի (իմա՛ հունգարացիների) և խազարների։ Այս բաժինն ավարտվում է Դանուբի ու Կովկասի միջև ընկած երկրամասի պատմության շարադրանքով։

Հայ ժողովրդի պատմության ուսումնասիրության համար անգնահատելի արժեք ունեն 43—46-րդ գլուխները։ Կայսրությունն IX դարի կեսերից եռանդուն գործունեություն էր ծավալել Հայաստանի Բագրատունիների և հայկական այլ իշխանությունների նկատմամբ։ Կայսրությունն ամենից առաջ շփման մեջ մտավ Տարոնի իշխանության հետ։ Դեռևս պատրիարք Փոտր սերտ նամակագրություն ուներ Տարոնի իշխանավորների հետ։ Մեզ է հասել «ուղղափառությունն» ընդունած Տարոնի հայերին հասցեագրված Փոտի նամակների մասին հիշատակություն (καὶ τῶν Ἀρμενίων τοὺς ὀρθοδοξήσαντας δευτέρα πάλιν σταλεῖσα ἐπιστολή, τοὺς κατοικοῦντας τὴν τετάρτην Ἀρμενίαν Ταρρωνίτας)[2]։ Տարոնի իշխանու-

[1] Այդ հատվածները սույն թարգմանության մեջ տեղ չեն գտել այն պարզ նկատառումով, որ Թեոփանեսի «Ժամանակագրությունը» հետագայում կազմելու է սույն մատենաշարի առանձին հատորը։

[2] Տե՛ս *J. Darrouzes*, Notes d'epistolographie et d'histoire de textes, Revue des Études Byzantines, t. XII, 1954, p. 185.

թյան պատմությանն է նվիրված ահա Ծիրանածինի «Կայսրության կառավարման մասին» աշխատության 43-րդ գլուխը, որը վերնագրված է «Տարոն երկրի մասին» (Περὶ τῆς χώρας τοῦ Ταρών)։ Ինչպես հայտնի է, հայկական աղբյուրները այդ իշխանության մասին չնչին նյութ են տալիս. այդ իսկ պատճառով Ծիրանածինի խնդրո առարկա աշխատության արժեքը անգնահատելի է դառնում։

Տարոնի հայկական իշխանությունը[1] ստեղծվել էր IX դարի առաջին կեսին։ Տարոնը նախապես Մամիկոնյանների տիրույթն էր, բայց VIII դարի ընթացքում աստիճանաբար անցնում է Բագրատունիների ձեռքը։ 830 թ. Բագարատը հիմնադրում է Տարոնի Բագրատունիների իշխանությունը։ 851 թ. Բագարատը դերի է ընկնում արաբների ձեռքը և վախճանվում Բաղդադում։ Նրա իշխանությունը ժառանգում է որդին՝ Աշոտը, իսկ նրա մահից հետո (878) վերջինիս եղբայրը՝ Դավիթ-Արքայիկը, ապա վերջինիս որդի Աշոտը։ Ծիրանածինի ժամանակ Տարոնի իշխանն էր Գրիգորը, իսկ Գրիգորի մահից հետո նրա երկու որդիները, Բագարատն ու Աշոտը։

Տարոնի իշխանի վիճակը իսկապես որ շատ դժվարին էր։ Գտնվելով երկու աշխարհակալ պետությունների միջև, նա ստիպված էր անընդհատ խուսանավել, նրանցից մեկն ու մեկի զոհը չդառնալու համար։ Դեռ ավելին, սկզբնական շրջանում նա փաստորեն արաբների կողմն էր։ Այդ բանը շատ հստակ երևում է Ծիրանածինի աշխատությունից։ «...Հենց սկզբից նա (իմա՛ Տարոնի իշխան Գրիգորը—Հ. Բ.).—գրում է Ծիրանածինը,—երկու լարի վրա էր խաղում. խոսքով ձևացնում էր, թե գնահատում է կայսեր բարեկամությունը, բայց իրականում աշխատում էր հաճոյանալ սարակինոսների առաջնորդին։ Տարբեր ժամանակներում նա [նույն Գրիգորը] Ասորիքից դուրս եկող և հռոմայեցիների

---

[1] Տարոնի պատմության մասին տե՛ս հետևյալ կարևոր աշխատությունները. *M. Brosset*, Collection d'historiens arméniens, t. I, Appendice II Sur le Taron et les Taronites. p. 613 sqq., S. Pétersbourg, 1874; *J. Markwart*, Südarmenien und die Tigrisquellen, Wien, 1930; *N. Adontz*, Les Taronites en Arménie et à Byzance, Études Arméno-Byzantines, Lisbonne, 1965, p. 197—263; նույնի Observations sur la généalogie des Taronites, Réponse au R. P. V. Laurent, Byzantion t. XIV (1938), fasc. 2, p. 407—413; *V. Laurent*, Alliances et filiation des premiers Taronites princes arméniens médiatisés, Échos d'Orient, t. 37 (1938), p. 127—135.

կայսեր ենթակա բանակաթեմերի վրա արշավող [սարակինոսների] զորքերին ճանապարհ էր ցույց տալիս, ինչպես նաև Ասորիք էր հայտնում հակառակորդ սարակինոսների դեմ հռոմայեցիների գաղտնի ծրագրերը։ Նա շարունակ թաքուն նամակներ էր ուղարկում ամերմումնիին [խալիֆային] և նրան տեղյակ պահում այն ամենի մասին, ինչ կատարվում էր մեզ [իմա՛ բյուզանդացիների—Հ. Բ.] մոտ։ Նա ձևացնում էր, թե հռոմայեցիների կողմն է, բայց իրականում նախապատվություն էր տալիս սարակինոսներին և գործում նրանց օգտին»։

Պակաս դժվարություններ չէին ներկայացնում նաև ներքին հակասությունները, որոնք պայմանավորված էին իշխան Գրիգորի և վերջինիս եղբայր Ապոգանեմի շահերի բախմամբ, հակասություններ, որոնք Բյուզանդական կայսրությունը սրում և ցանկանում էր օգտագործել հեռու գնացող իր նպատակների համար։ Կայսրության առաջին մտահոգությունն էր իշխան Գրիգորին ստիպել արաբական խալիֆայության հետ հարաբերությունները խզելու։ Երկար դիմադրությունից հետո իշխան Գրիգորը ընդառաջ գնաց դրան։ Եթե նա սկզբում ամենևին էլ ականջ չէր դնում կայսեր հրավերին՝ գնալ Կոստանդնուպոլիս, վախենալով իր դեմ գրգռել արաբներին, ի վերջո գնաց։ Կայսեր առաջին գործը եղավ Գրիգորին շնորհել մագիստրոսի՝ օտարերկրացուն պարգևվող ամենաբարձր պատվաստիճանը։ Նրան հայտարարեցին «Տարոնի զորավար» (στρατηγός)։ Դա արդեն ապացույց էր այն բանի, որ Տարոնի իշխանությունը արդեն վասալական կախման մեջ է ընկել կայսրությունից։ Ամենայն հավանականությամբ հենց այդ ժամանակ է, որ Բյուզանդիան մագիստրոս Գրիգորին նշանակեց կայսերական հռոգ (ῥόγα) 10 լիտր ոսկի (720 դահեկան) և 10 լիտր արծաթ։ Այդ ժամանակի համար դա հսկայական գումար էր, և այնքան մեծ նշանակություն ուներ, որ դրան արժանանալու էին ձգտում ոչ միայն Շիրակի հայ Բագրատունիները, այլև վրաց կուրապաղատը և Վասպուրականի Արծրունիները[1]։

Բյուզանդական կայսրությունը Տարոնի վրա իր ազդեցությունը տարածելու համար օգտագործում էր Բյուզանդիայում ծառայող հայ բարձրաստիճան պաշտոնյաներին։ Նրանցից էին

[1] Այդ մասին մանրամասն տե՛ս «Կայսրության կառավարման մասին» աշխատության 43-րդ գլխի 30-րդ ծանոթագրության մեջ։

օքսեոս դրոմոսի խարտուլար Ներքինի Սինուտեսը (Սյունեցին), հայ թարգման Թեոդորոսը, պրոտոսպաթար Կոսաանդինը, թարգման Կրինիտեսը և ուրիշներ: Փոքր դեր չէին խաղում նաև խնամիական կապերը: Տարոնի իշխան Գրիգորի ավագ որդի Բագարատին Լևոն VI կայսրը կնության տվեց մագիստրոս Թեոփիլակտոսի քրոջ, Գրիգորի եղբայր Ապոգանեմին՝ պրոտոսպաթար Կոստանդինի դստեր:

Բյուզանդիայի համար քիչ էր Տարոնը վասալական կախման մեջ գցելը: Նրա վերջնական նպատակը Տարոնի կցումն էր և այն՝ արաբների դեմ մղվող պատերազմի հենարան դարձնելը: Դրա հետ միասին կայսրությունը հենարան կունենար ծավալվելու նաև դեպի բուն Հայաստան, նվաճել բուն Հայաստանը, որ երկդարյա ստրկությունից հետո հազիվ էր ոտքի կանգնել, ստեղծելով սեփական թագավորություն:

Կոստանդին Ծիրանածինի ժամանակ Բյուզանդիային հաջողվեց իր ազդեցությունը տարածել Տարոնի վրա, ինչպես ասացինք, օգտագործելով Տարոնի ներսում ծագած երկպառակությունները: Մագիստրոս Գրիգորի որդիներ Բագարատն ու Աշոտը միացած աշխատում էին տիրանալ իրենց հորեղբայր Ապոգանեմի որդու՝ Թոռնիկի տիրույթներին: Ի վերջո Թոռնիկն ստիպված իր տիրույթները կտակեց Բյուզանդիային: Թեև Բագարատի և Աշոտի պահանջով կայսրությունը այն ժամանակ ստիպված հրաժարվեց Ապոգանեմի տիրույթներից, այնուամենայնիվ Տարոնը բաժանվել էր երկու մասի՝ Գրիգորի որդիներ Բագարատի և Աշոտի, և Գրիգորի եղբայր Ապոգանեմի որդիների միջև: Այս հանգամանքը անչափ թուլացրեց Տարոնի իշխանության դիմադրողականությունը և Տարոնի զավթումը արդեն օրակարգի հարց էր: Իշխան Աշոտը Տարոնը «կտակեց» կայսրությանը և նրա մահից հետո (966) Բյուզանդիան տիրացավ իր «ժառանգության»:

Սա հայկական հողերի առաջին «կտակման» օրինակն էր: Դրան էին հաջորդելու բազում այլ «կտակներ», որով վերջ էր տրրվելու հայոց ինքնուրույն պետականության:

«Կայսրության կառավարման մասին» աշխատության 44-րդ գլուխը նվիրված է Ապահունիք գավառում հաստատված կայսիկ ամիրայության մանրամասն պատմության[1] և ունի բավական եր-

[1] Այս ամիրայության պատմության և Ծիրանածինի աշխատության տվյալ գլխի մասին մանրամասն տե՛ս Ա. Տեր-Ղևոնդյանի Արաբական ամիրայու-

կար վերնագիր. «Ապախունի երկրի, Մանցիկկերտ ամրոցի, Պերկրիի, Խլիատի, որ և Խալիատ, Արղեսի, Տիվիի, Խերտի, Սալամասի և Ցերմացուի մասին» (Περὶ τῆς χώρας τῆς Ἀπαχουνῆς καὶ τοῦ κάστρου τοῦ Μαντζικιέρτ καὶ τοῦ Περκρὶ καὶ τοῦ Χλιὰτ καὶ τοῦ (ճիշտը՝ τοῦ καὶ) Χαλιὰτ καὶ τοῦ Ἄρζες καὶ τοῦ Τιβῆ καὶ τοῦ Χέρτ καὶ τοῦ Σαλαμᾶς καὶ τοῦ Τζερματζοῦ)։

IX դարի 60-ական թվականներին արաբական այս ամիրայությունը Ապահունիքի տերն էր արդեն և առաջին ամիրան, որ հիշվում է աղբյուրներում Աբու-լ-Վարդ I-ն էր։ Ծիրանածինը ցույց է տալիս, որ Աշոտ I Բագրատունուց առաջ Բերկրի, Խլաթ և Արճեշ ամրոցները գտնվում էին արաբական խալիֆաթի իշխանության ներքո։ Նույն հեղինակի ասելով, Աշոտ I-ի օրոք դրանք գտնվում էին հայոց թագավորի հպատակության ներքո։ Հենց Աշոտ I-ն էր, որ Մանազկերտում իշխող արաբ ամիրա Աբու-լ-Վարդ I-ին տվեց Խլաթը, Արճեշը և Բերկրին։ Բոլոր դեպքերում արաբ ամիրան շարունակում էր մնալ հայոց թագավորից վասալական կախման մեջ, նրան վճարելով ամենամյա հարկ։ Նման դրությունը շարունակվեց մինչև Սմբատ I-ի թագավորության վերջը։ Սմբատ I-ի օրոք Մանազկերտի ամիրա Աբու Սևադան, Աբու-լ-Վարդ I-ի թոռը, օգտվելով Հայաստանի խառը իրավիճակից, իրեն անկախ հռչակեց։ Թովմա Արծրունին ցույց է տալիս, որ Սմբատ թագավորը, իր արքունի, ապա և Վասպուրականի, Անձևացյաց և Մոկաց զորքերի, վրաց և աղվանից գնդերի օգնությամբ կարողանում է ճնշել կայսիկների ապստամբությունը և թույլ չտալ իր պետության անդամահատումը։ Բայց դա երկար չի տևում։ 913 թ. երբ Սմբատ I-ը պարտություն կրեց Յուսուֆ ամիրայից և գլխատվեց. հնարավորություն ստեղծվեց Ապահունիքի ամիրայության անկախության հռչակման համար, մի բան, որ նույնպես երկար չտևեց. որովհետև, ինչպես Ծիրանածինն է ցույց տալիս, Բյուզանդիան զինված ուժերով ստիպեց նրան կայսեր հպատակություն հայտնել և կայսրության վճարել ամենամյա հարկ։ Այս ժամանակաշրջանում Ապահունիքի ամիրայությունն արդեն բաժանված էր երեք եղբայրների միջև, Աբու Սևադայի (Մանազկերտ, Կորո Ձոր, Հարք), Աբու-լ-Ասվադի (Արճեշ, Խլաթ և Արծկե) և Աբու Սալիմի (Հարքի հյուսիս-արևմուտքում գտնվող Սերմանցը)։

---

թյունները Բագրատունյաց Հայաստանում, գիրքը, Երևան, 1965, էջ 96 և հտ., 120 և հտ., 143 և հտ.։

*Ծիրանածինը մեզ տալով Ապահունիքի ամիրայության վերոհիշյալ պատմական ակնարկը, ավելի հեռուն գնացող նպատակներ է հետապնդում։ Հայոց թագավորին համարելով իր վասալը, այդ տրամաբանությամբ իրեն ենթակա է համարում և Ապահունիքի ամիրայությունը. «Քանի որ,—գրում է նա,—իշխանաց իշխանը (այն է հայոց թագավորը) հռոմայեցիների կայսեր ծառան է և նշանակվում է իր, կայսեր կողմից, և նրանից է ստանում իր իշխանությունը, ուստի նրա տիրապետության տակ գտնվող բերդերը, քաղաքներն ու գյուղերը հռոմայեցիների կայսեր են պատկանում»։*

*Ծիրանածինը Ապահունիքի արաբական ամիրայության պատմությունը հասցնում է մինչև իր ժամանակները, X դարի կեսերը, ցույց տալով, որ այդ ժամանակ Մանազկերտում էր իշխում Աբու Սալիմի որդի Աբու-լ-Վարդ II-ը, իսկ Խլաթը, Արճեշը, Արծկեն և Բերկրին գտնվում էին Ախմետի իշխանության ներքո։ Աբու-լ-Վարդին հաջողվում է սպանել Ախմետին և տիրանալ նրա բերդերին։ Այսպիսով X դարի կեսերին ամբողջ Ապահունիքը նորից մի իշխանության տակ անցավ։ Ծիրանածինը այս գլխի վերջում իր որդուն տալիս է ծրագրային ցուցմունքներ. «Այդ երեք ամրոցները, Խլիատը, Արզեսը և Պերկրին եթե գտնվեն կայսեր ձեռքում, ապա պարսկական զորք (իմա՛ արաբական) Ռոմանիայի դեմ դուրս գալ չի կարող, որովհետև նրանք գտնվում են Ռոմանիայի և Հայաստանի միջև և իրենցից ներկայացնում են պատնեշ և զորակայան»։*

*Կոստանդին Ծիրանածինի (Կայսրության կառավարման մասին» աշխատության 45-րդ գլուխը վերնագրված է «Իբերների մասին»* (Περὶ τῶν Ἰβήρων), *որտեղ համառոտակի տրվում է վրացիների առասպելական ծննդաբանությունը և պատմությունը շարունակելով հասցվում է մինչև աշխարհի արարչագործության 6460 թվականը (մ. թ. 952)։ Այս գլուխը, որ իր նպատակադրությամբ նախորդ՝ 44-րդ գլխի օրգանական շարունակությունն է, ցույց է տալիս, թե ինչպես Բյուզանդական կայսրությունը, արաբական խալիֆայության թուլացումից հետո սկսեց տարածել իր շոշափուկները դեպի Արևելք, նորանոր շրջանների տիրանալու համար։ Ուշադրության կենտրոնում էր Թեոդոսուպոլիս-Կարին կարևոր քաղաք-ամրոցը և Բասեն գավառը, որոնց դեմ մղված պայքարում ամենից շատ աչքի ընկավ մագիստրոս Հովհաննես Կուրկուասը, ինչպես և վերջինիս եղբայր Թեոփիլոսը։*

Ինչպես պարզ երևում է Ծիրանածինի աշխատության այս գլխից, և՛ Տարոնի հայոց իշխանը, և՛ վրաց իշխանները աշխատել են չեզոք լինել արաբական խալիֆայության և արաբական ամիրայությունների նկատմամբ։ «Իբերները,—գրում է Ծիրանածինը,—մշտապես լավ և բարեկամական հարաբերությունների մեջ էին Թեոդոսուպոլսեցիների հետ, ավնիկցիների, մանցիկիերտցիների և ամբողջ պարսից երկրի հետ (իմա՛ խալիֆաթի)»։ Նրանք ամենևին էլ չէին ուզում ո՛չ ուղղակի, ո՛չ էլ անուղղակի մասնակից լինել բյուզանդացիների ոտնձգություններին՝ ընդդեմ Կարինի արաբ տիրողների։ Կարինին տիրանալու համար Բյուզանդիային պետք էր մի հենակետ, ինչպիսին էր Կեցեոն ամրոցը, որը սակայն գտնվում էր վրացիների ձեռքում։ Վրացիները այն չզիջեցին կայսրության, թեև վերջինս խոստանում էր Կարինի գրավումից հետո վերադարձնել այն և հակառակ այն բանի, որ կայսրության և վրացիների միջև, Ծիրանածինի ասելով, դաշինք կար, համաձայն որի վրաց կուրապաղատը խոստանում էր և գրավոր երդմամբ հաստատում, թե հավատարիմ կմնա կայսրության։ Հետաքրքրական է նշել, որ Կարինի գրավմանը դեմ էին ոչ միայն վրացիները, այլև հայերը. նրանք գերադասում էին, որ այդ քաղաքը մնա արաբների ձեռքում, քան թե անցնի կայսրությանը։ Եվ դա հասկանալի է. արաբական վտանգը Հայաստանի և Վրաստանի վրայից արդեն կարելի է ասել վերացել էր, Հայաստանն ու Վրաստանը ձեռք էին բերել քաղաքական անկախություն և ստեղծել իրենց պետությունները։ Բայց դրա փոխարեն այժմ հանդես էր գալիս բյուզանդական վտանգը, և Թեոդոսուպոլսի՝ բյուզանդացիների ձեռքն անցնելը կայսրության առաջ կբացեր ճանապարհը դեպի արևելք։ Հայերի և վրացիների համար շատ ձեռնտու էր իրենց և Բյուզանդիայի միջև ունենալ այդպիսի մի միջանկյալ իշխանություն։ Վրացիները Ռոմանոս Լեկապենոսին և Կոստանդին Ծիրանածինին նամակ դրեցին՝ ի պատասխան Բյուզանդիայի Կեցեոն ամրոցի առթիվ գրած նամակին, որ «եթե այդ բանն անենք, մենք կզրկվենք մեր հարևանների հարգանքից, այն է Աբազգիայի մագիստրոս էքսուսիաստեսի, Վասպուրականիտեսի և հայերի իշխանների»։

Հակառակ այդ բոլորին, ի վերջո բյուզանդացիները 949 թ. գրավում են Թեոդոսուպոլիսը։ Թեոդոսուպոլսի առաջին բյուզանդական զորավարը դարձավ Հովհաննես Կուրկուասի եղբայրը՝ Թեոփիլոսը։

Խնդրո առարկա աշխատության 46-րդ գլուխը վերնագրված է «Իբերների ծննդաբանության և Արտանուջ ամրոցի մասին» (Περὶ τῆς γενεαλογίας τῶν Ἴβηρων καὶ τοῦ κάστρου Ἀρδανουτζίου): Եթե նախորդ գլուխը նվիրված էր վրաց Բագրատունիների Քարթլիի ճյուղի պատմությանը, ապա այս՝ 46-րդ գլուխը նվիրված է Բագրատունիների Արտանուջի (Տայքի և Կղարջքի) ճյուղին։

Ծիրանածինը այս գլխում իր գլխավոր ուշադրությունը դարձնում է Արտանուջ ամրոցի վրա, որը և՛ ռազմական, և՛ տնտեսական տեսակետից հսկայական նշանակություն ուներ։ Ծիրանածինի ասելով «Արտանուջ ամրոցը շատ անառիկ է. նա մեծ քաղաքների նման ունի նաև մեծ արվարձան։ Տրապիզոնի, Իբերիայի, Աբազգիայի, Հայաստանի բոլոր շրջաններից և Ասորիքից այստեղ են գալիս առևտրականներ։ Նա այդ առևտրից հսկայական կոմմերկիոն (մաքս) է ստանում։ Իսկ Արտանուջ ամրոցի շրջանը, այն է Արզինը, լայնատարած է և բարեբեր, այն Իբերիայի, Աբազգիայի և Միսխիոնի բանալին է»։ Արտանուջը Աշոտ Կիսկասիի (Վխկացու) սեփականությունն էր։ Օգտագործելով Աշոտ Կիսկասիի և վերջինիս աներոջ՝ մագիստրոս Գուրգենի միջև եղած սուր ընդհարումը, Բյուզանդիան ձգտում էր տիրանալ այդ կարևոր ամրոցին և Վրաստանի դեմ իր հետագա ծավալման համար հենակետ ունենալ։ Այդ նրան ժամանակավորապես հաջողվում է։ Սակայն մյուս վրաց իշխանների՝ արաբների կողմն անցնելու սպառնալիքի տակ Բյուզանդիան ստիպված է լինում հրաժարվել Արտանուջից։

47—48-րդ գլուխները վերաբերում են Կիպրոս կղզու VII դարի պատմությանը, խոսվում է, թե ինչպես Հուստինիանոս II կայսրը դիմել է արաբ խալիֆային, խնդրելով հնարավորություն տալ Ասորիքում հաստատված կիպրացիներին վերադառնալու կղզի, մեջ է բերվում Տրուլլի տիեզերական 6-րդ ժողովի 39-րդ հոդվածը։ 48-րդ գլխի վերջում մի քանի տողով խոսվում է, թե ինչպես Կոստանդին Պոգոնատոս կայսեր որդի Կոստանդնի ժամանակ ոմն Կալլինիկոս հիերապոլսեցի հայտնաբերեց հեղուկ կրակը, որով բյուզանդացիները Կիզիկոսի ծոցում հրկիզեցին արաբների նավատորմիղը։

49—50-րդ գլուխներում ավելի հանգամանորեն քննության է առնվում սլավոնների՝ Պելոպոնեսում հաստատվելու հարցը, նրանց ապստամբությունները կայսրության դեմ, որոնց ճնշելու գործը դրված էր հայազգի զորավարների վրա։ Ռոմանոս I Լեկապենոսի

*որոք Պելոպոնեսի սլավոնների ապստամբության ճնշողը պրոտոսպաթար Կրինիտես Արոտրասն էր, որ նշանակվեց նաև Պելոպոնեսի զորավար։ Ինչպես հայտնի է, Կրինիտեսները հայկական ծագում ունեցող նշանավոր գործիչներ էին Բյուզանդիայում։ Այստեղից ենք իմանում, որ հետագայում Կրինիտեսը նշանակվում է Հելլադայի բանակաթեմի զորավար, իսկ իր տեղը՝ Պելոպոնեսի զորավարությունը տրվում է Վարդաս Պլատիպոդեսին, որ ինչպես անունն է վկայում, նույնպես ծագումով հայ էր։*

*50-րդ գլխի երկրորդ կեսը ոչ մի առնչություն չունի Պելոպոնեսի կամ սլավոնների պատմության հետ և Ծիրանածինի «Բանակաթեմերի մասին» աշխատության մի լրացումն է։ Նա այնտեղ ցույց է տալիս, որ այս կամ այն բանակաթեմը նախկինում ի՞նչ էր, ե՞րբ այն դարձավ առանձին բանակաթեմ, յուրաքանչյուր բանակաթեմը ի՞նչ մասերից է բաղկացած և այլն, հիմնականում կանգ առնելով Արևելքի բանակաթեմերի վրա։ 50-րդ գլխի այս երկրորդ մասը հայագիտության համար շատ մեծ արժեք ունի հայկական տարրի Բյուզանդիայի արևելքում տարածման շրջանակները պարզելու տեսակետից։ Արժեքավոր է նաև Միջագետքի բանակաթեմի ստեղծման պատմության վերաբերող բաժինը։ Պարզվում է, որ Միջագետքի բանակաթեմն իր ծագումը պարտական է հայերին, առաջին հերթին IV Հայքի Տեգիկ վայրի տեր Մանվելին, որն ապրում էր Լևոն VI կայսեր ժամանակ։ Այստեղ Ծիրանածինը խոսում է նաև Լիկանդոս բանակաթեմի ստեղծման մասին, որը ևս իր ծնունդը պարտական է հայերին, և առաջին հերթին հռչակավոր Մելիաս-Մլեհին։*

*51-րդ գլուխը, որ նվիրված է կայսեր անձնական նավատորմիղի ստեղծման հարցին, մեզ համար կարևոր է, որովհետև պարզում է, որ հայերը ոչ միայն բյուզանդական ցամաքային զորքերի մեջ նշանակալի դեր էին խաղում, այլև ծովային, որ հայերը տիրացել են նույնիսկ ծովակալի,* (πρωτοσπαθάριος τῆς φιάλης) *բարձր աստիճանին*[1]*։*

*52-րդ գլխում խոսվում է Պելոպոնեսի բանակաթեմի՝ պետության վճարած ռազմական հարկի մասին, իսկ 53-րդը, որ ամենածավալուն գլուխն է, վերնագրված է «Խերսոն ամրոցի մասին»։*

---

[1] *Մի հայ ծովակալի, Ալեքսիոս Մուսելեին մենք հիշեցինք վերևում։ Հայ նավաստիների մասին Ծիրանածինը խոսում է իր «Արարողությունների մասին» աշխատության մեջ ևս։ Տե՛ս ստորև։*

*Հետաքրքրական է այստեղ այն հիշատակությունը, թե Դիոկլետիանոս կայսեր ժամանակ սարմատները ավարի առնելով անցել են լազերի երկրով և Պոնտոսով և հասել մինչև Ալիս գետի ափը. մի բան, որ այլ աղբյուրներից հայտնի չէր։ Այս գլխի վերջին երկու էջը, որ Խերսոնի հետ որևէ առնչություն չունեն, սլարզապես անմշակ նյութ է, որ մեխանիկորեն կցված է բնագրին և որը հայոց պատմության համար հետաքրքրություն է ներկայացնում իր տվյալներով Դերջանում և այլուր «նավթաբեր աղբյուրների» գոյության մասին*[1]*։*

*Կոստանդին Ծիրանածինի մյուս կարևոր աշխատությունը իր պապ Վասիլ I կայսեր կենսագրությունն է, որ գրվել է շուրջ 950 թ. (բոլոր դեպքերում 948 թ. հետո)*[2] *և հանդես է գալիս որպես «Թեոփանեսի Շարունակող» վեց գրքից բաղկացած նշանավոր պատմական երկի հինգերորդ գիրքը։ Բնագրում այն վերնագրված է «Երանելի կայսր Վասիլի կյանքի և գործունեության պատմությունը, որ նրա թոռ՝ կամավն աստուծո հռոմայեցիների կայսր Կոստանդինը ջանասիրությամբ քաղեց զանազան շարադրանքներից և վստահեց գրչին»*. „Ἱστορικὴ διήγησις τοῦ βίου καὶ τῶν πράξεων Βασιλείου τοῦ ἀοιδίμου βασιλέως, ἣν Κωνσταντῖνος βασιλεὺς ἐν θεῷ Ῥωμαίων, ὁ τούτου υἱωνὸς φιλοπόνως ἀπὸ διαφόρων ἀθροίσας διηγημάτων τῷ γράφοντι προσανέθετο“[3]։

---

[1] *«Կայսրության կառավարման մասին» աշխատությունից ամբողջությամբ տրվում է 43—46-րդ գլուխների թարգմանությունը։ Հատվածաբար՝ 27-րդ, 50-րդ, 51-րդ և 53-րդ գլուխները։ Թարգմանությունը կատարել ենք բնագրի դիտական հետևյալ հրատարակությունից.* Constantine Porphyrogenitus, De Administrando Imperio, Greek text edited by *Gy. Moravcsik*, English Translation by *R. J. H. Jenkins*, Budapest, 1949. *Վերջերս այն վերահրատարակվել է բյուզանդական պատմիչների նոր մատենաշարում, կազմելով վերջինիս առաջին հատորը։ Տե՛ս* Corpus Fontium Historiae Byzantinae, Volumen I, Dumbarton Oaks Texts: Constantinus Porphyrogenitus. De administrando imperio. Edidit *G. Moravcsik*, Anglice vertit *R. J. H. Jenkins*, Dumbarton Oaks 1967.

[2] *Տե՛ս J. B. Bury*, The treatise „De administrando imperio“, Byz. Zeitschrift, Bd. XV, 1906, p. 549, 551.

[3] *Այս երկի մասին տե՛ս А. П. Каждан*, Хроника Симеона Логофета, Виз. Временник, т. XV, 1959; *Նույնի*, Из истории византийской хронографии X века, 1. О составе так называемой хроники Продолжателя Феофана, Виз. Временник, т. XIX, 1961; *Նույնի*, Из истории византийской хронографии X века, 3. „Книга царей“ и „Жизнеописание Василия“, Виз. Временник, т. XXI, 1962.

Ինչպես ցույց է տալիս Ծիրանածինը տվյալ աշխատության առաջաբանում, ինքը ցանկություն է ունեցել գրել բյուզանդական բոլոր կայսրերի պատմությունը։ Բայց «դա գլուխ բերելու համար երկար ժամանակ, մեծ աշխատանք էր պետք, ապա և բազում գրքերի առկայություն, պետական գործերից որոշ դադար, մի բան, որից մենք զուրկ էինք։ Այդ իսկ պատճառով,—շարունակում է Ծիրանածինը,—ես ստիպված գտա մի երկրորդ ելք, այն է՝ սկզբից մինչև վերջը շարադրել մեկ կայսեր կյանքն ու ամբողջ գործունեությունը, կայսր, որը կայսերական իշխանությունն անչափ վեհացրեց, որի անունը հոմանիշ է թագավորության, որը հռոմայեցիների պետության և գործերին անչափ օգտակար եղավ»։

Կոստանդին Ծիրանածինի նպատակն է եղել տալ իր պապ Վասիլ Ա-ի՝ Մակեդոնական հարստության հիմնադրի ներբողյանը։ Իր նպատակին հասնելու համար Ծիրանածինը շատ հաճախ ստիպված է լռել, նույնիսկ կեղծել առանձին փաստեր, որոնք կարող էին ստվեր գցել, անվանարկել իր փառաբանած անձնավորությունը։

Հենց սկզբից Ծիրանածինը կեղծում է Վասիլ I-ի ծագման հարցը, ավելի ճիշտ, նա գրի է առնում այն կեղծ ծննդաբանությունը, որ ստեղծվել էր դեռևս Վասիլ I-ի կենդանության օրոք և որի համաձայն Վասիլը, ոչ ավել ոչ պակաս, սերում էր Հայաստանի առաջին քրիստոնյա թագավոր Տրդատ III-ից և Հռոմեական կայսրության առաջին քրիստոնյա կայսր Կոստանդին Մեծից։ Բոլորի համար մի բան պարզ էր, որ Վասիլը ծնվել էր Մակեդոնիայում հայ ծնողներից։ Վասիլի կենսագիրները պետք է ապացուցեին, թե Վասիլի նախնիները ո՞ր տեղից էին գաղթել Մակեդոնիա։ Պարզ է, որ Հայաստանից և նրանք պետք է Հայաստանում իշխած թագավորական վերջին հարստության շառավիղները լինեին։ Ծիրանածինը ցույց է տալիս, որ այդ գաղթը տեղի է ունեցել բյուզանդական Լևոն I կայսեր ժամանակ (457—474)։ Այնուհետև կայսրը համառոտ գծերով, պարզապես պատմական կապը պահպանելու, ավելի ճիշտ՝ ստեղծելու համար, մի քանի դեպքերի նկարագրությամբ պատմությունը հասցնում է մինչև բուլղարների խան Կրումի ժամանակները և ցույց տալիս, որ վերջինս 813 թ. Ադրիանուպոլիսը բյուզանդացիներից գրավելով, գերեվարեց տեղի բնակչությունը, այդ թվում և ապագա կայսեր ծնողներին իրենց նորածին որդու հետ. Նրանք գերությունից ազատվեցին Կրումի հաջորդ Օմուրտագի ժամանակ։

*Ծիրանածինը առիթ չի փախցնում տեղի անտեղի ցույց տալու, որ Վասիլի՝ պետության առաջին մարդը դառնալու պատիվը աստվածուստ էր նախատեսված։ Թեև այլ աղբյուրներից ակնհայտ է, թե ինչպիսի ոչ աստվածահաճ ճանապարհներով նա տիրացավ բյուզանդական կայսրության գահին։ Հակառակ այդ բոլորին, և՛ Ծիրանածինի, և՛ ժամանակակից այլ հեղինակների տվյալները ցույց են տալիս, որ Վասիլը սովորական մի անձնավորություն չէր։ Պատանի հասակում նա Ադրիանուպոլսից ճամփա է ընկնում դեպի համաշխարհային քաղաքը՝ Կոստանդնուպոլիս, ուր ամեն տեղից հոսում էին մարդիկ առևտուր անելու, գիտելիքներ ձեռք բերելու, բախտ որոնելու, ապաստան հայցելու, բարձր դիրքի հասնելու։ «Նա գիտեր,—գրում է Ծիրանածինը իր պապի մասին,— որ մարդկանց առաքինությունները նվազ հայտնի, երկրորդական քաղաքներում բթանում են ու խամրում, ինչպես գյուղերում, որ եթե այդ առաքինությունները հանդես բերելու ասպարեզ չլինի, ոչ էլ գնահատող մարդիկ, ապա դրանք խունանում են և թառամում։ Այդ պատճառով նա ձեռնտու և օգտակար համարեց թագավորանիստ քաղաքը գնալ» (§ 7)։*

*Կոստանդնուպոլսում նա իր գործունեությունը սկսում է որպես Միքայել կայսեր և կեսար Վարդասի ազգական* (συγγενής) *համարվող Թեոփիլոս Պեդևոմենոսի պրոտոստրատորը։ Հաջորդ աստիճանը Միքայել կայսեր ստրատոր դառնալն էր, ապա և նրա պրոտոստրատորը։ Շուտով նա նշանակվում է կայսեր պարակիմոմենոսը, ստանալով պատրիկի բարձր պատվաստիճանը։ Վասիլն արդեն մոտ էր իր նպատակին։ Նրա ճանապարհին կանգնած էին երկու խոչընդոտ. Վարդասը և կայսր Միքայելը։ Ամենից դյուրինը, իհարկե, կայսրին վերացնելն էր։ Բայց Վասիլը չէր կարող դրան դիմել առանց նախապես մեջտեղից վերացնելու գլխավոր խոչընդոտը, կեսար Վարդասին, որը, լինելով կեսար, Միքայելի անզավակ վախճանվելու դեպքում դառնալու էր կայսր, իսկ Միքայելը որդի չուներ։ 866 թ. Վասիլին և նրա կողմնակիցներին, որոնց մեջ էր և մանկամիտ Միքայել III-ը, հաջողվում է սրախողխող անել Վարդասին։*

*Միքայել III-ը չէր պատկերացնում իր գլխին կախված վտանգը։ Վասիլին համարելով իր ամենամտերիմ և հավատարիմ անձնավորությունը, որդեգրում է նրան, դարձնում մագիստրոս և նույնիսկ կայսերակից հռչակում։ Դա 866 թ. մայիսի 26-ին էր։ Մեկ տարի հետո Մամասի պալատում, գիշերվա երրորդ ժամին կա-*

տարվեց և երկրորդ ոճիրը։ Վասիլը իր համախոհների հետ, որոնք ոչ այլ ոք էին, քան մի տարի առաջ Վարդասին սպանողները, սրախողխող է անում Միքայել III կայսեր։ Առավոտյան, սուրբ Մարինայի պալատում Վասիլը հռչակվեց Բյուզանդիայի կայսր։

Ծիրանածինը, աշխատելով իր պապին ներկայացնել որպես առաքինության տիպար, որից պետք է, որ բոլորը օրինակ վերցնեին, խուսափում է ճշմարտությունից։ Նա ո՛չ Վարդասի, ո՛չ Միքայելի սպանության մեղքը չի գցում Վասիլի վրա։ Ծիրանածինի տվյալներով Վարդասի սպանության հարցում Վասիլը դիտողի դերում էր հանդես գալիս, իսկ Միքայելի սպանության մեջ Ծիրանածինը իր պապին միանգամայն անմեղսակից է հանում, ջանք թափելով համոզել ընթերցողին, թե կայսեր սպանությունը կազմակերպեցին և իրականացրին «իշխանության գլուխ կանգնած բոլոր մեծամեծները և սենատի խելամիտ գործիչները»։

Ծիրանածինն այնուհետև տալիս է Վասիլ կայսեր թագավորության մանրամասն պատմությունը, նրա ներքին քաղաքականությունը, արտաքին թշնամիների դեմ մղած պատերազմները, շինարարական, օրենսդրական գործունեությունը, ամեն անգամ չզլանալով ընդգծել իր պապի ողջամտությունը, առաքինությունները։

Խնդրո առարկա երկը հայագիտության համար արժեքավոր է ոչ միայն դրանով, որ ի դեմս նրա մենք ունենք հայկական ծագումով մի կայսեր կենսագրությունը, տվյալներ Բյուզանդիայում այդ շրջանում աչքի ընկած մի շարք գործիչների մասին։ Տարածված է այն կարծիքը, որ տվյալ ժամանակաշրջանում Բյուզանդիայում գործող հայ բարձրաստիճան գործիչները անունով էին միայն հայեր, որ նրանք մոռացել էին իրենց լեզուն, կորցրել իրենց ազգային դեմքը։ Ծիրանածինի պատմությունը մեզ հնարավորություն է տալիս հանգելու միանգամայն այլ եզրակացությունների։ Ինչպես վկայում է նա Ագրիանուպոլսում (հասկանալի է՝ ոչ միայն այնտեղ) հաստատված հայերը, որոնք բավական հարստացել էին, IX դարում առանձին գաղութ էին կազմում, պարփակված լինելով իրենց մեջ և անաղարտ պահելով ազգային դեմքը (φατρίαν τε καὶ φυλὴν εἰς πλῆθος ἐγένοντο [οἱ ᾿Αρμένιοι] καὶ ἐπ᾿ εὐπορίας κατέστησαν ἱκανῆς, τὴν πάτριον εὐγένειαν διασώζοντες καὶ ἀσύγχυτον τὸ γένος διαφυλάττοντες)։

Ծիրանածինը նույն միտքն ընդգծում է մի քիչ հետո (§ 4)։ Վասիլի նախնիները, գրում է նա, թեև տեղացիների հետ խնա-

միակյան կապեր հաստատում էին, բայց մեկուսացած տոհմի նման էին ապրում (κατ'ἰδίαν ὥσπερ φατρίαν συνεστηκός): Երբ Վասիլը առաջին անգամ գնում է Կոստանդնուպոլիս, ծառայության է անցնում ոչ այլ ոքի, այլ միայն հայի մոտ։ Թեոփիլիցեսը, որի պրոտոստրատորը նա դարձավ, Վարդասի ազգականն էր (συγγενής), իսկ Վարդասը հայտնի է, որ հայ էր։ Հենց Վարդասն էր նրան մտցնում բյուզանդական բարձրաստիճան պաշտոնեության կազմը։ Եվ դա դեռ բոլորը չէ։ Ծիրանածինը ցույց է տալիս, որ բյուզանդական արքունիքում պատրիկ Կոստանդինը «շատ էր սիրում Վասիլին, որովհետև ինքն էլ [Վասիլի պես] ծագումով հայ էր» (σφόδρα φιλίως πρὸς τὸν Βασίλειον διακείμενος ἅτε καὶ αὐτὸς ἐξ Ἀρμενίων ἕλκων τὸ γένος)[1]։

Կեսար Վարդասի ամենամտերիմ մարդիկ ծագումով հայեր էին։ Բավական է հիշել Փոտ պատրիարքին, Հովհաննես Քերականին, Լևոն փիլիսոփային, պատրիկ Կոստանդնին։ Հայեր էին և Վասիլի մերձավորագույն մարդիկ, որոնց օգնությամբ նա ձեռք բերեց Բյուզանդական կայսրության գայիսոնը։ Հիշատակենք պատրիկ Սմբատին (Վարդասի փեսային), Սմբատի եղբոր Մարիանոսին, Պետրոս «բուլղարին», Լևոն «ասորուն», Հովհաննես «խալդին», Կոստանդին Տոքսարասին, Ասիլեոնին, Եվլոգիոս «պարսկին», հետերիարխ Արտավազդին և շատ ու շատ ուրիշներին, ովքեր «իրենց լեզվով» էին խոսում։

Ծիրանածինի այդ երկի արժեքը հայագիտության համար դրանով չի սպառվում։ Նա արժեքավոր է նաև իր վկայություններով Բյուզանդական կայսրության դեպի Արևելք կատարած արշավանքների և նվաճումների մասին։ Եթե չհաշվենք Գենեսիոսի «Ժամանակագրությունը»[1], ապա Ծիրանածինի սույն երկը գլխավոր աղբյուրն է պավլիկյանների՝ կայսրության դեմ մղած պայքարի վերջին փուլի մասին։ Իսկ այդ կապակցությամբ բազմա-

---

[1] Ծիրանածինի սույն երկը բազմաթիվ կետերում մերձենում է Գենեսիոսի աշխատությանը, բայց դեռևս հնարավոր չէ որոշել, թե ով ումից կախում ունի։ Հնարավոր է, որ երկուսն էլ իրարից անկախ օգտվել են նույն աղբյուրից։ Տե՛ս Gy. Moravcsik, op. cit., Bd. I, S. 380։ Ա. Պ. Կաժդանը գտնում է, որ կամ երկուսի համար էլ եղել է մի ընդհանուր աղբյուր, որն ի միջի այլոց շատ է աղավաղվել Գենեսիոսի կողմից, կամ էլ Գենեսիոսն օգտվել է Ծիրանածինի նյութերից, Վասիլի կենսագրության սևագիր օրինակից։ Տե՛ս А. П. Каждан, Из истории византийской хронографии X века, 3. „Книга царей“ и „Жизнеописание Василия“, Виз. Временник, т. XXI, 1962, стр. 109.

*թիվ տեղանունների, բերդերի և այլնի հիշատակումը կարևոր է Հայաստանի պատմական աշխարհագրության համար։*

*Եվ վերջապես, նա միակ բյուզանդական աղբյուրն է, որ խոսում է Սահակ Պարթևի «Տեսիլքի» մասին։*

*Ծիրանածինի աշխարհայացքը ամենից հստակ այս աշխատության մեջ է հանդես գալիս։ Նա նախատագրապաշտ է և սնոտիապաշտ։ Նախախնամությունն է մարդկանց փառք բարձրացնում և ցած գլորում։ Վասիլի կայսր դառնալը դեռ վաղուց էր կանխորոշված և աստվածուստ*[1]*։ Ծիրանածինի սնոտիապաշտ լինելը պարզ երևում է Սիրակուսա քաղաքի գրավման առթիվ իր արտահայտած մտքերից։ Նա հավատացած է, որ Սիկիլիայի այդ գլխավոր քաղաքի արաբներից գրավվելու մասին լուրը կայծակի արագությամբ իմացել էին Պելեպոնեսում ինչ-որ թփուտներում բնակվող... դևերը։*

*Կ. Ծիրանածինի սնոտիապաշտության մասին վկայում է և հետևյալ փաստը։ Սբ. Սոֆիայի տաճարում պահվում էին կայսերական թագեր և այլ զարդեր, որոնք սովորաբար կայսրերը կրում էին այս կամ այն տոնի կամ դեպքի առթիվ։ Ծիրանածինն ասում էր, որ եթե կայսրը դրանք հագնի սովորական օր, ապա իրեն հիվանդություն և մահ է սպասում։*

*Հակառակ սույն աշխատության հեղինակի մտածելակերպին, նրա հետապնդած նպատակներին, առանձին փաստերի ակնհայտ աղավաղման, «Վասիլ կայսեր կենսագրությունը» մնում է այդ դարաշրջանի պատմության ուսումնասիրության գլխավոր և ամենակարևոր աղբյուրը*[2]*։*

*Կոստանդին Ծիրանածինի աշխատությունների մեջ յուրահատուկ տեղ է գրավում «Արարողությունների մասին»* (De Cerimoniis aulae byzantinae) *երկու գրքից բաղկացած երկը, որ նվիրված է բյուզանդական արքունիքի արարողությունների կարգին։ Չկա բյուզանդական կյանքի և ոչ մի բնագավառ, որ իր արտացոլումը գտած չլինի այս երկում։ Հակառակ դրան, տվյալ երկին բյուզանդագետները ծանոթացան բավական ուշ։ Առաջին*

---

[1] *Հնարավոր է, իհարկե, որ Ծիրանածինը քաղաքական նկատառումներից դրդված Մակեդոնական հարստության հիմնադրումը ի վերուստ նախատեսված է համարում։*

[2] *Թարգմանությունը տրվում է ամբողջությամբ, առանց կրճատումների, բնագրի հետևյալ հրատարակությունից.* Theophanes Continuatus, ex recognitione Immanuelis Bekkeri, Bonnae, 1838, p. 211—353.

*Հիշատակությունը նրա մասին երևաց XVIII դարի սկզբում, երբ գոյություն ունեցող միակ ձեռագրի[1] (XII դար) տերը՝ Կոնրադ Ուֆֆենբախը, Մայնի Ֆրանկֆուրտի քաղաքային սենատի անդամը, մի քանի տեղեկություններ տվեց Յոհան Ալբերտ Ֆաբրիցիուսին, որը և այդ մասին առաջին ծանոթությունները հրատարակեց իր նշանավոր* Biblioteca Graeca-*ի առաջին հրատարակության (1705—1728) 6-րդ հատորում։ Դրանից հետո մի քանի անհաջող փորձեր եղան գիրքն ամբողջությամբ լույս ընծայելու, բայց միայն Յակոբ Ռայսկեին հաջողվեց հրատարակել այն երկու հատորով 1751 և 1754 թթ.։ Ռայսկեի արժեքավոր ծանոթագրությունները հնարավոր եղավ հրատարակել միայն 1830 թ., բյուզանդական հեղինակների Բոննյան մատենաշարում։*

*«Արարողությունների մասին» երկը, որի շարադրանքն ավարտվել է 956—957 թթ. ոչ առաջ, մանրամասնորեն նկարագրում է բյուզանդական արքունիքի արարողությունները, թեև կան առանձին գլուխներ, որոնք վերոհիշյալ հարցի հետ քիչ, կամ նույնիսկ ամենևին առնչություն չունեն։*

*Ծիրանածինը այս երկը ևս շարադրել է իր որդի Ռոմանոսի համար։ Նա իր որդուն է դիմում աշխատության երկրորդ գրքի սկզբում (հրատարակության մեջ այն վերնագրված է «Հավելված I գրքի») և ասում, թե նման աշխատանքի համար ինքը բազում պրպտումներ է կատարել և այդ նյութի շուրջ մինչ այդ գրված միայն մեկ, այն էլ շատ թերի, գործ է գտել, շարադրված մագիստրոս Լևոն Կատակիլասի կողմից՝ Լևոն VI-ի թելադրանքով։*

*Աշխատության առաջին գրքում հեղինակը նախ խոսում է իր երկի նպատակի և աղբյուրների մասին, ընդ որում առաջին գիրքը որպես կանոն ունեցել է գրավոր աղբյուրներ։ Առաջին գրքում խոսվում է կայսեր՝ թափորով սուրբ Սոֆիայի տաճարը գնալու արարողության կարգի, ապա նաև եկեղեցական տարբեր տոներ նշելու, կայսեր ամուսնության, թագադրության, կայսրուհու թագադրության, թագաժառանգի ծննդյան հանդեսները նշելու կարգի մասին, բյուզանդական բարձրաստիճան աստիճանավորների, կեսարի, նոբելիսիմոսի, կուրապաղատի, մագիստրոսի, պատրիկի, անթիպատի, պրեպոզիտոսի, հյուպարքոսի, քվեստորի, դեմարքոսի և ուրիշների հռչակման առթիվ տեղի ունեցող արարո-*

[1] *Մի նորահայտ ձեռագրի մասին տե՛ս C. Mango-I.Ševčenko,* A new manuscript of the De Cerimoniis, Dumbarton Oaks Papers, No 14, (1960), P. 247—249.

ղության կարգի, կայսեր թաղման արարողության, կայսեր ծննդյան օրը նշելու, պաշտոնական ընդունելությունների առթիվ պահպանվելիք կարգ ու կանոնի, ձիարշավարանում տեղի ունեցող խաղերի կարգի մասին և այլն։ Առաջին գրքի 84—90-րդ գլուխները VI դարի հեղինակ Պետրոս Պատրիկիոսի մեզ չհասած մի աշխատանքից կատարված ընդարձակ մեջբերումն է։ Առաջին գրքում այնուհետև խոսվում է Լևոն I, Անաստասիոս, Հուստինոս, Լևոն II, Հուստինիանոս I կայսրերի հռչակման առթիվ տեղի ունեցած արարողության մասին։ Առաջին գրքի 96-րդ գլխում խոսվում է Նիկեփոր Փոկասի (963—969 թթ.) կայսր հռչակվելու առթիվ տեղի ունեցած արարողության մասին։ Այս գլուխը պարզ վկայում է, որ Ծիրանածինի «Արարողությունների մասին» աշխատությունը հեղինակի մահից հետո էլ լրացվել է։ Այդ բանը հաստատվում է և երկրորդ գրքի 42-րդ գլխի տվյալներով, որտեղ խոսվում է Կոստանդին Ծիրանածինի գերեզմանի վայրի մասին։ Եվ վերջապես նկարագրվում է սենատի նախագահի հռչակման արարողությունը։

Առաջին գրքին կցված է երկու հավելված. առաջինում խոսվում է կայսեր՝ ձեռնարկելիք արշավանքի ընթացուղիների և բանակելու վայրերի, ապա նրա գլխավորած զորքի նախապատրաստության՝ զինվածության և պարենավորման մասին։ Երկրորդ հավելվածում, բացի Ծիրանածինի՝ իր որդուն ուղղված երկու խոսքից և աշխատության աղբյուրների և նպատակադրման վերաբերյալ բացատրությունից, մեկ առ մեկ նշվում է, թե բանակաթեմի զորավարները, կամ առանձին բարձրաստիճան պաշտոնյաներ պատերազմի դեպքում ինչով պետք է մասնակցեն, ապա նաև կայսեր՝ արշավանքին իր հետ տանելիք պիտանի իրերի մասին։ Այստեղ հետաքրքրական է հիշատակությունը բյուզանդական մինչև IX դարի կեսերը գործող «հեռագրի» վերաբերյալ, որի օգնությամբ մի ժամում մայրաքաղաքում իմանում էին արաբների հարձակման մասին։ Այնտեղ խոսվում է նաև մայրաքաղաքում Թեոփիլոս կայսեր՝ արաբների դեմ հաղթանակ տանելու առթիվ կազմակերպած հաղթական երթի մասին. ինչպես և նման մի երթի, որ կազմակերպեց Վասիլ I Տեֆրիկեից և Գերմանիկիայից (Մարաշ) հաղթական վերադարձի կապակցությամբ։

Երկրորդ գիրքը սկսվում է մի համառոտ ներածականով, որտեղ Ծիրանածինը ցույց է տալիս, որ եթե առաջին գրքի շարադրման համար օգտագործել է գրավոր աղբյուրներ, ապա երկ-

րորդ դիրքը հիմնված է միայն բանավոր տեղեկությունների վրա[1]։ Այստեղ ևս մանրամասն խոսվում է բյուզանդական բարձրաստիճան պաշտոնյաների նշանակման առթիվ տեղի ունենալիք արարողությունների կարգի մասին, տարբեր տոները նշելու կարգի, պատրիարքի ձեռնադրության, թաղման, պաշտոնական ընդունելությունների. օտար պետությունների բարձրաստիճան սինձնավորությունների ընդունման կարգի մասին և այլն։ Երկրորդ գրքում մանրամասն նշվում է այն վայրը, որտեղ թաղված են բյուզանդական կայսրերը և տրվում նրանց շիրիմների նկարագրությունը։ Ապա խոսվում է բյուզանդական մի շարք կայսրերի և նրանց ժամանակի առանձին զորավարների, կայսրության թշնամիների դեմ գործած արշավանքներին մասնակցող զինվորների, վերջիններիս զինվածության և ստացած ռոճիկների մասին։

Այս գրքում խոսվում է օտար պետությունների ղեկավարներին դիմելու կարգի, նրանց ինչպիսի՞ հարցեր տալու մասին։ Հայոց պատմության համար մեծ հետաքրքրություն է ներկայացնում 48-րդ գլուխը, որտեղ մանրամասն տրվում են օտար երկրների՝ այդ թվում և Հայաստանի ղեկավարներին հղվելիք նամակների ձևերը։ Յուրաքանչյուր նամակից կախված էր լինում տարբեր կշռի ոսկե կնիք. որից պարզ երևում է, թե Բյուզանդական կայսրությունը ո՞ր պետության ի՞նչ նշանակություն էր տալիս[2]։ Ամենաբարձր տեղում էր գտնվում արաբական խալիֆաթը։ Խալիֆային ուղղված նամակի ոսկե կնիքը կշռում էր չորս սոլիդ (մոտ չորս դահեկան)։ Նրանից անմիջապես հետո Ծիրանածինը հիշատակում է Հայոց թագավորին (Բագրատունի), որին ուղղված նամակի ոսկե կնիքը կշռում էր երեք սոլիդ, նույնպես և Վասպուրականի Արծրունիներին ուղղված նամակը։ Երեք սոլիդանոց ոսկե կնիք էր կրում բացի վերոհիշյալներից միայն Խազարիայի խաքանին ուղղված նամակը։ Մյուս բոլոր, շուրջ հիսուն պետությունների ղեկավարներին ուղղված նամակները, այդ թվում և Ֆրանկիայի, Գալլիայի, Գերմանիայի ռեքսերին, վրաց կուրապաղատին, Ռուսիայի իշխանին ուղղված նամակին կցված էր լի-

---

[1] De Cer., p. 516։ Հակառակ նրա հավաստումի կան բազմաթիվ գլուխներ, որոնք հազիվ թե առանց գրավոր աղբյուրների հնարավոր լիներ շարադրել։

[2] Տալիս ենք այդ գլխի թարգմանությունը առանց որևէ կրճատումների, որպեսզի պարզ դառնա Հայաստանի դրաված տեղը Բյուզանդիայի հետ դիվանագիտական կապեր ունեցող բոլոր պետությունների թվում՝ X դարում։

*նում երկու կամ մեկ սոլիդանոց ոսկեկնիք։ Սույն գլխում տրվում են նաև հայոց, վրաց և աղվանից կաթողիկոսներին, ինչպես և մի շարք իշխաններին ուղղվելիք նամակների ձևերը։*

*Խնդրո առարկա գլուխը, որ արտադրությունն է 908 թվականից ոչ շատ ուշ կազմված մի փաստաթղթի (դա հաստատվում է այն բանով, որ Արծրունյաց իշխանի մասին խոսելիս ավելացված է, որ նա «այժմ իշխանաց իշխանի [իմա՛ թագավորի] պատիվն է ստացել») մեծ արժեք է ներկայացնում X դարի առաջին կեսում Հայաստանում տիրող իշխանությունների մասին գաղափար կազմելու համար։ Այդ փաստաթղթում Շիրակի Բագրատունյաց և Վասպուրականի Արծրունյաց թագավորություններից բացի, հիշվում են նաև Կոգովիտի, Տարոնի, Մոկքի, Անձևացյաց, Սյունիքի, Վայոց ձորի, Խաչենի (այն է՝ Արցախի), Սևորդյաց (այն է՝ Ուտիքի) հայկական իշխանությունները։ Եվ այս տվյալների արժեքն անգնահատելի է դառնում, եթե նկատի առնենք այն հանգամանքը, որ մենք արդեն գործ ունենք ոչ թե Կոստանդին Ծիրանածինի կամ որևէ անհատ-հեղինակի հետ, այլ Բյուզանդական կայսրության, այն է իր ժամանակաշրջանի ամենակազմակերպված և ամենաբարձր տիպի պետության արտաքին գործոց նախարարության դրասենյակում կազմված փաստաթղթի հետ։*

*Երկրորդ գրքում Ծիրանածինը տալիս է զորավարների և այլ բարձր զորահրամանատարների մանրամասն ռոճկացուցակը։ Եվ վերջապես Ծիրանածինը այս գրքի վերջում (գլ. 52—56) ամբողջությամբ մեջ է բերում ատրիկլին Ֆիլոթեոսի 900 թ. կազմած «Կլետորոլոգիոնը» (Գահնամակը), նվիրված բյուզանդական հիերարխիային, յուրաքանչյուր բարձրաստիճան պաշտոնյայի և ռազմական աստիճանի այդ հիերարխիայում գրաված տեղին, յուրաքանչյուրի ենթակայության տակ գտնվող աստիճաններին։ Այնտեղ կան առանձին բաժիններ, որոնց շոշափած հարցերին հանդիպում ենք և «Արարողությունների մասին» աշխատության նախորդ գլուխներում, ինչպես, օրինակ, զանազան տոների նշելու կարգը։ Այստեղ հանդիպում ենք նաև պատրիարքությունների մետրապոլիտությունների, ինքնագլուխ (ավտոկեֆալ) արքեպիսկոպոսությունների հիերարխիկ մի ցուցակի, որի կազմողը Եպիփան Կիպրացին է։*

*«Արարողությունների մասին» աշխատությունը հայագիտության համար կարևոր նշանակություն ունի Հայաստանին և հայերին վերաբերող տեղեկություններով, որոնք ցրված են այդ ծա-*

վալուն աշխատության մեջ։ Առաջին գրքի 24-րդ գլուխը կարևոր է Բյուզանդիայի և Տարոնի իշխանության միջև գոյություն ունեցող փոխհարաբերությունները պարզելու տեսակետից։ Նույն գրքի 96-րդ գլուխը մեզ տալիս է հայազգի կայսր Նիկեփոր Փոկասի գահ բարձրանալու արժեքավոր մանրամասնությունները։ Առաջին գրքում ցրված է նաև բավական արժեքավոր նյութ Արմենիակների բանակաթեմի և վերջինիս զորավարի մասին։

Երկրորդ գրքի 42-րդ գլուխը, որ վերաբերում է բյուզանդական կայսրերի և նշանավոր աստիճանավորների շիրիմների նկարագրությանը, կարևոր է հայազգի կայսրերի, նրանց ազգականների, ինչպես և ռազմական գործիչների մասին տարբեր հարցեր պարզելու տեսակետից։ Օրինակ, միայն այս գլխից ենք իմանում Վասիլ I կայսեր մոր անունը, ապա և Վասիլի մի որդու՝ Վարդասի (Վարդի) գոյության մասին։ 44-րդ գլխից պարզվում է, որ Լևոն VI-ի ժամանակ Կրետեի դեմ ուղարկված նավատորմիղում ծառայում էին 1400 հոգուց բաղկացած հայկական երկու զորամաս։ Նշված է նաև այդ նավաստիների (զինվորների) ստացած ռոճիկի չափը։ Նույն գլխում ցույց է տրված, որ Ծիրանածինի ժամանակ Կիպրոսի կառավարիչն էր մի հայազգի՝ Սմբատիկի որդի Լևոնը։ Այստեղ խոսվում է հայ ռազմական այլ գործիչների մասին ևս (Պանգրատիոսի-Բագարատի որդի պրոտոսպաթար Թեոդորոսի)։ 44-րդ գլխում ցույց է տրված, որ Լանդոբարդիայի (Լոմբարդիա) դեմ մղված կռիվներում մասնակցել են և հայեր (Ռոմանոս I Լեկապենոսի ժամանակ)։ Այդտեղից մենք գիտենք նաև, որ Թրակեսիոն բանակաթեմի ափը հայերն էին պահպանում։

45-րդ գլխից պարզվում է, որ Կրետեի դեմ Կոստանդին Ծիրանածինի ժամանակ տեղի ունեցած արշավանքին նույնպես հայեր էին մասնակցում։

48-րդ գլխում տրված են օտարերկրացիներին հղվելիք նամակների ձևերը, որոնց՝ հայագիտության համար ունեցած նշանակության մասին խոսք եղավ վերևում։

Եվ վերջապես, Ծիրանածինի մյուս կարևոր աշխատությունը նվիրված է Բյուզանդական կայսրության բանակաթեմերին։

«Բանակաթեմերի մասին» (Περὶ τῶν θεμάτων) աշխատությունը Ծիրանածինի վաղ գործերից է և գրվել է X դարի շուրջ 30-ական թվականներին[1]։ Մեկ առ մեկ թվարկելով կայսրության

[1] Տե՛ս Gy. Moravcsik, Byzantinoturcica, Bd. I, S. 384. Բյուրին գտնում է, որ այն գրվել է 934—944 թվականների միջև. J. B. Bury, The trea-

բանակաթեմերը, այսինքն ռազմա-վարչական շրջանները, հեղինակը արժեքավոր տեղեկություններ է հաղորդում նրանց բնակիչների, քաղաքների, պատմության մասին և այլն, աշխատում ստուգաբանել նրանց անվանումները, այդ բոլորի հետ միասին տալով պատմական, աշխարհագրական, ազգագրական, դիցաբանական հետաքրքրական տեղեկություններ։ Ծիրանածինը իր այս երկում օգտագործել է բազմաթիվ աղբյուրներ, որոնցից ամենագլխավորներն են VI դարի հեղինակներ Ստեփանոս Բյուզանդացու և Հիերոկլեսի գործերը։ Այդ է պատճառը, որ այս աշխատության աշխարհագրական տվյալները ավելի շատ վերաբերում են VI դարին։ Իր, Ծիրանածինի, ժամանակաշրջանին վերաբերող նյութը որպես կանոն ավելի քիչ տեղ է գրավում։ Բացի վերոհիշյալ հեղինակներից, նա օգտագործել է նաև Ստրաբոնի և անտիկ շրջանի այլ հեղինակների երկերը, որոնցից առատորեն օգտվում է, հատկապես այնտեղ, որտեղ աշխատում է ստուգաբանել այս կամ այն վայրի անունը և վերջինիս ծագումը։

Ինչպես ճիշտ նշում է Ծիրանածինը, Բյուզանդական կայսրության բանակաթեմերի բաժանվելը տեղի է ունեցել ոչ այնքան վաղ ժամանակներում։ «Իմ կարծիքով,—գրում է կայսրը,—շատերը սխալվում են **բանակաթեմ** անվան առաջացման հարցում։ Այն հին չէ. պատմություն գրող հեղինակներից ոչ ոք չի հիշատակում բառը այս իմաստով, ինչ մենք տալիս ենք նրան այսօր»։

Դիոկլետիանոսի և Կոստանդին Մեծի հաստատած կարգը պայմանավորված էր նրանով, որ պրովինցիաների քաղաքական և ռազմական ղեկավարությունը գտնվում էր տարբեր անձնավորությունների ձեռքում։ Հուստինիանոս I-ը (527—565) աստիճանաբար վերացրեց այդ կարգը. պրովինցիաների ռազմական և քաղաքական ղեկավարությունը հանձնեց մեկ մարդու՝ զորահրամանատարին։ Այդ նույն բանը կատարվեց և Հայաստանում։ Հակառակ

---

tise „De administrando imperio", p. 518. Վերջերս սակայն բյուզանդագետ Արվայլերը եկել է այն եզրակացության, որ «Բանակաթեմերի մասին» երկը Ծիրանածինը գրել է իր կյանքի վերջին տարիներին։ Տե՛ս École Pratique des Hautes Études, IV Section, Sciences historiques et philologiques, Extrait des rapports sur les conférences, Histoire byzantine, Directeur d'Études: P. Lemerle, Paris, 1965, p. 235. Ենթադրությունը համոզիչ չէ։ «Բանակաթեմերի մասին» աշխատության մեջ ցույց է արված, որ Մելիասը «հենց վերջերս, մի փոքր առաջ» է վախճանվել։ Մելիասը վախճանվել էր 934 թ., հետևաբար Ծիրանածինի այս գիրքը չէր կարող 934 թվականից շատ ուշ գրված լինել։

այդ բոլորին, Հուստինիանոսի բարենորոգումները ընդհանրապես բանակաթեմերի կազմակերպության հետ որևէ սերտ աղերս չունեին։ Մավրիկիոս կայսրը (582—602) կայսրությունը արտաքին վտանգից դիմագրավելու համար ստիպված էր թշնամու հարվածներին ենթակա շրջաններում արտակարգ իրավունքներով օժտված զինվորական հրամանատարներ կարգել։ Այդ կատարվեց հատկապես Արևմուտքում և Աֆրիկայում։ Առաջացան, այսպես կոչված, Իտալիայի և Աֆրիկայի վեցերորդապետությունները (ἐξαρχᾶτον) էքսարքոսի գլխավորությամբ, որը փոխարինեց նախկին magister militum-ին։

Տարբեր չէր գրությունը և Արևելքի նահանգներում։ Ենթադրվում է, որ արևելյան նահանգներում էլ զորահրամանատարները այս ժամանակ արևմտյան էքսարքոսների նման լիազորություններ ստացան։ Մավրիկիոս կայսեր այս բարենորոգումները բանակաթեմերի կազմակերպության սկիզբ են համարվում[1]։

Բյուզանդական կայսրության վիճակը շատ բարդացավ հատկապես Հերակլիոս կայսեր ժամանակ (610—641)։ Պատմական ասպարեզ էին իջել արաբները, այնպիսի մի վտանգավոր թշնամի, որ սպառնում էր կայսրության գոյությանն անգամ։ Կայսրության արևելյան նահանգները անընդհատ ասպատակությունների թատերաբեմ էին դառնում։ Կայսրությունը արևելյան նահանգների անվտանգությունն ապահովելու համար ստիպված եղավ ձեռք առնել նոր միջոցառումներ։ Ահա Հերակլիոսի օրոք է, որ ըստ Ծիրանածինի սկիզբ է առնում կայսրության բանակաթեմերի բաժանման իրողությունը։ Բանակաթեմերում ամբողջ իշխանությունը գտնվում էր զորավարի (ստրատեգոսի) ձեռքում։

Այդ ժամանակաշրջանում Բյուզանդական կայսրության արևելքը բաժանված էր երեք մեծ զորավարությունների. Օպսիկիոնի, Անատոլիկոնի և Արմենիակների։ Օպսիկիոնի մեջ էին մտնում Բյութանիան, Հոնորիասը, Պաֆլագոնիան, Հելենոպոնտոսի մեծ մասը և Առաջին Փռյուգիան։ Անատոլիկոն բանակաթեմը ամենամեծն էր Բյուզանդիայում։ Նրա մեջ էին մտնում Դիոկլետիանոսի ստեղծած Ասիա և Լիդիա նահանգները, Կարիայի որոշ շրջաններ, Փռյուգիա Սալուտարիան, Պիսիդիան, Երկրորդ Կապադովկիան և Իսավրիան։ Եվ վերջապես Արմենիակների բանակաթեմը[2], որի կազ-

---

[1] Տե՛ս Հ. Գելցեր, Սկզբնավորությունը, էջ 4։

[2] Այս բանակաթեմի սաղմերը Գելցերը տեսնում է Հուստինիանոս I-ի բարենորոգումների մեջ, թեև կազմակերպումը դնում է VII դարում։ Հ. Գելցեր, Սկզբնավորությունը, էջ 11։

մի մեջ էին Հունական ու Պոլեմոնյան Պոնտոսը, Առաջին և Երկրորդ Հայքերը և Առաջին Կապադովկիան։

Լևոն III Իսավրացու ժամանակ անհրաժեշտություն առաջացավ բանակաթեմերի մանրացման։ Դրա հիմնական նպատակն էր թուլացնել բանակաթեմերի զորավարների օրեցօր աճող հզորությունը, մի բան, որ վտանգավոր էր դառնում կայսերական իշխանության համար նույնիսկ։ Այսպես, Անատոլիկոն բանակաթեմը բաժանվեց երկու մասի, ընդ որում նրա արևմտյան նահանգներից՝ Ասիայից, Կարիայից, Լիգիայից և Առաջին Փռյուգիայից կազմվեց Թրակեսիոն կոչված բանակաթեմը՝ Եփեսոս կենտրոնով։ Օպսիկիոն բանակաթեմը ևս բաժանվեց երկու մասի և նրա արևելյան շրջաններից կազմվեց Բուկելլարների բանակաթեմը՝ Անկյուրա կենտրոնով։ Նոր բանակաթեմեր կազմակերպվեցին և Արմենիակների բանակաթեմի հիման վրա։ X դարի սկզբում Փոքր Ասիայում սրդեն կային Անատոլիկոնի, Ամենիակների, Թրակեսիոնի, Օպսիկիոնի, Բուկելլարների, Օպտիմատների, Կապադովկիայի, Պաֆլագոնիայի, Խաղտիքի, Կոլոնիայի, Խարսիանոնի, Սելևկիայի Միջագետքի, Սեբաստիայի, Լիկանդոսի և Լեոնտոկոմիսի բանակաթեմերը։

Բյուզանդական բանակաթեմերի պատմությունը ուսումնասիրելու համար անգնահատելի արժեք ունեն արաբական սկզբնաղբյուրները և առաջին հերթին Իբն Խորդադբեն, որի աշխատությունը գրվել է Միքայել Թլվատի (820—829) և Թեոփիլոս կայսեր (829—842) ժամանակներում։ Հեղինակը, հենվելով Մուսլիմ Իբն Աբու Մուսլիմ ալ Ջամիի տեղեկությունների վրա, ցույց է տալիս, որ ամբողջ Բյուզանդական կայսրությունը երկու մեծ մասերի էր բաժանված՝ Ասիայի և Եվրոպայի։ Նա մանրամասն նկարագրում է Ասիայի բանակաթեմերը։

Մի այլ արաբ պատմիչ՝ Կուդաման, ցույց է տալիս Փոքր Ասիայի բանակաթեմերի ռազմական ուժը, հաշվելով այն 70 հազար հոգի[1]։

Կոստանդին Ծիրանածինը իր «Բանակաթեմերի մասին» աշխատությունը բաժանում է երկու մեծ հատվածների, ընդ որում առաջին հատվածը, որ 17 ենթամասի է բաժանված, վերաբերում է Ասիային[2]։ Երկրորդ բաժինը վերնագրված է՝ «Արևմուտքի, այն

[1] Ավելի մանրամասն տե՛ս ծանոթագրությունների մեջ։

[2] Բացի փոքրասիական շրջաններից, այստեղ խոսվում է նաև Կիպրոսի, Սամոսի, և էգեական ծովի մյուս կղզիների մասին։

*է Եվրոպայի բանակաթեմերի մասին», որտեղ խոսվում է կայսրության եվրոպական 12 բանակաթեմերի մասին, այդ թվում և Խերսոնի։*

*Հայոց պատմության համար, հասկանալի է, մեծ կարևորություն ունի աշխատության առաջին հատվածը, նվիրված Փոքր Ասիային, այդ թվում Բյուզանդական կայսրության սահմաններում գտնվող հայկական հողերին, որոնցից ամենակարևորներն էին պատմական Փոքր Հայքը, Բարձր Հայքը և Չորրորդ Հայքը։ Այդ տեսակետից շատ արժեքավոր են Ծիրանածինի տվյալները Արմենիակների, Խաղտիք, Միջագետք, Կոլոնիա, Սեբաստիա և Լիկանդոս բանակաթեմերի մասին։ Բացի աշխարհագրական տեղեկություններից, այստեղ մենք հանդիպում ենք տվյալների, որոնք վերաբերում են այդ բանակաթեմերի կազմակերպման հարցում հայ գործիչների խաղացած դերին։ Մենք իմանում ենք հայ նշանավոր գործիչների մի ամբողջ շարանի մասին, որ IX դարի վերջում և X դարի սկզբում հսկայական աշխատանք տարավ առանձին շրջանները արաբական լծից ազատագրելու և Բյուզանդիայի կազմի մեջ ընդգրկելու ուղղությամբ։ Դրանցից էին Լևոն VI-ի ժամանակ Միջագետքում գործող Պանգրատուկաս հայր* (Παγκρατούκας ὁ Ἀρμένιος), *նրա եղբայրներ Փոքրիկասն* (Πουκρίκας) *և Տավթուկասը* (Ταυτούκας *—Դավթակ), որոնք կազմակերպեցին Միջագետքի բանակաթեմը։ Լիկանդոսի բանակաթեմը իր կազմավորումը պարտական է նշանավոր Մելիաս-Մլեհին, որին հիշատակելու առիթ ունեցանք։ Լիկանդոսի մասին Ծիրանածինի տված տեղեկությունները շատ արժեքավոր են պատկերացնելու համար նաև տվյալ շրջանի տնտեսության զարգացման աստիճանը։ Պարզվում է, որ դեռևս VI դարում, Հուստինիանոս I-ի ժամանակ, այստեղ բարձր զարգացման էր հասել անասնապահությունը։*

*Հակառակ իր թերություններին, տեղ-տեղ նաև բացահայտ սխալներին, Ծիրանածինի այս երկը տվյալ հարցին նվիրված միակ գործն է, որ մեզ է հասել Բյուզանդիայից*[1]*։*

*Կոստանդին Ծիրանածինի գրչին է պատկանում նաև մի երկ, նվիրված Քրիստոսի՝ Եդեսիայի Աբգար թագավորին (Աբգար 5-րդ*

---

[1] *Թարգմանությունը կատարված է բնագրի գիտական վերջին հրատարակությունից.* Constantino Porphyrogenito, De Thematibus, Introduzione, testo critico, commento a cura di A. Pertusi (Studi i testi 160), Città del Vaticano. 1952.

Ուկկամա, 4 թ. մ. թ. ա.—7 թ. մ. թ. և 13—50 թթ.) ուղարկված թղթի և անձեռագործ պատկերի ավանդությանը[1]։ Այդ ավանդությունը, որ ժամանակի ընթացքում որոշ փոփոխություններ է կրել, առաջին անգամ գրված է եղել ասորերեն[2]։ Դրանից հետագայում թարգմանություններ են կատարվել հունարեն, հայերեն և այլ լեզուներով։

Հունարեն հնագույն թարգմանությանը մենք հանդիպում ենք Եվսեբիոս Կեսարացու «Եկեղեցական պատմության» մեջ[3], որտեղ, սակայն, խոսք է լինում Քրիստոսի թղթի մասին միայն։ Անձեռագործ պատկերի մասին խոսք չկա այնտեղ։

Ասորերեն խնդրո առարկա աղբյուրը հնում թարգմանվել է նաև հայերեն[4], որտեղ բացի Քրիստոսի թղթից, խոսք է լինում նաև նրա պատկերի մասին, որը, սակայն, նրա տվյալներով Աբգար թագավորի սպասավոր Անանի աշխատանքի արգասիքն է։

Եվսեբիոս Կեսարացու և Ղաբուբնայի տվյալների հիման վրա այդ մասին մանրամասն շարադրանք է տվել Մովսես Խորենացին։ Կանգ առնելով Քրիստոսի և Աբգարի նամակագրության, Քրիստոսի աշակերտի Եդեսիա գալու և Աբգարին բուժելու և այլ մանրամասնությունների վրա, հայ պատմիչն ի միջի այլոց հիշում է և Քրիստոսի պատկերի մասին, որը, սակայն, նա նույնպես անձեռագործ չի համարում։ Եվագրիոսն է, որ իր «Եկեղեցական պատմության» մեջ (Գիրք Դ, գլ. 27), խոսելով պարսից արքա Խոսրովի՝ Եդեսիան պաշարելու մասին, հիշում է խնդրո առարկա պատկերը, որը նա արդեն համարում է «աստվածակերտ և անձեռագործ»։ Թեև Եվագրիոսի աղբյուրը Պրոկոպիոս Կեսարացին է, վերջինիս մոտ պատկերի մասին խոսք չկա։

Քրիստոսի անձեռագործ պատկերի մասին ավանդությունը միշտ հրապարակ էր գալիս, երբ Բյուզանդիայում բորբոքվում էին պատկերամարտական-պատկերապաշտական վեճերը։ Պատկերա-

---

[1] Ավանդության վերաբերյալ մանրամասն մատենագիտությունը տե՛ս Հ. Անասյան, Հայկական մատենագիտություն, հատ. Ա, Երևան, 1959, սյուն. 11—18։

[2] Բնագիրն հրատարակել է W. Cureton-ը իր Ancient Syriac documents գրքում։

[3] *Eusebii Caesariensis* Opera, recognovit *G. Dindorfius*, vol. IV, Historiae ecclesiasticae, Lipsiae, 1890, cap. I, 13.

[4] Տե՛ս Լաբուբնեայ դիւանագետ դպրի Եդեսիոյ Թուղթ Աբգարու յեղեալ յասորւոյն ի ձեռն ս. թարգմանչաց, Վենետիկ, 1868։ Նաև Ղերուբնա Եդեսացի, Թուղթ Աբգարու թագաւորի Հայոց, Երուսաղեմ, 1868։

*պաշտները դիմում էին այդ ավանդության իրենց դիրքերը պաշտպանելու համար։ VIII և IX դարի առաջին կիսում, երբ նման վեճերը նորից սուր բնույթ ստացան, այդ ավանդությանը դիմեցին Ալեքսանդրիայի պատրիարք Քրիստափորը, Անտիոքի պատրիարք Հոբը և Երուսաղեմի պատրիարք Բարսեղը, որոնք մանրամասն շարադրանք ներկայացրին Թունդ պատկերամարտ Թեոփիլոս կայսեր (829—842)։ Նրանց դրվածքը չի պահպանվել։ Այն օգտագործել է մեկ հարյուրամյակ անց Կոստանդին Ծիրանածինը իր խնդրո առարկա երկի գրության առթիվ, որի լույս աշխարհ գալու պատճառը քաղաքական բարենպաստ իրադրությունների բերմամբ Բյուզանդիայի դեպի Ասորիք կատարած առաջխաղացումն էր, որի ժամանակ, կայսրության ճնշման տակ, Եդեսիայի ամիրան ստիպված էր կայսրությանը զիջել վերոհիշյալ սրբությունները։ Այդ դեպքը հիշում են բյուզանդական ժամանակագիրները ևս*[1]*։*

*Սույն հատորում տրվում է Կոստանդին Ծիրանածինի երկի ամբողջական թարգմանությունը։*

*Մի անգամ առիթ ունեցանք նշելու, որ Կոստանդին Ծիրանածինը ունեցել է օգնականների մի ամբողջ խումբ, որի օժանդակությամբ, գուցե և հեղինակությամբ կազմվել են դիտական և բանասիրական մի շարք գործեր, որոնց մի մասն է մեզ հասել։ Այն է* Βασιλικά*-ն (օրենսգիրք, օրենսդրական կարգադրությունների և նովելլաների—հրովարտակների ժողովածու),* Γεωπονικά *(երկրագործության վերաբերյալ ձեռնարկ. մեզ է հասել սրա հայերեն թարգմանությունը, «Գիրք վաստակոց» անվան տակ, որ կատարված է Գեոպոնիկայի արաբերեն թարգմանությունից)»*[2] Ἰατρικά *(բժշկական դասագիրք),* Ἱππιατρικά *(ձիաբուժության վերաբերյալ ձեռնարկ)։ Վերոհիշյալ բոլոր գործերը (հասկանալի է բացի* Βασιλικά*-ից) հիմք են ունեցել անտիկ շրջանի հույն հեղինակների գործերը, որոնք որպես կանոն մեզ հայտնի են դառնում Ծիրանածինի նրանցից առած քաղվածքներից։*

---

[1] *Theophanes Continuatus*, p. 432; *Symeonis Magistri* Annales, p. 749; *Georgii Monachi* Vitae recentiorum imperatorum, p. 918—919.

[2] *Տե՛ս Գիրք վաստակոց, թարգմանութիւն նախնեաց յարաբացի լեզուէ, Վենետիկ, 1877։ Վերջերս լույս տեսավ Գեոպոնիկայի ռուսերեն թարգմանությունը.* Геопоники, Византийская сельскохозяйственная энциклопедия X века., Введение, перевод с греческого и комментарий Е. Э. Липшиц, М.-Л., 1960.

Ծիրանածինի և նրա օգնականների կազմած նման բանաքաղային տիպի աշխատությունների թվում կարևոր է մի յուրատեսակ «Պատմական հանրագիտարան», որտեղ փոքր ու մեծ քաղվածքներ են կատարված անտիկ և բյուզանդական շրջանի պատմաբանների գործերից, սկսած Հերոդոտոսից մինչև Գևորգ Վանականը։ Իրենց բովանդակության համապատասխան ստեղծվեցին այդ քաղվածքների 53 բաժիններ, որոնցից միայն երկուսն են մեզ հասել, որտեղ քննության են առնվում դեսպանությունների հարցը (’Εκλογαὶ περὶ πρεσβειῶν—Excerpta de legationibus)[1], «Առաքինությունների և արատների» հարցը—(Περὶ ἀρετῆς καὶ κακίας—Excerpta de virtutibus et vetiis), «Կարծիքների (հայացքների) մասին»—Ἐκλογαὶ περὶ γνωμῶν (Excerpta de sententiis), «Կայսրերի դեմ կատարված ոտնձգությունների մասին»—Περὶ ἐπιβουλῶν κατὰ βασιλέων γεγονυιῶν (Excerpta de insidiis)։ Պահպանվել են և առանձին հատվածներ ռազմարվեստի (Περὶ στρατηγημάτων) և պաշտոնական ճառերի մասին (Περὶ δημηγοριῶν)։ Վերոհիշյալ «Հանրագիտարանի» արժեքը պատմագիտության համար անգնահատելի է դառնում այն պարզ պատճառով, որ բազմաթիվ հեղինակների գործեր մեզ են հասել միայն ու միայն այս երկում, այդ թվում և Եվնապիոսի, Պրիսկոսի, Մալքոսի, Մենանդրոսի։ Ծիրանածինի այս աշխատությունը էապես նպաստեց, որ Բյուզանդիայում հետաքրքրություն առաջանա դեպի անտիկ պատմագիտությունը։

Ծիրանածինի մեզ չհասած երկերից է նաև Βροντολόγιον καὶ σεισμολόγιον-ը՝ եղանակի նախիմացության մասին։ Մեզ չեն հասել նրա նամակներն ու բանաստեղծությունները (որոնց մասին հիշատակություններ կան ավելի ուշ շրջանի հեղինակների մոտ), ինչպես և ճառերը։

---

[1] Սրա վերաբերյալ տե՛ս Byzantinische Diplomaten und östliche Barbaren, Aus den Excerpta de legationibus des Konstantinos Porphyrogennetos ausgewählte Abschnitte des Priskos und Menander Protektor, übersetzt, eingeleitet und erklärt von *Ernst Doblhofer*, Graz-Wien-Köln, 1955. Վերջերս բյուզանդագետ Հ. Արվայլերը Կոստանդին Ծիրանածինի գրչին վերագրեց անանուն հեղինակի ռազմական մի ճառ, որը կարևոր է X դարի կեսերի արաբա-բյուզանդական պատերազմների ուսումնասիրության համար։ Տե՛ս *Helène Ahrweiler*, Un discours inédit de Constantin VII Porphyrogénète. Travaux et Memoires, 2 (1967) p. 393—404.

* *
*

Սույն գրքին կցված է Հավելված՝ Կոստանդին Ծիրանածինի ապրած ժամանակաշրջանին վերաբերող ծավալով փոքր գործեր, բյուզանդական օրենսգրքերի առանձին հոդվածներ, որոնք առնչվում են հայ ժողովրդի պատմությանը.

1. «Վասիլիկաների», այն է IX դարի վերջում և X դարի սկզբում կազմված օրենսդրական ժողովածուից մի հոդված, որտեղ խոսվում է «հայկական հարկերի» մասին։

2. Նույն «Վասիլիկաների» Մեծ Սինոպսիսից մի հոդված՝ Բյուզանդական Հայաստանում գանձվող հարկերի չափերի մասին։

Այս երկու հոդվածները կրկնողությունն են ավելի վաղ շրջանում (V—VI դ.դ.) հրապարակված օրենքների, որոնց մուտքը Մակեդոնացիների օրենսգրքում ըստ երևույթին վկայում է, որ իրենց ուժը չեն կորցրել[1]։

3. «Վասիլիկաների» Փոքր Սինոպսիսից մի հոդված՝ Բյուզանդական կայսրության սահմաններում ապրող հայերի քաղաքացիական դրության մասին։ Որպես հիմք ունենալով Հուստինիանոս Ա-ի եղման կետը, այն, որ «հայերը ամեն ինչում պետք է հետևեն հռոմայեցիների օրենքներին» (որտեղ խոսքը դավանանքի վրա չէր տարածվում), «Վասիլիկաների» Փոքր Սինոպսիսի հեղինակները ջանում են ընդգրկել դավանանքի հարցը ևս։

4. Սխալմամբ հայազգի կայսր Նիկեփոր Փոկասին (963—969) վերագրված «Մասնակի պատերազմ մղելու մասին» X դ. 2-րդ կեսի մի երկասիրություն, որը հայ զինվորների մասին իր տրվյալներով շատ կարևոր է արաբա-բյուզանդական սահմանի վրա ծառայող այդ զինվորների դեպի Բյուզանդական կայսրությունը բռնած դիրքի մասին։

5. Նիկեփոր կայսեր մի հրամանագիրը հայ զինվորների (ստրատիոտների) հողերի մասին։ Հայ զինվորները, ծառայելով բյուզանդական բանակում, ստանում էին մշակելի հողեր։ Բայց որովհետև նրանք շատ հաճախ լքում էին իրենց հողերն ու հեռա-

---

[1] Վասիլիկաներում տեղ են գտել նաև Հուստինիանոս Ա-ի հրապարակած օրենքները բյուզանդական Հայաստանի վարչական բարենորոգումների վերաբերյալ (31-րդ նովելլան), ինչպես և նույն կայսեր հրովարտակները հայոց ժառանգական իրավունքի մասին, որոնց թարգմանությունը մենք տվել ենք «Բյուզանդական աղբյուրների» Ա գրքում, էջ 300—306։

*նում, կայսրը կարգավորում էր նրանց թողած հողերի հարցը։ Կայսեր հիմնական մտահոգությունը զինվորների (ստրատիոտների) հողերի օտարացման առաջն առնելն էր, քանի որ այդ հողերը հիմք էին տալիս բանակը զինվորներով համալրելու։*

*Գրքին կցված են և երկու աշխարհագրական քարտեզ.*

*1. Բյուզանդական կայսրության արևելյան բանակաթեմերը։*

*2. Բյուզանդական կայսրության արևելյան սահմանները շուրջ 960 թ.*

# ԿԱՄԱՎՆ ՔՐԻՍՏՈՍԻ՝ ՀԱՎԻՏԵՆԱԿԱՆ ԹԱԳԱՎՈՐԻ ՀՌՈՄԱՅԵՑԻՆԵՐԻ ԿԱՅՍՐ ԿՈՍՏԱՆԴԻՆՆ ԻՐ ՈՐԴՈՒՆ՝ ԱՍՏՎԱԾԱՊՍԱԿՅԱԼ ԵՎ ԾԻՐԱՆԱԾԻՆ ՌՈՄԱՆՈՍ ԿԱՅՍԵՐ

[„ԿԱՅՍՐՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ՄԱՍԻՆ“]

## DE ADMINISTRANDO IMPERIO

## ԳԼՈՒԽ 27[1]

# ԼԱՆԳՈԲԱՐԴԻԱՅԻ ԲԱՆԱԿԱԹԵՄԻ, ՆՐԱ ՊՐԻՆԿԻՊԱՏՆԵՐԻ[2] ԵՎ ԱՐԽՈՆՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ[3] ՄԱՍԻՆ

Պետք է գիտենալ, որ անցյալում ամբողջ Իտալիան, այն է Նեապոլիսը, Կապուան, Բենեվենտոսը, Սալերնոն, Ամալֆեն, Գաjետեն, ողջ Լանգոբարգիան գտնվում էին հռոմայեցիների տիրապետության ներքո, երբ, հասկանալի է, Հռոմն էր նրանց մայրաքաղաքը։ Երբ մայրաքաղաքը տեղափոխվեց Կոստանդնուպոլիս և պետությունը բաժանվեց երկու մասի, Կոստանդնուպոլսի կայսրը երկու պատրիկ էր ուղարկում, որոնցից մեկը իշխում էր Սիկիլիայի, Կալաբրիայի և Ամալֆեի վրա, իսկ մյուսը՝ նստում էր Բենեվենտոսում. վերջինիս տիրապետության տակ էին Պապիան, Կապուան և մնացած բոլորը։ Ամեն տարի նրանք որոշակի հարկ էին վճարում կայսեր։ Վերոհիշյալ բոլոր շրջաններում հռոմայեցիներ էին բնակվում։ Իրենե կայսրուհու ժամանակ ուղարկված պատրիկ Նարսեսը տիրում էր Բենեվենտոնում և Պապիայում, իսկ Հռոմը գտնվում էր պապ Զաքարիա Աթենացու ձեռքում[4]։ Պապիայի կողմերում պատերազմներ եղան, Նարսեսը պետական հարկերը ծախսելով զորքի վրա, ընդունված կարգի համաձայն հավաքված հարկերը՝ [Կոստանդնուպոլիս]* չուղարկեց։ [Մայրաքաղաքից ստացված նամակին] Նարսեսը պատասխանեց, թե այստեղից հավաքածս գրամից հազիվ թե կարողանամ ուղարկել, քանզի ամբողջ գրամը ծախսեցի պատերազմների վրա և զուր եք դուք դրամ ակնկալում։ Իրենե կայսրուհին, լսելով այդ, զայրացավ և նրան իլիկ ու ճախարակ ուղարկեց, գրելով, թե «առ սրանք, քեզ դա՛ է վայել։ Մենք գտանք, որ քեզ ավելի է պատշաճում մանել, քան թե տղամարդու պես զենքով պաշտպանել հռոմայեցիների [շահերը]»։ Պատրիկ Նարսեսը լսելով այդ, պատասխա-

* () Կոր փակագծերի մեջ առնված բառերը հեղինակինն են։ [] Անկյունավոր փակագծերի մեջ առնված բառերը թարգմանչինն են։

նեց կայսրուհուն. «Դուք գտնում եք, որ [ինձ] ավելի վայել է կնոջ նման մանել և ոլորել: Բայց ես բացի իլիկից ու ճախարակից այնքան բուրդ տամ, որ Հռոմայեցիները մինչև իրենց կյանքի վերջը չկարողանան մանել»: Լանգոբարդներն այն ժամանակ Պանոնիայում էին ապրում, որտեղ այժմ Թուրքերն են բնակվում[5]: Պատրիկ Նարսեսը ամեն տեսակի մրգեր ուղարկեց նրանց և հայտնեց. «Եկեք այստեղ և տեսեք մի երկիր, որտեղ, ինչպես ասում են, մեղր ու կաթ է ծորում, որից լավը, իմ կարծիքով, աստված չի տվել: Եթե ձեզ այն դուր գա, բնակվեք այնտեղ և ինձ գարե դար երանի կտաք»: Լանգոբարդները, լսելով այդ, հավատք ընծայեցին նրա խոսքերին և իրենց ընտանիքներով եկան Բենեվենտոս, ...նենգությամբ գրավեցին բերդը, իսկ բոլոր բնակիչներին կոտորեցին[6]: ...Նրանք այնուհետև արշավանք գործելով, իրենց ենթարկեցին ողջ երկիրը՝ Լանգոբարդիայի և Կալաբրիայի բանակաթեմը մինչև Պապիա...

ԳԼՈՒԽ 43

# ՏԱՐՈՆ ԵՐԿՐԻ ՄԱՍԻՆ[1]

Հյուսիսում ապրող սկյութների մասին քեզ, ցանկալի որդյակ, բավարար չափով ասվել է[2]: Այդ մասին գիտենալը քեզ համար ապագայում անպայման օգտակար և պիտանի կլինի: Բայց քեզ անհրաժեշտ է իմանալ նաև արևելքում գտնվող և նորից Հռոմայեցիների տիրապետության տակ անցած [երկրների] մասին, երկրներ, որոնք անցյալում դուրս էին եկել [Հռոմայեցիների] հպատակությունից:

Հռոմայեցիների կայսրին առաջինը ենթարկվեց և հպատակվեց Տարոնի իշխան Կրիկորիկը[3]: Բայց հենց սկզբից նա երկու լարի վրա էր խաղում, խոսքով ձևացնում էր, թե գնահատում է կայսեր բարեկամությունը, բայց իրականում աշխատում էր հաճոյանալ սարակինոսների առաջնորդին: Տարբեր ժամանակներում նա Ասորիքից դուրս եկող և Հռոմայեցիների կայսեր ենթակա բանակաթեմերի վրա արշավող [սարակինոսների] զորքերին ճանապարհ էր ցույց տալիս, ինչպես նաև Ասորիքին էր հայտնում հակառակորդ սարակինոսների դեմ Հռոմայեցիների գաղտնի ծրագրերը: Նա շարունակ թաքուն նամակներ էր ուղարկում ամերմում-

Նիին[4] և նրան տեղյակ պահում այն ամենի մասին, ինչ կատարվում էր մեզ մոտ։ Նա ձևացնում էր, թե հռոմայեցիների կողմից է, բայց իրականում նախապատվություն էր տալիս սարակինոսներին և գործում նրանց օգտին։ Հակառակ դրան, նա արժանահիշատակ կայսր Լևոնին[5] նվերներ էր ուղարկում[6], այնպիսիք, որոնք այդ վայրերի բարբարոսների[7] համար մեծ արժեք ունեն և փոխադարձաբար ավելի շատ ու լավ նվերներ էր ստանում բարեպաշտ կայսրից։ Վերջինս բազում անգամ նրան նամակ գրեց և հրավիրեց մայրաքաղաք, անձնապես հանդիպելու կայսեր, արժանանալու նրա հյուրընկալության և պատիվներին։ Սակայն նա, երկյուղելով, որ նման քայլը կարող է դուր չգալ ամերմումնիին, և վերջինիս մեջ կասկածներ կհարուցի, անհիմն պատճառաբանություններ էր հորինում, որ իբր չի կարող իր երկիրն անօգնական թողնել սարակինոսների [հնարավոր] ասպատակությունների առջև։

Տարոնի այս իշխանը մի պատերազմի ժամանակ գերի վերցրեց Արքայիկի[8] որդիներին, այսինքն պատրիկ[9] Կրիկորիկի՝ պրոտոսպաթար[10] Աշոտի[11] հոր եղբորդիներին, և իր մոտ արգելափակեց։ Այն ժամանակվա իշխանաց իշխան Սմբատը[12], նամակ գրեց և խնդրեց նույն ամենաերանելի կայսեր, որ նա մարդ ուղարկի Տարոնացու[13] մոտ ազատելու համար իր, Սմբատի հարազատ եղբորորդիներին՝ վերոհիշյալ Արքայիկի որդիներին, որպեսզի նրանք չհանձնվեն ամերմումնիի ձեռքը, քանզի պատրիկ Գրիգորը իշխանաց իշխան Սմբատի ազգականն էր։ Ամենաերանելի կայսր Լևոնը, ընդառաջելով Սմբատի խնդրանքին, ներքինի Սինուտին՝[14] այն ժամանակվա օքսեոս դրոմոսի խարտուլարին[15], այդ և այլ հարցերով ուղարկում է Տարոնի իշխանի, ինչպես նաև Իբերիայի կուրապաղատ Ադրանասերի[16], [նախապես] տալով նրան երկուսի համար պատշաճ ընծաներ։ Սակայն հայ թարգման Թեոդորոսը[17] ամբաստանեց Սինուտին վերոհիշյալ արժանահիշատակ կայսեր առաջ, դրա համար էլ նրա փոխարեն որպես կայսեր պատգամավոր[18] ուղարկվեց Լիվոսի որդի պրոտոսպաթար Կոստանդինը[19], հյուպուրգիայի դոմեստիկոսը[20], այժմյան անթիպատ պատրիկը[21] և մեծ հետերիարխը[22]։ Նա լիազորագրով իրավասու եղավ վերցնել Տարոնի իշխան Կրիկորիկին ուղարկվելիք ընծաները, գնալ Տարոն, իսկ Սինուտին ուղարկել Իբերիայի կուրապաղատ Ադրանասերի մոտ՝ հանձնարարվածը կատարելու համար։ Վերոհիշյալ պրոտոսպաթարը հասնելով Տարոն, Կրիկորիկին հանձնեց կայսեր նրան ուղարկած նվերներն ու նամակը, և վերց-

նելով Տարոնացու խորթ որդուն, որ Աշոտ էր կոչվում, իր հետ մայրաքաղաք բերեց։ Կայսրը վերջինիս շնորհեց պրոտոսպաթարի աստիճան և մեծապես հյուրասիրելով, նույն պրոտոսպաթարի ուղեկցությամբ Աշոտին ճանապարհեց հոր մոտ։ Այստեղ այդ նույն Կոստանդինը, իր հետ վերցնելով Ապոգանեմին[23], Տարոնի իշխան Կրիկորիկի եղբորը, և Արքայիկի երկու որդիներին, գալիս է երանելի կայսեր մոտ, որը նրան [Ապոգանեմին] շնորհում է պրոտոսպաթարի աստիճան և սիրալիր կերպով բազմիցս պատվասիրելով, նորից նույն այդ Կոստանդինի հետ միասին իր երկիրն ուղարկում, հարազատ եղբոր մոտ։

Այս բոլորից հետո վերոհիշյալ Կոստանդինը երկար ժամանակ մնաց Խաղտիքում[24], երբ հրաման ստացավ գնալ Տարոն, վերցնել Տարոնի իշխան Կրիկորիկին և գալ մայրաքաղաք։ Նա այդպես էլ արեց։ Կրիկորիկը մուտք գործեց աստվածապահպան քաղաքը[25], որտեղ արժանացավ մագիստրոսի[26] և Տարոնի զորավարի[27] աստիճանին։ Նրան բնակության համար հատկացվեց տուն, այսպես կոչված «Բարբարոսի տունը»[28], որն այժմ պատկանում է պարակիմոմենոս[29] Վասիլին։ Բացի այդ, նա պատիվ ունեցավ որպես ռոճիկ ստանալ տարեկան տաս լիտր ոսկի, տաս լիտր էլ միլիարիսիա[30], ընդամենը քսան լիտր։ Նա մի տարի անցկացնելով Թագավորանիստ քաղաքում, նույն պրոտոսպաթար Կոստանդինի ուղեկցությամբ առոք փառոք վերադարձավ իր հայրենի երկիրը։

Դրանից հետո Ապոգանեմը նորից գնաց երանելի կայսեր մոտ և նրա կողմից բարձրացավ պատրիկի աստիճանին։ Նա իրավունք ստացավ կնության առնել վերոհիշյալ Կոստանդինի դուստեր[31], և այդ առթիվ խնդրեց նաև տուն և ստացավ «Բարբարոսի տունը»՝ առանց խրիսովուլլի[32]։ Նա հյուրասիրվեց կայսեր կողմից, այնուհետև գնաց, իր երկիրը վերադառնալու և ամուսնական հանդեսը կատարելու մտադրությամբ, բայց իր հայրենի երկիրը վերադառնալուց մի քանի օր հետո վախճանվեց։

Սրա եղբայր Կրիկորիկը նամակ գրեց և թույլտվություն խնդրեց մուտք գործելու Թագավորանիստ քաղաքը, սուրբ կայսեր ձեռքից ստանալու իրեն հասանելիք ռոճիկը և որոշ ժամանակ անցկացնելու աստվածապահպան քաղաքում։ Այդ կապակցությամբ նա խնդրեց նաև, որ բնակության համար իրեն հատկացվի իր եղբոր համար առանձնացված տունը, որը և նրան տրվեց երանելի կայսեր կողմից այն պատճառով, որ [Կրիկորիկը] նոր էր

իրեն հպատակվել, բացի այդ գտնում էր, որ այդ քայլը արևելքի մյուս իշխանավորներին էլ կգրգի նույն պատրաստակամությամբ հպատակվելու հռոմայեցիներին։ Բայց և այնպես, այդ տունը նրան հատկացնելու գործողությունը չհաստատվեց խրիսովուլլ գրությամբ։

Շատ տարիներ անց, երբ հռոմայեցիների կայսրության գահը գտնվում էր երանելի կայսր Ռոմանոսի[33] ձեռքում, այս Կրիկորիկը հայտնեց, որ ինքն ի վիճակի չէ պահելու «Բարբարոսի տունը» և խնդրում էր դրա դիմաց իրեն տրվի Կեյցեննեում[34] մի պրոաստիոն[35] կամ Տաճատինը[36], կամ էլ որևէ մի այլ, ո՛րը որ կայսրը կամենա, այն փաստարկումով, որ երբ հագարացիների կողմից իր երկրի վրա որևէ հարձակում կատարվի, նա իր ընտանիքն ու ունեցվածքը փրկելու տեղ ունենա։ Կայսրը իրերի վիճակին անտեղյակ, ենթադրելով, որ «Բարբարոսի տունը» Տարոնացուն[37] է պատկանում, համաձայն երանելի Լևոնի կայսերական խրիսովուլլի, տվեց նրան Գրիգորասի[38] պրոաստիոնը Կեյցեննեյում և իբր թե դրա դիմաց ստացավ [Բարբարոսի] տունը, բայց նա ևս իր հերթին պրոաստիոնի հատկացումը չվավերացրեց խրիսովուլլով։

Դրանից հետո Տարոնացու եղբորորդի Թոռնիկը, Ապողանեմի որդին, նույն կայսեր նամակ գրեց, թե «ամենաերանելի կայսր Լևոնը «Բարբարոսի տունը» նվիրել էր իմ հորը։ Իմ հոր մահից հետո, այն պատճառով, որ ես դեռ փոքրահասակ էի և որբ, իմ հորեղբայրը տիրացավ [իմ հոր] տան, շարունակ ինձ խոստումներ տալով, թե երբ ես մեծանամ, կստանամ իմ հայրենական տունը։ Բայց այժմ, ինչպես իմացա, իմ հորեղբայրը այդ տունը հանձնել է քո մեծությանը և դրա դիմաց ստացել Գրիգորասի պրոաստիոնը Կեյցեննեում»։

Կայսեր դեպի Տարոնի իշխանը ցուցաբերած սիրալիրությունը Վասպուրականի իշխան Կակիկի[39], Իբերիայի կուրապաղատ Ադրանասեհի[40] և իշխանաց իշխան Աշոտիկի[41] նախանձը գրգռեց, նախանձ, որ գնալով բորբոքվեց։ Նրանք բողոքեցին կայսեր, թե ինչո՞ւ համար Տարոնացին միայն պիտի կայսերական ռոճիկ ստանա, իսկ իրենք բոլորը՝ ոչ։ Նրանք հարց էին տալիս. «Նա մեզանից ի՛նչ ավել ծառայություններ է մատուցում, և կամ մեզանից ի՞նչով է ավել օգուտ տալիս հռոմայեցիներին։ Հետևաբար պետք է, որ կա՛մ մենք էլ նրա նման ռոճիկ ստանանք, կա՛մ թող նա էլ չստանա այդ պարգևը»։ Իսկ երանելի կայսր Ռոմանոսը

գրավոր պատասխանեց նրանց, թե Տարոնացուն տրվող ռոճիկը ինքը չի սահմանել, հետևաբար ինքը իրավասու չէ դադարեցնելու դրա վճարումը։ Այն [սահմանել է] ամենաերանելի [Լևոն] կայսրը և արդարացի բան չէ չեղյալ հայտարարել անցյալում իշխած կայսրերի [սահմանածները]։ Բայց նա դրեց նույն Տարոնացուն, հայտնեց նրան վերոհիշյալ մարդկանց բողոքի և նեղացած լինելու պատճառի մասին։ Իսկ '[Տարոնացին] հայտնեց, որ ինքն ի վիճակի չէ նրան տալ ո՛չ ոսկի, ո՛չ էլ արծաթ, բայց խոստացավ ընդունված սովորության համաձայն ուղարկվող նվերներից բացի տալ մինչև տաս լիտր արժողությամբ հանդերձներ և պղնձե սպասներ, մի բան, որ նա տվեց երեք կամ չորս տարի, որից հետո հայտնեց, թե ի վիճակի չէ տալ այդ պախտը[42]։ Հակառակ դրան, պահանջում էր ռոճիկը կամ պռույդը[43] այն չափով, ինչ ստանում էր ամենաերանելի կայսր Լևոնի օրոք, հակառակ դեպքում նա լրիվ հրաժարվում էր դրանից։ Վերոհիշյալ երանելի կայսր Ռոմանոսը, Կակիկին, կուրապաղատին և մյուսներին գայթակղության առիթ չտալու համար, ռոճիկը կտրեց։ Բայց կարծես նրա սիրտն առնելու համար հետագայում նրա որդուն՝ Աշոտին պատրիկի աստիճան շնորհեց, երբ նա քաղաք էր եկել և պետք եղածի պես հյուրասիրելուց հետո իր հայրենիքն ուղարկեց։

Մագիստրոս Կրիկորիկի մահից հետո, Ապոգանեմի որդի Թոռնիկը հայտնեց, որ շատ է ցանկանում գալ [քաղաք] կայսրին տեսնելու։ Այդ կապակցությամբ կայսրն ուղարկեց պրոտոսպաթար և թարգման Կրինիտեսին[44], որը և հիշյալ Թոռնիկին քաղաք բերեց։ Այդ նույն Թոռնիկին կայսրը բարձրացրեց պատրիկի աստիճանին։ Թոռնիկը «Բարբարոսի տան» նկատմամբ պահանջ էր ներկայացնում, բայց պատասխան ստացավ, թե իր հորեղբայրը դրա դիմաց Կելցենեում պրոաստիոն է ստացել։ Նա ասաց, որ իր հորեղբայրը իրավունք չուներ իր հայրենական ժառանգությունը փոխանակության ենթարկել և պահանջում է կա՛մ տունը, կա՛մ էլ պրոաստիոնը, հակառակ դեպքում նա երկուսն էլ զիջում էր կայսեր, որպեսզի իր հորեղբորորդիների ձեռքում չլինեն։ Այդ պատճառով կայսրը վերցրեց պրոաստիոնը (ծերունի Տարոնացին արդեն մահացել էր), բայց տունը դրա դիմաց չտվեց, որովհետև, ինչպես վերևում ասվել է, սրանց մասին ոչ մի խրիսովուլլ տրված չի եղել։

Դրանից հետո թագավորանիստ քաղաքը ժամանեց Պանդրատը[45], մագիստրոս Կրիկորիկ Տարոնացու անդրանիկ որդին և կայ-

սեր կողմից բարձրացավ պատրիկի աստիճանին։ Նա դարձավ նաև Տարոնի զորավար։ Նա խնդրեց կայսերական ընտանիքից կին առնել, իսկ կայսրը նրան կնության տվեց մագիստրոս Թեոփիլակտոսի[46] քրոջ։ Ամուսնությունից հետո նա կտակ գրեց որտեղ հայտնում էր, թե «եթե այս կնոջից ինձ երեխաներ ծնվեն, թող նրանք տիրեն իմ ամբողջ երկրին, որպես [իրենց] հայրենական ժառանգություն»։ Նա խնդրեց կայսեր, որ իրեն տրվի Գրիգորասի պրոաստիոնը, որպեսզի այնտեղ բնակվի պատրիկիան. իր կինը, որի մահից հետո այդ պրոաստիոնը թող նորից վերադարձվի նրա թագավորությանը։ Կայսրը դրան էլ ընդառաջեց և բազում նվերներով նրան կնոջ հետ ուղարկեց նրա երկիրը։ Մագիստրոս Կրիկորիկի որդիները, այն է պատրիկ Պանգրատը և պատրիկ Աշոտը շատ էին նեղում ու ճնշում պատրիկ Թոռնիկին, իրենց հարազատ հորեղբորորդուն, որ չկարողանալով դիմանալ նրանց թշնամությանը, նամակ գրեց կայսեր, խնդրելով, որ վերջինս վստահելի մարդ ուղարկի և վերցնի իր երկիրը, իսկ իրեն, իր կնոջ և երեխային թույլ տա լինել կայսեր մոտ։ Կայսրն ուղարկեց պրոտոսպաթար և թարգման Կրինիտեսին, որպեսզի խնդիրքի համաձայն վերցնի [երկիրը] և [Թոռնիկին] ուղեկցի աստվածապահպան քաղաքը։ Բայց երբ Կրինիտեսը այդ երկիրը հասավ, [Թոռնիկն] արդեն վախճանված էր, իր մահից առաջ կտակ թողնելով, համաձայն որի, իր ամբողջ երկիրը կտակում էր հոռոմայեցիների կայսեր. նա [խնդրում] էր նաև, որ իր կինն ու երեխան լինեն կայսեր մոտ։ Կայսրը [Թոռնիկի կնոջ] իր մոտ լինելուց հետո, նրա բնակության համար հատկացրեց ժամանակին խաղտիքի կոմմերկիարիոս[47] դարձած պրոտոսպաթար Միքայելին պատկանող Պսոմաթեոսի[48] վանքը։ Ահա վերոհիշյալ Կրինիտեսը կայսեր կողմից նորից է ուղարկվում ստանալու Ապոգանեմի երկիրը, այսինքն պատրիկ Թոռնիկի բաժինը։ Տարոնացու որդիները, այսինքն վախճանված [Թոռնիկի] հորեղբորորդիները, դիմեցին [կայսեր], առաջարկելով նրան զիջել Ոլնուտը[49], բայց իրենց ձեռքում պահեն հորեղբորորդու երկիրը, պնդելով, որ միանգամայն անհնարին կլինի իրենց գոյությունը պահպանել, եթե կայսրը սեփականացնի հորեղբորորդու երկիրը։ Կայսրն իրեն հատուկ բարությամբ ընդառաջ գնաց նրանց խնդրանքին, տվեց Ապոգանեմի՝ իրենց հորեղբորորդու երկիրը, իսկ ինքը վերցրեց Ոլնուտն իր ամբողջ շրջակայքով։ Այսպիսով, ահա, ամբողջ Տարոն երկիրը երկու մասի բաժանվեց, նրա մեկ կեսը գտնվում էր մագիստրոս

*Կրիկորիկի որդիների ձեռքում, իսկ մյուս կեսը նրանց հորեղբորորդիների՝ պատրիկ Ապոզանեմի [որդիների]։*

### ԳԼՈՒԽ 44[1]

## ԱՊԱԽՈՒՆԻ ԵՐԿՐԻ[2], ՄԱՆՑԻԿԻԵՐՏ ԱՄՐՈՑԻ[3], ՊԵՐԿՐԻԻ[4], ԽԼԻԱՏԻ, ՈՐ ԵՎ ԽԱԼԻԱՏ[5], ԱՐՃԵՍԻ[6], ՏԻՎԻԻ[7], ԽԵՐՏԻ[8], ՍԱԼԱՄԱՍԻ[9], ԵՎ ՑԵՐՄԱՑՈՒԻ[10] ՄԱՍԻՆ

*Իշխանաց իշխան Աշոտից[11] առաջ (սա Պարսկաստանի ամիրա Ապոսատայի[12] կողմից գլխատված իշխանաց իշխան Սմբատի[13] հայրն էր, Սմբատի, որն ունեցավ երկու որդի՝ Աշոտին[14], որն իրենից հետո դարձավ իշխանաց իշխան, և Ապասակին[15], որն հետագայում մագիստրոսի աստիճանին արժանացավ), այդ երեք ամրոցները, այսինքն Պերկրին, Խալիատը և Արղեսը, գտնվում էին Պարսկաստանի տիրապետության տակ։*

*Իշխանաց իշխանը նստում էր Մեծ Հայքում՝ Կարս ամրոցում[16] և տիրում էր վերոհիշյալ երեք ամրոցներին, այն է Պերկրիին, Խալիատին և Արզեսին, ինչպես և Տիվիին, Խերտին և Սալամասին։*

*Մանցիկիերտին էր տիրում Ապելվարդը[17], որ գտնվում էր իշխանաց իշխան Աշոտի՝ իշխանաց իշխան Սմբատի հոր իշխանության ներքո։ Իշխանաց իշխան Աշոտը այս Ապելվարդին տվեց նաև Խլիատ ամրոցը, Արղեսը և Պերկրին[18], քանզի արևելքի բոլոր շրջանները գտնվում էին վերոհիշյալ իշխանաց իշխան Աշոտի՝ իշխանաց իշխան Սմբատի հոր ձեռքում։ Ապելվարդի մահից հետո նրա տիրույթներն անցան Ապելխամիտի՝[19] [Ապելվարդի] հարազատ որդու ձեռքը, իսկ Ապելխամիտի մահից հետո վերջինիս իշխանության տիրացավ նրա անդրանիկ որդի Ապոսևատան[20]։ Իշխանաց իշխան Սմբատի՝ Պարսկաստանի ամիրայի կողմից սպանվելուց հետո, [Ապոսևատան] իրեն համարեց Մանցիկիերտ ամրոցի և մյուս ամրոցների ու շրջանների տերն ու տիրակալը և անկախացավ։ Նա իր մյուս երկու եղբայրներ Ապոլեսփուետի[21] և Ապոսելմիսի[22] հետ [ստիպված եղավ] ենթարկվել կայսեր, (քանզի սխոլերի գոմեստիկոսը[23] համառ սլայքար էր մղել ամրոցների դեմ, ասպատակել ու ավերել նրանց պատկանող շրջանները), հռոմայեցիների կայսեր վճարելով իրենց ամրոցների և շրջանների*

համար նաև հարկ։ Այս երեք ամրոցները վերոհիշյալ իշխանաց իշխան Աշոտի՝ Սմբատի հոր, երկրորդ Աշոտի և մագիստրոս Ապասակի պապի ժամանակներից սկսյալ մինչև երկրորդ Աշոտի՝ իշխանաց իշխանի ժամանակ գտնվում էին իշխանաց իշխանի գերիշխանության ներքո, և հարկ էին վճարում նրան։ Բայց Մանցիկիերտ ամրոցը, Ապախունի երկիրը, Կորին[24] և Խարկան[25] ևս գտնվում էին իշխանաց իշխանի գերիշխանության և տիրապետության ներքո, մինչև այն ժամանակ, երբ Մանցիկիերտի ամիրա Ապոսևատան իր երկու եղբայրներ Ապոլեսֆուետի և Ապոսելմիսի հետ հպատակություն հայտնեցին կայսեր, իրենց ամրոցների և շրջանների համար նրան վճարելով հարկ։ Քանի որ իշխանաց իշխանը հռոմայեցիների կայսեր ծառան է համարվում, որովհետև [կայսրն է] նշանակում նրան և ընձեռում այդ պատիվը, ապա պարզ է, որ նրա տիրապետության տակ գտնվող ամրոցները, քաղաքներն ու գյուղերը հռոմայեցիների կայսեր [սեփականությունն] են։

Երբ պարսից ամիրա Ապոսատան գերի վերցրեց և գլխատեց Մեծ Հայքի իշխանաց իշխան Սմբատին, Մանցիկիերտ ամրոցում նստող Ապոսևատան գրավեց Խալիատ ամրոցը, Պերկրի ամրոցը և Արղես քաղաքը։

Ապոսևատայի երկրորդ եղբայրը՝ Ապոլեսֆուետը, և նրա [հոր]եղբորորդի[26] և որդեգիր Ախմետը[27] գրավեցին Խլիատ ամրոցը, Արզես ամրոցը և Ալցիկե[28] ամրոցը։ Նրանք ևս հպատակություն հայտնեցին հռոմայեցիների կայսեր, անցան նրա գերիշխանության ներքո և իրենց եղբայր Ապոսևատայի նման իրենց ամրոցների և շրջանների համար հարկ էին վճարում։

Ապոսևատայի և Ապոլեսֆուետի երրորդ եղբայրը՝ Ապոսելմիսը տիրում էր Ցերմացու ամրոցին և նրա շրջակայքին. նա ևս հպատակություն հայտնեց հռոմայեցիների կայսեր և, ինչպես իր եղբայր Ապոսևատան և իր երկրորդ եղբայր Ապոլեսֆուետը, հարկ էր վճարում։

Ապոսևատայի մահից հետո Մանցիկիերտը և նրա շրջաններն ու ամբողջ տիրապետությունն անցավ Ապոսևատայի որդի Աբդեռախիմի ձեռքը։ Աբդեռախիմի մահից հետո Մանցիկիերտ ամրոցին և վերոհիշյալ բոլոր շրջաններին տիրացավ Ապոսևատայի երկրորդ եղբայր, Աբդեռախիմի հորեղբայր Ապոլեսֆուետը։ Իսկ սրա մահից հետո Մանցիկիերտին և վերոհիշյալ բոլոր շրջաններին

*տիրացավ Ապոսևատայի և Ապոլեսֆուետի երրորդ եղբայր Ապոսելմիսը[29]։*

*Ապոսևատայի որդիներն էին Աբդեռախիմը[30] և Ապելմուզեն[31]։ Ապոլեսֆուետի որդեգիրը և [հոր]եղբորորդին Ախամետն էր։ Նա, Ապոլեսֆուետը, չուներ որդի և որդեգրել էր խորթ որդի և [հոր]եղբորորդի Ախամետին։*

*Ապոսելմիսի որդին էր Ապելվարդը[32], Մանցիկիերտի ներկա տիրակալը։*

*Ապոսևատան իր մահից հետո թողեց որդի՝ Աբդեռախիմին, որը դարձավ ամիրա։ Նրա մյուս որդին՝ Ապելմուզեն դեռ շատ փոքր էր, դրա համար նա իր հոր և եղբոր իշխանության մասնակից դառնալու գործում հաշվի չառնվեց։*

*Առաջին եղբայր Ապոսևատան նստում էր Մանցիկիերտ ամրոցում և տիրում էր, ինչպես ասվեց, Ապախունիի, Կորիի և Խարկայի շրջաններին, որոնց համար հարկ էր վճարում հռոմայեցիների կայսեր։ Սրա մահից հետո տիրեց նրա որդի Աբդեռախիմը. նա ևս վճարում էր վերոհիշյալ հարկը, որովհետև, ինչպես ասվեց, նրա եղբայր Ապելմուզեն շատ փոքր էր։*

*Աբդեռախիմի մահից հետո, այն պատճառով, որ նրա եղբայր Ապելմուզեն որպես մանկահասակ նկատի չառնվեց, Մանցիկիերտ ամրոցին և նրա ենթակա նշված շրջաններին տիրացավ Ապոսևատայի երկրորդ եղբայր վերոհիշյալ Ապոլեսֆուետը, Աբդեռախիմի և վերջինիս եղբոր, իր մանկահասակության համար նկատի չառնված Ապելմուզեի հորեղբայրը[33]։*

*Ապոլեսֆուետի մահից հետո Մանցիկիերտ ամրոցին և վերոհիշյալ շրջաններին տիրացավ Ապոսևատայի երրորդ եղբայր Ապոսելմիսը, իսկ վերոհիշյալ Ախամետը, այն է Ապոլեսֆուետի եղբորորդին և որդեգիրը, Ապոլեսֆուետի գիտությամբ և համաձայնությամբ տիրում է Խլիատին, Արզեսին և Պերկրիին, որովհետև Ապոլեսֆուետը, ինչպես ասվեց, որդի չուներ, և այս Ախամետին, իր եղբորորդուն և որգեգրին նշանակել էր իր ամբողջ կարողության, ամրոցների ու շրջանների ժառանգորդը։*

*Ապոսելմիսի մահից հետո Մանցիկիերտ ամրոցին և նրա շրջակայքին տիրացավ նրա եղբայր Ապելվարդը, իսկ Ախամետը՝ Խլիատ, Արզես, և Ալցիկե ամրոցներին։*

*Ախամետը ևս կայսեր ծառան էր, ինչպես և վերևում ասվեց նա հարկ էր վճարում [կայսեր] և՛ իր, և՛ իր հորեղբայր Ապոլեսֆուետի համար։ Սակայն Ապելվարդը նենգությամբ ու խաբեու-*

*թյամբ սպանեց նրան ու խլեց նրա երեք ամրոցները՝ Խլիատը, Արզեսը և Ալցիկեն։ Կայսրը պարտավոր է այս [ամրոցները] ետ վերցնել, որպես իրեն պատկանող, որովհետև վերոհիշյալ ամրոցներն ու շրջանները երբևիցե չեն գտնվել պարսից տիրապետության, կամ էլ ամերմումնիի տիրապետության ներքո։ Նրանք, ինչպես ասվեց, տեր Լևոն կայսեր ժամանակ գտնվում էին իշխանաց իշխան Սմբատի գերիշխանության ներքո, որից հետո անցան երեք եղբայրներ, ամիրաներ Ապոսևատայի, Ապոլեսֆուետի և Ապոսելմիսի ձեռքը։ Ահա վերջիններիս օրոք է, որ նրանք ենթարկվեցին, հարկադրվեցին և անցան հռոմայեցիների կայսեր գերիշխանության ներքո։*

*Այս երեք ամրոցները՝ Խլիատը, Արղեսը և Պերկրին եթե գտնրվեն կայսեր ձեռքում, ապա պարսկական զորքը Ռոմանիայի դեմ դուրս գալ չի կարող, որովհետև ամրոցները գտնվելով Ռոմանիայի և Հայաստանի միջև՝ պատնեշի և զորակայանի դեր են խաղում։*

ԳԼՈՒԽ 45

# ԻԲԵՐՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*Իբերների կուրապաղատները, ցանկանալով իրենց վեհացնել, ասում են, թե սերում են թագավոր Դավիթ մարգարեի հարճից՝ Ուրիայի [կին Բերսաբեից]։ Նրանք գտնում են, թե Դավթի՝ նրանից ունեցած երեխաներից են սերում և որ իրենք Դավիթ թագավորի և մարգարեի ազգականներն են, հետևաբար և ամենասուրբ աստվածածնի, քանի որ վերջինս Դավթի սերնդից է[1]։ Այդ է պատճառը, որ իբերների մեծամեծները անխափան ամուսնանում են իրենց արյունակից [աղջիկների] հետ[2], կարծելով, որ այդպիսով հետևում են վաղեմի սովորությանը։ Նրանք ասում են, թե Երուսաղեմից են եկել, և պատմում, որ [աստվածային] տեսիլքի [առաջարկությամբ] այդտեղից դուրս են եկել և հաստատվել պարսից երկրում, այսինքն այն երկրում, ուր այժմ բնակվում են։ Երուսաղեմից դուրս եկողները այն Դավիթն էր և նրա եղբայր Սպանդիատը[3]։ Ինչպես իրենք են պատմում, աստված Սպանդիատին պարգևել էր անխոցելի մարմին և մարտում, բացի սրտից, նրա մարմինը սրից չէր վախենում, իսկ պատերազմների ժա-*

մանակ նա [իր սիրտը] պաշտպանում էր ինչ որ ծածկոցով։ Այդ պատճառով պարսիկները վախենում ու սարսափում էին նրանից և նա հաղթեց նրանց, տիրեց նրանց և իր ազգակից իբերներին բնակեցրեց այդ դժվարամատույց շրջաններում, որոնց այժմ տիրում են, և ժամանակի ընթացքում բազմանալով, ժողովուրդ դարձան։ Երբ Հերակլիոս կայսրը հարձակվեց Պարսկաստանի վրա[4], [իբերները]միացան նրան և նրա հետ արշավանքի դուրս եկան։ Հռոմայեցիների կայսր Հերակլիոսի սփռած սարսափն էր պատճառը և ոչ թե [իբերների]սեփական ուժն ու կարողությունը, որ նրանք իրենց ենթարկեցին պարսիկների բազմաթիվ քաղաքներ ու շրջաններ։ Երբ մեկ անգամ Հերակլիոս կայսրը պարտության մատնեց պարսիկներին և ոչնչացրեց նրանց իշխանությունը, ապա դրանից հետո շատ դյուրին էր պարսիկներին հաղթահարելն ու ընկճելը ոչ միայն իբերների համար, այլև սարակինոսների։ Այն պատճառով, որ ինչպես իրենք են ասում, ծագում են Երուսաղեմից, շատ հավատացյալ են և [պատվում են] մեր տեր Հիսուս Քրիստոսի գերեզմանը. ժամանակ առ ժամանակ նրանք սուրբ քաղաքի պատրիարքին և այնտեղի քրիստոնյաներին առատ դրամ են ուղարկում[5]։

Վերոհիշյալ Դավիթը՝ Սպանգիատի եղբայրը, ունեցավ Պանդրատ անունով մի որդի։ Պանգրատն ունեցավ որդի՝ Աշոտին։ Աշոտն ունեցավ որդի՝ Ադրանասեին[6], որը հռոմայեցիների քրիստոսասեր կայսր Լևոնի[7] կողմից արժանացավ կուրապաղատի պատվին։ Սպանդիատը՝ վերոհիշյալ Դավթի եղբայրը վախճանվեց անզավակ։ Երուսաղեմից գաղթելուց և իրենց այժմյան երկիրը գալուց և բնակվելուց մինչև օրս անցել է 400 կամ 500 տարի[8], այժմ աշխարհի արարչագործության 6460 թվականն է, ինդիկտիոնի 10-րդ տարին[9], քրիստոսասեր և ծիրանածին կայսրեր Կոստանդինի և Ռոմանոսի թագավորության ժամանակը[10]։

Քրիստոսասեր, ծիրանածին և երանելի կայսր Լևոնը, լսելով, որ սարակինոսները, գալով Ֆասիանե[11] կոչված շրջանը, այնտեղի եկեղեցիները բերդերի վերածեցին, Արմինիակների [բանակաթեմի][12] զորավար պատրիկ Լալակոնին[13], Կոլոնիայի[14] զորավարին ուղարկեց Միջագետքի[15] զորավարի և Խաղտիքի[16] զորավարի հետ. որոնք քանդեցին այդ բերդերը, ազատեցին եկեղեցիները և ավարի առան ամբողջ Ֆասիանեն, որ այն ժամանակ գտնվում էր սարակինոսների տիրապետության տակ։ [Կայսրը]այնուհետև սխոլերի դոմեստիկոս մագիստրոս Կատակալոնին[17] ուղարկեց, որը

գալով Թեոդոսուպոլսի ամրոցը[18], ավարի առավ նրա շրջակայքը, ապա նաև նույն ձևով ավերելով Ցասիանե երկիրը և նրա ամրոցները, վերադարձավ՝ սարակինոսներին մեծ վնաս հասցնելով։ Իսկ տեր Ռոմանոս կայսեր թագավորության ժամանակ մագիստրոս Հովհաննես Կուրկուասը, արշավելով Տիվիոն ամրոցի վրա, ճանապարհին ամբողջությամբ ամայացրեց Ցասիանե երկիրը, որպես սարակինոսներին ենթակա[19]։ Բայց առաջին անգամ խաղտիքի զորավարն էր, վերոհիշյալ մագիստրոս Հովհաննեսի եղբայր պատրիկ Թեոֆիլոսը[20], որ ավարի առավ Ցասիանե երկիրը, որն այն ժամանակ նույնպես գտնվում էր սարակինոսների տիրապետության տակ։ Մինչև Թեոդոսուպոլսի հետ կատարված դեպքը, Ցասիանե երկրում ոչ մի բնակավայր գոյություն չուներ, ոչ էլ Ավնիկ[21] ամրոցում։ Իբերները մշտապես բարեկամական հարաբերությունների մեջ էին թեոդոսուպոլսեցիների, ավնիկցիների, մանցիկիերտցիների և ամբողջ պարսից երկրի հետ, բայց Ցասիանեում նրանք երբևիցե շրջանների չեն տիրացել։

Տեր Լևոն և տեր Ռոմանոս կայսրերը, ինչպես և մեր թագավորությունը բազմիցս ջանացել էին վերցնել Կեցեոն[22] ամրոցը և այնտեղ մտցնել տաքսատոսներ[23], որպեսզի Թեոդոսուպոլիսը պարեն չստանա այնտեղից։ Նրանք հավաստիացնում էին կուրապաղատին և նրա եղբայրներին[24], որ [հռոմայեցիների կողմից] Թեոդոսուպոլիսը գրավվելուց հետո, նրանց կվերադարձվի [Կեցեոն] ամրոցը, բայց իբերները, չընդունեցին այդ առաջարկը, որովհետև բարեկամական հարաբերությունների մեջ էին Թեոդոսուպոլսի հետ և դեմ էին Թեոդոսուպոլիս ամրոցի գրավմանը։ Նրանք պատասխանեցին տեր Ռոմանոսին և մեր թագավորությանը, որ եթե այդ բանն անենք, մենք կզրկվենք մեր հարևանների, այն է՝ Աբաղգիայի մագիստրոս էքսուսիաստեսի[25], վասպուրականիտեսի[26] և հայերի իշխանների հարգանքից։ Նրանք պիտի ասեն, թե կայսրը չի վստահում իբերներին, կուրապաղատին և նրա եղբայրներին, չի հավատում նրանց. դրա համար է, որ նրանց ձեռքից ուզում է ամրոցը վերցնել։ Ավելի լավ է, որ կայսրը տուրմարխ[27] կամ ինչ որ վասիլիկոս[28] ուղարկի, թող նա նստի Կեցեոն ամրոցում և հետևի։ Նրանք [կայսրից] պատասխան ստացան, թե ինչ օգուտ դրանից, որ նա տուրմարխ կամ վասիլիկոս ուղարկի։ Տուրմարխը կամ վասիլիկոսը ընդամենը տաս կամ տասներկու հոգով կարող է մտնել և պիտի նստի այն կացարանում, որ դուք եք [նրան] տրամադրելու։ Եվ քանի որ Թեոդոսուպոլիս ամրոցը տա-

նող ճանապարհները շատ են, նրանք չեն կարող ամրոցից հետեվել այն կարավաններին[29], որոնք մուտք են գործում Թեոդոսուպոլիս ամրոցը։ Չէ՞ որ այդ կարավանները կարող են գիշերով մուտք գործել Թեոդոսուպոլիս, և իրենք այդ մասին լրիվ անտեղյակ կլինեն։ Իբերները չէին ուզում, որ գրավվի Թեոդոսուպոլիսը, այլ ընդհակառակը, ուզում էին, որ նա պարեն ստանա, ահա դրա համար է, որ նրանք չընդառաջեցին և չտվեցին Կեցեոն ամրոցը, հակառակ որ [կայսրից] գրավոր երդում ստացան, թե Թեոդոսուպոլսի գրավումից հետո այդ ամրոցը իրենց կվերադարձվի։

Իբերները ոչ մի անգամ մտադրություն չեն ունեցել ավարի առնել կամ գերեվարել Թեոդոսուպոլիս ամրոցի շրջակայքը, նրա գյուղերը, Ավնիկ ամրոցը և նրա շրջակա գյուղերը, կամ Մանցիկիերտ ամրոցը և նրա տիրապետության շրջանները։

Կուրապաղատը հավակնություններ ունի Ֆասիանեի շրջանների վրա։ Նա ուզում է ամբողջ Ֆասիանեն և Ավնիկ ամրոցը, պատճառաբանելով, որ այդ մասին ունի կայսր տեր Ռոմանոսի և մեր թագավորության խրիսովուլլները։ Նա իր ազատ՝ պրոտոսպաթար Ջուրվանելիի[30] հետ մեզ ուղարկեց այդ [խրիսովուլլների] պատճենները, բայց մենք, քննության առնելով դրանք, եկանք այն եզրակացության, որ նրանց վրա նա հենվել չի կարող։ Մեր աներոջ[31] խրիսովուլլի բովանդակությունն է. նույն կուրապաղատը խոստանում է, և իր խոստումը յուրով ձեռամբ գրում ու երդումով հաստատում, որ հավատարիմ կմնա մեր թագավորությանը, կպայքարի մեր թշնամիների դեմ և կպաշտպանի մեր բարեկամներին, որ Արևելքը դաշնակից կդարձնի մեր թագավորությանը, կգրավի ամրոցներ և մեր օգտին մեծագործություններ կկատարի։ Մեր աները խոստացավ, որ եթե [կուրապաղատը] հավատարիմ ծառայի և երախտագետ մնա, ապա և ինքը՝ [կուրապաղատը], և նրա ժառանգները անսասան կտիրեն իշխանության, նրա տիրապետության սահմանները կմնան անփոփոխ, նախկին կայսրերի [կնքած] համաձայնությունը կպաշտպանվի, այն չի դրժվի, [կայսրը] չի խանգարի նրան ավերել Թեոգոսուպոլիսը և թշնամիների մնացած ամրոցները և այն դեպքում, եթե նրանք կպաշարվեն միայն [կուրապաղատի] կողմից, և այն ժամանակ, երբ [այդ գործն անեն] մեր զորքերը։ Ահա այս է խրիսովուլլների բովանդակությունը, որից կուրապաղատը ամենևին էլ չի կարող հանգել այլ եզրակացությունների։ Մեր աներոջ խրի-

*սովույթը վկայում է, որ մենք պաշտպանում ենք նրա տիրապետության վաղեմի սահմանների ամբողջականությունը, որ, եթե կարողություն ունենա, կամ մենակ, կամ մեր զորքի հետ թող պաշարի և կործանի Թեոդոսուպոլիսը և թշնամիների մնացած ամրոցները, բայց ամենևին չի ասված, որ նա կարող է նրանց լիակատար տերն ու տիրականը դառնալ։ Ինչ վերաբերում է մեր թագավորության տված խրիսովուլլին, ապա դրա բովանդակությունն այն է, որ [կուրապաղատը] կամ նրա եղբորորդի մագիստրոս Ադրանասեն[32], սեփական ուժով ինչքան որ հագարացիներին պատկանող շրջաններ կարողանա իրեն ենթարկել, կամ ապագայում կենթարկի, ապա թող դրանց տերն ու տիրականը դառնա։ Բայց որովհետև նա սեփական ուժով ո՛չ Թեոդոսուպոլիսը կործանեց, ո՛չ Ավնիկը, ո՛չ Մաստատոնը[33], ապա նա իրավունք չունի դրանց վրա տիրելու, քանի որ դրանք էրաքս, այն է Ցասխս[34] գետից այն կողմն են գտնվում, որովհետև Ավնիկ ամրոցը մինչև օրս էլ ինքնիշխան է և անկախ, ունի սեփական ամիրա, և որ մեր թագավորության զորքը բազմիցս ավարառել է այն։ Նույնպես և սպաթար[35] Հովհաննեսը, զորավար Արրավոնիտեսը, վերջերս Թեոդոսուպոլսի զորավար նշանակված պատրիկ Թեոֆիլոսը և մնացած զորավարները սաստիկ ավարառության և գերեվարության ենթարկեցին [Թեոդոսուպոլիսը], մոխրի վերածեցին նրա գյուղերը, իսկ կուրապաղատը ոչ մի անգամ ավարի չառավ այն։ Բայց երբ [Թեոդոսուպոլսի] գյուղերն ավերվեցին մեր թագավորության կողմից,ահա այն ժամանակ իբերները մտան ու տիրեցին նրանց և այդ բանի հիման վրա ուզում են տիրել ամրոցին։ Զորավար պատրիկ Թեոֆիլոսը բազմիցս դիմեց ամիրայինվերջինս տեսնելով, որ փրկության ոչ մի հույս չի մնացել, հպատակվեց[36], համաձայնվեց դառնալ մեր թագավորության ծառան և որպես պատանդ տվեց իր որդուն։ Ինչ վերաբերում է Մաստատոնին, ապա այն պատկանում էր Թեոդոսուպոլսին։ Մագիստրոս Հովհաննեսը յոթ ամիս պաշարել էր Թեոդոսուպոլիսը և չէր կարողացել գրավել այն, դրա համար զորք ուղարկեց և գրավեց Մաստատոն ամրոցը և այնտեղ հաստատեց պրոտոսպաթար Պետրոնաս Բոյիլասին[37], որն այն ժամանակ Նիկոպոլսի[38] կատապանն[39] էր։ Պանգրատ մագիստրոսը[40], որ նույն մագիստրոս [Հովհաննեսի] հետ միասին արշավել էր Թեոդոսուպոլսի վրա, երբ որոշեց հեռանալ, խնդրեց [Հովհաննեսին], որ [Մաստատոն] ամրոցը իրեն տա, գրավոր երդում տալով նրան, որ ինքն է դրան*

տիրելու, այն ոչ մի դեպքում չի զիջի սարակինոսներին։ [Հովհաննեսը] հավատաց վերոհիշյալ Պանգրատի երդումին, քանի որ նա քրիստոնյա էր, մեր թագավորության ծառան, և տվեց նրան [Մաստատոնը]։ Բայց նա նորից զիջեց այն թեոդոսուպոլսեցիներին։ Բայց երբ գրավվեց Թեոդոսուպոլիսը, իբերները մտան [Մաստատոն] և տիրացան դրան։ Ահա պարզ է, որ [իբերները] ո՛չ Մաստատոն ամրոցը և ո՛չ էլ Ավնիկը պահանջելու իրավունք ամենևին չունեն, բայց որովհետև կուրապաղատը մեր հավատարիմ և հլու ծառան է և բարեկամը, ահա նրա խնդիրքին [ընդառաջեցինք], որ Ֆասիանեի սահմանը էրաքս, այն է Ֆասիս գետը դառնա, ձախ կողմում դեպի Իլլիրիա[41] տարածվող շրջաններին տիրեն իբերները, իսկ աջ կողմում մինչև Թեոդոսուպոլիս ընկած շրջանները, ամրոցները և վայրերը գտնվեն մեր թագավորության տիրապետության ներքո, և գետը լինի երկուսի միջև սահման։ Երանելի Հովհաննես Կուրկուասը իր կենդանության ժամանակ, երբ այդ մասին հարց տվին, պատասխանեց, թե ձեռնտու է, որ գետը լինի սահման։ Եթե հարցին արդար մոտենանք, ապա կուրապաղատը ոչ մի իրավունք չունի տիրելու գետի այս կամ այն կողմին, քանի որ Թեոդոսուպոլսի այդ բոլոր շրջանները մեր թագավորության զորքերը գրավեցին և հրդեհեցին, իսկ իբերները ոչ մի անգամ առանց մեր զորքին [միանալու] առանձին արշավանքի դուրս չեն եկել և ավարի չեն առել Թեոդոսուպոլիսը։ [Ընդհակառակը], նրանք միշտ բարեկամ են համարել և առևտուր արել [թեոդոսուպոլսեցիների] հետ, խոսքով ցանկանում էին, որ Թեոդոսուպոլիսն ընկնի, բայց իրականում երբեք էլ չեն ցանկացել, որ այն գրավվի։ Բայց մեր թագավորությունն, ինչպես ասվեց, սեր տածելով դեպի կուրապաղատը, համաձայնվեց, որ էրաքս, այն է Ֆասիս գետը դառնա երկուսի միջև սահման։ [Իբերները] պարտավոր են բավարարվել իրենց ունեցած տիրույթներով և ավել բան չպահանջեն։

ԳԼՈՒԽ 46

## ԻԲԵՐՆԵՐԻ ԾՆՆԴԱԲԱՆՈՒԹՅԱՆ ԵՎ ԱՐՏԱՆՈՒՋ ԱՄՐՈՑԻ ՄԱՍԻՆ[1]

Պանգրատը, Դավիթը՝ Մամպալիս[2], որ թարգմանաբար նշանակում է ամենասուրբ, իբերացի մեծ Սմբատի որդիներին էին։

Արտանուջը վիճակ ընկավ Պանգրատին, իսկ Դավթին՝ մի այլ երկիր: Պանգրատն ունեցավ երեք որդի, Ադրանասերին, Կուրկենին և պատրիկ Աշոտ Կիսկասիին[3], որոնց միջև բաժանեց իր երկիրը: Արտանուջը բաժին ընկավ իր որդի Կուրկենին, որի անզավակ մեռնելուց հետո[4], այդ [ամրոցը] թողեց իր եղբայր Աշոտ՝ Կիսկասիին[5]: Պատրիկ Աշոտ Կիսկասին, իր դստեր կնության տվեց մագիստրոս Կուրկենին[6], որն իր աներոջ Աշոտի ձեռքից խլեց Արտանուջը, փոխարենը նրան տալով Տյուրոկաստրոնը[7], Ացարայի գետահովիտը[8], որը Կոլորիսում[9] Ռոմանիայի սահմանն էր. Աշոտ Կիսկասիի կինը Աբազգիայի էքսուսիաստես մագիստրոս Գեորգիոսի[10] քույրն էր: Երբ մագիստրոս Կուրկենի և Աբազգիայի էքսուսիաստես մագիստրոս Գեորգիոսի միջև պայքար ծագեց, պատրիկ Աշոտն անցավ Աբազգիայի էքսուսիաստեսի կողմը, դրա համար էլ Կուրկենը [Աշոտից] խլեց նաև այն փոխհատուցը, որ Արտանուջի դիմաց էր տվել ու քշեց նրան. [Աշոտը] գնաց Աբազգիա: Մագիստրոս Կուրկենի մահից հետո Արտանուջը մնաց վերջինիս կնոջ, այն է՝ Աշոտ Կիսկասիի դստեր, որպես հայրենիք: Երբ կուրապաղատ Աշոտը, Աբազգիայի էքսուսիաստես մագիստրոս Գեորգիոսը և վերոհիշյալ կուրապաղատի եղբայր Պանգրատը զենքի ուժով բաժանում էին մագիստրոս Կուրկենի տիրույթները, ի վերջո համաձայնության եկան. յուրաքանչյուրն ստացավ իր [տիրույթներին] կից գտնվող շրջանները: Արտանուջը գտնվում էր վերոհիշյալ Դավթի որդի Սմբատի [տիրույթներին] կից: Բոլորն այն ժամանակ բռնացան մագիստրոս Կուրկենի կնոջ՝ պատրիկ Աշոտ Կիսկասիի դստեր վրա, ասելով, թե դու կին ես, չես կարող տիրել ամրոցին: Այն ժամանակ Սմբատն ամրոցի դիմաց այդ կնոջը հողեր տվեց և վերցրեց Արտանուջ ամրոցը:

Իբերների ազգակցական կապերն այսպիսիք են[11]. Դավթի մայրը և կուրապաղատ Ադրանասեի, այժմյան կուրապաղատ Աշոտի [մայրը] երկու եղբայրների դուստրեր են, այսինքն հորեղբոր աղջիկներ: Դավթի որդի Սմբատն ամուսնացել էր այժմյան մագիստրոս Ադրանասեի հայր մագիստրոս Պանգրատի դստեր հետ: Այդ [կնոջ]մահից հետո Ադրանասեն ամուսնացավ Դավթի որդի Սմբատի քրոջ հետ:

Արտանուջ ամրոցը շատ անառիկ է. նա մեծ քաղաքների նման ունի նաև մեծ արվարձան[12]: Տրապիզոնի, Իբերիայի, Աբազգիայի, Հայաստանի բոլոր շրջաններից և Ասորիքից այստեղ են գալիս առևտրականներ: Նա այդ առևտրից հսկայական կոմ-

*մերկիոն է ստանում։ Իսկ Արտանուջ ամրոցի շրջանը, այն է Արզինը[13], լայնատարած է և բարեբեր, նա Իբերիայի, Աբազգիայի և Միսխիոնի[14] բանալին է։*

*Երանելի կայսր տեր Ռոմանոսը Նավատորմիղի դրունգար[15] պատրիկ Կոստանդին, որն այն ժամանակ պրոտոսպաթար էր և մանդլավիտ[16], մագիստրոսական հիմատիոն[17] տալով ուղարկեց Կուրկենի մոտ, որպեսզի նա իբերացուն մագիստրոս օծի։ Բայց Նավատորմիղի դրունգար պատրիկ Կոստանդր ճամփա դուրս գալուց և Նիկոմեդիա հասնելուց հետո, Կյումենայի[18] վանական Ագապիոսը, որն այն ժամանակ ուխտի էր գնացել սուրբ քաղաքը, եկավ [Կոստանդնուպոլիս]. նա, անցնելով Իբերիայի վրայով, կանգ էր առել Արտանուջ ամրոցում։ Պատրիկ Աշոտը, Կիսկասի մականվանյալը, թշնամացել էր իր փեսա Կուրկենի հետ, և ահա այն ժամանակ նա վանական Ագապիոսին ասաց, թե «հանուն աստուծո և պատվական ու կենարար խաչի զորության, պաղատում եմ քեզ, գնա քաղաք և ասա կայսեր, որ նա [մարդ] ուղարկի և վերցնի իմ ամրոցը և իր իշխանությանը ենթարկի»։ Վանական Ագապիոսը, մտնելով քաղաք, կայսեր պատմեց այն, ինչ խնդրել էր պատրիկ Աշոտ Կիսկասին։ Նավատորմիղի դրունգարը, վերոհիշյալ պատրիկ Կոստանդր, որ Նիկոմեդիայում էր գտնվում (նա գնում էր, ինչպես վերևում ասվեց,Կուրկեն իբերացուն մագիստրոս օծելու), պատրիկ Սիմեոն պրոտոասեկրետի[19] միջոցով կայսեր հրամանով կազմված պիտտակիոն[20] ստացավ, թե մեր սուրբ կայսրը հրամայում է քեզ մի կողմ թողնել բոլոր գործերդ, անհապաղ գնալ պատրիկ Աշոտ Կիսկասիի մոտ և վերցնել նրա Արտանուջ ամրոցը, որովհետև [Աշոտը] հայտնեց մեր սուրբ կայսեր, որ նա հավատարիմ ու մերձավոր մարդ ուղարկի իր Արտանուջ ամրոցը վերցնելու համար։ Երբ հասնես խաղտիք, վերցրու գործունյա իշխանավորներ, մարդկանց, ովքեր քո կարծիքով քաջ են ու հավատարիմ, և մտիր ու տեր դարձիր այդ ամրոցին։ Նավատորմիղի դրունգար պատրիկ Կոստանդր, հասնելով խաղտիք և իր հետ վերցնելով գործունյա տուրմարխներ ու իշխանավորներ, ապա և շուրջ երեք հարյուր զինվոր, մուտք գործեց Իբերիա, բայց նրա ճամփան կտրեց երանելի Դավիթը, այժմյան կուրապաղատ Աշոտի[21] եղբայրը և հարցրեց. «Կայսրը քեզ ո՞ւր ուղարկեց, ի՞նչ գործի համար ես քեզ հետ տանում այսքան զորք»։ Նրանք երկյուղ էին զգում, որ կուրապաղատ Ադրանասեի վախճանվելու առթիվ կայսրը, հնարավոր է, կուրապաղատության պատիվը ուզում է*

շնորհել Կուրկենին։ Կուրապաղատ Ադրանասեի մահից հետո նրա որդիների և նրանց հորեղբորորդու միջև ինչ-որ գժտություններ էին ծագել, և Կուրկենն իր առաջին մարդուն[22] մեծամեծ նվերներով կայսեր մոտ էր ուղարկել, խնդրելով կուրապաղատություն, կամ մագիստրոսություն։ Ահա չորս եղբայրները, այսինքն կուրապաղատ Ադրանասեի որդիները, ենթադրում էին, որ [Կոստանդր] Կուրկենին կուրապաղատ դարձնելու համար է գնում այնտեղ։ Պատրիկ Կոստանդր պատասխանեց, թե ես իմ հետ այսքան մարդ եմ տանում, որովհետև պետք է Կուրկենին մագիստրոսի պատիվը շնորհեմ, և հրաժեշտ տվեց նրան, թե գնում եմ Դավիթ մագիստրոսի մոտ։ Պատրիկ Կոստանդը ուներ նաև Դավթին ուղղված կայսեր նամակը և նվերներ։ Պատրիկ Կոստանդը, գալով Կուրկենի երկիրը, նրան պատվեց մագիստրոսի աստիճանով, ապա մտավ պատրիկ Աշոտ Կիսկասիի Արտանուջ ամրոցը, հանձնեց կայսեր նրան ուղղված նամակը, որում Արտանուջ ամրոցի մասին ոչինչ չկար գրված. այնտեղ խոսվում էր այլ հարցերի մասին։ Պատրիկ Կոստանդր ասաց նրան, որ ճիշտ է, նամակում Արտանուջ ամրոցի մասին և ոչ մի խոսք չկա, բայց վանական Ագապիոսը, գալով կայսեր մոտ, հայտնեց այն, ինչ դու հանձնարարեցիր Արտանուջ ամրոցի կապակցությամբ։ Ահա [կայսրը] ինձ դրա համար ուղարկեց, որպեսզի ստանամ ամրոցը և այնտեղ մտցնեմ ինձ հետ բերած զորքը։ Ինչպես ասվեց, պատրիկ Աշոտ Կիսկասին թշնամացել էր իր փեսա Կուրկենի դեմ, դրա համար նախընտրեց կայսեր հանձնել իր ամրոցը։ Պատրիկ Կոստանդը իր մոտ ուներ դրոշակ, որ տվեց պատրիկ Աշոտ Կիսկասիին։ Նա վերցնելով այն, կապեց նիզակի ծայրին, տվեց պատրիկ Կոստանդին և ասաց. պարզիր պարսպի վրա, թող բոլորն իմանան, որ այս ամրոցը այսօրվանից պատկանում է կայսեր։ Պատրիկ Կոստանդը այդպես էլ արեց, դրոշակը պարզեց պարսպի վրա և սովորության համաձայն կեցցե կոչեց ի պատիվ հռոմայեցիների կայսրերի։ Բոլորին հայտնի դարձավ, որ պատրիկ Աշոտ Կիսկասին Արտանուջ ամրոցը նվիրել է կայսեր։

Իսկ Դավիթ մեծը իր երկիրը չէր զիջում կայսեր, թեպետև այն սահմանակից էր Ակամսիի տուրմային և Մուրգուլիին[23]։ Պատրիկ Կոստանդը երկու զեկուցագրեր ուղարկեց կայսեր, որոնցից մեկի բովանդակությունն այն էր, թե ինչպես պատվեց Կուրկենին մագիստրոսի [աստիճանով], թե ինչպես Կուրկենն ստացավ մագիստրոսություն և կեցցե ասաց կայսեր հասցեին։ Երկ-

*րորդ նամակում խոսվում էր Արտանուջ ամրոցի մասին, թե ինչպես այն ստացավ Աշոտ Կիսկասիից, ցույց տալիս, որ պատրիկ Աշոտի և նրա փեսայի՝ մագիստրոս Կուրկենի միջև սուր տարաձայնություններ կան ու թշնամություն, որ կայսրը թող օգնական զորք ուղարկի որպես այդ ամրոցի կայազոր, և որ եթե դա հնարավոր է, ապա թող սխոլերի գոմեստիկոսն[24] էլ գա։*

*Իբերները, այն է մագիստրոս Կուրկենը և մագիստրոս Դավիթը՝ կուրապաղատ Աշոտի եղբայրը, ծանոթանալով իրավիճակին, նամակ գրեցին կայսեր, որ եթե քո թագավորությունը իրեն թույլ տա մեր երկիրը ոտք դնելու, մենք կդադարենք քո թագավորությանը ծառայելուց, կմիանանք սարակինոսներին։ Մենք հռոմայեցիներից չենք վախենում, և եթե ստիպված լինենք, ապա զորք կուղարկենք Արտանուջ ամրոցի, նրա շրջանի և նույնիսկ Ռոմանիայի դեմ։ Կայսրը և՛ վերոհիշյալ իշխանների նամակից տեղեկանալով, և՛ վերջիններիս ուղարկած մարդկանցից ականջալուր լինելով իրադրության շուրջը, երկյուղելով, որ նրանք կարող են սարակինոսների կողմն անցնել և Պարսկաստանի զորքերը հանել Ռոմանիայի դեմ, պատասխանեց և ժխտեց այն փաստը, թե ինքը երբևիցե Արտանուջ ամրոցին և նրա շրջանին տիրանալու մասին որևէ բան է գրել մանգլավիտ պրոտոսպաթար Կոստանդին, որ [Կոստանդր] իր սեփական, այսպես ասած, անմտությունից արեց այդ։ Կայսրն այդպես ասաց [իբերներին], նրանց կատարելապես հանգստացնելու համար։ Մանգլավիտ պրոտոսպաթար Կոստանդր [կայսրից] պարսավանքներով ու սպառնալիքներով լի մի նամակ ստացավ հետևյալ բովանդակությամբ. «Քեզ ո՞վ կարգադրեց այդ անել։ Շուտ դուրս եկ ամրոցից. վերցրու վախճանված կուրապաղատ Ադրանասեի որդի Աշոտին, բեր նրան այստեղ, որպեսզի նրան շնորհենք իր հոր՝ կուրապաղատության աստիճանը»։ Պատրիկ Կոստանդր, ստանալով այդ [կարգադրությունը], Աշոտ Կիսկասիին թողեց նրան պատկանող Արտանուջ ամրոցում և դուրս գալով գնաց Դավիթ մեծի մոտ, տվեց նրան հասցեագրված նամակը, վերադարձավ, մտավ Իբերիա, ուր գտավ իր դեմ միացյալ հանդես եկող մագիստրոս Կուրկենին և կուրապաղատ Աշոտի եղբայր Դավթին։ Նրանք սկսեցին պարսավել և պախարակել պատրիկ Կոստանդին, ասելով, թե դու նենգ և ստոր մարդ ես, դու մեզ չհայտնեցիր, որ նպատակ ունես վերցնելու Արտանուջ ամրոցը, որովհետև ձեռնտու է, որ այն գտնվի կայսեր ձեռքում։ Մենք այդ կապակցությամբ դիմեցինք կայսեր և*

*պատասխան ստացանք, թե կայսրը այդ բանին լրիվ անտեղյակ է, որ դու ինքնագլուխ ես այդ արել՝ պատրիկ Աշոտ Կիսկասիի սիրույն։ Պատրիկ Կոստանդը պետք եղածը նրանց ասելուց հետո, իր հետ վերցրեց կուրապաղատ Ադրանասեի որդի Աշոտին, բերեց քաղաք, ուր և նա կայսեր կողմից արժանացավ կուրապաղատի պատվին։*

*Ահա դու իմացիր[25], թե ժամանակին հռոմայեցիների և զանազան ժողովուրդների միջև ի՞նչ է տեղի ունեցել։ Ո՛վ շատ սիրելի որդյակ, միշտ հիշիր անցյալում տեղի ունեցածը, որպեսզի նմանօրինակ պարագաներում կանխագիտությամբ քեզ դյուրին լինի հնարավոր [սխալներից] խուսափել։*

ԳԼՈՒԽ 50

## ՊԵԼՈՊՈՆԵՍԻ ԲԱՆԱԿԱԹԵՄՈՒՄ ԱՊՐՈՂ ՍԼԱՎՈՆՆԵՐԻ, ՄԻԼԻՆԳՆԵՐԻ ԵՎ ԷԶԵՐԻՏՆԵՐԻ ՄԱՍԻՆ[1], ՆՐԱՆՑ ԿՈՂՄԻՑ ՎՃԱՐՎՈՂ ՀԱՐԿԵՐԻ, ՆՄԱՆԱՊԵՍ ՄԱՅԻՆԱ[2] ԱՄՐՈՑԻ ԲՆԱԿԻՉՆԵՐԻ ՈՒ ՆՐԱՆՑ ՎՃԱՐԱԾ ՀԱՐԿԵՐԻ ՄԱՍԻՆ

*Պելոպոնեսի բանակաթեմի սլավոնները Թեոֆիլոս կայսեր և նրա որդի Միքայելի [թագավորության] ժամանակ ապստամբություն բարձրացրին[3] և դարձան ինքնավար։ Նրանք սկսեցին ավարառություններ, գերեվարություններ, ասպատակություններ, հրկիզումներ և ավազակություններ գործել։ Թեոֆիլոսի որդի Միքայելի թագավորության ժամանակ Պելոպոնեսի բանակաթեմի զորավար նշանակվեց պրոտոսպաթար Թեոկտիստոսը, մականունը Վրիեննիոս[4], որը թրակացիներից, մակեդոնացիներից և մնացած արևմտյան բանակաթեմերից բաղկացած մեծ զորքով և ուժով ուղարկվեց նրանց դեմ պատերազմի, նրանց բարձրացրած ապըստամբությունը ճնշելու համար։ Նա Պելոպոնեսի բանակաթեմի բոլոր սլավոններին և մնացած խռովարարներին պարտության մատնեց և ճնշեց...*

*Կայսր տեր Ռոմանոսի[5] թագավորության ժամանակ [Պելոպոնեսի] բանակաթեմի զորավար պրոտոսպաթար Հովհաննես Պրոտևոնը հայտնեց նույն տեր Ռոմանոսին և՛ միլինգների, և՛ էզերիտների մասին, թե նրանք ապստամբություն են բարձրաց-*

րել, չեն ենթարկվում ո՛չ զորավարին, ո՛չ կայսեր հրամաններին, այլ ապրում են ինքնավար և ինքնիշխան։ Նրանք չեն ընդունում զորավարի կողմից նրանց վրա նշանակված կառավարիչին[6], չեն ուզում [զորավարի] արշավանքներին մասնակցել, ոչ էլ ուղում են որևէ այլ պետական ծառայություն կատարել։ Մինչև սրա դեկուցագրի տեղ հասնելը, Պելոպոնեսի զորավար նշանակվեց պրոտոսպաթար Կրինիտես Արոտրասը[7]։ Երբ Պելոպոնեսի զորավար Հովհաննես Պրոտևոնի զեկուցագիրը տեղ հասավ և ընթերցվեց կայսր տեր Ռոմանոսին, խոսքը վերոհիշյալ սլավոնների ապըստամբության, կայսերական ՝հրամաններին դժկամությամբ ենթարկվելու, ավելի ճիշտ՝ չենթարկվելու մասին էր, պրոտոսպաթար Կրինիտեսը հրաման ստացավ նրանց դեմ արշավել, որպես այդ աստիճան անհնազանդ ու չենթարկվող մարդկանց, պատերազմել նրանց դեմ, պարտության մատնել և ոչնչացնել։ Նա մարտ ամսից սկսեց պատերազմել նրանց դեմ, կրակի տվեց ամբողջ բերքը, թալանեց բոլոր շրջանները։ Նրանք դիմադրեցին մինչև նոյեմբեր ամիսը և, երբ համոզվեցին, որ գլխովին կոտորվելու են, հպատակվելու համար կյանքի անձեռնմխելիության մասին երաշխիքներ խնդրեցին և ներողամտություն իրենց կատարածի համար։ Վերոհիշյալ պրոտոսպաթար և զորավար Կրինիտեսը նրանց վրա դրեց ավելի ծանր հարկեր, քան նախկինում վճարում էին, միլինգների վրա նախկինում վճարած վաթսուն դահեկանի վրա բարդեց չորս հարյուր քառասուն դահեկան ևս, այդպիսով նրանց ամբողջ վճարած հարկը հավասար էր հինգ հարյուր դահեկանի, իսկ էզերիտների՝ նախկինում վճարած երեք հարյուր դահեկանի վրա բարդեց ևս երեք հարյուր դահեկան և նրանց վճարած ամբողջ հարկը կազմեց վեց հարյուր դահեկան, որը նույն պրոտոսպաթար Կրինիտեսը գանձեց և աստվածապահպան գանձարանը մուծեց։

Երբ պրոտոսպաթար Կրինիտեսը տեղափոխվեց Հելլադայի [բանակաթեմը], Պելոպոնեսի զորավար նշանակվեց պրոտոսպաթար Վարդաս Պլատիպոդեսը[8]։ Պրոտոսպաթար Վարդաս Պլատիպոդեսը և նրա համախոհ պրոտոսպաթարներն ու հրամանատարները խռովություն բարձրացրին և բանակաթեմից քշեցին պրոտոսպաթար Լևոն Ագելաստոսին։ Այդ միջոցին սլավոնները[9] իսկույն հարձակում գործեցին նույն բանակաթեմի վրա, իսկ սլավները, այն է միլինգներն ու էզերիտները դիմեցին կայսր տեր Ռոմանոսին, խնդրելով և աղերսելով զիջել իրենց վրա բարդված հավելյալ հարկերը, որպեսզի իրենք վճարեն այնքան հարկ, ինչքան

նախկինում։ Ինչպես ասվեց, սլավոններն արդեն մուտք էին գործել Պելոպոնեսի բանակաթեմ. կայսրը երկյուղելով, որ սլավները կարող են միանալ նրանց և լիակատար կործանել բանակաթեմը, խրիստովուլլ շնորհեց նրանց, որի համաձայն հարկի չափը մնում էր նախկինը, այն է՝ միլինգներինը վաթսուն դահեկան, իսկ էզերիտներինը՝ երեք հարյուր դահեկան...

...Պետք է գիտենալ, որ Կապպադովկիայի զորավարությունը նախկինում Անատոլիկոնի զորավարության[10] [մի] տուրման[11] էր։

...Պետք է գիտենալ, որ Խարսիանոնի զորավարությունը նախկինում Արմենիակների զորավարության[12] [մի] տուրման էր։

Պետք է գիտենալ, որ քրիստոսասեր տեր Լևոնի ժամանակ Բուկելլարների բանակաթեմից Կապպադովկիայի բանակաթեմի[13], [իրավասության] տակ անցան հետևյալ բանդոնները[14], այն է Բարետայի տոպոտերեսիան[15] Բալբադոնի տոպոտերեսիան[16], Ասպոնասի տոպոտերեսիան[17] և Ակարկոսի տոպոտերեսիան[18]։ Անատոլիկոն բանակաթեմից Կապպադովկիայի բանակաթեմի իրավասության տակ անցան հետևյալ բանդոնները, այն է Ծվդոկիայի տոպոտերեսիան[19], սուրբ Ագապետոսի տոպոտերեսիան[20], Աֆրազեյայի տոպոտերեսիան[21]։ Այս յոթ բանդոնները, այսինքն Բուկելլարների չորսը և Անատոլիկոնի երեքը կազմեցին մեկ տուրմա, որն այժմ կոչվում է Կոմմատա[22]։

Պետք է դիտենալ, որ քրիստոսասեր տեր Լևոնի ժամանակ Բուկելլարների բանակաթեմից Խարսիանոն բանակաթեմի իրավասության տակ անցան հետևյալ բանդոնները, այն է Միրիոկեֆալոսի տոսլոտերեսիան[23], Պատվական խաչի տոպոտերեսիան և Վերինուպոլսի տոպոտերեսիան[24], և կազմեցին այժմ Սանիանա[25] կոչված տուրման։ Արմենիակների բանակաթեմից Խարսիանոն բանակաթեմի իրավասության տակ անցան հետևյալ բանդոնները, այն է Կոմոդրոմոսի տոպոտերեսիան[26], Տավիայի տոպոտերեսիան[27], և կցվեցին Խարսիանոնի վերոհիշյալ տուրմային։ Կապպադովկիայի [բանակաթեմից] Խարսիանոն բանակաթեմին անցան հետևյալ բանդոնները, այն է Կասե[28], տուրման ամբողջությամբ և Նյուսայի տոպոտերեսիան[29] Կեսարիայի հետ։

Պետք է գիտենալ, որ Խոզանի բանակաթեմն[30] անցյալում գտնվում էր սարակինոսների տիրապետության տակ։ Նմանապես և Ասմոսատի բանակաթեմը[31], նա ևս գտնվում էր սարակինոսների տիրապետության տակ։ Ինչ վերաբերում է Խանզիտին[32] և Ռոմանոպոլսին[33], ապա նրանք Մելիտենեի մի կլեյսուր էին կազմում։

*Ցատիլանոն լեռից[34] այն կողմ գտնվող բոլոր շրջանները սարակինոսների ձեռքում էին, իսկ Տեկին[35] Մանվելին[36] էր պատկանում։ Կամախա տուրման[37] Կոլոնիայի մի ամրությունն էր, իսկ Կելցենեի տուրման[38] Խաղտինքին էր ենթարկվում։ Միջագետքը[39] դեռ այն ժամանակ բանակաթեմ չէր։ Քրիստոսասեր և երջանկահիշատակ Լևոն կայսրը այս Մանվելին պայմանով հեռացրեց Տեկիից և քաղաք բերելով պրոտոսպաթար դարձրեց։ Մանվելը չորս որդի ուներ, Պանգրատուկասին, Յախնուկասին, Մուդաֆարին և Հովհաննեսին[40]։ Պանդրատուկասին կայսրը հիկանատոս[41] նշանակեց, ապա և Բուկելլարների [բանակաթեմի] զորավար, Յախնուկասին նշանակեց Նիկոպոլսի զորավար[42], իսկ Մուդաֆարին և Հովհաննեսին Տրապիզոնում կայսերական կալվածներ շնորհեց։ Նա բոլորին պատվեց աստիճաններով և բազում բարերարություններ գործեց։ Այնուհետև նա Միջագետքը դարձրեց բանակաթեմ, իսկ զորավար նշանակեց խարսիանոնցի Օրեստեսին[43]։ Ահա այդ ժամանակ էր, որ [կայսրը] Կամախի տուրման ենթարկեց Միջագետքի բանակաթեմին։ Այնուհետև նա Միջագետքի բանակաթեմին ենթարկեց նաև Կելցենեի տուրման։ Այդ բոլորը հենց վերջերս անցան հոռմայեցիների գերիշխանության տակ, և տեր Ռոմանոսի ժամանակ Միջագետքի բանակաթեմին կցվեց նաև Ռոմանոպոլիսը և Խանզիտը։*

*Պետք է գիտենալ, որ քրիստոսասեր տեր Լևոնի ժամանակ Լարիսան[44] Սեբաստիայի տուրման էր, Կյումբալեոսը[45] Խարսիանոնի, իսկ Սյումպոսիոնը Լիկանդոսի կողմերը գտնվող մի ամայի տարածություն էր։ Քրիստոսասեր տեր Լևոնի թագավորության ժամանակ Եվստաթիոս Արգիրոսը[46] աքսորից ետ կանչվելով, նշանակվեց Խարսիանոնի զորավար։ Իսկ Մելիասը[47] դեռևս փախստական էր Մելիտենեում, ինչպես նաև Վասակիոսը[48] իր երկու եղբայրներ Կրիկորիկի և Պաղունի[49] հետ, նաև այն Իսմայիլ հայը[50]։ Սրանք վերոհիշյալ Արգիրոսին նամակ գրեցին, թե դուրս կգան [Մելիտենեից], եթե ստանան խրիսովուլլով[51] հաստատված երաշխավորագիր, թե Վասակիոսն ու իր եղբայրները կհաստատվեն Լարիսայում, որ Վասակիոսը կդառնա Լարիսայի կլեյսուրարխ. ինչ որ եղավ, Իսմայիլը՝ Սյումպոսիոնի կլեյսուրարխ, ինչ որ եղավ, իսկ Մելիասը՝ Եփրատիայում[52] գտնվող Տրյուպիա[53] անապատ շրջանի տուրմարխ, ինչ որ նույնպես կատարվեց։ Բայց Մելիտենեի [արաբները] հարձակվեցին և սպանեցին Իսմայիլին, որից հետո Սյումպոսիոնը մնաց անտեր։ Իսկ Վասակիոսը ամբաս-*

տանվեց, թե մտադիր է դավաճանելու, դրա համար նա աքսորվեց, իսկ Լարիսան նորից դարձավ Սեբաստիայի տուրման, և այդտեղի զորավար նշանակվեց Եվստաթիոսի որդի Լևոն Արգիրոսը, որ հետագայում դարձավ մագիստրոս և սխոլերի դոմեստիկոս։ Մելիասը գտնվում էր Եփրատիայում։ Երբ խարսիանոնի դուքս նշանակվեց Կոստանդինը, վերոհիշյալ Մելիասը իջավ և գրավեց Լիկանդոս հին ամրոցը[54]։ Նա վերակառուցեց այն, ամրացրեց և այնտեղ հաստատվեց, իսկ քրիստոսասեր Լևոն կայսեր կողմից [Լիկանդոսը] դարձավ կլեյսուր։ [Մելիասը] այնուհետև Լիկանդոսից անցավ Ցամանդոսի[55] լեռը և այնտեղ կառուցեց մինչև օրս գոյություն ունեցող ամրոցը։ Այն ևս կլեյսուրի հորջորջում ստացավ։ [Մելիասը] գրավեց նաև Սյումպոսիոնը, որը նա դարձրեց տուրմարխություն։ Քրիստոսասեր տեր Կոստանդնի և նրա մայր Զոեի[56] ժամանակ Լիկանդոսն առաջին անգամ դարձավ զորավարություն. Լիկանդոսի առաջին զորավար նշանակվեց պատրիկ Մելիասը, որն այն ժամանակ Լիկանդոսի կլեյսուրարխ էր։ Մելիասը հռոմայեցիների կայսեր հանդեպ տածած հավատարմության, ապա նաև սարակինոսների դեմ կատարած բազմաթիվ քաջագործությունների համար հետագայում արժանացավ մագիստրոսի պատվին։

Պետք է գիտենալ, որ Աբարան[57] Սեբաստիայի բանակաթեմի կազմում գտնվող տուրմա էր, իսկ տեր Ռոմանոսի ժամանակ կլեյսուր դարձավ...

ԳԼՈՒԽ 51[1]

## ԱՅՆ ՄԱՍԻՆ, ԹԵ ԻՆՉՊԵՍ ՍՏԵՂԾՎԵՑ ԿԱՅՍԵՐԱԿԱՆ ԴՐՈՄՈՆԻՈՆԸ, ԱՅԴ ԴՐՈՄՈՆԻՈՆԻ ՊՐՈՏՈԿԱՐԱՎՆԵՐԻ[2] ՄԱՍԻՆ ԵՎ ՖԻԱԼԱՅԻ ՊՐՈՏՈՍՊԱԹԱՐԻ[3] ՄԱՍԻՆ

...Երջանկահիշատակ և ամենաիմաստուն Լևոն կայսեր օրոք Ֆիալայի պրոտոսպաթարն էր Հովհաննեսը, որի մականունն էր Թալասսոն[4]։ Նրանից հետո՝ պրոտոսպաթար Պոդարոնը, իսկ նրանից էլ հետո պրոտոսպաթար Լևոն հայը[5], մանգլավիտ Արսենի պրոտոսպաթարի[6] հայրը։ Սրանք, այն է պրոտոսպաթար Պոդարոնը և Լևոն հայը նավատորմիղի դրունգար[7] պատրիկ Նասարի

պրոտելատներն[8] էին, իսկ քրիստոսասեր տեր Վասիլի օրոք հրաժարվեցին նավատորմիղում ծառայելուց և դարձան կայսեր ագրարիոնի պրոտելատներ։ Երջանկահիշատակ ամենաիմաստուն Լևոն կայսեր ժամանակ, երբ նա ստեղծեց դրոմոնիոնները, այդ մարդկանց արիությունը և ծովում ունեցած փորձառությունը նկատի առնելով, նրանց դարձրեց պրոտոկարավներ։

...Այնուհետև կայսրը Պոդարոնին և Լևոն հային նշանակեց կայսերական նավատորմիղի տոպոտերետեսներ[9]...

Վերոհիշյալ Լևոն հայը, հանգուցյալ մանգլավիտ պրոտոսպաթար Արսենի հայրը, վախճանվեց նավատորմիղի տոպոտերետեսի պաշտոնում, իսկ պրոտոսպաթար Պոդարոնը որոշ ժամանակ անց նշանակվեց Կիբիրեոտների բանակաթեմի[10] զորավար։

Պոդարոնը, նշանակվելով տոպոտերետես, Ֆիալեի պրոտոսպաթար դարձավ պրոտոսպաթար Թեոփիլակտոս Բիմբիլիդեսը, պրոտոսպաթար Հովհաննեսի, Թալասսոն մականվանյալի եղբորորդին, և այդ պաշտոնում մնաց քրիստոսասեր տեր Կոստանդին Ծիրանածինի առաջին մենիշխանության[11] ժամանակ մի քանի տարի...

ԳԼՈՒԽ 53

# ԽԵՐՍՈՆ ԱՄՐՈՑԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ[12]

Հռոմում Դիոկլետիանոսի թագավորության, իսկ Խերսոնում Թեմիստոսի որդի Թեմիստոսի պսակակրության և իշխանության ժամանակ[13], Կրիսկոնորոսի որդի բոսպորացի Սավրոմատոսը[14] հավաքելով Մեոտիս լճի[15] շրջակայքում ապրող սարմատներին, արշավեց հռոմայեցիների դեմ, գրավեց լազերի երկիրը, պարտության մատնեց բնիկներին և հասավ մինչև Ալիս գետը։ Դիոկլետիանոս կայսրը իմանալով, որ լազերի երկիրը և Պոնտոսը գրավվել են, սարմատների դեմ զորք ուղարկեց։ Զորահրամանատարն էր տրիբուն Կոստասը։ Հասնելով Ալիս Կոստասը փորձեց թույլ չտալ սարմատներին անցնելու Ալիսը։ Բայց չկարողանալով նրանց հաղթահարել, մտածեց, որ սարմատներին միայն մեկ ճանապարհով կարելի է քշել, այն է՝ եթե Բոսպորոսի և Մեոտիս լճի մոտակայքում ապրող [խերսոնիտները] նրանց պատերազմ հայտարարեն և հարձակվեն [բոսպորացիների] ընտանիքների վրա։

Նա ենթադրում էր, որ երբ այդ մասին լսի Սավրոմատոսը, վերջ կտա պատերազմին և կվերադառնա...

Պետք է գիտենալ, որ Տամատարխա[16] ամրոցից դուրս կան բազմաթիվ նավթաբեր աղբյուրներ։

Պետք է գիտենալ, որ Զեխիայի[17] Պադե վայրում, որ գտնվում է Պապագիայի[18] կողմում, և որտեղ բնակվում են զեխերը, կան նավթաբեր ինը աղբյուր։ Ինը աղբյուրի նավթը մի գույնի չէ. նրանցից ոմանք կարմիր, մյուսները դեղին կամ սև նավթ են ցայտում։

Պետք է գիտենալ, որ Զեխիայի Պապագի կոչված վայրում, որի մոտ է գտնվում Սապաքսի կոչված գյուղը, որ թարգմանաբար նշանակում է փոշի, կա նավթաբեր աղբյուր։

Պետք է գիտենալ, որ նույն շրջանում Խամուխ կոչված վայրում էլ կա նավթաբեր մի աղբյուր։ Խամուխ՝ հնում այդ բնակավայրը հիմնադրողի անունն է, նրանից է այն Խամուխ կոչվել։ Այդ վայրերը գտնվում են ծովից նույն ձիով գնացողի համար մեկ օր հեռավորության վրա։

Պետք է գիտենալ, որ Դերզենե բանակաթեմում[19], Սապիկիու կոչված վայրին մոտիկ, ինչպես և Եպիսկոպիու կոչված վայրին [մոտիկ] կա նավթաբեր աղբյուր։

Պետք է գիտենալ, որ Ցիլիապերտ[20] բանակաթեմում, Սրեխիավարաքսի[21] մոտ կա նավթաբեր աղբյուր։

Պետք է գիտենալ, որ եթե երբևիցե Խերսոն ամրոցը ապըստամբվի և ցանկանա որևէ բան կատարել ընդդեմ կայսերական հրամանների, քաղաքում [Կոստանդնուպոլսում] եղած խերսոնական նավերը պետք է գրավել իրենց ապրանքներով հանդերձ։ Նավաստիներին և ուղևորներին կալանավորել և բանտ նետել, որից հետո անհրաժեշտ է երեք վասիլիկոս ուղարկել՝ մեկին Արմենիակների բանակաթեմի ծովափը, մյուսին Պաֆլագոնիայի բանակաթեմի ծովափը, իսկ երրորդին Բուկելլարների բանակաթեմի ծովափը, որպեսզի վար դնեն բոլոր խերսոնական նավերը, գրավեն նավերն ու նրանց բեռները, իսկ մարդկանց կալանավորեն և պետական բանտերը նետեն, որից հետո իրենց կատարածի մասին զեկուցեն։ Բացի այդ, այդ վասիլիկոսները պետք է արգելեն պաֆլագոնական, բուկելլարական նավերին, ինչպես և Պոնտոսին պատկանողներին հացահատիկով, գինիով և որևէ այլ պարենով կամ ապրանքով դեպի Խերսոն նավարկելը։ [Խերսոնի] զորավարը նմանապես պետք է դադարեցնի Խերսոն ամրոցին տաս լիտր

*ոսկու և երկու լիտր պակտոնի վճարումը և իսկույն հեռանա Խերսոնից և գնա մի այլ ամրոց և այնտեղ հաստատվի։*

*Խերսոնացիք, եթե չճանապարհորդեն դեպի Ռոմանիա և չծախեն պեչենեգներից գնած մորթիներն ու մեղրամոմը, չեն կարող ապրել։*

*Խերսոնացիք, եթե Ամինսոսից, Պաֆլագոնիայից և Բուկելլարներից, ինչպես նաև հարևան Արմենիակներից չներմուծեն անասուններ, չեն կարող ապրել։*

## ԵՐԱՆԵԼԻ ԿԱՅՍՐ ՎԱՍԻԼԻ ԿՅԱՆՔԻ ԵՎ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ, ՈՐ ՆՐԱ ԹՈՌ՝ ԿԱՄԱՎՆ ԱՍՏՈՒԾՈ ՀՌՈՄԱՅԵՑԻՆԵՐԻ ԿԱՅՍՐ ԿՈՍՏԱՆԴԻՆԸ ՋԱՆԱՍԻՐՈՒԹՅԱՄԲ ՔԱՂԵՑ ԶԱՆԱԶԱՆ ՇԱՐԱԴՐԱՆՔՆԵՐԻՑ ԵՎ ՎՍՏԱՀԵՑ ԴՐՁԻՆ

*1. Ես մեծ ցանկություն և մղում ունեի պատմության հավերժական և անմահ բերանի օգնությամբ ամենակարևոր դեպքերի փորձն ու իմացությունը հաղորդել, մտադիր էի ինչ էլ լինի, դրի առնել Հռոմեական կայսրության Բյուզանդիոնի ժամանակաշրջանի կայսրերի, նրանց ենթակա իշխանավորների, զորավարների և ենթազորավարների՝ յուրաքանչյուրի կատարած ամենակարևոր գործերը։ Բայց դա գլուխ բերելու համար երկար ժամանակ, մեծ աշխատանք էր պետք, ապա և բազում գրքերի առկայություն, պետական գործերից որոշ դադար, մի բան, որից մենք զուրկ էինք։ Այդ իսկ պատճառով ես ստիպված գտա մի երկրորդ ելք, այն է՝ սկզբից մինչև վերջ շարադրել մեկ կայսեր կյանքն ու ամբողջ գործունեությունը, կայսր, որ կայսերական իշխանությունը անչափ վեհացրեց, որի անունը հոմանիշ է թագավորության[1], ով հռոմայեցիների պետության և գործերին անչափ օգտակար եղավ։ Ես մտահոգված էի, որպեսզի երկար ժամանակը ապագա սերունդների համար մոռացության չմատնի փարթամացած ծառի[2] արմատը, [աղբյուրի] ակը, որպեսզի հենց [Վասիլի] ընտանիքի անդամը[3] լինի առաքինության տիպարը մատնացույց անողը, արձանը կանգնեցնողը, Վասիլի, որից նրա սերունդները պիտի օրինակ վերցնեն։ Եթե աստված մեզ կյանք տա և մի փոքր շունչ քաշենք հիվանդություններից, եթե դրսից որևէ մեկը չխանգարի, գուցե շարադրենք մինչև մեզ հարատևած նրա տոհմի պատմությունը[4] և ամբողջացնենք այն։*

*2. Արդ, խնդրո առարկա անձնավորությունը՝ Վասիլ կայսրը ծագումով Մակեդոնիայից էր[5], ազգությամբ հայ[6] Արշակունի[7]։ Այն պատճառով, որ վաղեմի Արշակը[8], որն իշխեց պարթևների*

*վրա, հոչակվեց իր առաքինությամբ և մեծ փառքի հասավ, հետագայում և՛ պարթևների, և՛ հայերի, և՛ մարերի համար օրենք դարձավ, որ իրենց վրա ոչ մի այլ [հարստությունից] թագավոր չիշխի, այլ միայն Արշակի, միայն նրա սերնդից։ Այսպիսով, վերոհիշյալ ժողովուրդների վրա թագավորում էին այդ հարստության շառավիղները։ Հայերի արքան երբ վախճանվեց, ապստամբություն բռնկվեց և գահակալական պայքար ծավալվեց։ Արտավանն ու Կլեյենեսը[9] ոչ միայն կորցրին իրենց նախնյաց իշխանությունը, այլև կյանքից զրկվելու վտանգ կար, դրա համար նրանք փախչելով ապաստան գտան թագավորանիստ Կոստանդնուպոլիս քաղաքում։ Այն ժամանակ հռոմայեցիների իշխանությունը գտնվում էր Զենոնի աներոջ՝ Լևոն Մեծի[10] ձեռքում։ Նա ընդունեց այս մարդկանց, իրենց ազնվական ծագման արժանի ձևով պատվասիրեց և թագավորանիստ քաղաքում ապրելու տեղն ու անհրաժեշտ ապրուստը ապահովեց։ Այդ ժամանակ պարսից արքան իմանալով, որ խնդրո առարկա մարդիկ փախել են հայրենիքից և ապաստանել թագավորանիստ քաղաքը և թե կայսրերի կողմից ինչպիսի սիրալիր ընդունելության են արժանացել, նամակ գրեց նրանց և ետ կանչեց, իբրև թե որպես բարեկամի, խոստանալով վերականգնել նրանց հայրենական գահի վրա, բայց նա մտադիր էր այդ ճանապարհով իրեն ենթարկել [հայոց] ժողովրդին։ Երբ նրանք ստացան [պարսից արքայի] նամակը և մտածմունքի մեջ էին իրենց անելիքի շուրջը, նրանց սպասավորներից մեկը այդ մասին տեղեկացնում է կայսեր և նրան հանձնում նամակը։ Երբ պարզ դարձավ, որ պարսից արքայի՝ նրանց հրավիրելու նպատակը առավելապես [հայ] ժողովրդին իրեն ենթարկելն էր, քան նրանց իշխանության [վերականգնելը], և դա ոչ հրավիրվողների, ոչ էլ հռոմայեցիների պետության էր ձեռնտու, նրանք մտածում են այնպես անել, որ պարսիկների ծրագրերը ի դերև գան։ Կայսրը նրանց փախստյան առաջն առնելու նպատակով, ավելի ընդարձակ կալվածներ շնորհելու և ավելի ապահով վիճակ ստեղծելու պատրվակով, պատշաճ ձևով Մակեդոնիայի Նիկե քաղաքը վերաբնակեցրեց կանանցով և երեխաներով (կանայք նրանց մոտ էին եկել հետագայում, թաքուն կերպով)։ Որոշ ժամանակ անց, երբ սարակինոսները աստիճանաբար հզորացան, ամերմումնին[11] վաղեմի Արշակունիների շառավիղների հանդեպ նույն քայլին դիմեց և նամակ գրելով նրանց հրավիրեց, իբրև թե իրենց նախնյաց իշխանության և գահին [տիրանալու] համար։ Հերակլ կայսրը[12]*

այդ բանն իմացավ. նամակը [կայսեր] էր ընձեռվել։ Նա հասկացավ, որ [սարակինոսները] հրավիրում են նրանց ո՛չ թե ինչ որ շնորհ անելու, այլ իրենց՝ խորամանկների սեփական իշխանության ընդարձակման համար, (սարակինոսները հուսով էին, որ եթե [Արշակի] շառավիղներին իրենց ձեռքի տակ ունենան, ապա կարող են [հայ] ժողովրդին հեշտությամբ իրենց կողմը գրավել, որովհետև վերջինս սեր էր տածում դեպի հին Արշակը)։ Ահա դրա համար կայսրը առավել ապահովության պատրվակով [Արշակի շառավիղներին] իսկույն տեղափոխեց Ֆիլիպպե, որը նույնպես Մակեդոնիայի քաղաքներից մեկն էր։ Այնուհետև, ավելի նշանավոր քաղաքում բնակեցնելու և ավելի բարձր դիրքի արժանացնելու բարուրանքով, նրանց տեղափոխեց Ադրիանուպոլիս քաղաքը։ Վայրը [հայերին] գուր եկավ, նրանք այնտեղ զգում էին ինչպես հարազատ երկրում և սեփական ժողովրդի մեջ, կարողություն կուտակեցին, անաղարտ ու մաքուր պահելով իրենց ազնվական ծագումն ու ազգային դեմքը։

3. Տարիներ հետո, երբ թագավորում էր Կոստանդինն իր մոր Իրենեի[13] հետ, այն Մայիկտեսը[14], որ նույնպես Արշակի արյունակիցն էր, ինչ որ դեսպանությամբ կամ գործով գալիս է հռչակավոր Կոստանդնուպոլիս քաղաքը։ Նա պատահմամբ հանդիպում է իր մի ցեղակցին, որ Լևոն էր կոչվում. Նրա արտաքինից և հագուստից կռահեց, որ նա պատահական կամ նվաստ անձնավորություն չէ, այլ ազնվական և հայտնի մարդ։ Նա խոսակցության բռնվեց նրա հետ, մտերմացավ և բարեկամացավ, մանավանդ երբ իմացավ նրա [հայկական] ծագման մասին։ Այդ մարդու առաքինությունները գնահատելով, նախընտրեց նրա տանը բնակվել, օտարի հետ, քան թե սեփական տանը։ Ապա և խնամիացավ նրա հետ, կնության առնելով նրա դուստրերից մեկին։ Ահա այս զույգից ծնվեց հայրը այն անձնավորության, որին է նվիրված սույն պատմությունը։ Նա հասակ առավ, ստացավ սքանչելի կրթություն ու դաստիարակություն, և աչքի ընկավ իր հոյակապ կազմվածքով և ֆիզիկական արտակարգ ուժով։ Նա օժտված էր ամեն տեսակի առաքինություններով և շատերն էին ուզում նրա հետ խնամիանալ։ Ադրիանուպոլսում էր ապրում մի ազնվական համեստ կին, որն իր ամուսնու մահից հետո խոհեմությամբ էր տանում այրիությունը (համբավ էր տարածվել, որն ամենևին էլ անհիմն չէր, որ նա Մեծն Կոստանդինից էր սերում)[15]։ Իր ապրած

շրջանակում եղած կանանցից նա ամենից շատ այս կնոջը գնահատեց և ամուսնացավ նրա դստեր հետ, որն ազնիվ էր, մարմնով գեղեցիկ և ամոթխած։ Ահա սրանցից առաջացավ թագավորական այս արմատը՝ Վասիլը, որ, ինչպես ասվեց, հոր կողմից սերում էր Արշակից, իսկ մայրը ազգակցական կապ ուներ Մեծ Կոստանդինի հետ[16]. և՛ հոր, և՛ մոր կողմից նա ստացավ Ալեքսանդրի վեհությունը։ Ահա այսպիսի ծնողներից էր սերում Վասիլը[17]. հենց սկզբից էլ նա ուներ իր ապագա փառքի մասին վկայող բազում ապացույցներ. գլխի շուրջը՝ առաջին մազերի բուսնելու ժամանակ՝ կարմիր գիծ էր երևում, իսկ խանձարուրի վրա՝ ծիրանու գույն։

4. Մինչև այդ ժամանակ Արշակի շառավիղների սերունդը ինքն իր մեջ էր պարփակված, ինչպես առանձին տոհմ, թեև բնակվելով Ադրիանուպոլսում, հաճախ էր խնամիանում տեղացիների հետ։ Երբ բուլղարների իշխան Կրումը[18] դրժելով հռոմայեցիների հետ կնքած հաշտությունը, պաշարեց Ադրիանուպոլիսը և երկար ժամանակ մնալով այնտեղ, վերջը ստիպեց պարենի պակասությունից տանջվող [բնակիչներին] որոշ պայմաններով տալ քաղաքը, նա բոլոր բնակիչներին, այդ քաղաքի եպիսկոպոս Մանվելի հետ Բուլղարիա տեղափոխեց[19]։ Բուլդարաց երկիրը բռնագաղթեցվեցին նաև Վասիլի ծնողները, դեռ խանձարուրում գտնվող իրենց երեխայի հետ։ Այդ հրաշալի եպիսկոպոսը և նրա հետ եղած ժողովուրդը այնտեղ անարատ պահեցին իրենց քրիստոնեական հավատքը և բուլղարներից շատերին Քրիստոսի ճշմարիտ հավատքի կողմը ձգեցին (բուլղարների ժողովուրդը դեռ բարեպաշտություն չէր ընդունել)[20]. Նրանք ամենուրեք սերմանեցին քրիստոնեական վարդապետության սերմերը՝ սկյութներին[21] կռապաշտության մոլորությունից հեռացնելով և բերելով դեպի լույսն աստվածաճանաչության։ Դա շատ զայրացրեց Կրումի հաջորդ Մուտրագոնին[22], որ չկարողանալով համոզել սրբազնագույն եպիսկոպոս Մանվելին և շատ այլ մարդկանց, ովքեր աչքի էին ընկել այդ գործում, հրաժարվել Քրիստոսից, անողոքաբար տանջեց և մարտիրոսական մահվան ենթարկեց։ Վասիլի բազմաթիվ ազգականներ արժանացան մարտիրոսի փառքին, այնպես որ [Վասիլը] անմասն չէ նաև նման փառքից։ Բայց աստված այցելեց իր ժողովրդին և հոգաց նրանց [հայրենիք] վերադարձի մասին. (բուլղարների իշխանը ի վիճակի չլինելով երկար ժամանակ դիմագրել

*Հռոմեական ուժերին, նորից ենթարկվելու նշաններ էր ցույց տալիս): Երբ իշխանը իր մոտ հավաքեց հայրենիք վերադարձող քրիստոնյա ժողովրդին, տեսավ մանուկ Վասիլին՝ գեղադեմ և շնորհալի, ժպտադեմ ու թովռան, իր մոտ կանչեց և մի շատ մեծ խնձոր տվեց: Մանուկը առանց որևէ չար մտադրության, անվախ հենվեց իշխանի ծնկներին և իր բնական անմիջականությամբ ընդգծեց իր ազնվական ծագումը, այն աստիճան, որ իշխանը զարմացավ, իսկ նրա թիկնապահները ծածուկ կատաղեցին:*

*5. Կարճ ասած, աստուծո գթությամբ հայրենիք վերադարձան գերի քշված քրիստոնյա ամբողջ ժողովուրդը, այդ թվում նաև Վասիլի ծնողները, իրենց ամենաթանկագին որդու հետ միասին: [Վասիլի] հետ, դեռ մանկության օրերին մի հրաշալի բան կատարվեց, որը կանխագուշակությունն էր ապագա հաջողությունների: Ես կարծում եմ, որ սխալ կլինի լռությամբ անցնել դրա կողքով: Ամառ ժամանակ նրա ծնողները գնացել էին իրենց սեփական դաշտը և ղեկավարում էին հնձվորների աշխատանքը, դրդում նրանց ավելի լավ աշխատել: Օրը կես եղավ, արևն իր կեսօրվա ճառագայթներով արդեն շատ էր այրում և նրանք հասկերից ինչ որ վրան հյուսեցին և այնտեղ պառկեցրին երեխային քնելու, որպեսզի կիզիչ արևի ջերմությունն անվնաս անցկացնի: Երբ նրանք հնձվորներով էին զբաղված. մի արծիվ վայր խուժեց, նստեց վրանի վրա և բացելով իր թևերը. երեխային ստվեր արեց: Այդ բանը տեսնողները աղաղակ բարձրացրին, վախեցան, որ արծիվը կարող է երեխային կործանել: Հոգատար և մանկասեր մայրը աճապարեց դեպի որդին: Նա տեսավ, որ արծիվը իր թևերով ստվեր է անում որդուն, տեսավ, որ նա ամենևին էլ չվախեցավ իրենից, այլ ընդհակառակը՝ կարծես ուրախությամբ էր իրեն նայում, բայց այդ պահին ուրիշ բան անել չկարողացավ, և արծվի վրա քար շպրտեց: Արծիվը թռավ և հեռացավ: Բայց երբ մայրը վերադարձավ իր ամուսնու և աշխատողների մոտ, արծիվն առաջվա պես եկավ և մանկան վրա ստվեր արեց. տեսնողները նորից աղաղակ բարձրացրին, մայրը վազեց որդու մոտ, քար շպրտեց, արծիվը հեռացավ, իսկ մայրը նորից վերադարձավ աշխատողների մոտ: Նախախնամությունը, ցանկանալով ցույց տալ, որ դա պատահական դեպք չէ, այլ կատարվում էր աստվածային կանխագիտությամբ, նույն բանը երրորդ անգամ կրկնվեց, այն է՝ արծիվը [ճախրեց] մանկան վրա, տեսնողներն աղաղակեցին, մայրը շտա-*

պեց դեպի արծիվը, իսկ արծիվը հազիվ պոկվեց ու հեռացավ։ Դա այդպես է. աստված կատարվելիք մեծ իրադարձությունների մասին միշտ դեռ շատ առաջ նշաններ և ապացույցներ է տալիս։ Նման դեպքը հետագայում ևս հաճախ էր պատահում նրան, և քնած ժամանակ արծիվը բազմիցս իրեն ստվեր էր անում[23]։ Բայց մայրն այն ժամանակ դեպքին ոչ մի նշանակություն չէր տալիս։ Նախքան բացահայտվեին [Վասիլի] առաքինությունները, այդ նշանների վրա, ինչքան էլ դրանք կարևոր լինեին, ուշադրություն չէին դարձնում և բացատրություն չէին փնտրում, ոչ ոքի մտքովն անգամ չէր անցնում, որ երբևիցե կարող է համեստ ու հասարակ այդ տանը նման [բախտ] մուտք գործել։ Այն պատճառով, որ այս հարցի շուրջ երկարաբանելը կարող է [Վասիլին] գովաբանելու ինչ որ ձև համարվի, որ նրա մասին լավ բան ասելու նյութ չունենալն է մեզ ստիպում ծանրաբեռնել շարադրանքը, ահա նման կարծիք չստեղծվելու համար մի կողմ ենք թողնում այսպիսի պատմությունները, ինչպես և այն ամենը, ինչ վերաբերում է նրա մանկության տարիներին։ Այժմ փութանք անցնել առաջ, հրաժարվելով անվերջ գովասանքներից, որոնք համարում ենք ոչ գովելի բան։

6. Մանկան դաստիարակության գործը իր վրա էր վերցրել հայրը, նա էր որդու անելիքի և ասելիքի խորհրդատուն, նա էր նրա ուսուցիչն ու դաստիարակը՝ բոլոր կարևոր ու գովելի արարքների։ [Վասիլը] կենտավրոս Քիրոնի կարիքը չզգաց, ինչպես Աքիլլեսը, ոչ էլ օրենսդիրներ Լիկուրգոսի ու Սոլոնի, նա արտաքին կամ օտար [գիտությունների] ուսման կարիքն էլ չզգաց. նա միմիայն հոր մոտ ստացավ բարձր դաստիարակությունը, սովորեց լինել ակնածող ու բարեպաշտ՝ դեպի աստվածայինը, ամոթխած ու հնազանդ՝ ծնողների հանդեպ, գիջող դեպի տարեցները, բարեմիտ ու անկեղծ՝ դեպի տարեկիցներն ու ազգականները, ենթարկվող՝ իշխանավորներին և ողորմած՝ չքավորների հանդեպ։ Նա ամեն ինչում փայլեց իր առաքինություններով, դեռ պատանի հասակում աչքի ընկավ իր խոհեմությամբ ու արիությամբ. նա սիրում էր և անչափ գնահատում չափավորությունը, ամենևին չէր արհամարհում հասարակ մարդկանց։ Ահա այդ էր պատճառը, որ նա բոլորի սիրելին էր և ցանկալին։

7. Օրբ նա մանկությունից անցնում է պատանեկության հասակին և ձեռնահմուտ լինում տղամարդուն վայել գործերի, վախ-

ճանվում է՝ նրա հայրը և գնում հանդերձյալ աշխարհը։ Տունը լցվեց սուգ ու ողբով, այրիացավ [Վասիլի] մայրը, որբացավ այդ ամենահզորը։ Ունունդ առան վիշտն ու թախիծը, դրա վրա գումարվեցին նաև ապրուստ հայթայթելու, տան, մոր և եղբայրների հոգսերը։ Նա չնչին էր համարում երկրագործության տված օգուտը, այդ աշխատանքն իսկ անվայել, ուստի որոշեց գնալ թագավորանիստ քաղաքը, ցուցաբերել իր անձնական առաքինություններր և այդ ճանապարհով ձեռք բերել և՛ իր, և՛ իր ընտանիքի կարիքները հոգալու միջոցներ, ավելի օգտակար և պիտանի լինել նրանց։ Նա գիտեր, որ մարդկանց լավագույն ընդունակությունները ծաղկում են հենց մեծ քաղաքներում, մանավանդ մայրաքաղաքներում, որ մյուսներից մի քիչ ավելի աչքի ընկնող մարդը ավելի փայլուն բախտի է արժանանում։ Նա գիտեր, որ մարդկանց առաքինությունները նվազ հայտնի, երկրորդական քաղաքներում բթանում են ու խամրում, ինչպես գյուղերում, որ եթե այդ առաքինությունները հանդես բերելու ասպարեզ չլինի, ոչ էլ գնահատող մարդիկ, ապա դրանք խունանում են և թառամում։ Այդ պատճառով նա ձեռնտու և օգտակար համարեց գնալ թագավորանիստ քաղաքը։ Բայց նրան ետ էր քաշում և ձեռքն ու ոտքը կապում դեպի մայրը տածած սերը, նրա բեռը թեթևացնելու ցանկությունը, նամանավանդ որ մայրը հանգիստ ծերություն էր ուզում և պահանջում, որ որդին իր մոտ մնա և ցուցաբերի պետք եղած օժանդակությունն ու հոգատարությունը։

8. Բայց քանի որ պիտի աստուծո կամքը կատարվեր, այն, որ [Վասիլը] աստիճանաբար բարձրանալով հասներ այն տեղը, որն իր համար էր կանխորոշված, երազներն ի վերջո համոզում են մորը լինել զիջող՝ տեղի տալ նրա քաղաք գնալու բուռն ցանկության առաջ։ Դեռ ավելին, հենց ինքը՝ մայրը սկսեց խթանել և դրդել որդուն գնալ թագավորանիստ քաղաքը՝ ցույց տալու իր հոգու վեհությունը, իր արտակարգ քաջությունը։ Մայրը երազում տեսել էր, որ իրենից ինչ որ հսկա մի ծառ է բուսել (այնպես, ինչպես Կյուրոսի մայրը [երազում] տեսել էր [իրենից բուսած] որթատունկը), մի ծաղկաշատ ու մրգաշատ ծառ, իր տան վրա կանգնած։ Գետնից բարձրացող նրա հսկայական բունը ոսկուց էր, ճյուղերն ու տերևները ևս ոսկե։ Նա այդ մասին պատմեց երազներ մեկնող մի մտերիմ մարդու և նրանից պատասխան ստացավ, թե դա նշանակում է, որ որդին արժանանալու է փայ-

լուն և մեծ բախտի։ Փոքր անց նա երազում տեսնում է մի ծերունու, որի բերանից հուր էր ժայթքում. նա շարունակ ասում էր նրան, թե աստված քո սիրելի որդի Վասիլին տալու է հռոմեական թագավորության գայիսոնը և դու պետք է դրդես նրան գնալ Կոստանդնուպոլիս։ Վասիլի մայրը այդ ավետիսից ուրախացած ու բերկրացած, երկրպագեց ծերունուն և հարցրեց. «Դու ո՞վ ես, տեր, որ արժանի համարեցիր ինձ երևալ և բերել նման ավետիսներ»։ Նա պատասխանեց. «Ես Եղիա Թեսբացին[24] եմ» ու անհետացավ։ Նա զարթնեց և այդ բարի երազներից, ավելի ճիշտ, աստվածային հայտնություններից թևավորված ու կյանք ստացած, հենց ինքը սկսեց դրդել որդուն գնալ թագավորանիստ քաղաքը. որպես մայր նա խորհուրդ տվեց և աղաչեց նրան, որ իր հոգում մշտապես պահի երկյուղն աստուծո, իմանա, որ նախախնամության աչքը միշտ տեսնում է նրա յուրաքանչյուր արարքն ու մտածմունքը, այդ պատճառով թող նա ոչ մի վատ բան չգործի, այլ իր անձնական առաքինությունները պետք եղած ձևով դրսևորի, ոչ մի դեպքում չնսեմացնի իր նախնիների ազնվազարմությունը։

9. Դուրս գալով Թրակիայի Մակեդոնիայից, նա գնաց դեպի քաղաքների թագուհին, նպատակ ունենալով մտերմանալ ուժեղներից և երևելիներից մեկն ու մեկի հետ, մտնել նրա մոտ ծառայության և սպասավորության[25]։ Կտրելով միջանկյալ ճանապարհը և հասնելով թագավորանիստ քաղաքի Ոսկե դռները[26], օր ցերեկով անցավ նրանցից ներս, մոտեցավ հենց [այդ դռների] մերձակայքում գտնվող սուրբ վկա Դիոմեդեսի մենաստանը և ճանապարհորդությունից հոգնատանջ, նրա գարպասի առաջ, պատերի տակ անհոգ պառկեց հանգստանալու։ Գիշերվա առաջին պահին վանահոր[27] երազում գալիս է վկա Դիոմեդեսը և հրամայում նրան դուրս գալ դեպի վանքի դարպասը, «Վասիլ» կանչել և նրան, ով պատասխանի իր կոչին, վանք հրավիրել և հյուրընկալել, տալով սնունդ, օթևան, հագուստ, ամեն մի օժանդակություն և մատուցել իր ծառայությունը, քանզի նրան աստված թագավոր է օծելու և նա է, որ պետք է վերականգնի և փառավորի այդ վանքը։ Վանահայրը այդ տեսիլքը համարեց երևակայության արգասիք, մրտքի սին ստեղծագործություն և ոչ մի նշանակություն չտվեց։ Նորից ննջելով, երկրորդ անգամ է լսում նույն բանի մասին։ Բայց լինելով քնաթաթախ, կիսաքուն վիճակում ոչինչ չարեց։ Նա երրորդ անգամ է տեսնում վկային, որն արդեն նրան հրամայում էր

ոչ թե առաջվա պես հեզ ու հանդարտ, այլ սաստիկ սպառնալով փորձանքի ենթարկել, եթե շտապ չկատարի ասվածը։ Այս անգամ նա հազիվ-հազ սթափվեց, աչքերից քշեց մահվան հարևան քունը, գնաց դարպասի մոտ և վկայի հրամանի համաձայն «Վասիլ» կանչեց։ Նա իսկույն պատասխանեց. «Ահա ես, տեր, ի՞նչ ես հրամայում քո ծառային»։ [Վանահայրը] նրան վանք հրավիրեց. տեսնելով, որ կեղտոտ է ու փոշոտ, դեմքն արևակեզ, մարդասիրաբար անհրաժեշտ հոգատարություն և օգնություն ցուցաբերեց։ Այնուհետև խնդրելով Վասիլին ոչ ոքի չհայտնել, իր մեջ պահել գաղտնիքը, նրան հայտնեց վկայի մարգարեությունը և երաշխիք խնդրեց [Վասիլից], որ գուշակության իրականացումից հետո նա կհիշի այդ։ [Վասիլը] դա անհնարին բան համարեց ու մերժեց, ընդհակառակը, խնդրեց [վանահոր] միջնորդությունը որևէ հայտնի մարդու մոտ ծառայության ընդունվելու համար, մի բան, որ վանահայրը սիրով կատարեց։ Նա [Վասիլին] ներկայացրեց կայսր Միքայելի[28] և կեսար[29] Վարդասի[30] մի ազգականին, որին փաղաքշորեն Թեոփիլիցես[31] էին անվանում, մականունը Պեդևոմենոս։ Վերջինս այդ վանքի հանդեպ մտերմություն էր ցույց տալիս և հաճախ էր այնտեղ սիրով լինում։ Այս Թեոփիլիցեսը ուրախ մարդ էր, մեծահոգի և շատ էր ցանկանում իր ծառայության մեջ ունենալ ազնվական, գեղեցիկ, երիտասարդ, քաջությամբ և կորովի մարմնով աչքի ընկնող տղամարդկանց և նրանցով հպարտանալ ու պարծենալ։ Նա այդ տղամարդկանց իսկույն հագցնում էր մետաքսե հանդերձներ և այլ համազգեստներ։ Ահա այս մարդկանց թվին դասվեց և երիտասարդ նորակոչիկ Վասիլը։ Թեոփիլոսը, տեսնելով, որ Վասիլը ֆիզիկական ուժով և մտավոր ընդունակություններով մնացածներին շատ էր գերազանցում, նրան նշանակեց իր պրոտոստրատորը[32]։ Սերը նրա հանդեպ օրեցօր աճում էր. նա հիանում էր նրա անձնական բարեմասնություններով, նրա, ով աչքի էր ընկնում և՛ ֆիզիկական ուժով, և՛ մտավոր ընդունակություններով, իսկ բոլոր հրամանները կատարում էր արագ և անթերի։

10. [Վասիլի] մայրը անվերջ մտահոգության մեջ էր [որդու] համար, որովհետև ոչ մի լուր չէր ստանում նրա բարեհաջող տեղավորվելու մասին։ Նա հուսաբեկ էր եղել և տրտմության մեջ ընկել, երբ նորից երազում տեսնում է իր բակում նոճու նման մի ծառ՝ ոսկե տերևներով, ոսկե ճյուղերով ու բնով, որի գագաթին

դիրքը։ Մի անգամ գենիկոնի [լոգոթետի][269] պաշտոնն ունեցողը նույն այդ նկատառումներով ազնիվ կայսեր խորհուրդ տվեց հռոմեական տիրապետության բոլոր բանակաթեմերը ուղարկել այսպես կոչված էպոպտներին ու էքսիսոտներին[270], որպեսզի, ինչպես ասաց, այն ագարակներն ու գյուղերը, որոնք ժամանակի ընթացքում այլ և այլ պատճառներով անտերունչ էին դարձել, տան ուրիշներին և այդպիսով կայսերական գանձարանին մեծ եկամուտ բերեն։ Կայսրը ձևացրեց, որ համամիտ է նրա խորհրդին և նրան հրամայեց այդ գործը հաջողությամբ իրագործող մարդկանց ընտրել և իրեն ներկայացնել։ Պետական գանձապահն իր կարծիքով լավագույններին ընտրեց. ընտրյալների ցուցակը ներկայացնելով [կայսեր], նա կշտամբանքի արժանի համարվեց և խիստ պարսավանքի ենթարկվեց, որ այդ գործի համար նման մարդկանց է առաջադրել։ [Գանձապահն] ասաց, որ պաշտոնյաների մեջ դրանցից լավը չկա. կայսրը պատասխանեց, թե՝ «ես դեմ եմ այս նախաձեռնության. եթե հնարավոր լիներ այդ գործն ինքս անձամբ կկատարեի, բայց որովհետև գտնում եմ, որ դա անվայել է և անիրագործելի, ստիպված իմ հույսերը պետության երկու մագիստրոսների[271] վրա եմ դնում, այդ պարտականության կատարումը վստահում եմ նրանց, որովհետև նրանք և՛ պատկառելի տարիք ունեն և՛ մեծ փորձ, իրենց վստահված պետական պարտականությունները երկար տարիների պաշտոնավարության ընթացքում կատարել են անթերի, ուղղամիտ և առաքինի կերպով։ Արդ, ասաց, դու ինքդ գնա և հայտնիր նրանց այս գործի օգտակարության մասին, հաղորդիր և իմ կարծիքն այդ առթիվ։ Եթե նրանք համաձայն լինեն ընթացք տալու դրան, ես կողջունեմ այդ միտքը և կստորագրեմ դրա տակ»։ Բայց երբ այդ մասին լսեցին երկու [մագիստրոսները], ապշեցին, և պատճառ բռնելով իրենց ծերությունը, հասարակաց հոգսերով սաստիկ ծանրաբեռնվածությունը, խնդրեցին ազատել իրենց նման ծառայության բեռից։ Ուղարկվողը ձեռնունայն վերադարձավ կայսեր մոտ և զեկուցեց մագիստրոսների վճռի մասին։ Կայսրը, լսելով այդ, ասաց. «իմ գնալը համարվում է անվայել, պայծառափայլ մագիստրոսները չեն ուզում իրենց վրա վերցնել այս գործը, իսկ ես էլ չունեմ նախաձեռնությունն իրականացնող ուրիշ վստահելի մարդ, դրա համար ահա որոշել եմ քննության ներկայացված հարցին ընթացք չտալ։ Ավելի լավ է, ասաց նա, որ վատ մարդկանցից ոմանք ապօրինաբար ինձնից օգուտ քաղեն, քան թէ որևէ մեկը վնաս

կրի և փորձանքի հանդիպի»։ Իր ամբողջ ինքնակալության ժամանակ, ահա, հռոմեական տիրապետության տակ գտնվող բոլոր բանակաթեմերի ժողովուրդը, չքավորներին կից գտնվող գյուղերն ու ագարակները, ի վայելումն նրանց, չտեսան ոչ էպոպտես և ոչ էլ էքսիսոտ. մնացին ազատ և նրանց մասին նախատեսված օրենքը չեղյալ հայտարարվեց։ Ահա այսպիսին էր բարի կայսրը բոլոր հպատակների, հատկապես գյուղական բնակչության նկատմամբ ցուցաբերելով հայրական հոգատարություն և խնամք։

100. Բայց նախանձը արքունիքում մի նոր ալեկոծություն և փոթորիկ բարձրացրեց, շփոթություն և իրարանցում առաջացնելով հենց իրեն՝ բնության դեմ։ Կայսեր շատ սիրելի որդի Կոստանդնի մահից դեռ քիչ ժամանակ էր անցել, նրա համար մխիթարություն և հույս էր դարձել երկրորդ որդին՝ Լևոնը։ Բայց դևերի նախանձ ցեղը չհանդուրժեց կայսերական իշխանությունը ժառանգողի անվրդով, խաղաղ, բարեպաշտ և հեզ բնավորությունը, հպատակ ժողովրդի վերաբերյալ նրա թագավորության ժամանակ ակնկալվող բարեկեցությունն ու բարգավաճումը։ Ահա դրա համար այդ [ցեղը] դուրս է գալիս նրա դեմ մարտի՝ հետևյալ ձևով. երանելի Վասիլը ուներ Սանդավարինոս[272] անունով մի շատ սիրելի և վստահելի վանական և քահանա համարվող բարեկամ և հմուտ օգնական։ Հակառակ որ կայսրր սիրում էր նրան, բայց մարդկանց մոտ նա բարի համբավ ու վարկ չուներ։ Այդ էր պատճառը, որ Լևոնը հաճախ էր ծաղրում նրան, անվանելով շառլատան ու խաբեբա, կայսրին ճիշտ ճամփից խոտորող։ Դա այդ խարդախի և նենգի ականջը հասավ։ Ձևացնելով, որ նա բարի Լևոնի ընկերն է ու բարեկամը, ասաց նրան, թե «դու արդեն պատանի ես, հորդ սիրելին, ապա ինչո՞ւ դաշտնի չես կրում թուր կամ դաշույն։ Երբ հորդ հետ ձի հեծած դուրս ես գալիս ագարակները, դու պետք է օգնես նրան, երբ նրա վրա հարձակվի որևէ գազան, եթե նրա դեմ որևէ դավադրություն նյութվի, դու չպետք է անզեն լինես. այլ պետք է մի բան ունենաս, որով կարողանաս մարտնչել հորդ ոսոխների դեմ»։ Լևոնը նենգությունից անտեղյակ, չհասկացավ այդ մարդու խորամանկությունը (ով ընդունակ չէ չարագործության, նա դժվար է կռահում նենգությունը), նա ընդունեց խորհուրդը և համաձայնվեց կոշիկի մեջ դաշույն պահել։ Երբ նենգամիտը տեսավ, որ իր խորհուրդը ի կատար է ածված, տեղեկացնում է կայսեր, թե «որդիդ մտադիր է քեզ սպանել, եթե

*չես հավատում, ապա երբ մայրաքաղաքից դուրս գաս որսի կամ որևէ այլ նպատակով, հրամայիր նրա ոտքից հանել սանդալները, և եթե դաշույն գտնվի այնտեղ, իմացիր, որ քո սպանության համար է այն նախապատրաստված»։ Հայտարարվեց կայսեր [որսի] դուրս գալու մասին և նրա հետ մեկնեցին բոլոր նրանք, ովքեր ընդունված կարգի համաձայն մասնակից են դառնում։ Հասնելով մի վայր, կայսրը ձևացնում է, թե դաշույնի կարիք է զգում և փութանակի փնտրում այն։ Որդին ներկայացավ և հոր կասկածներին անտեղյակ, առանց որևէ հետին մտքի հանեց և հորը տվեց իր կրած դաշույնը։ Հենց որ դա կատարվեց, նրա դեմ հարուցված մեղադրանքն իսկույն ճշմարիտ համարվեց, իսկ [Լևոնի] չքմեղանքը՝ սին ու կեղծ։ Նրանք իսկույն վերադարձան արքունիք. կայսրը·որդու վրա զայրացած զրկեց նրան կարմիր կոշիկներից[273] և Մարգարիտես[274] կոչված կայսերական տներից մեկում արգելափակեց։ Ոսոխ և վրիժառու [Սանդավարինոսը] դրդում էր կայսեր [Լևոնի] աչքերի լույսը խավարեցնել[275], մի բան, որ արքունի քահանայապետը և սենատը թույլ չտվեցին անել, բայց այնուամենայնիվ [Վասիլը] նրան բանտից չազատեց։ Երկար ժամանակ անցավ. հայրական զգացմունքները չէին խոսում նրա մեջ, ընդհակառակը, չար ոգիները քարացնում էին դրանք։ Սենատի մեծամեծները բազմիցս ցանկացան միջնորդել հոր առջև՝ որդու օգտին, բայց ամեն անգամ ինչ-որ բան խանգարում էր։ Նրանք իրենց որոշածն իրականացնելու պատեհ առիթ համարեցին հետևյալը. (101) պալատում, կախված վանդակի մեջ կար ուրիշի ասածը կրկնող, շատախոս մի թռչուն, որին թութակ են անվանում։ Ոմանք սովորեցրել էին նրան, գուցե և այլ ճանապարհով նա էր սովորել, և հաճախ կրկնում էր. «Վայ, վայ քեզ, տեր Լևոն»։ Մի օր կայսեր մոտ ճաշկերույթ էր և նրա հետ սեղան էին նստել սենատի առաջին մարդիկ։ Երբ թռչունը բազմիցս կրկնեց վերոհիշյալ խոսքը, սեղանակիցները տխրեցին, խղճահարվեցին և դադարեցրին կերուխումը։ Կայսրը դիմելով նրանց հարցրեց, ինչո՞ւ են վերջ տվել խնջույքին։ Նրանք արտասվալից աչքերով պատասխանեցին. «Ինչպե՞ս շարունակենք, երբ այս անբան [թռչունը] պախարակում է մեզ՝ բանական և տիրասեր համարվողներիս, երբ նա իր տիրոջն է կոչում, իսկ մենք խնջույքներով տարված մոռացել ենք անմեղ տիրոջ։ Եթե նա իսկապես մեղավոր է՝ հոր վրա է բարձրացրել իր աջը, մենք մեր ձեռքով կսպանենք նրան և կհագենանք նրա արյամբ։ Բայց եթե նա անմեղ է, իր դեմ ներ-*

կայացված մեղադրանքներն անհիմն, ապա մինչև ե՞րբ բանսարկու լեզուն պիտի նրա դեմ հաղթող լինի»։ Այս խոսքերից կայսրը մեղմացավ, հրամայեց նստել և մտածել հարցի շուրջը։ Շատ չանցած նրա մեջ խոսեց հայրական զգացմունքը։ Նա որդուն հանեց բանտից և իր մոտ հրավիրեց, նրա սգավորի հանդերձները փոխեց, կարգադրեց կտրել արգելափակման ընթացքում ՛աճած մազերը և թագավորական նախկին շուքին ու պատվին արժանացրեց։

102. Շատ չանցած կայսրը հիվանդանում է մահացու ախտով, որն հետևեց թանչին. վերջինս իր հերթին առաջացել էր որսի ժամանակ, երբ նա [ձիուց] ցած էր գլորվել։ Ահա այս հիվանդությունը կամաց-կամաց սկսեց նրան հալումաշ անել։ Նա վախճանվեց[276] նախօրոք պետության գործերը գերազանց կարգավորելով, նշանակելով իր հաջորդին, բոլոր հարցերը խոհեմաբար տնօրինելով։ Բարձր ջերմությունն ամբողջությամբ վատնել էր ու քամել նրա կենսական հյութը։ Նա իր նախորդի՝ Միքայելի հետ թագավորեց մեկ տարի, տասնինն տարի միահեծան, քաղաքական հարցերում իրեն դրսևորեց գերազանց, ցուցաբերեց ռազմագիտական խոր գիտելիքներ, պետության սահմաններն ընդարձակեց, հպատակների հանդեպ գործադրվող անիրավությունն ու բռնությունը վերացրեց։ Եվ միանգամայն պատշաճում են նրան օրինակելի թագավորի մասին Հոմերոսի խոսքերը. «և թագավոր բարի, և հզոր ու քաջ պատերազմող»[277]։ Բացարձակ իշխանությունն ստանում է նա, ով և՛ բնության օրենքով, և՛ իր առաքինություններով կոչված է հայրենական ժառանգության [տիրանալու], կենդանի որդիներից ավագագույնը, ամենաբարի և ամենաիմաստուն Լևոնը, որին ցանկանում էր հպատակ ժողովուրդը և աղոթում դրա համար։

Մենք մեր ուժերի ներածի չափով շարադրեցինք երանելի կայսր Վասիլի բարեպաշտ թագավորության պատմությունը, այն, ինչ դեռ ժամանակը մոռացության չէր տվել, ապա և նրա իշխանությունն ստանալու նախորդող ժամանակաշրջանի, նրա ողջ կյանքի ճշմարտացի պատմությունը։

# ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ԱՐՔՈՒՆԻՔԻ ԱՐԱՐՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

## Գ Ի Ր Ք  Ա Ռ Ա Ջ Ի Ն

## DE CERIMONIIS AULAE BYZANTINAE

### L I B E R  I

## ԳԼՈՒԽ 24[1]

# ԹԵ ԻՆՉՊԵՍ ՊԵՏՔ Է ՆՇԵԼ ՀՈՒՆՎԱՐԻ 1-Ը՝ ՍՈՒՐԲ ԲԱՐՍԵՂԻ ՕՐԸ

*...Արարողապետը ընդունված հերթականությամբ. ըստ բարձերի[2] մագիստրոսներին, պատրիկներին և մնացած սենատորներին նախապատրաստում է դրսում։ Երբ ամեն ինչ տեղին է լինում, այդ մասին հայտնվում է կասր[երին]. Նրանք հագնում են իրենց քղամիդները, կապում թագերը և բարձրանում ու բազմում են իրենց գահերին։*

*Բ. Պրեպոզիտոսի[3] ազդանշանով մուտք է գործում կուբուկլիոնը[4], իսկ կուբուկլիոնի մտնելուց և աջ ու ձախ կողմերում տեղ գրավելուց հետո, ընդունելությունների ընդունված կարգի համաձայն պրեպոզիտոսի ազդանշանով ոսկե գավազանը կրող օստիարիոսը[5] դուրս է գալիս և ներս հրավիրում առաջին բարձը՝ մագիստրոսներին, [ապա] երկրորդ բարձը՝ պատրիկներին, [և վերջապես] երրորդ բարձը՝ սենատորներին, մի խոսքով բոլոր այն բարձերը, որոնք կարգի և սովորության համաձայն մասնակցում են ընդունելություններին։ Երբ բոլորը կանգնում են [իրենց տեղերում], պրեպոզիտոսը ազդանշան է տալիս ոսկե գավազանը կրող օստիարիոսին, որը ներս է հրավիրում առաջին բարձը՝ մագիստրոսին՝ Տարոնի իշխանին[6]։ Նա ներս է մտնում կայսերական կատեպանի[7] և դրոմոսի լոգոթետի ուղեկցությամբ, երկրպագում տերերին, որից հետո նրան տեղ են տալիս կայսերական գահից ոչ հեռու։ Լոգոթետը նրան սովորական հարցերը տալու ընթացքում, դրոմոսի պրոտոնոտարը[8] ներս է բերում նրա նվերները. այդ արարողության ավարտից հետո, մագիստրոսը նորից է երկրպագում և դուրս գալիս։ Վերստին պրեպոզիտոսի ազդանշանով ոսկե գավազանը կրող օստիարիոսը դուրս է գալիս և ներս հրավիրում երկրորդ բարձը՝ բարեկամ բուլղարներին[9], ովքեր հատուկ գալիս են քրիստոսասեր տերերի հետ միասին տոնակատարությանը մասնակից դառնալու։ Նրանք ևս ամեն ինչ կատարում են վերոհիշյալ կարգի համաձայն և դուրս գալիս։ Նորից պրեպո-*

զիտոսի ազդանշանով ոսկե գավազանը կրող մյուս օստիարիոսը դուրս է գալիս և հրավիրում երրորդ բարձը՝ մագիստրոսի՝ Տարոնի իշխանի առաջին մարդկանց[10]. Նրանք ևս ամեն ինչ անում են վերոհիշյալ կարգով և դուրս գալիս։ Այդ բոլորի ավարտից հետո պրեպոզիտոսն ասում է. «Ձեր հրամանքը»։ Ամենքն արտասանում են «Շատ և երջանիկ տարիներ» մաղթանքը և դուրս գալիս՝ մագիստրոսները, պատրիկները, սենատորներն ու բոլոր մյուսները, որից հետո պրեպոզիտոսը կրկնում է. «Ձեր հրամանքը»։ Այս անգամ նույն ձևով մաղթանքն է արտասանում կուբուկլիոնը և նա ևս դուրս է գալիս։ Տերերն իսկույն իջնում են գահերից։ Նրանց թագերն ու քղամիդները հանում են, հագցնում ոսկեթել հանդերձները, որից հետո նրանք մտնում են իրենց աստվածապահպան պալատը։ Մագիստրոս Տարոնացին[11] և բարեկամ բուլղարները գնում են իրենց օթևանները։ Այդ օրը նրանք կայսրերի հետ չեն ճաշում։

ԳԼՈՒԽ 89

## ԹԵ Ի՞ՆՉ ՊԵՏՔ Է ԱՆԵԼ, ԵՐԲ ԳԱԼԻՍ Է ՊԱՐՍԻՑ ՄԵԾ ԴԵՍՊԱՆԸ[12]

Երբ հայտնվում է, որ մեծ դեսպան է գալիս, մագիստրոսը սահմանագլուխ է ուղարկում մի իշխանավորի, որը պետք է ունենա իլլյուստրիոսի[13], սիլենտիարիոսի[14] կամ տրիբունոսի[15] աստիճան, և կամ էլ ուրիշ մի աստիճանավորի՝ մագիստրիանոսի[13], մի խոսքով ում որ նա հարմար է գտնում եկող անձնավորության դիմավորելու և ուղեկցելու համար։ Ուղարկվող անձնավորությունը մուտք է գործում Նիսիբիս[17] [քաղաքը], ողջունում է [դեսպանին] և եթե իր հետ ունի կայսեր նամակ, հանձնում այն, (եթե ոչ, հանձնում է մագիստրոսի ողջույնի նամակը)։ Բայց եթե իրերի բերմամբ մագիստրոսն էլ չունի դրած որևէ նամակ, ապա ողջունում են նրան բերանացի, թե բարով և ուրախությամբ ժամանեցիք, ու նրա հետ միասին ճանապարհ է ընկնում։ Դեսպանին իր շքախմբով սահմանի վրա են դիմավորում և ընդունում Դարայի[18] իշխանավորները՝ իրենց զինվորներով։ Եթե անհրաժեշտ է սահմանի վրա որևէ խնդրի շուրջ խոսել, խոսվում է, ընդ որում Նիսիբիսի զորահրամանատարը պարսից [զինվորների] բազմությամբ ուղեկցում է դեսպանին [միայն] մինչև սահմանը։ Բոլոր

դեպքերում մի բան ասվում է։ Նա [պարսից զինվորների] բազմությամբ գալիս է [մինչև սահմանը], հռոմայեցիները դիմավորում են նրան և նրա ուղեկիցներին, ընդ որում մնացած պարսիկները պետք է մնան պարսից հողի վրա. միայն [դեսպանն է] իր ուղեկիցներով մուտք գործում Դարա և [արժանանում] հյուրամեծարության։ Դարայի իշխանավորները պետք է շատ զգոն և ուշադիր լինեն, որպեսզի դեսպանության պատրվակի տակ դեսպանի հետ պարսից բազմություն մուտք չգործի[19], հետևեն նրան ամեն տեղ, որպեսզի նա չարանենգորեն չտիրանա քաղաքին։ Իշխանավորները պետք է մեծ ուշադրություն դարձնեն այս բանի վրա, գաղտնի հետևեն նրան և պահպանեն այս կարգը։ Դուքսական պաշտոնյաները ընդունված կարգի համաձայն դեսպանին տալիս են՝ մինչև այստեղ [Կոստանդնուպոլիս] գալու հարյուր երեք օրվա ճանապարհածախսը. ի սկզբանե անտի այդպես էր սահմանված, որ այդքան է տևում դեսպանի ուղևորությունը, այդքան էլ վերադարձը։ Եթե նրա ուղևորությունը ձգձգվի, կայսեր թույլտվությամբ ավելացնում են նրա [ճանապարհածախսը]։ [Դեսպանին] հասանելիքի մասին կարելի է իմանալ «Բարբարոսաց դիվանից»[20]։ Պրետորյան էպարքոս[21] Կոստանդինի ժամանակ կայացված համաձայնությամբ [դեսպանին] հատկացվում է սուրհանդակ հինգ ձի և երեսուն ջորի։ Բայց եթե կայսրը ցանկանում է [շեշտել] նրա հանդեպ ունեցած իր հարգանքը, կարգադրում է շատ ավելին տալ. իսկ եթե ուզում է նաև պատված լինել նրան, ապա պետք է պատվարժան մի անձնավորություն ուղարկել Գալատիա և Կապադովկիա, որպեսզի ընդունի նրան ու հոգա նրա սննդի մասին, նմանապես մարդ ուղարկի Նիկիա, նրա սննդի և հանգստի մասին հոգալու համար։ Երբ [դեսպանը] մոտենա Անտիոքին, ապա մագիստրոսը պետք է մագիստրիանոս ուղարկի՝ դեսպանին ընդունելու և ողջունելու համար, հարցնելու թե ինչպես անցավ ուղևորությունը։ Կայսեր կամքով այդ կատարվում է մեկ կամ երկու անգամ։ [Կայսրը] նաև նամակ է հղում նրան և ողջունում, հարցնում, թե ինչպես անցավ ուղևորությունը։ Հելենոպոլսում դեսպանի համար անհրաժեշտ է պատրաստի ունենալ ջորիներ և դրոմոններ, որպեսզի ըստ [դեսպանի] ցանկության Նիկոմեդիա գնա ցամաքով, կամ էլ դրոմոններով անցնի դիմացի ափը։ Բոլոր դեպքերում պետք է պատրաստի ունենալ ձիեր և ջորիներ, ընդունել նրան և տանել մինչև Քաղկեդոն։ Քաղկեդոնում մագիստրոսը պատրաստում է [դեսպանի] և նրան ուղեկցող

*մարդկանց համար իջևաններ, ուղարկում է բարբարոսաց սոլոտիոնին[22] և հանձնում օրվա կամ մի քանի օրվա ծախսը, ինչքան որ նա մնալու է Քաղկեդոնում։ Նա նրան նվերներ էլ է առաքում։ Մագիստրոսը պետք է նրա մոտ անհապաղ մարդ ուղարկի ողջունելու և հարցնելու, թե ինչպե՞ս ճանապարհորդեց, որևէ բանի ցանկություն ունի՞ արդյոք, մի խոսքով հնարավորության սահմաններում հոգա նրա մասին։ Անհրաժեշտ է, որ քաղաքում նախօրոք պատրաստվի նրա հանգրվանը՝ դեսպանի աստիճանին և նրան ուղեկցող մարդկանց քանակին համապատասխան, տրամադրվեն մահճակալներ, անկողիններ, փռեր, կրակարաններ, սեղաններ, աշխատողներ, որոնք պետք է ջուր կրեն և մյուս սև աշխատանքը կատարեն։ Անկողինները մագիստրոսի կարգադրության համաձայն տրամադրում է պրիվատների կոմեսը[23], այն է կայսեր սակելլարիոսը[24] (այդ պարտականությունն այժմ նրա վրա է դրված), իսկ մահճակալները, ամանեղենը, սեղանները, փռերը և կաթսաները տրամադրում է քաղաքի էպարքոսը[25], նույնպես մագիստրոսի գրավոր կարգադրությամբ։ Կրակարանները հատկացնում են ֆաբրիկիաների[26] [պրեֆեկտները]։ Էպարքոսը տալիս է նաև գործավորներ գինետներից։ [Դեսպանի] օթևանի բաղնիքը, կամ կից բաղնիքը պետք է պատրաստ լինի, որպեսզի երբ որ նա, կամ նրա մարդիկ ցանկանան՝ լողանան, և այդ բաղնիքից կարող են օգտվել միմիայն նրանք։ Երբ [դեսպանի] նավը խարիսխ գցի, մագիստրոսը պետք է ուղարկի կայսերական ձիեր (այդ տրամադրում է կայսեր սպաթարը)։ Ահա դրոմոնում դիմավորում են [դեսպանին] և ուղեկցում մինչև նրան [հատկացված] օթևանը։ Մագիստրոսն անհապաղ մարդ է ուղարկում և ողջունում նրան, կրկին անգամ հարցնում, թե ինչպես ճանապարհորդեց։ Օպտիոնի միջոցով [մագիստրոսն] ուղարկում է նրան իր ցանկացած նվերները։ Որպես կանոն դեսպանն էլ է մարդ ուղարկում և փոխադարձաբար ողջունում մագիստրոսին։ Մագիստրոսը պետք է դեսպանի ներկայացուցչին սիրալիր ընդունի, տա իր ստացած ողջույնին վայել պատասխան։ Մագիստրոսը իր ստորադրյալի միջոցով ասում է նրան. «Հանգստացի՛ր, և երբ հարմար դատես, ես կընդունեմ քեզ»։ [Դեսպանը] հաջորդ, կամ երկրորդ օրը հայտնում, ապա գալիս է և ողջունում մագիստրոսին, տեսակցում նրա հետ։ Մագիստրոսն ամենից առաջ հարցնում է նրա արքայի որպիսության մասին, ապա արքայի երեխաների, իշխանավորների, [դեսպանի] և նրա ընտանիքի որպիսու-*

*թյան մասին, թե ինչպե՞ս ճանապարհորդեց, ուղևորության ընթացքում որևէ բանի կարիք ունեցա՞վ, որևէ բանում թերացե՞լ են արդյոք, և ասում նրան. «մեր բարեպաշտ կայսրը հրամայեց մեզ ամեն ինչ անել քո սպասարկության համար, և եթե որևէ բանում թերացել ենք, ապա դա մե՛ր մեղքն է և խնդրում ենք ձեզ չնեղանալ, ոչ էլ լռության մատնել այդ, այլ ասե՛ք, որպեսզի ուղղենք [մեր թերացումը]»։ Մագիստրոսին են երկրպագում նաև [դեսպանի] բոլոր ուղեկիցները։ Երբ կայսրը որոշի ընդունել [դեսպանին], մագիստրոսը մարդ է ուղարկում վերջինիս մոտ և հայտնում նրան, թե «կայսրը հրամայեց քեզ ներկայանալ»։ Կայսրը պետք է [դեսպանի] Քաղկեդոն ժամանելու և այստեղ [Կոստանդնուպոլիս] հասնելու առթիվ դեկուրիոն[27] ուղարկի և ողջունի նրան, հարցնի արքայի որպիսության մասին, և թե ինչպես ինքը տեղ հասավ։ Երբ [կայսրը] ընդունելու է [դեսպանին], մագիստրոսը երեկոյան սուբադիուվաս[28] է ուղարկում և հայտնում նրան, թե «կայսրը հրամայում է քեզ ներկայանալ, ներկայացի՛ր»։ Կայսրը նույնպես դեկուրիոն է ուղարկում, ողջունում [դեսպանին] և հայտնում նրան, թե «վաղը ընդունում ենք քեզ, ներկայացի՛ր»։ Նախորդող երեկոյան դեսպանին հայտնվում է հանդիպման մասին։ Անհրաժեշտ է, որ ադմիսսիոնալիոսը[29] գա և հարցնի մագիստրոսին լաբարեսիոսների[30] մասին. նա կարգադրություն է անում, որպեսզի [լաբարեսիոսները] ևս դիմավորելու դուրս գան։ Նրանցից յուրաքանչյուրը կանգնում է իր հատուկ տեղում, զինված։ Բոլոր իշխանավորները հագած են լինում ամբողջությամբ մետաքսից գործված հանդերձներ. դեսպանը մուտք է գործում Հռեգիա[31] [դարպասից]։ Մագիստրոսն ընդունում է նրան իր դիվանատանը և հարցնում, ունի՞ արդյոք արքայից նվերներ։ [Մագիստրոսը] պարտավոր է տեսնել բոլոր [նվերները] նախքան նրանց ներս բերվելը, իմանա նրանց բովանդակությունը։ Այնուհետև մագիստրոսը գնում է կայսեր մոտ և զեկուցում նվերների մասին, հայտնում, թե ինչ է բերվել։ Դեսպանը սպասում է մագիստրոսի դիվանատանը։ Այն բանից հետո, երբ կայսրն ընդունում է իշխանավորներին և նրանք մուտք են գործում կոնսիստորիոն[32], ադմիսսիոնալիոսը, բարբարոսաց խարտուլարը[33] և թարգմանները պետք է դեսպանին հրավիրեն անտիկոնսիստորիոն[34], որտեղ և նա սպասում է։ Խարտուլարներն ու թարգմանները ադմիսսիոնալիոսներին տալիս են մագիստրոսի ուղերձը. մնացածը կատարվում է այնպես, ինչպես սիլենցիումի[35] ժամանակ։ Մա-*

գիստրոսը պետք է պատրաստի վիճակում ունենա զինյալ կանդիդատներ[36] և նրանց ուղեկցող բարեձև մանուկներ[37]։ Կայսրը պատրիկի ուղեկցությամբ դուրս է գալիս Ննջասենյակից և բազմում մեծ կոնսիստորիոնում։ Այնտեղ են մուտք գործում նաև իշխանավորները, սովորության համաձայն թխագույն քղամիդներ հագած։ Այդ միջոցին ադմիսսիոնալիոսը ներս է հրավիրում դեսպանին և կանգնեցնում ամառային մեծ կոնսիստորիոնի վարագույրի դիմացի պատին։ Կոնսիստորիոնի երեք դռներն էլ բացվում են այն ժամանակ միայն, երբ [դեսպանի] բերած նվերների մեջ կան նաև նժույգներ։ Բոլոր դեպքերում ամբողջությամբ մետաքսից գործված երեք վարագույրները պետք է կախված լինեն։ Այն բանից հետո, երբ բոլոր իշխանավորներն էլ գրավում են իրենց տեղերը, մագիստրոսը դիմում է (ինչպես խորհրդակցության ժամանակ) հետևյալ կերպ. «Ներս է հրավիրվում պարսից արքա Խոսրովի դեսպան Իեզդեկոսը և նրա ուղեկիցները»։ Ապա դեկուրիոնը ներս է բերում զինյալ [կանդիդատներին]։ Բարբարոսաց [խարտուլարները], ինչպես ասվեց, [մագիստրոսի] այս հրավերը փոխանցում են ադմիսսիոնալիոսներին. ադմիսսիոնալիոսները երկու գրություն են կազմում, մեկը մեծ տառերով, որը տալիս են սիլենտիարիոսին, նա էլ՝ օստիարիոսին։ [Գրությունը] նախապես կայսեր է ընթերցում խարտուլարը՝ Ննջասենյակում, մյուս պիտտակիոնն էլ տալիս են մագիստրոսին՝ ի հիշեցումն։ Տերտիոկերիոսը[38] վերցնում է ուղերձի պատճենը, կանգնում մագիստրոսի ետևը և հուշում նրան։ Մագիստրոսի հրավերից հետո փոքր կոնսիստորիոն է մտնում դեկուրիոնը, վերցնում զինյալ կանդիդատներին, դուրս հանում նրանց և կանգնեցնում իշխանավորների առջև, նրանց աջ և ձախ կողմում՝ հյուպատոսականներից հետո, այնուհետև դուրս է գալիս. եթե տեսնի, որ դեսպանը պատրաստ է, դեկուրիոնը կոչում է «Լեվա»[39]։ Բարձրացվում է վարագույրը, դեսպանը դրսում, այնտեղ, որտեղ կարմիր մարմարիոնն է, երկրպագում է, ապա կանգնում։ Անցնելով դռնից ներս, նորից է երկրպագում և կանգնում։ Հասնելով կոնսիստորիոնի կենտրոնը նա նորից է երկրպագում, ապա գալիս ու համբուրում [կայսեր] ոտքերը, կանգնում մեջտեղում, տալիս [արքայի] նամակը և հաղորդում իր արքայի ողջույնը։ Կայսրը պետք է հարցնի. «Աստուծո կամքով, ինչպե՞ս է մեր եղբոր որպիսությունը։ Ուրախ ենք նրա առողջ լինելու առթիվ», և ինչ որ այդ ընթացքում ցանկանում, ասում է դեսպանին։ Դրանից հետո

դեսպանը պատասխանում է, թե «քո եղբայրը քեզ նվերներ է ուղարկել, խնդրում եմ ընդունել դրանք»։ Կայսրը թույլ է տալիս [ընդունել]։ Դեսպանն իր մարդկանց հետ դուրս է գալիս, վերցնում նվերները և ներս գալիս. ինքը բերում է պատմուճան, զարդ կամ որևէ այլ թանկարժեք բան, եթե այդպիսին կա, իսկ մյուսները մի ինչ-որ իր։ [Դեսպանի մարդիկ] պետք է նախօրոք թարգմանների օգնությամբ պատրաստ լինեն անտիկոնսիստորիոնում և բոլորը [նվերները] բռնած ներս մտնեն։ Նրանք բոլորը կանգնում են գահի դիմացի պատի տակ, վարագույրից դուրս, և երբ բարձրացվում է վարագույրը, երկրպագում են, անցնելով դռնից ներս, նորից են երկրպագում և այդ բանն անում են երեք անգամ։ Դրանից հետո սիլենտիարիոսները ընդունում են բովանդակ նվերները։ Նրանց պարտականությունն է մագիստրոսի գիտությամբ [նվերները] տանել վեստոսակրա[40] և հանձնել։ Կատարվում է [նվերների] գնահատումը. վեստոսակրանոսները[41] պետք է նվերների արժեքն իսկույն հայտնեն մագիստրոսին, որպեսզի նա իմանա ինչ է բերվել և փոխադարձ նվիրատրության ժամանակ հիշեցնի կայսեր, թե ինչ է անհրաժեշտ ուղարկել իր դեսպանների միջոցով։ Երբ նվերները ներս են բերվում, կայսրն ասում է դեսպանին. «Մի քանի օր հանգստացիր, և եթե որևէ խնդրի շուրջ ասելու բան ունենանք, կասենք և բարով ետ կուղարկենք քեզ դեպի մեր եղբայրը»։ Դեսպանը շնորհակալություն է հայտնում, երկրպագում, նորից երկրպագում նույն տեղերում և դուրս գալիս։ Հենց որ քաշվում է վարագույրը, դեկուրիոնը կանգնում է, մագիստրոսը դիմում է, ասելով. «Ստրանֆեր»[42]. դեկուրիոնը վերցնում է զինյալ կանդիդատներին և դուրս հանում փոքր կոնսիստորիոնը։ Ահա այն ժամանակ կայսրը իջնում է. մնացած ամեն ինչը կատարվում է ընդունված կարգի համաձայն։ Դեսպանր պետք է սպասի ներքևում, մագիստրոսի դիվանատանը, իսկ մագիստրոսն իջնում է ցած, հրաժեշտ տալիս նրան ու ճամփու դնում։

ԳԼՈՒԽ 90

## ԹԵ ԻՆՉՊԵ՞Ս ՊԵՏՔ Է ՎԱՐՎԵԼ ԴԵՍՊԱՆԻ ՀԵՏ ՀԱՋՈՐԴ ՕՐԵՐԻՆ

Կայսրը ստանալով [արքայի] նամակը, մագիստրոսին կարգադրում է հայտնել դեսպանին, որ նա հաջորդ օրը գա պալատ։



9—648

[Կայսրը] եթե ցանկանա, ինքն է սիլենտարիոսի միջոցով հայանում ու հրավիրում [դեսպանին]։ Գումարվում է սիլենտիոն. լաբարեսիոսները կանգնում են, և երբ [դեսպանը] ժամանի, մագիստրոսն ընդունում է նրան իր դիվանատանը։ [Դեսպանն] սպասում է այնտեղ, իսկ [մագիստրոսը] բարձրանում կայսեր մոտ և հայտնում այդ մասին։ [Կայսրը] ընդունում է [դեսպանին] կա՛մ [Ավգուստեոնի][43] սյունաշարքում, կա՛մ էլ հենց Ավգուստեոնում։ Եթե դեսպանը բերել է անձնական նվերներ, մի օր առաջ մագիստրոսի միջոցով խնդրում է [կայսեր] ընդունել դրանք, և եթե կայսրը թույլ տվեց, ապա [դեսպանը] ցույց է տալիս դրանք մագիստրոսին, վերջինիս դիվանատանը և նա տեղյակ է լինում նրանց բովանդակության մասին։ Մագիստրոսը նախօրոք բարձրանում է կայսեր մոտ և զեկուցում նվերների բովանդակության մասին։ Երբ [կայսրը] կամենա ընդունել դեսպանին, նա ներկայանում է նրան և խնդրում կայսեր ընդունել իր նվերները։ Կայսեր թույլտվությամբ դեսպանի մարդիկ նվերներով ներս են գալիս այն կարգով, ինչ ընդունված է արքայի նվերների ընդունման կապակցությամբ, որից հետո տեղի է ունենում հանդիպումը։ Կայսրը պետք է ստեպ ստեպ և սիրալիր կերպով նորից հարցնի պարսից արքայի մասին, նրա ողջության մասին. եթե խաղաղ իրադրություն է, ապա խաղաղության շուրջ էլ մի քանի խոսք է ասվում, որից հետո կայսրը թույլ է տալիս [դեսպանին] հեռանալ։ [Դեսպանը] սպասում է մագիստրոսին դրսում։ Մագիստրոսը ես դուրս է գալիս, հրաժեշտ տալիս նրան վերևում և ճամփում նրան։ Հաջորդ օրերին [կայսրը] հրավիրում է [դեսպանին] և բանակցում։ Եթե նա նպատակահարմար է գտնում, ապա թույլ է տալիս, որ մագիստրոսը և կամ ուրիշ իշխանավորներ դրսում բանակցեն դեսպանի հետ։ Եթե երկու պետությունների միջև գոյություն ունի բացառիկ բարեկամություն, կայսրը պետք է հաճախակի մարդ ուղարկի [դեսպանի] տեսության, իմանալու համար, թե ինչպես անցկացրեց օրը, նրա մոտ ուղարկի [դեմոսների] կողմերի[44] [ներկայացուցիչներին], նվերներ ուղարկի մեր կամ էլ նրա կարևոր տոների առթիվ և ամեն կերպ նրան պատվասիրի։

## ԳԼՈՒԽ 96

## ԱՐԵՎԵԼՔԻ ՍԽՈԼՆԵՐԻ ՆԱԽԿԻՆ ԴՈՄԵՍՏԻԿՈՍ, ՔՐԻՍՏՈՍԱՍԵՐ ԵՎ ԱՄԵՆԱՔԱՋ ՆԻԿԵՓՈՐԻ ԿԱՅՍՐ ՀՌՉԱԿՎԵԼԸ[45]

6471 թվականի, վեցերորդ ինդիկտիոնի մարտ ամսի տասնըհինգին, մեծ պասեքին վախճանվեց հռոմայեցիների մեծ և ծիրանածին Կոստանդին Մակեդոնացի[46] կայսեր որդին, Ռոմանոս կրտսեր կայսրը[47], թագավորությունը թողնելով իր դեռահաս որդիներ Վասիլին ու Կոստանդինին և իր կնոջ՝ ավգուստա[48] Թեոփանոյին՝ թագավորելու հռոմեական պետության վրա։ Պետական գործերի կառավարումը թողեց պարակիմոմենոս Հովսեփին։ Վերոհիշյալ անձնավորությունների իշխանությունը տևեց վեցերորդ ինդիկտիոնի մարտ ամսի տասնհինգից մինչև նույն ինդիկտիոնի օգոստոսի տասնհինգը։ Նույն ինդիկտիոնի հուլիս ամսի երկուսին արևելյան շրջաններում իր զորաբանակների կողմից կայսր հռչակվեց մեր բարեպաշտ և քրիստոսասեր կայսր Նիկեփորը։ Բոլոր զորավարներն ու տագմաները[49], հավաքվելով այժմյան Կապադովկիա նահանգի Կեսարիա [քաղաքի] դաշտում, նրան՝ մագիստրոսին և սխոլերի գոմեստիկոսին կայսր հռչակեցին։ Նա դեմ էր այդ բանին, ընդհակառակը, նա շտապում էր մասնակցել իսմայելացիների դեմ մղվող պատերազմին, և զինվորներին էլ դեպի նույն գործն էր դրդում, բայց նրանք ավելի ջանասեր դուրս եկան և բռնի, [Նիկեփորի] կամքին հակառակ, նրան վրանից հանեցին և կայսր հռչակեցին։ Բայց նա իր գլխին թագ չդրեց, կայսերական հանդերձներ էլ չհագավ, այլ միայն կոշիկները փոխեց և ռուսխա, այն է կարմիր գույնի [կոշիկներ] հագավ։ Երբ այդ բանի լուրը հասավ քաղաք, պարակիմոմենոս Հովսեփը ապշեց, և նախանձախնդրությամբ ուզեց ընդդիմակայել կայսեր, որի համար նախապատրաստություն տեսավ։ Նիկեփոր կայսրը [Հովսեփին] մի սիրալիր նամակ դրեց և առաքեց, խոստանալով ապահովել, նույնիսկ բարձրացնել նրա բարձն ու պատիվը։ Նիկեփորը նույն բանը խոստացավ և սենատին։ [Հովսեփը] հակառակ որ բազմիցս հավաստիացում ստացավ, այնուամենայնիվ չհրաժարվեց իր մտադրությունից և իրեն համակիր մի քանի սենատորներով նախանձախնդիր եղավ Օգոստոսի դեմ դուրս գալ։ Նա ամրացրեց քաղաքը, վերանորոգեց դարպասները և սկսեց քաղաքացիների հանդեպ դաժանություններ գործել։ Նա նզովքի ենթար-

*կեց կայսեր, բայց դա բավական չհամարելով, որոշեց գաղտնի, (այսինքն թաքուն) կուրացնել Նիկեփոր կայսեր հարազատներին, այն է հոր և եղբոր. վերջիններս սակայն իմանալով այդ մասին, փախուստի դիմեցին, հայրը՝ մագիստրոս Վարդասը[50] [ապաստանեց] մեծ եկեղեցում, իսկ կայսեր եղբայր մագիստրոս Լևոնը՝ բանակում. զորքն արդեն Խրիսուպոլիս[51] էր հասել։ Ամբոխը աստվածային մղմամբ հոսեց դեպի եկեղեցի, մագիստրոսին հակառակորդների ոտնձգություններից պաշտպանելու համար։ Ե՛վ պատրիկ Մարիանոս Ապամբասը[52], և՛ Նիկոլաս Թոռնիկը[53], և նախկին զորավար Պասքալիոսը բազմիցս փորձեցին նրան բռնի դուրս բերել եկեղեցուց. բայց ժողովուրդը քաշքշելով և հայհոյելով նրանց խայտառակ կերպով դուրս շպրտեց։ Օգոստոս ամսի իննի առավոտյան, սուրբ հարության ավետարանի ընթերցման պահին, եկեղեցի մտավ պարակիմոմենոս Հովսեփը, բարձրացավ պատրիարքարան և կարճ խոսակցություն ունեցավ պատրիարքի[54] ու կղերի հետ. իջնելով ցած, սկսեց սաստիկ սպառնալ ամբոխին, թե նրան սովամահ կանի. ձի հեծնելով նա անցավ Միլիոնի[55] միջով և հրաման տվեց հացագործներին հաց չթխել, ոչ էլ վաճառել։ Այնուհետև նա բարձրացավ պալատ, իր հետ վերցրեց Ռոմանոս կայսեր երեխաներին և վերևի փողոցներով իջավ եկեղեցի՝ ճաշի ժամանակ, երբ եկեղեցում ժողովուրդ չկար։ Նա կանչեց մագիստրոսին, եկեղեցուց դուրս հանեց նրան և տուն ուղարկեց։ Երբ երեկոյան ժողովուրդը եկավ եկեղեցի և մագիստրոսին չգտավ, շփոթվեց, ավելի ճիշտ՝ մոլեգնեց և անպարկեշտ արտահայտություններով դիմեց պատրիարքին և կղերին, թե իրե՛նք հանձնեցին [մագիստրոսին], և սկսեցին կղերականներին քարկոծել։ Պատրիարքը խնդրեց, որ մագիստրոսը գա եկեղեցի և խաղաղեցնի ժողովրդին։ [Մագիստրոսը] այդ մասին հայտնեց պարակիմոմենոսին, բայց վերջինս թույլ չտվեց նրան [գնալ]։ Երբ ժողովուրդն իմացավ այդ, ինչպես ասացինք աստվածային մղմամբ, մի մասը շարժվեց դեպի մագիստրոսի տունը, նրան փորձանքից զերծ պահելու համար, իսկ մյուս ավելի ստվար մասը մնաց եկեղեցում, որի բոլոր փայտյա առարկաները զենք դարձնելով դուրս եկավ այնտեղից և հարձակվեց հակառակորդների վրա, որոնք զինված մակեդոնացիներ էին և հազարացի ռազմագերիներ, ինչպես և հիշածս մարդիկ՝ Մարիանոսն ու մնացածները, որոնց փախուստի մատնեցին։ Հաղթանակ տանելով, նրանք բազմաթիվ հասարակ մարդկանց և զինվորների կոտորե-*

ցին, կայսեր հակառակորդների տները գետնին հավասարեցրին և նրանց ամբողջ ունեցվածքը հափշտակեցին։ Այնուհետև բացեցին դարպասները, միացան զորքին և կայսեր հայտնեցին՝ առանց հապաղելու գալ քաղաք։ Նույն գիշերը, օգոստոս ամսի տասին, պարակիմոմենոս Հովսեփը ժողովրդից սարսափած, որն իր տունն էր գալիս իրեն [բռնելու], փորձեց խուսափել վտանգից՝ փախուստի դիմելով և եկեղեցում ապաստանելով։ Ժողովուրդը նրա ամբողջ ունեցվածքը թալանեց, տունը գետնին հավասարեցրեց, ապա ձերբակալեց բազում այլ, անմեղսակից սենատորների, որոնց ունեցվածքը նույնպես թալանեց, տներն էլ քանդեց։ Մոլեգնած ժողովրդի այսպիսի գործունեությունը տևեց երեք օր։ Նիկեփոր կայսեր հորը՝ մագիստրոսին իշխանավորներից ամենաերևելիները պալատ բերեցին և այնտեղ պահեցին մինչև կայսեր գալը։ Այդ իրադարձությունների երկրորդ օրը մագիստրոս Լևոնը զորքով մտավ քաղաք։ Օգոստոս ամսի տասնհինգին կայսրը պարակիմոմենոս Վասիլին և պրեպոզիտոս Հովհաննեսին հայտնեց, որ իր նշած իշխանավորների հետ գնան Հիերիա պալատը իրեն դիմավորելու։ Նրանք այդպես էլ արեցին։ Հաջորդ օրը, նույն օգոստոս ամսի տասնվեցին, վեցերորդ ինդիկտիոնում, կիրակի առավոտյան, մտնելով կայսերական դրոմոնիոնը, նա խարիսխ գցեց Ոսկե Դռան[56] առջև, որտեղ նրան դիմավորեց ամբողջ քաղաքը, մեծ ու փոքր, ջահերով և խնկարկությամբ։ [Նիկեփորն] իջավ դրոմոնից, ձի հեծավ, անցավ արտաքին նախապարիսպը, ապա շուռ եկավ դեպի սալահատակված [ճանապարհը] և մտավ Աբրամիտների վանքը, որը կոչվում է Աստվածածնի անձեռագործ [պատկերի] վանք։ Ժամը երեքին նա հագավ կատարե սկարամանգիոնը[57] և ձի հեծած եկավ մեծ Ոսկե Դուռը, այդ դռան մեջ կանգնեց, իսկ ներսում գտնվող դեմոսի երկու կողմերը փառաբանեցին նրան այսպես. «Բարով եկար, Նիկեփոր, կայսր հռոմայեցվոց, բարով եկար Նիկեփոր, մեծազույն արքա հռոմայեցվոց, բարով եկար Նիկեփոր, թշնամու բանակներին հաղթող. բարով եկար Նիկեփոր, հակառակորդների քաղաքները գրավող, բարով եկար քաջահաղթ, միշտ սեբաստոս[58]։ Բարով եկար դու, ով հպատակեցրիր հեթանոսներին։ Դու էիր, որ հաղթեցիր և ընկճեցիր իսմայելացիներին, դու ես հռոմայեցվոց գայիսոնն հզորացնողը։ Քեզ երկար [կյանք], բարգավաճի՛ր և տիրի՛ր։ Ողորմեց աստված իր ժողովրդին, քեզ հռչակելով հռոմայեցվոց ինքնակալ կայսր. ո՜վ Նիկեփոր։ Ուրախ լեր, ո՜վ հռոմայեցվոց քաղաք, ընդունի՛ր

աստվածապսակյալ Նիկեփորին, քանզի եկավ նա, համայն աշխարհի ջահն իսկական»։ Դրանից հետո [Նիկեփորը] ձի հեծած մտավ դոնից ներս, անցավ Մեսե[59] պողոտայով մինչև Ֆորոսը, որտեղ, իջնելով ձիուց, մտավ Ֆորոսի ամենասուրբ աստվածածնի եկեղեցին[60]։ Ջահեր վերցնելով, երկրպագեց, ապա հագավ դիբետեսիոն, կամպագիա և սամպոտուբա[61]։ Ֆորոսից նա ոտքով, թափորի ուղեկցությամբ և պատվական խաչով գնաց սուրբ Սոփիա և կանգ առնելով Հորոլոգիոնի[62] առջև, արժանացավ երկու կողմերի[63] հետևյալ ողջույնին. «Պետության շահերը Նիկեփորին են պահանջում, Նիկեփորին են կոչում օրենքները։ Նիկեփորին է կոչում արքունիքը, այդպիսիք են մաղթանքները արքունիքի, ցանկությունը զորքի, մաղթանքները սենատի, այդ է մաղթում ժողովուրդը։ Աշխարհը Նիկեփորին է սպասում, զորքը Նիկեփորին է ուզում, համարակաց բարեկեցությունը Նիկեփորին է ուզում, համարակաց բարիքը Նիկեփորի թագավորությունն է։ Լսի՛ր, ո՜վ աստված, քեզ ենք խնդրում, լսի՛ր աստված, [երկար] կյանք տուր Նիկեփորին։ Նիկեփոր Օգոստոս, դու բարեպաշտ, դու սեբաստոս, աստված քեզ [կյանք] շնորհեց, թող աստված էլ քեզ պահի։ Քրիստոսով դու միշտ կհաղթես։ Թող երկար տարիներ թագավորի Նիկեփորը։ Աստված թող պահպանի քրիստոնեական թագավորությունը»։ Դրանից հետո [կայսրը] Գեղեցիկ դռնով[64] մտավ սարկավագանոցը, փոխեց ցիցակիոնը[65], մտավ գավիթը և կայսերական մեծ դռներից ներս, պրեպոզիտոսից վերցրեց ջահեր և երկրպագեց, ապա հանեց [թագը], պատրիարքի հետ անցավ տաճարի մեջտեղով, խորանի աջ կողմից, սոլեայի[66] միջով նկավ դեպի սուրբ դռնակները, որտեղ պրեպոզիտոսից նորից ստացավ ջահեր, երկրպագեց, ապա պատրիարքի հետ շրջվեց և բեմի առաջով բարձրացավ խորան։ Պատրիարքը քղամիդն օրհնեց, տվեց այն [կայսեր] սենեկապաններին, որոնք հագցրին կայսեր։ Նմանապես....[67]։

### ՀԱՎԵԼՎԱԾ I ԳՐՔԻ

## ԿԱՅՍԵՐԱԿԱՆ ԱՐՇԱՎԱՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ ԵՎ ԶԻՆՎՈՐԱԿԱՆ ԿԱՅԱՆՆԵՐԻ[68] ՀԻՇԱՏԱԿՈՒՄԸ

Զինվորական կայանները հետևյալներն են. առաջին զինվորական կայանը գտնվում է Մալագինայում[69], երկրորդը՝ Դորի-

լեոնում[70], երրորդը՝ Կարորկիոնում[71], չորրորդը՝ Կոլոնիայում, հինգերորդը՝ Կեսարիայում, վեցերորդը՝ Արմենիակների [բանակաթեմի] Դազիմոն[72] [վայրում]։ Սխոլերի դոմեստիկոսը և Օպսիկիոն [բանակաթեմի] զորավարը պարտավոր են կայսեր դիմավորել Մալագինայում, իսկ Թրակեսիոն[73] [բանակաթեմի] զորավարը՝ Դորիլեոնում։ Անատոլիկոն [բանակաթեմի] զորավարը և Սելևկիայի [բանակաթեմի] զորավարը պարտավոր են կայսեր դիմավորել Կաբորկիոնում։ Եթե [կայսեր] ընթացուղին դեպի Տարսոն է, ապա մնացած բանակաթեմերի [զորքերը] պետք է հավաքվեն Կաբորկիոնում, իսկ եթե դեպի Արևելք, ապա Կապադովկիա, Խարսիանոն և Բուկելլարների [բանակաթեմերի] զորավարները պարտավոր են [կայսեր] դիմավորել Կոլոնիայում, Արմենիակների, Պափլագոնիայի և Սեբաստիայի [բանակաթեմերի] զորավարները]՝ Կեսարիայում[74], իսկ եթե Տեֆրիկե[75], ապա Արմենիակների բանակաթեմի զորքերը պարտավոր են հավաքվել Վաթիոիաքսում[76]։

## Ի ՔՐԻՍՏՈՍ՝ ՀԱՎԻՏԵՆԱԿԱՆ ԹԱԳԱՎՈՐ, ՀՌՈՄԱՅԵՑԻՆԵՐԻ ԿԱՅՍՐ ԿՈՍՏԱՆԴՆԻ՝ ԵՐՋԱՆԿԱՀԻՇԱՏԱԿ ԵՎ ԱՄԵՆԱԻՄԱՍՏՈՒՆ ԼԵՎՈՆ ԿԱՅՍԵՐ ՈՐԴՈՒ, ԱՐԽԱԳՈՒՅՆ ԵՎ ԱՄԵՆԱՔԱՋ ՎԱՍԻԼ ԿԱՅՍԵՐ ԹՈՌԱՆ [ՇԱՐԱԴՐԱՆՔՆ] ԱՅՆ ՄԱՍԻՆ, ԹԵ Ի՞ՆՉ ՊԵՏՔ Է ԱՆԵԼ, ԵՐԲ ՀՌՈՄԱՅԵՑԻՆԵՐԻ ՄԵԾ ԵՎ ՎԵՀ ԿԱՅՍՐԸ ՈՐՈՇԵԼ Է ԱՐՇԱՎԱՆՔԻ ԴՈՒՐՍ ԳԱԼ

...Ի՞նչն է ավելի կարևոր, քան պատերազմում համարձակ լինելը, մեր նախնիների վաղեմի կարդապահությունը պահպանելը, կարգապահություն, որ նախկինում հանդես էին բերում պատերազմների դուրս եկող կայսեր զորքերը։ Թեև այդ բանի հուշակը դեռ հնում էր տարածված, և դրա համբավն այսօր շատերի շրթներին է, բայց և այնպես այդ մասին գրավոր ոչինչ չունենք և գտնում ենք, որ դա ճիշտ չէ, ոչ էլ լավ։ Ո՛վ աստվածապսակյալ Ռոմանոս[77], քեզ համար օգտակար կլինի, ի շարս այլոց, այդ հարցերի մասին էլ գրավոր շարադրանք ունենալ, քանզի դա ավելի ցցուն է դարձնում հռոմեական [կարգերի] վեհությունը։ Այդ առթիվ մենք շատ պրպտումներ կատարեցինք, բայց պալատում ոչ մի գրավոր բան չգտանք։ Վերջերս հազիվ հաջողվեց այդ հարցի շուրջը մի գրվածք գտնել Սիգրիանե կոչված

վանքում, վանք, որտեղ Կատակիլաս մականվանյալ Լևոն մագիստրոսը[78] վանականի սքեմն էր հագել։ Այս նյութի շուրջ հիշյալ մագիստրոսը քրիստոսասեր և իմաստուն Լևոն կայսեր, այն է՝ մեր հոր և քո պապի հրամանով մի գործ շարադրեց։ Թեև [Լևոն] մագիստրոսը բարեպաշտ մարդ էր և գիտելիքների սիրահար, ինչպես վկայում է նրա կենցաղավարությունը, բայց լինելով հունական դաստիարակությունից զուրկ, նրա շարադրանքում օտարոտի ոճերը, լեզվական սխալները և շարահյուսական անճշտությունները վխտում էին։ Ինչպես ասացինք, այն պատճառով, որ նա հունական կրթություն չէր ստացել, նրա շարադրանքը սխալաշատ էր և խոցելի։ Բայց բոլոր դեպքերում նա գովելի, ճշգրտապատում գործ էր կատարել, քանզի նա բարեպաշտ և առաքինի մարդ էր։ Ահա մենք գտանք այդ, ոճի տեսակետից թույլ [շարադրանքը], որտեղ հարցերը քննության էին ենթարկված շատ մակերեսայնորեն, [շարադրանք], որ ծավալով կազմում էր մեր՝ ավելի ճշգրիտ և հանգամանորեն վերաշարադրվածի մեկ երրորդ մասից էլ պակաս, և քեզ համար [նոր գործ] աշխատասիրեցինք, որպեսզի նշված հարցի շուրջն էլ գաղափար ունենաս։ Կայսերական արշավանքների մասին այս [վաղեմի] կարգն ու կանոնը պահպանվեց և գործադրվեց մինչև քրիստոսասեր տեր Միքայելի[79] և նրա երջանկագույն մորեղբոր կեսար Վարդասի ժամանակ։ Այդ ավանդությունը մինչև նրանց օրերն էր հարատևել ավելի վաղ ժամանակների կայսրերից, այն է՝ Թեոփիլոսից, [նրա] հայր Միքայելից, [հիշածս] Միքայելի՝ քրիստոսասեր տիրոջ պապից։ Վերջիններս այս ավանդությունը ժառանգել էին իրենցից առաջ [թագավորած] կայսրերից։ Ես ավելի հին [կայսրեր] ասելով նկատի ունեմ Իսավրացիներին[80], ովքեր լուրջ սխալներ թույլ տվեցին ուղղափառ հավատքի հարցում։ Ես ավելի հին [կայսրեր]ասելով նկատի չունեմ մեծ և երանելի սուրբ Կոստանդինին, ո՛չ նրա որդի Կոստանդին, ո՛չ ամենաամբարիշտ Հուլիանոսին, ո՛չ էլ մեծ Թեոդոսին[81] և նրա հաջորդներին։ Այս կարգը վերստին սկսեց կիրառվել և խստորեն պահպանվել քաջանուն և ամենաբարեպաշտ կայսր Վասիլի, [իմ] պապի ժամանակ, և այդ կարգի մասին մենք կփորձենք գրավոր շարադրանք ներկայացնել։ Մեծ և վեհ ինքնակալը, երբ վճռում էր արշավանքի դուրս գալ, զենք ու զորք հանել, թշնամիների դեմ, նա անհապաղ հրաման էր տալիս խալկե դարպասի դրսից զրահ կախել, թուր և վահան։ Դրանից բոլորն իմանում էին կայսերական զորքը նախա-

պատրաստելու [անհրաժեշտության] մասին, որից հետո յուրաքանչյուրն սկսում էր կարդի բերել իր զենքերը և զինվորին վերաբերող ամեն ինչ։ Այնուհետև [կայսրը] հրամայում էր ագելեի լոգոթետին[82] արդարացիորեն, աստվածավախությամբ, բարեպաշտորեն և ճշգրտությամբ հաշվառում կատարել և սահմանել Ասիայի ու Փռյուգիայի մետատոնների[83] հանձնելիք [անասունների] քանակը՝ յուրաքանչյուր մետատոնի ․կարողության և հնարավորության համապատասխան, որպեսզի նախօրոք բոլորին պարզ լինի, թե յուրաքանչյուրն որոշակիորեն քանի՞ [անասուն] պարտավոր է հանձնել։ Ասիան և Փռյուգիան՝ երկու հարյուր ջորի, կամ յուրաքանչյուր ջորու դիմաց տասնհինգ դահեկան, և երկու հարյուր ձի, կամ յուրաքանչյուրի փոխարեն տասներկու դահեկան, որոնց ընդհանուր գումարը կազմում է 5424 դահեկան, այսինքն 76 լիտր ոսկի։

...Արշավանքների ժամանակ [բանակաթեմերի] զորավարները միանվագ կայսեր են տալիս ջորիներ հետևյալ քանակությամբ. Անատոլիկոնի [զորավարը] 3 ջորի, Արմենիակների՝ 3 ջորի, Թրակեսիոնի՝ 3 ջորի, Օպսիկիոնի՝ 3 ջորի, Բուկելլարների՝ 3 ջորի, իսկ Արևելքի և Արևմուտքի մնացած [բանակաթեմերի] զորավարները երկուական ջորի։ Սելևկիայի [զորավարը] մեկ ջորի...

## ԴԻՏԵՐԱՊԱՀՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

...Երբ կայսրը տագմաների և բանակաթեմերի զորքերի զորահավաք կատարելու հրաման է տալիս, նրանք պետք է կենտրոնանան Արմենիակների բանակաթեմի Դազիմոն [վայրում], կամ Խարսիանոն բանակաթեմի Կեսարիա [քաղաքում] և կամ էլ մի այլ՝ արշավանքի համար նախատեսված վայրին մոտ գտնվող բանակաթեմում...

...Այսպես է կատարվում հռոմեական մեծ բանակաթեմերի կապակցությամբ։ Ինչ վերաբերում է Արմենիական բանակաթեմերին[84], ապա կայսեր կամքով զորավարներին և կլեյսուրարխներին տալիս են մեկական կարված հիմատիոն, դիբլատիոն[85], արծիվ[86] կամ էլ վասիլիկիոն[87]. Նրանց մեծ տուրմարխներին տալիս են հասարակ հիմատիոններ, իսկ մերարխոսին և մնացածներին՝ մեկական հասարակ դեկալիոն[88] հիմատիոն, որ կարելի է գնել Ֆորոսում[89]...

...Անհրաժեշտ է, որ դու տեղյակ լինես, իմանաս նաև, թե

*ինչ է նախորդում [կայսեր] արշավանքի դուրս դալուն, թե ինչպես կայսրն անցյալում հաջորդաբար վառվող ջահերի և ղամբարների օգնությամբ իսկույն, մի ժամում ստանում էր թշնամիների հարձակման լուրը։ Այդ մասին քեզ ստորև ավելի պարզ կասվի։ Հնում, երբ սարակինոսները Տարսոնից դուրս գալով հարձակվում էին Հռոմայեցիների երկրի վրա, բաց տեղում գտնվող Լուլոն ամրոցում ջահ էին վառում. նրա ազդանշանն ընդունում էին և հաջորդաբար ջահ էին վառում Արգեոս կոչված լեռան վրա։ Նույն կարգով այնտեղից ստացված ազդանշանով [ջահ] էին վառում Սամոս լեռան վրա, ապա փոխանցում էին Իգիլոս ամրոցին, որ նույնպես վառում էր. այնտեղից ազդանշանն ընդունում էր Օլիմպոս[90] լեռը, որի գագաթին [ջահ] էին վառում, ապա ընդունում էր Կյուրիզոս լեռը և նրա վրա էլ էին վառում։ Այսպես հաջորդաբար ազդանշանն ընդունում էր Պյուլեի վերև գտնվող Մուկիլոս լեռը, ապա սուրբ Ավքսենտիոսի լեռը, որ «Ակոպոս» է կոչվում։ Դրանից հետո ազդանշանն ընդունում էր Փարոսի[91] պալատի հելիակոնը և նա էլ էր [ջահ] վառում։ Այնտեղ մշտապես հերթապահում էին դիետարիոսները[92], որպեսզի իրենց ուշադրությունից չվրիպի [ազդանշանը]. նրանք ուշադիր նայում էին սուրբ Ավքսենտիոսի լեռը...*

*Ջահեր վառելու հիշածս սովորությունը հարատևեց մինչև Թեոփիլոսի որդի Միքայել կայսեր ժամանակ...*

*...Հնամենի կարգի համաձայն բանակաթեմերի զինվորները ռոճիկ էին ստանում չորս տարին մեկ անգամ։ Առաջին տարին Անատոլիկոն, Արմենիակների և Թրակեսիոն բանակաթեմերը, երկրորդ տարին Օպսիկիոնը, Բուկելլարների, և Կապադովկիան, երրորդ տարին Խարսիանոն, Կոլոնիայի և Պափլագոնիայի բանակաթեմերը, և վերջապես [քառամյակի] վերջին տարին՝ Թրակիայի, Մակեդոնիայի և Խաղտիքի...*

## ՏԵՖՐԻԿԵԻ ԵՎ ԳԵՐՄԱՆԻԿԻԱՅԻ[93] ԱՐՇԱՎԱՆՔԻՑ ՔՐԻՍՏՈՍԱՍԵՐ ԿԱՅՍՐ ՎԱՍԻԼԻ[94] ՀԱՂԹԱԿԱՆ ՎԵՐԱԴԱՐՁԻ ՄԱՍԻՆ

*Կայսրը Տեֆրիկեի և Գերմանիկայի պատերազմից հաղթանակով վերադարձավ, գնաց Հեբդոմոնի Հիերիա [պալատը], որտեղ ամբողջ քաղաքի բնակչությունը դիմավորեց նրան ծաղկեպսակներով և վարդապսակներով...*

...Քաղաքի կարգ ու կանոնին հետևում էր էպարքոսը, նա էր և այն զարդարելու գործը կազմակերպողը։ Իսկ շքերթի, սենատորների կայսեր դիմավորելու արարողության կարգը, [դեմոսի] կողմերի հաղթական կոչերը, վերջինիս երթերի կարգը, ընդունելությունների վայրը որոշել էր պրեպոզիտոսը, որին օժանդակում էին արարողապետը, սիլենտիարիոսները և ամբողջ կուբուկլիոնը[95]։ Քանզի [քաղաքում] մագիստրոսի և էպարքոսի հետ մնացել էր կայսեր ներկայացուցիչ և նրա իշխանության տեղապահ սպատրիկ, պրեպոզիտոս և սակելլարիոս Վաանեսը[96]. կայսերական հնամենի սովորության համաձայն, երբ կայսրը արշավանքի էր դուրս գալիս, իր իշխանության տեղապահ էր թողնում պրեպոզիտոսին, իսկ պետական և հասարակական գործերի կառավարումը՝ մագիստրոսին և էպարքոսին...

# ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ԱՐՔՈՒՆԻՔԻ ԱՐԱՐՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

## Գ Ի Ր Ք   Ե Ր Կ Ր Ո Ր Դ

# DE CERIMONIIS AULAE BYZANTINAE

## L I B E R II

ԳԼՈՒԽ 42

# ԿԱՅՍՐԵՐԻ ՍՈՒՐԲ ԱՌԱՔԵԼՈՑ ՏԱՃԱՐՈՒՄ ԳՏՆՎՈՂ ԳԵՐԵԶՄԱՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

## ՍՈՒՐԲ ԽՎ ՄԵԾ ԿՈՍՏԱՆԴԻՆ [ԿԱՅՍԵՐ] ՀԵՐՈՈՆՈՒՄ[1]

*...Մի այլ շիրիմ թեսսալական՝ կանաչ մարմարից, որտեղ թաղված է Միքայել կայսրը, Թեոփիլոսի որդին։ Միքայելի այս շիրիմը Հուստինիանոս մեծ կայսեր [դամբարանն է]։ Միքայելը նախապես թաղված էր Ավգուստա [Թեոդորայի] վանքում, սուրբ առաքյալ Թովմայի տաճարում, վերջինիս մասունքների տակ, այն [շիրիմում], որի մեջ հայտնաբերվել էին և առաքյալների հանդերձները։ Տեր Լևոն կայսրը Միքայելի աճյունը տեղափոխեց և ամփոփեց ահա այստեղ[2]։ Մի այլ շիրիմ, թեսսալական՝ կանաչ [մարմարից], որտեղ թաղված են Վասիլը՝ Եվդոկիայի և իր որդի Ալեքսանդրի հետ[3]։ Մի այլ շիրիմ՝ սադարինոս[4], այն է՝ պնևմոնուսիոս[5] [մարմարից], որտեղ թաղված են երանելի Լևոն [կայսրը], իրենից հետո վախճանված որդու՝ Կոստանդին Ծիրանածինի հետ[6]։ Մի այլ՝ սպիտակ [մարմարից] շիրիմ, վասիլիկիոն[7] կոչվածը, որտեղ թաղված է Վասիլի[8] որդի Կոստանդինը։ Մի այլ թեսսալական՝ կանաչ [մարմարից] շիրիմում թաղված է երանելի Լևոնի[9] առաջին կին Թեոփանոն, իր դուստր Եվդոկիայի հետ։ Մի այլ՝ բյութանական[10] [մարմարից] շիրիմում թաղված է նույն Լևոնի երկրորդ կինը՝ Զոեն[11]։ Մի այլ, թեսսալական՝ կանաչ [մարմարից] շիրիմում թաղված է նույն տեր Լևոնի երրորդ կինը՝ Եվդոկիան, որ կոչվում էր նաև Վայինի։ Պրիկոնեսյան մարմարից մի այլ շիրիմում թաղված են երանելի Լևոնի և Զոեի դուստրեր Աննան ու Եվդոկիան։ Մի այլ փոքրիկ շիրիմ, սագարինոս, այն է պնևմոնուսիոս մարմարից պատրաստված, որտեղ թաղված է Կոստանդին Ծիրանածինի եղբայր Վասիլը և նրա պապ Վասիլի որդի Վարդասը[12]...*

## ՀՈՒՍՏԻՆԻԱՆՈՍ ՄԵԾԻ ՀԵՐՈՈՆՈՒՄ

...Թեսսալական՝ կանաչ մարմարից մի այլ շիրիմում թաղված է Իսավրացու[13] որդի Կոստանդինը[14], որ ստացավ Կավալլինոս մականունը։ Բայց նրա թշվառական աճյունը Միքայելն ու Թեոդորան այնտեղից հանեցին և կրակի տվեցին... Մի այլ՝ Թեսսալական կանաչ [մարմարից] շիրիմում... թաղված է Միքայել Թլվատը[15]... Կանաչ գույնի մարմարից մի այլ շիրիմում թաղված է Թեոփիլոս կայսրը։ Կանաչ մարմարից մի այլ փոքրիկ շիրիմում թաղված է Թեոփիլոսի որդի Կոստանդինը։ Սագարինոս մարմարից մի այլ փոքրիկ շիրիմում թաղված է Թեոփիլոսի դուստր Մարիան։

## ՆՈՒՅՆ ՏԱՃԱՐԻ ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ ՍՏՈԱՅՈՒՄ[16]

...Գաստրիա կոչված վանքում[17], այդ նույն եկեղեցու արևելյան կողմի աջ մասում, այնտեղ գտնվող ստատարեայում[18] թաղված են Թեոփիլոսի կին երանելի Թեոդորան[19] և նրա երեք դուստրերը՝ Թեկլան, Անաստասիան և Պուլքերիան. իսկ նույն եկեղեցու ձախ մասում, այդ ստատարեայի դիմաց կա մարմարե մի շիրիմ, որտեղ թաղված է երանելի կայսրուհի Թեոդորայի եղբայր, սխոլերի դոմեստիկոս դարձած Պետրոնասը[20]։ Իսկ նույն եկեղեցու գավթում, արևելյան կողմի ձախ մասում կա պրիկոննեսյան[21], այն է պիկրիմեոս[22] մարմարից պատրաստված մի փոքրիկ շիրիմ, որտեղ թաղված է Թեոկտիստեն, երանելի կայսրուհի Թեոդորայի մայրը։ Պետք է գիտենալ, որ նրա մոտիկ գտնվում է սագարինոս, այն է պնևմոնուսիոս մարմարից պատրաստված մի փոքրիկ շիրիմ, որտեղ թաղված է Իրենեն, կեսար Վարդասի դուստրը։ Պետք է գիտենալ, որ նրանց մոտ է գտնվում շատ փոքրիկ, մի թզաչափ շիրիմ, որտեղ թաղված է կեսար Վարդասի ծնոտը[23]։ Պետք է գիտենալ, որ սուրբ Եվփեմիայի՝ Գեղեցիկ կոչված վանքում, նույն եկեղեցու արևելյան կողմի ձախ մասում գտնվող ստատարեայում թաղված է Պանկալոն, քրիստոսասեր տեր Վասիլի մայրը[24]։ Նույն եկեղեցու արևելյան կողմի աջ մասում, այդ ստատարեայի դիմաց, գտնվում է մի այլ ստատարեա, Թեսսալական կանաչ մարմարից պատրաստված, որտեղ թաղված է սխոլերի դոմեստիկոս Մարիանոսը և նրա եղբայր Սմբատը, երկուսն էլ

*քրիստոսասեր տեր Վասիլի եղբայրները։ Պետք է գիտենալ, որ Կարապետի նույն այս եկեղեցու աջ կողմի աղոթարանում, այդ նույն աղոթարանի արևելյան կողմի ձախ մասում գտնվում է մի քանդակազարդ շիրիմ, որտեղ թաղված է Անաստասիան, քրիստոսասեր տեր Վասիլի դուստրը։ Նույն աղոթարանի արևելյան կողմի աջ մասում, շիրիմի դիմաց գտնվում է քանդակազարդ մի փոքրիկ շիրիմ, որտեղ թաղված են Աննան և Հելենեն, քրիստոսասեր տեր Վասիլի դուստրերը, և Զոեն, Վասիլի թոռ՝ աստվածապսակյալ և ծիրանածին երանելի կայսր Կոստանդնի մայրը[25]։ Պետք է գիտենալ, որ Պրոմուտուի[26] [Միքայել] հրեշտակապետի վանքում՝ նույն եկեղեցու աջ կողմում, այնտեղ գտնվող ստատուբեայում թաղված է Մարիան, տեր Վասիլի դուստրը։*

### ԳԼՈՒԽ 44

## ՔՐԻՍՏՈՍԱՍԵՐ ՏԵՐ ԼԵՎՈՆԻ[27] ԺԱՄԱՆԱԿ ՆԱՎԱՏՈՐՄԻՂԻ ԼՈԳՈԹԵՏ ՊԱՏՐԻԿ ՀԻՄԵՐԻՈՍԻ[28] ԳԼԽԱՎՈՐՈՒԹՅԱՄԲ ԱՍՏՎԱԾԱԿՈՐԾԱՆ ԿՐԵՏԵԻ ԴԵՄ ՈՒՂԱՐԿՎԱԾ ԶՈՐՔԵՐԻ ԶԻՆՎԱԾՈՒԹՅԱՆ, ԱՐՇԱՎԱՆՔԻ, ՌՈՃԿԱՉԱՓԻ ԵՎ [ԶՈՐՔԻ] ՔԱՆԱԿԻ ՄԱՍԻՆ

### ԾՈՎԱՅԻՆ ԱՐՇԱՎԱՆՔԻՆ ՄԱՍՆԱԿՑԵԼՈՒ ՊԱՐՏԱՎՈՐ ՀԵԾԵԼԱԿԻՑ

*Թրակացի և մակեդոնացի սխոլարիոսներ՝[29] 1037 [հոգի]։ Թրակեսիոն բանակաթեմից՝ 1000 հոգի, Սեբաստիա բանակաթեմից 1000 հայ, Պլատանիոնից՝[30] 500 հայ, Պրինեից՝[31] 500 [հոգի]։ Ընդհանուր գումարը 6037 հեծյալ[32]...*

### ՀԵԾԵԼԱԿԻ ՌՈՃԻԿԻ ՄԱՍԻՆ

*Հազար երեսուն յոթ Թրակացի և մակեդոնացի սխոլարիոսների ռոճիկն է մեկ կենտինար[33], երեսուն մեկ լիտր, քսանչորս դահեկան։ Թրակեսիոն բանակաթեմի 3000 զինվորներից յուրաքանչյուրին որպես ռոճիկ հասնում է երկու դահեկան, [այսինքն]*

մեկ կենտինար, 80 լիտր և քսանչորս դահեկան[34]։ Սեբաստիա բանակաթեմի 1000 զինվորներին որպես ռոճիկ հասնում է մեկ կենտինար, տասներեք լիտր, քսանչորս դահեկան[35]։ Պլատանիտ հայերի 500 հոգուն որպես ռոճիկ հասնում է վեցական դահեկան, այն է՝ մեկ կենտինար, 31 լիտր, 38 դահեկան։ Պրինեի 400 զինվորներից[36] յուրաքանչյուրի ռոճիկն է հինգ դահեկան. [ընդհանուր գումարը] մեկ կենտինար, 27 լիտր և 56 դահեկան[37]...

## ՊՐՈԽՐԵՈՆԻ [ԿԱՆԽԱՎՃԱՐԻ] ՄԱՍԻՆ

Երեք բանակաթեմերի՝ Կիբիրեոտների, Սամոսի և էգեական ծովի[38] նավատորմիղի երեք հազար զինվորներից յուրաքանչյուրին հասնում է երկու դահեկան, ընդհանուր գումարը՝ 83 լիտր և քսանչորս դահեկան։ Արևմուտքի մարդայիտների[39] երեք տուրմարխներից յուրաքանչյուրին հասնում է 36 դահեկան, 32 դրունգարներից յուրաքանչյուրին՝ 12 դահեկան, 32 կոմեսներին՝ 6-ական դահեկան, և 5000 շարքայիններին՝ 4-ական դահեկան։ Ընդհանուր գումարը կազմում է 2 կենտինար, 99 լիտր և 56 դահեկան։ Սեբաստիայի հայկական զորքերի 5 տուրմարխներից յուրաքանչյուրին հասնում է 12 դահեկան, 10 դրունգարներին՝ 6-ական դահեկան, 8 կոմեսներին՝ 5-ական դահեկան, ինն հարյուր վաթսուն հինգ զինվորներին 4-ական դահեկան։ Ընդհանուր գումարը կազմում է 55 լիտր և 7 դահեկան։ Պրինեի 500 հայ զինվորներից յուրաքանչյուրին հասնում է 2 դահեկան, ընդհանուր գումարը 13 լիտր և 64 դահեկան։ Այսպիսով, պրոխրեոնի ամբողջական գումարը կազմում է 4 կենտինար, 52 լիտր և 60 դահեկան։ Պետք է գիտենալ, որ Կիբիրեոտների [բանակաթեմի] զորավարը, ինչպես և Ատտալիայի մարդայիտների կատեպանը կարգադրություն ստացան, որ զորավարը տուրմարխների ուսիաներից[40] պատրաստի երկու խելանդիոն[41], իսկ մարդայիտների կատեպանը՝ գալեաներ[42], որոնք մարտ ամսին պետք է ուղարկվեն Ասորիք, իմանալու համար այն ամենի մասին, ինչ կատարվում է այնտեղ, կամ նախատեսվում է անել և ստույգ իմաց տան և զեկուցեն։ Պետք է գիտենալ, որ Կիպրոսի կառավարիչ պրոտոսպաթար Լևոնը՝ Սմբատիկի [որդին], պետք է հմուտ հետախույզներ ուղարկի Տարսոնի ծոցը, Ատոմիա[43], նաև Տրիպոլիս[44] և

Լավոդիկիա, որպեսզի ամեն տեղից սարակինոսների նախապատրաստությունների մասին տեղեկություններ քաղեն...

...Պետք է գիտենալ, որ Պանգրատի որդի պրոտոսպաթար Թեոդորոսը կարգադրություն ստացավ գնալ Անատոլիկոն [բանակաթեմը] և զինվորագրել պլատանիատներին և նրանցից, ապա նաև այդ բանակաթեմի այլ [մարդկանցից], կազմել 400 հոգուց բաղկացած ընտիր աղեղնավորների մի [զորամաս], ինչպես և հեծյալներ, եթե նրանց իշխանավորների կամ սխոլարիոսների մեջ կան այդ բանում հմուտ մարդիկ։ Եթե սխոլարիոսները իրենց ռոճիկը լրիվ ստանան, ապա հեծելազորին հատուկ սպառազինության մասին թող հոգան իրենք իրենց [միջոցներից], բայց եթե նրանց ռոճիկը պակաս լինի, ապա թող ձի ստանան մետատոնից և կամ էլ կառավարիչների համաձայնությամբ՝ Անատոլիկոն բանակաթեմից։

...Պետք է գիտենալ, որ Կիբիրեոտների [բանակաթեմի] զորավարը, և Ատտալիայի մարդայիտների կատեպանը, և Սմբատիկի [որդի] Լևոնը կարգադրություն ստացան զգոն լինել, ուշադիր հետևել և թույլ չտալ, որպեսզի որևէ անծանոթ մարդ գնա Ասորիք և Ասորիք տանի Ռոմանիային վերաբերող տեղեկություններ։

## ՏԵՐ ՌՈՄԱՆՈՍ[45] ԿԱՅՍԵՐ ԺԱՄԱՆԱԿ՝ 8-ՐԴ ԻՆԴԻԿՏԻՈՆՈՒՄ ԼԱՆԳՈԲԱՐԴԻԱ ԱՐՇԱՎՈՂՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Պրոտոսպաթար Եպիփանի գլխավորությամբ 8-րդ ինդիկտիոնում ճամփա ելան կայսերական 11 խելանդիոն։ Նրանից առաջ 7-րդ ինդիկտիոնում պատրիկ Կոզմայի գլխավորությամբ ճամփա ելան 11 խելանդիոն։ Ռուսների 7 կարավիա[46] 415 հոգով։ Հեծելազորից Թրակեսիոն և Մակեդոնիտ բանակաթեմից՝ 202 սպա, 98 սխոլարիոս և 608 նոր սխոլարիոս։ Օտարազգի խրամատավորներ՝ մեծ հետերիայից[47] 31 հոգի, միջին հետերիայից 46 հոգի, ֆարգանացիներ[48] 45 հոգի, խազարներ 47 հոգի, կայսերական [գվարդիայից] 71 հոգի, մայրաքաղաքի Արիթմոսից[49] 35 հոգի, նոր ռազմագերիներից 79, մուսուլցի[50] 11 հոգի, պանորմիտներ 18 հոգի, թուրքեր[51] 84 հոգի, և հայ կամավորներ մանգանարիոսների[52] հետ միասին 36 հոգի։ Ընդամենը 1453 հոգի։

## ԹԵ Ի՞ՆՉ ՈՒՂԱՐԿՎԵՑ ՏԵՐ ՌՈՄԱՆՈՍԻ ԺԱՄԱՆԱԿ ԻՏԱԼԻԱՅԻ ՌԵՔՍԻՆ[53]. ՈՐՊԵՍԶԻ ՆԱ [ՊԱՏԵՐԱԶՄԻ] ԴՈՒՐՍ ԳԱ ԱՊՍՏԱՄԲ ԻՇԽԱՆՆԵՐ ԼԱՆԴՈՒԼՖՈՍԻ, ՆՐԱ ԵՂԲԱՅՐ ԱՏԵՆՈՒԼՖՈՍԻ[54], ԳՈԵՄԱՐԻ. ՆՐԱ ԵՂԲԱՅՐ ԳՈԵՖԵՐԻ[55] ԵՎ ԼԱՆԳՈԲԱՐԴԻԱՅԻ ԲԱՆԱԿԱԹԵՄԻ ԱՊՍՏԱՄԲ ԼԱՆԳՈԲԱՐԴՆԵՐԻ ԴԵՄ ԵՎ ԱՄՐՈՑՆԵՐԸ ԼԱՆԳՈԲԱՐԴԻԱՅԻ ԶՈՐԱՎԱՐԻՆ ՎԵՐԱԴԱՐՁՆԵԼՈՒ ՀԱՄԱՐ

...Պետք է գիտենալ, որ Կրետեի արշավանքին[56] մասնակցած բանակաթեմային նավատորմիղի [մարտիկներն] ստացան հետևյալ ռոճիկները. տուրմարխները 30-ական [դահեկան], կորտեի կոմեսները՝[57] 20-ական, բանակաթեմերի խարտուլարները՝[58] 20-ական, բանակաթեմերի դոմեստիկոսները՝[59] 20-ական, դրունգարները՝ 20-ական, կոմեսները՝ 6-ական, շարքայինները՝ 3-ական, գալեաների նավաստիները՝ 4-ական, գալեաների ժողովուրդը, այսինքն մարդայիտները՝ 3-ական։ Պետք է գիտենալ, որ Խարպեզիկի[60] բանակաթեմի [մարտիկները] ստացան հետևյալ ռոճիկները. մեծ տուրմարխները, մերիարխը, կորտեի կոմեսը և բանակաթեմի դոմեստիկոսը 5-ական [դահեկան], փոքր տուրմարխները՝ 4-ական դահեկան, դրունգարները՝ 3-ական, շարքայինները՝ 2-ական։ Պետք է գիտենալ, որ Օպսիկիոն [բանակաթեմում] հաստատված սկլավենները, ստացան հետևյալ ռոճիկները. նրանց երեք պարագլուխները 5-ական [դահեկան], իսկ մնացածները՝ 3-ական դահեկան։ Թրակեսիոն բանակաթեմից Կրետե գնաց [բանակաթեմի] զորավարը, Թեոդոսիականի[61] տուրմարխը, վիկտորների[62] տուրմարխները, ծովափի տուրմարխները, մերիարխը, բանակաթեմի խարտուլարը, կորտեի կոմեսը, բանակաթեմի դոմեստիկոսը, 64 դրունգարոկոմեսներ։ Այդ դրունգարոկոմեսներից ոմանք ունեին երկուական զինվոր, մյուսները՝ երեքական, և այսպիսով, ընդհանուր թիվը 150 հոգի էր։ Զորավարին ուղեկցում էին պրոտոմանդատորը[63], պրոտոկանգելարիոսը[64], պրոտովանդոֆորոսը[65], 6 պրոտոդոմեստիկոս[66], 6 պրոտոկենտարխոս[67], 100 հետևակ պրոելևսիմեոս[68], նաև բանակաթեմի ափը պահպանող հայերից։ Ինչպես զեկուցեց զորավարը, նա Կրետեի ափ դուրս գալու համար ուներ շուրջ 600 զինված հոգի, բայց փոխադրանավերի սակավաթվության պատճառով [բոլորը] հնարավորություն չունեցան ափ դուրս գալ, այլ միայն 50 հոգի...

## ԳԼՈՒԽ 45

# ԾԻՐԱՆԱԾԻՆ ԿՈՍՏԱՆԴԻՆ ԵՎ ՌՈՄԱՆՈՍ՝ Ի ՔՐԻՍՏՈՍ ՀԱՎԱՏԱՑՅԱԼ ԿԱՅՍՐԵՐԻ ԺԱՄԱՆԱԿ՝ 7-ՐԴ ԻՆԴԻԿՏԻՈՆՈՒՄ ԿՐԵՏԵԻ ԴԵՄ ԿԱՏԱՐՎԱԾ ԱՐՇԱՎԱՆՔԻ[69], ՆԱՎԱՏՈՐՄԻՂԻ ԵՎ ՀԵԾԵԼԱԶՈՐԻ ՍՊԱՌԱԶԻՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

[Արշավանքին ի միջի այլոց մասնակցեցին]

...Ռուսներ՝ 584 հոգի, նրանց սպասարկող՝ 45 հոգի, ընդամենը 629 ռուս. տուլմացիներ[70] 368 հոգի, ռազմագերիներ՝ 700 հոգի...

## ՀԵԾԵԼԱԶՈՐԻՑ [ՄԱՍՆԱԿՑԵՑԻՆ]

Թրակիա բանակաթեմից տոպոտերետեսը[71], չորս տագմաների հրամանատարները և զինվորներ, 139 հոգի, չորս տագմաների սխոլարիոսներ և զինվորներ, 354 հոգի։ Չորս տագմաների հրամանատարների և սխոլարիոսների ընդհանուր թիվն է 493 հոգի։ Մակեդոնիայի բանակաթեմից տոպոտերետեսը և չորս տագմաների հրամանատարները, 83 հոգի, չորս տագմաների սխոլարիոսներ. 293 հոգի։ Չորս տագմաների հրամանատարների և սխոլարիոսների ընդհանուր թիվն է 869 հոգի։ Պերատիկա տագմաներից[72] էքսկուբիտորը[73] իր տոպոտերետեսով, և իր ամբողջ տագմայով՝ հրամանատարներով և սխոլարիոսներով. ընդամենը 700 հոգի։ Հիկանատոսն[74] իր տոպոտերետեսով և իր ամբողջ տագմայով՝ հրամանատարներով և սխոլարիոսներով՝ ընդամենը 456 հոգի։ Հայերից, ովքեր վերջերս սկսեցին ռոճիկ ստանալ Արևելքի տագմաներից, 1000 հոգի։ Օպսիկիոն բանակաթեմում հաստատված սկլավեններից 220 հոգի։ Թրակեսիոն [բանակաթեմի] զորավարը իր երեք տուրմարխներով և բանակաթեմի մյուս իշխանավորներով, բոլոր առաջնորդներով և բոլոր զինվորներով, ովքեր գտնըվում էին դրունգարների և կոմեսների ծառայության մեջ՝ 150 հոգի։ Պահանջվեց 800 զինվոր ևս և տրվեց 4-ական դահեկան կանխավճար, այն է 41 լիտր [ոսկի] և 32 դահեկան։ Այդ [գումարից] ռոճիկ տրվեց Խարպեղիկի բանակաթեմի զորքին՝ 24

լիտր և 56 դահեկան։ Հրամանատարներից կարելի է ավելի մանրամասն իմանալ Կրետե կղզին ափ դուրս եկած Թրակեսիոն բանակաթեմի զորքի [բանակի] մասին։ Նույն Թրակեսիոն բանակաթեմի, Թրակեսիոնի ծովափը պահպանող հայերից 600 հոգի։ Բայց փոխադրանավերի սակավաթվության պատճառով կարողացան ափ դուրս գալ ընդամենը 50 զինվոր։ Խարպեզիկի [բանակաթեմի] զորավարը իր ամբողջ զորքով, այն է՝ մեծ տուրմարխներով, կորտեի կոմեսով, բանակաթեմի դոմեստիկոսով՝ 25 հոգի, փոքր տուրմարխները 47 հոգի, դրունգարները 205 հոգի, և շարքայինները՝ 428 հոգի։ Ընդամենը 705 հոգի։

## ՎԵՐԵՎՈՒՄ ՀԻՇՎԱԾ ԲՈԼՈՐ ՆԱՎԱՍՏԻՆԵՐԻ, ՀԵՏԵՎԱԿԱԶՈՐԻ ԵՎ ՀԵԾՅԱԼՆԵՐԻ ՌՈՃԻԿԻ ՄԱՍԻՆ

...Արևմտյան բանակաթեմերի 3000 մարդայիտ զինվորների կանխավճար չորսական դահեկան, որը կազմում է 166 լիտր [ոսկի] և 48 դահեկան։ Այդ [գումարից] պատրիկ Միքայել Ուրանոսի կողմից պատրիկ Կրինիտեսին տրվեց 36 լիտր... Խարպեզիկի բանակաթեմի 22 մեծ տուրմարխները, բանակաթեմի մերիարխը, կորտեի կոմեսը և բանակաթեմի դոմեստիկոսը՝ 5-ական [դահեկան], 47 փոքր տուրմարխները՝ 4-ական [դահեկան], 205 դրունգարները՝ 3-ական [դահեկան], 428 շարքայինները՝ 2-ական [դահեկան]։ Նրանց ռոճկի ընդհանուր գումարն է 24 լիտր և 56 դահեկան...

### ԳԼՈՒԽ 48

## ԱՅԼԱԶԳԻՆԵՐԻՆ ՈՒՂԱՐԿՎՈՂ ՆԱՄԱԿՆԵՐԻ ՎԵՐՆԱԳՐԵՐԸ

Հռոմի պապին [ուղարկվում է] մեկ սոլիդանոց խրիսովուլլով նամակ, [որ վերնագրվում է]. «Հանուն հոր և որդվո և հոգվույն սրբո՝ մեկ և միակ ճշմարիտ աստուծո, հավատացյալ ի նույն աստված, հռոմայեցիների այսինչ և այսինչ կայսրերը Հռոմի սրբազնագույն պապին՝ մեր հոգևոր հորը»։ Նույն վերնագրով նաև Ալեքսանդրիայի պատրիարքին, բացառյալ «հորը» բառը. Նմանապես Անտիոքի պատրիարքին և Երուսաղեմի պատրիարքին,

բացառյալ «Հոգևոր Հորը» բառերը։ Կնիքները լինում են ոսկե, երեք սոլիդանոց։

Խալիֆային, այն է Ամերմումնիին ուղարկվում է չորս սոլիդանոց խրիսովուլլով [նամակ], [հետևյալ վերնագրով]. «Հռոմայեցիների այսինչ և այսինչ հավատացյալ օգոստոս կայսրերը ամենամեծափառ, ամենտազնիվ և ամենաերևելի այսինչ խալիֆային[76], հագարացիների առաջնորդին[77]։ Հավատացյալ ի Քրիստոս աստված այսինչ և այսինչ օգոստոս ինքնակալները, հռոմայեցիների մեծ կայսրերը ամենամեծափառ, ամենաազնիվ և ամենաերևելի այսինչ խալիֆային, հագարացիների առաջնորդին»։

Մեծ Հայքի[78] իշխանաց իշխանին[79] [ուղարկվում է] երեք սոլիդանոց խրիսովուլլով [նամակ]. «Կոստանդին և Ռոմանոս հավատացյալ ի Քրիստոս աստված ինքնակալ օգոստոսներ, հռոմայեցիների մեծ կայսրեր, ամենաերևելի այսինչ իշխանին, Մեծ Հայքի առաջնորդին և մեր հոգևոր որդուն»։ Ասպուրականի, այն է, Վասպարականի[80] իշխանին, որ այժմ իշխանաց իշխանի պատիվն է ստացել[81], երեք սոլիդանոց խրիսովուլլով [նամակ]. «Կոստանդին և Ռոմանոս հավատացյալ ի Քրիստոս աստված ինքնակալ օգոստոսներ, հռոմայեցիների կայսրեր, ամենաերևելի այսինչ իշխանաց իշխանին»։ Կոգովիտի իշխանին[82], Հայաստան։ Տարոնի իշխանին[83], Հայաստան։ Մոկքի իշխանին[84], Հայաստան։ Ավզանի[85] իշխանին, Հայաստան։ Սյունիքի[86] իշխանին, Հայաստան։ Վայոց Ձորի[87] իշխանին, Հայաստան։ Խաչենի իշխանին[88], Հայաստան։ Սևորդյաց, այսինքն Սև Որդիներ կոչվող երեք իշխաններին[89]։ Վերոհիշյալ բոլորին ուղարկվող նամակները վերնագրվում են այսպես. «Քրիստոսասեր տերերի հրամանքը այսինչ իշխանին, այսինչ տեղ»։

Իբերիայի կուրապաղատին երկու սոլիդանոց խրիսովուլլով [նամակ]. «Քրիստոսասեր տերերի հրամանքը՝ ամենափառավորյալ այսինչ կուրապաղատին»։ Կուրապաղատին են ենթարկվում չորս այլ իշխանություններ, որոնց դիմում են հետևյալ կերպ. Վերիասախի իշխանին[90], Իբերիա։ Կարնատայսի իշխանին[91], Իբերիա։ Կուելի իշխանին[92], Իբերիա։ Ացարայի[93] իշխանին, Իբերիա։ «Քրիստոսասեր տերերի հրամանքը այսինչին»։

Ալանիայի էքսուսիոկրատորին[94] [ուղարկվում է] երկու սոլիդանոց խրիսովուլլով նամակ. «Հանուն հոր և որդվո և հոգվույն սրբո՝ մեկ և միակ ճշմարիտ մեր աստուծո. Կոստանդին և Ռո-

մանոս հավատացյալ ի նույն աստված հռոմայեցիների կայսրերը Ալանիայի այսինչ էքսուսիոկրատորին, մեր հոգևոր որդուն»։

Արազգիայի էքսուսիաստեսին[95] [ուղարկվում է] երկու սոլիդանոց խրիսովուլլով [նամակ]. «Քրիստոսասեր տերերի հրամանքը Աբազգիայի երևելի այսինչ էքսուսիաստեսին»։

Ալբանիայի իշխանին[96]։ Կրեվատադեսների իշխանին՝[97] Կրեվատաս կոչվածին։ Կեդոնիայի[98] իշխանին։ Ցանարիայի իշխաններին[99]։ Սարվանի իշխանին[100], որոնք գտնվում են Ալանիայի և Ցանարիայի միջև։ Իշխաններին Ազիայի[101], որի մեջ են գտնվում Կասպից դռները։ Խրյուսայի իշխանին[102]։ Վրեղանի իշխանին[103]։ Մոկանի իշխանին[104] (Մոկանից է սկսվում Մեոտիս լիճը)։ Բոլոր վերոհիշյալներին ուղղված նամակը վերնագրվում է այսպես. «Քրիստոսասեր տերերի հրամանքը այսինչ իշխանին, այսինչ երկիր»։

Հայոց կաթողիկոսին, Իբերիայի կաթողիկոսին, Ալբանիայի կաթողիկոսին։ Երեք կաթողիկոսին էլ ուղղված նամակների վերնագիրն է. «Քրիստոսասեր տերերի հրամանքը այսինչ երկրի, ամենաբարեպաշտ այսինչ առաջնորդին»։

Հռոմի պապին երկու սոլիդանոց[105] խրիսովուլլով նամակ։ [Վերնագիրն է]. «Հանուն հոր և որդվո և հոգվույն սրբո՝ մեր մեկ և միակ ճշմարիտ աստուծո։ Կոստանդին և Ռոմանոս հավատացյալ ի նույն աստված հռոմայեցիների կայսրերը Հռոմի սրբազնագույն այսինչ պապին, մեր հոգևոր հոր»։

Ռեքսին Սաքսոնիայի։ Ռեքսին Բավարիայի (սա Նեմիցներ կոչվածների երկիրն է)։ Գալլիայի ռեքսին։ Գերմանիայի ռեքսին։ Բոլոր վերոհիշյալներին ուղղված նամակը վերնագրված է այսպես. «Հանուն հոր և որդվո և հոգվույն սրբո, մեր մեկ և միակ ճշմարիտ աստուծո։ Կոստանդին և Ռոմանոս հավատացյալ ի նույն աստված հռոմայեցիների կայսրերը, սիրելի և հոգևոր այսինչ եղբոր, երևելի ռեքսին»։

Հռոմի պրինցեպսին երկու սոլիդանոց խրիսովուլլով [նամակ]. «Կոստանդին և Ռոմանոս և այլն և այլն, Հռոմի ամենափառավորյալ այսինչ պրինցեպսին»։

Աֆրիկայի ամիրային. «Կոստանդին և Ռոմանոս հավատացյալ ի Քրիստոս աստված օգոստոս ինքնակալներ, հռոմայեցիների մեծ կայսրեր, մուսուլմանների ամենափառավորյալ այսինչ էքսուսիաստեսին»։ [Վերոհիշյալին] երկու սոլիդանոց խրիսովուլլ։

Եգիպտոսի ամիրային չորս սոլիդանոց խրիսովուլլով [նամակ]. Կոստանդին Ծիրանածին և Ռոմանոս կայսրերի օրոք [նրան] ուղարկված նամակի խրիսովուլլը կշռում էր 18 հեքսագիոն[106]: «Կոստանդին և Ռոմանոս ի Քրիստոս բարեպաշտ ինքնակալներ, մեծ, վեհ օգոստոսներ, հռոմայեցիների կայսրեր, մեր սիրելի բարեկամ, Եգիպտոսի ամենաազնիվ ամիրային»:

Սարդինիայի իշխանին երկու սոլիդանոց խրիսովուլլով [նամակ]. «Քրիստոսասեր տերերի հրամանքը Սարդինիայի իշխանին»: Վենետիկի դուքսին: Կապուայի պրինցեպսին: Նեապոլսի դուքսին: Ամալֆեի իշխանին: Գայետեի իշխանին: Բուլղարիայի՝ կամավն աստուծո իշխանին. «Հանուն հոր և որդվո և հոգվույն սրբո՝ մեր մեկ և միակ ճշմարիտ աստուծո, Կոստանդին և Ռոմանոս հավատացյալ ի նույն աստված հռոմայեցիների կայսրերը, մեր ցանկալի և հոգևոր որդի, կամավն աստուծո բուլղարների ամենաքրիստոնյա ժողովրդի իշխանին»: Վերջերս գրվում է այսպես. «Կոստանդին և Ռոմանոս հռոմայեցիների ի Քրիստոս աստված բարեպաշտ ինքնակալ կայսրեր, մեր ցանկալի որդուն, տեր այսինչին, Բուլղարիայի թագավորին»:

Խազարիայի խաքանին երեք սոլիդանոց խրիսովուլլով [նամակ]. «Հանուն հոր և որդվո և հոգվույն սրբո՝ մեր մեկ և միակ ճշմարիտ աստուծո: Կոստանդին և Ռոմանոս հավատացյալ ի նույն աստված հռոմայեցիների կայսրեր, Խազարիայի ամենաազնիվ և ամենասիրելի այսինչ խաքանին»:

Ռուսիայի իշխանին երկու սոլիդանոց խրիսովուլլով [նամակ]. «Կոստանդնի և Ռոմանոսի, հռոմայեցիների քրիստոսասեր կայսրերի նամակը Ռուսիայի իշխանին»:

Թուրքերի[107] իշխաններին երկու սոլիդանոց խրիսովուլլով [նամակ]. «Կոստանդնի և Ռոմանոսի, հռոմայեցիների քրիստոսասեր կայսրերի նամակը Թուրքերի իշխաններին»:

Պեչենեգների իշխաններին երկու սոլիդանոց խրիսովուլլով [նամակ]. «Կոստանդնի և Ռոմանոսի, հռոմայեցիների քրիստոսասեր կայսրերի նամակը պեչենեգների իշխաններին»:

Խորվաթիայի իշխանին, սերբերի իշխանին, Զախլումոնի իշխանին, Կանալի իշխանին, Տրաբունոնի իշխանին, Դիոկլիայի իշխանին, Մորավիայի իշխանին [ուղարկվող նամակների] վերնագիրն է. «Քրիստոսասեր տերերի հրամանքը այսինչ [երկրի], այսինչ իշխանին»: Խրիսովուլլը երկու սոլիդանոց:

*Ֆրանկիայի ռեքսին [մեկ սոլիդանոց] խրիսովուլլով [նամակ]. «Հանուն հոր և որդվո և հոգվույն սրբո, մեր մեկ և միակ ճշմարիտ աստուծո, Կոստանդին և Ռոմանոս հավատացյալ ի նույն աստված, վեհ օգոստոս ինքնակալներ, հռոմայեցիների մեծ կայսրեր, մեր սիրելի, ցանկալի և հոգևոր եղբոր, Ֆրանկիայի. ամենաազնիվ, երևելի այսինչ ռեքսին»։*

*Հնդկաստանի վեհապետին. «Կոստանդին և Ռոմանոս, հավատացյալ ի Քրիստոս աստված, հռոմայեցիների ինքնակալ մեծ կայսրեր, Հնդկաստանի այսինչ վեհապետին, մեր սիրելի բարեկամին»։*

*Երջանիկ Արաբիայի տիրակալին. [մեկ սոլիդանոց] խրիսովուլլով [նամակ]. «Կոստանդին և Ռոմանոս, հավատացյալ ի Քրիստոս աստված, հռոմայեցիների ինքնակալ մեծ կայսրեր, Արաբիայի այսինչ տիրակալին»։*

ԳԼՈՒԽ 50

## ԶՈՐԱՎԱՐՆԵՐԻ ԵՎ ԿԼԵՅՍՈՒՐԱՐԽՆԵՐԻ ՀԱՍՏԱՏՎԱԾ ՌՈՃԿԱՑՈՒՑԱԿԸ, ԹԵ ՔՐԻՍՏՈՍԱՍԵՐ ՏԵՐ ԼԵՎՈՆԻ ԺԱՄԱՆԱԿ[108] ՆՐԱՆՔ ԻՆՉՔԱՆ ՌՈՃԻԿ ԷԻՆ ՍՏԱՆՈՒՄ

*Անատոլիկոն [բանակաթեմի] զորավարը 40 լիտր, Արմենիակների զորավարը 40 լիտր, Թրակեսիոնի զորավարը 40 լիտր, Օպսիկիոնի զորավարը 30 լիտր, Բուկելլարների զորավարը 30 լիտր, Կապադովկիայի զորավարը 20 լիտր, Խարսիանոնի զորավարը 20 լիտր, Պաֆլագոնիայի զորավարը 20 լիտր, Թրակիայի զորավարը 20 լիտր, Մակեդոնիայի զորավարը 30 լիտր, Խաղտիքի զորավարը 10 լիտր, որովհետև նա կումերկիոնից[109] ստանում է 10 լիտր ևս, Կոլոնիայի զորավարը 20 լիտր, Միջագետքի զորավարը 0 լիտր, որովհետև նրա ձեռքում է գտնվում ամբողջ կումերկիոնը։ Սեբաստիայի զորավարը 5 լիտր, որովհետև նա այն ժամանակ կլեյսուրարխ էր, Լիկանդոսի զորավարը 5 լիտր, որովհետև նա այն ժամանակ կլեյսուրարխ էր։ Սելևկիայի զորավարը 5 լիտր, որովհետև նա այն ժամանակ կլեյսուրարխ էր։ Լեոնտոկոմիսի զորավարը 5 լիտր, որովհետև նա այն ժամանակ կլեյսուրարխ էր։ Կիբիրեոտների զորավարը 10 լիտր, Սամոսի զորավարը*

*10 լիտր, Էգեական ծովի զորավարը 10 լիտր։ Արևմուտքի զորավարները ռոճիկ չէին ստանում, որովհետև նրանք իրենց բանակաթեմերից ստանում էին տարեկան հասույթ[110]։ Նրանք են Պելոպոնեսի զորավարը, Նիկոպոլսի զորավարը[111], Հելլադայի զորավարը, Սիկիլիայի զորավարը, Լանգոբարդիայի զորավարը, Ստրիմոնի զորավարը, Կեֆալոնիայի զորավարը, Թեսաղոնիկեի զորավարը, Դյուրախիոնի զորավարը[112], Դալմատիայի զորավարը, Խերսոնի զորավարը։*

ԳԼՈՒԽ 52

## ՃՇԳՐՏԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ ԿԱՅՍԵՐԱԿԱՆ ՊԱՇՏՈՆԱԿԱՆ ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԺԱՄԱՆԱԿ ՊԱՀՊԱՆՎԵԼԻՔ ԿԱՐԳ ՈՒ ԿԱՆՈՆԻ, ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ԱՍՏԻՃԱՆԱՎՈՐԻ ԳԱՀՆ ՈՒ ՊԱՏԻՎԸ, ԿԱԶՄՎԱԾ ՀԻՆ ԿԼԵՏՈՐՈԼՈԳԻՈՆՆԵՐԻ ՀԻՄԱՆ ՎՐԱ ԿԱՅՍԵՐԱԿԱՆ ՊՐՈՏՈՍՊԱԹԱՐ ԵՎ ԱՏՐԻԿԼԻՆ ՓԻԼՈԹԵՈՍԻ ԿՈՂՄԻՑ՝ ՄԵՐ ՔՐԻՍՏՈՍԱՍԵՐ ԵՎ ԱՄԵՆԱԻՄԱՍՏՈՒՆ ԼԵՎՈՆ ԿԱՅՍԵՐ ԺԱՄԱՆԱԿ, ԱՇԽԱՐՀԻ ԱՐԱՐՉԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ 6408 ԹՎԱԿԱՆԻՆ, 3-ՐԴ ԻՆԴԻԿՏԻՈՆԻ ՍԵՊՏԵՄԲԵՐ ԱՄՍԻՆ[113]

*Կայսերական հրամանագրով պաշտոնյաներին շնորհվող պատվաստիճանները, որոնց [կրողները] կոչված են կառավարելու ստորադրյալներին, նույնպես 60-ն են, որոնք, ինչպես ասվեց, կայսերական հրամանագրով շնորհվելով, հեշտությամբ կարող են նորից ետ վերցվել և մի անձնավորությունից փոխանցվել մի ուրիշի։*

*Առաջին և ամենաբարձրը վասիլեոպատորի[114] աստիճանն է, որ հիմնվեց մեր քրիստոսասեր կայսր Լևոնի կողմից։ Բ. Ռեկտորի[115] աստիճանը։ Գ. Սինկելլոսի[116]։ Դ. Անատոլիկոն [բանակաթեմի] զորավարի աստիճանը։ Ե. Սխոլերի դոմեստիկոսինը։ Զ. Արմենիակների [բանակաթեմի] զորավարի։ Է. Թրակեսիոնի զորավարի։ Ը. Օպսիկիոնի կոմեսի։ Թ. Բուկելլարների զորավարի։ Ժ. Կապադովկիայի զորավարի։ ԺԱ. Խարսիանոնի զորավարի։ ԺԲ. Կոլոնիայի զորավարի։ ԺԳ. Պաֆլագոնիայի զորավարի։ ԺԴ. Թրակիայի զորավարի։ ԺԵ. Մակեդոնիայի զորավարի։ ԺԶ. Խաղտիքի զորավարի... [ընդամենը 60 աստիճան]։*

Այս բոլոր [աստիճանները] ստորաբաժանվում են յոթ կարգի, այն է՝ զորավարների, դոմեստիկոսների, դատավորների, սեկրետիկոսների, դեմոկրատների, ստրատարխների, և հատուկ աստիճանների[117]։ Զորավարների դասին են պատկանում 26-ը, այն է Անատոլիկոնի զորավարը, Արմենիակների զորավարը, Թրակեսիոնի զորավարը, Օպսիկիոնի կոմեսը, Բուկելլարների զորավարը, Կապադովկիայի զորավարը, Խարսիանոնի զորավարը, Կոլոնիայի զորավարը, Պաֆլագոնիայի զորավարը, Թրակիայի զորավարը, Մակեդոնիայի զորավարը, Խաղտիքի զորավարը։ Սրանք Արևելքի բանակաթեմերի զորավարություններն են, իսկ Արևմուտքինն են հետևյալները...

## ՍՐԱՆՑ ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐԻՆ ԵՆԹԱԿԱ ԵՆ ԵՎ ՍՏՈՐԱԴՐՅԱԼ ՀԱՆՎԱՆԵ ՀԵՏԵՎՅԱԼՆԵՐԸ

Յուրաքանչյուր վերոհիշյալ աստիճանին, վերջինիս հանդես գալուն և կարգին համապատասխան ենթարկվում են տարբեր աստիճաններ, որոնք կոչվում են օֆֆիկիա և երեք կարգի են. տագմատիկոս, բանակաթեմային և սենատորական։ Անատոլիկոն բանակաթեմի զորավարին ենթակա են 11 աստիճան, այն է տուրմարխներ, մերիարխներ, կորտեի կոմեսը, բանակաթեմի խարտուլարը, բանակաթեմի դոմեստիկոսը, բանդոնների դրունգարը, նմանապես կոմեսներ, սպաթարների հարյուրապետը, հետերիայի կոմեսը, պրոտոկանգելլարիոսը, պրոտոմանդատորը։ Սխոլերի դոմեստիկոսին ենթարկվում են 10 աստիճան. առաջինը տոպոտերետեսն է, ապա սխոլերի երկու կոմեսները, խարտուլարը, գոմեստիկոսներ, պրոեքսիմոսը, պրոտիկտորներ, եվտիխոֆորներ, սկեպտրոֆորներ, սպաներ, մանդատորներ։ Իսկ Արմենիակների [բանակաթեմի] զորավարին ենթարկվում են ըստ աստիճանի այնքան, ինչքան Անատոլիկոն [բանակաթեմի] զորավարին և այդպես մնացած զորավարություններին, բացառյալ նավատորմիղայինները...

### ՀԱՏՎԱԾ Բ

...Պետք է գիտենալ, որ միայն այս վեց աստիճանները՝ (Կոստանդնուպոլսի պատրիարքը, կեսարը, նոբելեսսիմոսը, կուրապաղատը, վասիլեոպատորը և զոստե պատրիկիան) իրավունք ունեն

առաջին հերթին մասնակից լինելու կայսրերի ամենահանդիսավոր սեղանին։ Մնացած բոլորը պատկանում են երկրորդ կարգին, այն է [առաջին] մագիստրոսը, [երկրորդ] մագիստրոսը։ Եթե սրանցից մեկը օֆֆիկիոնում լինելու պատվին է արժանացել, նախապատվություն է ստանում, եթե նույնիսկ վերջերս է առաջ քաշվել։ Այնուհետև ռեկտորը, Հռոմի սինկելլոսը, Կոստանդնուպոլսի սինկելլոսը։ Եթե Արևելքի պատրիարքների սինկելլոսներ լինեն, նրանք իրենց պատրիարքությունների աթոռների համաձայն նախապատվություն են ստանում, որոնցից հետո գալիս է բուլղարների արքեպիսկոպոսը, ներքինի պատրիկներ։ Վերջիններից նա, ով օֆֆիկիոնում է գտնվում, մյուսի հանդեպ նախապատվություն ունի։ [Ապա] Անատոլիկոն [բանակաթեմի] զորավար անթիպատ պատրիկը, սխոլերի դոմեստիկոս անթիպատ պատրիկը, Արմենիակների [բանակաթեմի] զորավար անթիպատ պատրիկը... [Թվարկվում են հաջորդականությամբ Թրակեսիոնի, Օպսիկիոնի, Բուկելլարների, Կապադովկիայի, Խարսիանոնի, Կոլոնիայի, Պաֆլագոնիայի, Թրակիայի, Մակեդոնիայի, Խայտիքի և այլ զորավարներ և բարձրաստիճան պաշտոնյաներ, Արմենիակների զորավարից հետո հաշված 51 աստիճան]։

ԳԼՈՒԽ 54

## ԿԻՊՐՈՍԻ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍ ԵՊԻՓԱՆԻ [ՇԱՐԱԴՐԱՆՔԸ] ՊԱՏՐԻԱՐՔՆԵՐԻ ԵՎ ՄԵՏՐՈՊՈԼԻՏՆԵՐԻ ԱԹՈՌՆԵՐԻ ԴԱՍԱԿԱՐԳՄԱՆ ՄԱՍԻՆ

Հռոմի պատրիարքը։ Կոստանդնուպոլսի պատրիարքը։ Ալեքսանդրիայի պատրիարքը։ Անտիոքի պատրիարքը։ Երուսաղեմի պատրիարքը։

### Մետրոպոլիտների դասակարգումը

Ա. Կապադովկիայի թեմ, Կեսարիայի [մետրոպոլիտ]։
Բ. Ասիայի թեմ, Եփեսոսի [մետրոպոլիտ]։
Գ. Եվրոպայի թեմ, Թրակիայի Հերակլիայի [մետրոպոլիտ]։

Դ. Գալատիայի թեմ, Անկյուրայի [մետրոպոլիտ]։
Ե. Հելլեսպոնտոսի թեմ, Կյուզիկոսի [մետրոպոլիտ]։
Զ. Լիդիայի թեմ, Սարդիսի [մետրոպոլիտ]։
Է. Բյութանիայի թեմ, Նիկոմիդիայի [մետրոպոլիտ]։
Ը. Նույն թեմում Նիկիայի [մետրոպոլիտ]։
Թ. Նույն թեմում, Քաղկեդոնի [մետրոպոլիտ]։
Ժ. Պամփիլիայի թեմ, Սիդեի [մետրոպոլիտ]։
ԺԱ. Երկրորդ Հայք թեմ, Սեբաստիայի [մետրոպոլիտ]։
ԺԲ. Հելենոպոնտոսի թեմ, Ամասիայի [մետրոպոլիտ]։
ԺԳ. Առաջին Հայքի թեմ, Մելիտենեի [մետրոպոլիտ]։
ԺԴ. Երկրորդ Կապադովկիայի թեմ, Տյուանայի [մետրոպոլիտ]։
ԺԵ. Պաֆլագոնիայի թեմ, Գանդրայի [մետրոպոլիտ]։
ԺԶ. Հոնորիասի թեմ, Կլավդիուպոլսի [մետրոպոլիտ]։
ԺԷ. Պոնտոսի թեմ, Նեոկեսարիայի [մետրոպոլիտ]։
ԺԸ. Երկրորդ Գալատիայի թեմ, Պիսինունտի [մետրոպոլիտ]։
ԺԹ. Լիկիայի թեմ, Մյուրոնի [մետրոպոլիտ]։
Ի. Կարիայի թեմ, Տավրուպոլսի [մետրոպոլիտ]։
ԻԱ. Փռյուգիայի թեմ, Լավոդիկիայի [մետրոպոլիտ]։
ԻԲ. Սալուտարյան Փռյուգիայի թեմ, Սյունադոնի [մետրոպոլիտ]։
ԻԳ. Լիկաոնիայի թեմ, Իկոնիոնի [մետրոպոլիտ]։
ԻԴ. Պիսիդիայի թեմ, Անտիոքի [մետրոպոլիտ]։
ԻԵ. Պամփիլիայի թեմ, Պերդեի [մետրոպոլիտ]։
ԻԶ. Երկրորդ Կապադովկիայի թեմ, Մոկեսոսի [մետրոպոլիտ]։
ԻԷ. Լազիկայի թեմ, Ֆասիսի [մետրոպոլիտ]։
ԻԸ. Թրակիայի թեմ, Ֆիլիպուպոլսի [մետրոպոլիտ]։
ԻԹ. Հռոդոպեի թեմ, Տրայանուպոլսի [մետրոպոլիտ]։
Լ. Կիկլադյան կղզիների թեմ, Հռոդոսի [մետրոպոլիտ]։
ԼԱ. Հեմեմոնտոսի թեմ, Հադրիանուպոլսի [մետրոպոլիտ]։
ԼԲ. Նույն թեմում Մարկիանուպոլսի [մետրոպոլիտ]։
ԼԳ. Կապատյան Փռյուգիայի թեմ, Հիերապոլսի [մետրոպոլիտ]։

### Ինքնագլուխ[118] արքեպիսկոպոսների մասին

...ԼԳ. Երկրորդ Հայքի թեմ, Հերակլիուպոլսի [արքեպիսկոպոս]։
ԼԴ. Արագդիայի թեմ, Սերաստուպոլսի [արքեպիսկոպոս]։

## Ենթակայության մեջ գտնվող եպիսկոպոսների մասին

Կիկիսոսի Կապադովկիայի թեմ, մայրաքաղաքը Կեսարիա, Ենթակայության մեջ ունի հինգ եպիսկոպոսանիստ քաղաք, այն է Թագավորական Ջերմուկներ[111], Նյուսա, Հայաստանի Թեոդոսուպոլիս, Կամուլիանոն և Կիկիսոս...

...Կապադովկիայի թեմ, մայրաքաղաքը Մոկեսոս, ենթակայության մեջ ունի չորս եպիսկոպոսանիստ քաղաք, այն է Նաղիանզոս, Կոլոնիա, Պարնասսոս, Դոարոն։ Լազիկայի թեմ, մայրաքաղաքը Ֆասիս։ Իր ենթակայության մեջ ունի հետևյալ չորս քաղաքները, այն է եպիսկոպոսությունները. Հոոդոպոլսի, Սաեսիրոնոնի, Պետրայի և Զեգանեոնի...

## ԼԵՎՈՆԻ ՈՐԴԻ ԿՈՍՏԱՆԴԻՆ ԿԱՅՍԵՐ [ԵՐԿԱՍԻՐՈՒԹՅՈՒՆԸ] ՀՌՈՄԱՅԵՑԻՆԵՐԻ ԿԱՅՍՐՈՒԹՅԱՆ ԲԱՆԱԿԱԹԵՄԵՐԻ[1] ՄԱՍԻՆ, ԹԵ ԻՆՁԻ՞ ՀԵՏ ԵՆ ԿԱՊՎԱԾ ԵՎ Ի՞ՆՉ ԵՆ ՆՇԱՆԱԿՈՒՄ ՆՐԱՆՑ ԱՆՎԱՆՈՒՄՆԵՐԸ, ԱՆՎԱՆՍՈՒՄՆԵՐ, ՈՐՈՆՑ ՄԻ ՄԱՍԸ ԴԵՌ ՀՆԻՑ Է ԳԱԼԻՍ, ԻՍԿ ՄՅՈՒՍԸ ՆՈՐԱՍՏԵՂԾ Է

*Իմ կարծիքով շատերը սխալվում են* **բանակաթեմ** *անվան առաջացման հարցում։ Այն հին չէ. պատմություն գրող հեղինակներից ոչ ոք չի հիշատակում բառը այն իմաստով, ինչ մենք տալիս ենք նրան այսօր։ Հեռու անցյալում կային զորամասեր և լեգեոններ, ցրոնք կրում էին այն նահանգի անունը, որի ներկայացուցիչներից էին կազմված։ Օրինակ, մեկը կոչվում էր Քառասուն մարտիրոսաց լեգեոն (կոչվում էր Շանթահարող), մի ուրիշը՝ Մարմարիաների, մեկ այլը՝ Պիսիդական, վերջապես՝ Թեսսալական և այլն։ Նրանք գտնվում էին դուքսի[2] և հեգեմոնի[3] հրամանատարության ներքո, բայց հաճախ և պրեպոզիտոսի։ Բայց գա ե՞րբ էր. այն ժամանակ, երբ զորքի հետ միասին արշավանքի էին դուրս գալիս և կայսրերը, ովքեր հակառակորդների վրա էին տարածում ստրկության լուծը. քիչ էր մնացել, որ նրանք տիրեին անկարգ ու թշնամաբար տրամադրված ամբողջ աշխարհին, ինչպես օրինակ Հուլիոս Կեսարը, կամ հռչակավոր Օգոստոսը, ինչպես անուն հանած Տրայանոսը, Կոստանդին Մեծը և Թեոդոսը և նրանցից հետո քրիստոնեության և աստվածապաշտության հարողները։ Այն ժամանակ, երբ կայսրն էր զորքը գլխավորում, զորավարը հրամայելու իրավունք չուներ։ [Զորքերը] ենթարկվում էին հեգեմոններին ու տաքսիարքոսներին[4], բայց պատերազմական բոլոր հարցերը կախված էին կայսեր կամքից. ամբողջ զորքի հայացքը ուղղված էր միայն ու միայն դեպի կայսրը։ Բայց երբ կայսրերը սկսեցին այլևս անձամբ չմասնակցել արշավանքներին, ահա այն ժամանակ է, որ նրանք բանտկաթեմեր կազմակերպեցին և զորավարներ նշանակեցին։ Այս կարգը հռոմեական պետության մեջ պահպանվում է մինչև օրս։ Բայց*

այն պատճառով, որ Հերակլ Լիբեացու[5] իշխանության ժամանակվանից սկսած հռոմեական պետության հողերը և՛ արևելքում, և՛ արևմուտքում կրճատվեցին, որոշ շրջաններ անջատվեցին, նրանից հետո իշխած կայսրերը, իրենց պետությունը կառավարելու անկարող. այն, ինչպես և հատկապես ռազմական ուժերը առանձին փոքր մասերի բաժանեցին, որոնց հունարեն անուններ տվեցին, քանի որ մոռացել էին իրենց պապենական լատիներեն լեզուն. [անցյալում] հազարապետներին լոնգինոս էին անվանում, հարյուրապետներին՝ կենտուրիոն, իսկ այժմյան զորավարներին՝ կոմես։ Հենց «բանակաթեմ» անունը հունարեն է և ոչ լատիներեն, այն ծագում է «թեսիս» բառից[6]։

Նախ և առաջ մենք կանգ կառնենք Անատոլիկոն կոչված բանակաթեմի վրա։ Այստեղ խոսվելու է Արևելքի, այն է՝ Փոքր Ասիայի բանակաթեմերի մասին։

## ԱՌԱՋԻՆ ԲԱՆԱԿԱԹԵՄ, ՈՐ ԿՈՉՎՈՒՄ Է ԱՆԱՏՈԼԻԿՈՆ[7]

Բանակաթեմը կոչվում է Անատոլիկոն ոչ այն պատճառով, որ ծայրագույն արևելքում, արևի ծագած տեղում է գտնվում, այլ որովհետև տարածվում է Բյուզանդիոնում և Եվրոպայում բնակվողներիս արևելյան կողմում։ Ասորվոց Միջագետքում բնակվողների համար, ապա և Մեծ Ասիայում՝ հնդիկների, եթովպացիների և եգիպտացիների համար, դա Միջին Արևմուտք է և Փոքր Ասիա։ Բայց խոսքը չերկարելու և ոմանց մոտ այն տպավորությունը չստեղծելու համար, թե բանակաթեմերի անվան շուրջը շաղակրատությամբ ենք զբաղված, կարճ ասենք, թե ինչն է ճշմարտությունը։

Անատոլիկոն կոչվող բանակաթեմը բաղկացած է հինգ նահանգից[8]։ [Բանակաթեմն] սկիզբ է առնում Միրոս[9] կոչված գյուղաքաղաքում և մինչև Իկոնիոնն [ընկած շրջանը] կոչվում է Փռյուգիա Սալուտարիա։ Իսավրիային սահմանակից՝ Տավրոս նայող շրջանը կոչվում է Լիկաոնիա։ Դեպի ծով և հարավ ընկած շրջանը, Պսիխրու կոչված լեռները[10] մինչև Ատտալիա կոչվում է Պամփիլիա։ Վերին, դեպի միջերկրյայք ընկած շրջանը կոչվում է Պիսիդիա, իսկ Ակրոինոսից մինչև Ամորիոնը՝ կոչվում է Կապատյան Փռյուգիա։ Դեպի ծով տարածվող և Կարիային սահմանակից [շրջանը] կոչվում է Լիկիա։ Այն բոլոր շրջանները, որոնք գտնը-

վում են միջերկրյայքում, Տավրոսին մոտիկ և տարածվում են մինչև Կապադովկիայի սահմանները, կոչվում են Անատոլիկա, որովհետև Անատոլիկոն բանակաթեմի բաղկացուցիչ մասն են կազմում։ Անատոլիկոն բանակաթեմը այստեղ է վերջանում։ Այն սկիզբ է առնում Միրոսում, այնտեղ, որտեղ վերջանում է Օպսիկիոն[11] [բանակաթեմը], և երկարությամբ ձգվում է մինչև Իսավրիայի սահմանները։ Ինչ վերաբերում է լայնքին, ապա ձախ կողմից նա սահմանակից է Բուկելլարների[12] [բանակաթեմի] որոշ շրջանների հետ, ինչպես և Կապադովկիայի սկզբի, իսկ աջ կողմից՝ Իսավրիայի և Կիբիրեոտների[13] [բանակաթեմի] սկզբի։

Ահա այս է Անատոլիկոն բանակաթեմը։ Սկզբում սակայն այդպես չէր. [ռազմական շրջանի] զորաբանակը բաժանված էր մասերի՝ հազար, հինգ հարյուր, [հարյուր, հիսուն] գինվոր ունեցող դնդերի, [վաշտերի, դասակների]։ Ամբողջ զորաբանակը ենթարկվում էր անթիպատոսին, ինչպես հնում. մինչև Հուստինիանոսի ժամանակները, որպես զորահրամանատար[14] ուղարկվում էր մի մագիստրոս։ Այդ մասին է վկայում ոմն Պուպլիոս անթիպատոսի Զմյուռնիայում գտնվող դամբարանի տապանաքարը, ուր գրված է. «Անթիպատոս Պուպլիոս՝ Հոնիայի, Փռյուգիայի, Էոլիսի, Մեոնիայի, Լիդիայի, Հելլեսպոնտոսի, Միսիայի, Բյութանիայի, Տարսիայի, Գալատիայի, Մարիանդյունացիների, Պոնտոսի, Պաֆլագոնիայի, Փոքր և Մեծ Կապադովկիայի, Իսավրիայի և Լիկաոնիայի, մինչև Տավրոս և Փոքր Հայքի սահմաններն [ընկած շրջանների] արխոնտ»[15]։ Ահա մեկ անթիպատոսի իշխանության [սահմանները]։ Անցյալում հանդես եկավ մի ուրիշ ստրատեղատ, աստիճանով պատրիկ, անունը Իորդանես։ Կայսերական վեստիարիոնում գտնվող նրա ցայտաքանդակ արձաթյա սկուտեղները ունեն հետևյալ մակագրությունը. «Արևելից և Փոքր Ասիայի մյուս ազդությունների ստրատեղատ Իորդանի»։ Սա նույն այն արևելքի միահեծան կառավարիչն էր և հռչակվել էր ու ծաղկել Արկադիոս կայսեր ժամանակ։ Ինչպես վերևում ասացինք, այժմ Անատոլիկոն կոչվող բանակաթեմում բնակվում են հինգ ազգություններ, այն է՝ փռյուգիացիներ, լիկաոնացիներ, իսավրացիներ, պամփիլացիներ և պիսիդացիներ։ Նրանք, նախքան հռոմեական լծի և գերիշխանության տակ ընկնելը, ազատ էին և յուրաքանչյուրն ուներ առաջնորդ։ Երբ նրանք ընկան հռոմեական լծի տակ և [հռոմեական] կայսրությունն [աստիճանաբար] հզորացավ, բոլորը հպատակվեցին, միաձուլվեցին մեկ իշխանության ներքո։ Նրանք ստո-

րաբաժանվեցին առանձին [նահանգների]՝ բանակաթեմերի միայն այն ժամանակ, երբ հռոմայեցիների պետությունը սկսեց աստիճանաբար խեղանդամվել, անդամահատվել անաստված հագարացիների կողմից ու փոքրանալ։ Բայց մինչև Հուստինիանոս կայսեր և Մավրիկիոսի թագավորության ժամանակ բոլորը մեկ իշխանության ներքո էին։ Դրա ապացույցը. հենց Բելիսարիոսն է, որ ամբողջ Արևելքի միահեծան զորավարն էր[16]։ Երբ հագարացիներն սկսեցին հռոմայեցիների երկրի վրա արշավանքներ, ձեռնարկել և ավերել նրանց գյուղերն ու քաղաքները, օրվա կայսրերը ստիպված այդ մեկ իշխանությունը բաժանեցին փոքր մասերի, որից մեկն ահա հանձնեցին ինչ-որ զորավարի և կոչեցին Անատոլիկոն, որովհետև ինչպես վերևում ասացինք, այն գտնվում է մեր՝ Բյուզանդիոնում բնակվողներիս համար դեպի արևելք։ Հնում յուրաքանչյուր ազգություն իր առաջնորդն ուներ և կառավարվում էր տեղական սովորույթի համաձայն։ Ոմանց մոտ ժողովրդավարություն էր, ուրիշների մոտ՝ բռնատիրություն։ Երբ անցան հռոմեական գերիշխանության ներքո, նրանք կազմեցին առանձին պրովինցիաներ, հեգեմոնություններ, դքսություններ, այսպես կոչված կոնսուլություններ, որովհետև կոնսուլներն էին կառավարում։ Նրանց [ղեկավարներից] ոմանք պրինցեպսներ էին, որի մասին փաստ կա սրբոց վկայաբանություններում. կային և սկրինիարիոսներ[17]։ Երկու տեսակի հյուպարքոսներ կային, պրետորյան և քաղաքի[18]։ Պրետորյան [հյուպարքոսները] ծառայում էին արշավանքի դուրս եկած կայսրերին. նրանց պարտականությունն էր զորքին պարեն մատակարարելը, կայսերական զորակայանները կարգի բերելը, ճանապարհները հարթելը։ Այսպես էր հռոմայեցիների ժամանակ. բայց երբ [այս շրջանները] գտնվում էին պարսիկների, այնուհետև մակեդոնացիների ձեռքում, ամբողջ Ասիան բաժանված էր սատրապությունների. գոյություն ուներ Լիդիայի սատրապ, Փռյուգիայի, Հոնիայի, Պամֆիլիայի, Կարիայի, Պաֆլագոնիայի, Բյութանիայի [սատրապ], մի խոսքով ամբողջ Փոքր Ասիան մասերի էր բաժանված՝ ըստ պարսիկների, ապա մակեդոնացիների ցանկության, ընդ որում քաղաքական իշխանությունը և ռազմական իշխանությունը գտնվում էին տարբեր մարդկանց ձեռքում։ Այդ մասին ահա այսքան։

Այստեղ մենք ավարտում ենք Անատոլիկոն բանակաթեմի մասին խոսքը։ Տուրմարխ կոչվածները առաջադրվեցին ի ծառայություն զորավարների։ Տուրմարխի աստիճանն ունեցողին են-

*թարկվում են հինգ հարյուր աղեղնավոր, երեք հարյուր վահանակիր և հարյուր նիզակակիր։ Այդպես է գրված Հովհաննես Ֆիլադելֆացու՝ Լիդոս մականվանյալի գրքում[19]։*

## ԵՐԿՐՈՐԴ ԲԱՆԱԿԱԹԵՄ, ՈՐ ԿՈՉՎՈՒՄ Է ԱՐՄԵՆԻԱԿՆԵՐԻ

*Արմենիակների կոչված բանակաթեմի հատուկ անունը չէ դա, այդ հորջորջումն էլ հին չէ։ Նա իր անունը պարտական է սահմանակից և տեղում ապրող հայերին։ Ես ենթադրում եմ, որ այդ անունն ստացավ անցյալում, Հերակլ կայսեր ժամանակ[20]։ Աշխարհագիր Ստրաբոնը, օրինակ, չի հիշատակում այդ անունը, թեև ծագումով կապադովկացի էր, Ամասիա քաղաքից։ Այդ չի հիշատակում նաև համայն աշխարհի ասպարիսաչափերը գրի առնող Մենիպպոսը[21], ոչ Սկյուլաքս Կարյուանդենացին[22], ոչ Պավսանիաս Դամասկացին[23] , ոչ էլ պատմություն շարահարող որևէ մեկը։ Ըստ երևույթին այս անվանումը ավելի նոր է, որովհետև այն չեն հիշատակում ո՛չ Պրոկոպիոսը[24], ո՛չ Ագաթիասը[25], ո՛չ Մենանդրոսը[26], ո՛չ իլլյուստրիոս Հեսիքիոսը[27], որոնք Հուստինիանոս կայսեր շրջանում ժամանակագրություններ կազմեցին։ Հները Կապադովկիան երեք մասի էին բաժանում. Կատաոնիայի, որն սկիզբ էր առնում Մելիտենեում, Տավրիկե կոչվածի, որն իր անունը պարտական է Տավրոսին և Միջերկրյայի, որտեղ Կապադովկիայի մայրաքաղաք Կեսարիան է գտնվում։ Հները Կապադովկիային երկու անուն են տալիս՝ Մեծ [Կապադովկիա] և Փոքր Կապադովկիա. Մեծը սկիզբ էր առնում Կեսարիայում և Տավրոսում ու տարածվում մինչև Պոնտական ծովը։ Արևմուտքից նրան սահման էր Ալիս գետը, իսկ արևելքից՝ Մելիտենեն։ Սա Մեծ Կապադովկիան էր։ Ասածիս վկան է Հռոմեական պատմության հեղինակ Պոլիբիոսը[28], որ Կապադովկիան տեղադրում է Տավրոսի, Լիկաոնիայի և Պոնտական ծովի միջև։ Նեոկեսարիան, Կոլոնիան, Մելիտենեն ամբողջությամբ Կապադովկիա է կոչվում և այդ անվանումը պարսկական է։ Արտաքսերքես արքայի, չգիտեմ, գուցե մի ուրիշի, որսին մասնակցում էր և մի պարսիկ, երբ հանկարծ մի առյուծ հանդիպեց և հարձակվեց արքայի ձիու վրա։ Պատահաբար այնտեղ գտնվող պարսիկը քաշեց դաշույնը, սպանեց առյուծին և փրկեց արքային, որ քիչ էր մնացել զոհ դառնար։ Ահա այս պարսիկը բարձրացավ մի շատ բարձր լեռան վրա, աչքով անցկացրեց ամբողջ շրջանը, արևելքից արևմուտք և հյուսի-*

*սից հարավ, ինչքան որ կարող էր մարդու հայացքն ընդգրկել և արքայից ստացավ այն որպես պարգև։ Այդ մասին պատմում է Պոլիբիոսը։ Կոլոնիայի շրջանում բնակվում են հայերը, միջերկրրյայքում, որտեղ գտնվում են Ամասիան և Դագիմոն[29] կոչվածը [բնակվում են] լևկոսիրոս կոչվածները։ Բայց Հերոդոտոսը [Ստրաբոնը Հ. Բ.][30] լևկոսիրոս է անվանում բոլոր կապադովկացիներին, ընդհուպ մինչև Պոնտական ծովը բնակվողներին, ի տարբերություն այն ասորիների, ովքեր բնակվում են Տավրոսից այն կողմ և Կիլիկիայում, որոնց մելանոսիրոսներ են անվանում։ Փոքր Կապադովկիան, որն այժմ առանձին բանակաթեմ է և սահմանակից լինելով Լիկաոնիային, հասնում է մինչև Կեսարիա, ընդարձակվում է մինչև Բուկելլարների [բանակաթեմի] սկիզբը, իսկ արևելյան մասում վերջանում Հոռդենդոսում, Լուլոս կոչված բերդի և նույն այն Պոդենդոսի շրջանում[31]։ Նրանից այն կողմ Կիլիկիայի շրջաններն են՝ սկսած Տավրոսից, Մոպսուեստիայից և Ադանայից։ Այս էլ ահա Փոքր Կապադովկիան է, որը վերջերս բանակաթեմի անուն ստացավ։ Կապադովկիան անցյալում Հուստինիանոսի կամ մի այլ կայսեր կողմից երեք մասի բաժանվեց. միջերկրյա շրջանը[31ա] ոմն Խարսիոս իշխանի անունից, որն աչքի էր ընկել պարսիկների դեմ մղվող պատերազմում, Խարսիանոն կոչվեց[32] և մինչև օրս բանակաթեմ է և զորավարություն։ Ստորին՝ ծովահայաց շրջանը հայերին մերձակից լինելու պատճառով կոչվեց Արմենիակների, իսկ վերին շրջանը՝ լիկաոնացիներին ու Տավրոսին սահմանակից եղողը կոչվեց Փոքր Կապադովկիա, որն այժմ, ինչպես ասացինք, բանակաթեմի անուն ստացավ[33]։ Այն մինչև Օգոստոս կայսեր ժամանակ, ուներ թագավոր, իսկ նախքան հռոմեական կայսրության ընդարձակումը գտնվում էր պարսից տիրապետության ներքո։ Եղել է ժամանակ, երբ նա անկախ էր, Արիարաթն[34] էր թագավորում այնտեղ, որի անունից Արիարաթիա էր կոչվում այժմ աղավաղված ձևով Կարատեա անունը կրող աղաբեր լիճը[35]։ Արիարաթից հետո այնտեղ թագավորեց Հրեաստանի թագավոր Հերոդեսի խնամի Արքելայոսը, որից հետո հռոմայեցիները թագավորությունը վերացրին և այն վերածեցին պրովինցիայի, որը կառավարում և հարկադրում էր անթիպատոսը։ Առաջին [Կապադովկիա] պրովինցիայում կա չորս նշանավոր քաղաք. Կեսարիա մայրաքաղաքը, որն իր անունը պարտական է Մեծ Հուլիոս Կեսարին։ Նախապես կոչվում էր Մաղակա[36] կապադովկացիների նախահայր Մոսոխի անունից։ Երկրորդ քաղաքն է Նյու-*

սան, երրորդը Թերման, չորրորդը Հռեդեպոդանդոսը։ Երկրորդ Կապադովկիան, որ գտնվում էր Հեգեմոնի իշխանության ներքո, ունի ութ քաղաք. Տյուանա, Ֆավստինուպոլիս, Կյուբիստրա, Նազիանզոս, [Սա]սիմա, Պարնասոս, Հռեգեդորա, Մոկիսոս և Կորոն կոչված ամրոցը։ Երրորդ Կապադովկիան, որ այժմ կոչվում է Արմենիակների, ունի յոթ քաղաք. Ամասիա, Իբորա, Զալիխոս, Անդրապա, Ամինսոս, Նեոկեսարիա, Սինոպե։

Կապադովկացիները բոլորի մոտ վատ անուն են հանած, որպես չարաբարո[37], այն աստիճանի, որ նրանց մասին նույնիսկ այսպիսի մի առած է հորինվել. «Ամենավատը երեք կապպան է. Կապադովկիա, Կրետե և Կիլիկիա»։ Իսկ էպիգրամներում ասված է. «Կապադովկացիները միշտ էլ ստոր են, բայց պաշտոնի տիրանալուց հետո ավելի ստոր են դառնում, [սեփական] շահի համար՝ ամենաստորը։ Բայց երբ երկիցս և երիցս բարձր դիրք ձեռք գցեն, ահա այն ժամանակ է, որ դառնում են ամենաստորների ամենաստորը»[38]։

Մի այլ առած ասում է. «Մի անգամ իժը խայթեց կապադովկացուն, բայց ճաշակելով նրա թունավոր արյունը, ինքն էլ մեռավ»։

Բայց հակառակ [Կապադովկիայի] նման վատ համբավին, այնտեղ ծնվեցին, ավելի ճիշտ ծագեցին կարծես լուսաշատ աստղեր, իրենց իմաստությամբ հռչակավոր մարդիկ, քրիստոնեական հավատքի ջերմեռանդ [քարոզիչներ], Նեոկեսարիայի եպիսկոպոս Գրիգոր Սքանչելագործը, Ամասիայի [եպիսկոպոս] Ֆեդիմոսը, Լիկինիոսի ժամանակ քրիստոնեական հավատքի համար մարտիրոսացած երանելի Բասիլևսը, Կոմանայի արքեպիսկոպոս Բասիլիսկոսը, որը նույնպես մարտիրոսական վախճան ունեցավ և որի [նշխարները] ամփոփվեցին Հովհան Ոսկեբերանի նշխարների հետ, Կեսարիայի եպիսկոպոս Բարսեղ Մեծը, Նազիանզոս [քաղաքի] եպիսկոպոսությունը ժառանգած Գրիգոր Աստվածաբանը, որի [նշխարներն] այժմ այս [Կոստանդնուպոլիս] քաղաքի պատրիարքների [աճյունների] հետ բարեպաշտ և քրիստոսասեր Կոստանդին կայսրն[39] ամփոփեց Առաքելոց տաճարում։ Ապա նաև Բարսեղ Մեծի եղբայրներ Պետրոսը, Գրիգորն ու Նավկրատիոսը, և Գրիգոր Աստվածաբանի եղբայր Կեսարիոսը։

Ահա համառոտ գծերով Կապադովկիայի մասին։

## ՈՒԹԵՐՈՐԴ ԲԱՆԱԿԱԹԵՄ, ՈՐ ԿՈՉՎՈՒՄ Է ԽԱՂՏԻՔ[40]

Խաղտիք անունը կրող բանակաթեմը և [նրա] Տրապիզոն կոչվող մայրաքաղաքը հույների գաղութներ են, ինչպես այդ մասին վկայում է Քսենոփոնն իր «Նահանջ բյուրոց» աշխատության մեջ[41]։ Վերին և միջերկրյա շրջանները Փոքր Հայքի սկզբնավորությունն են և դա հաստատվում է հենց [իրենց] անուններով. Կելցենե, Սիսպիրիտես[42], Գոյղանոն։ Նրանց մասին վկայում է նաև սուրբ գիրքը. Թագավորությանց չորրորդ գրքում [ասված է, թե] ասորեստանցիները, գերեվարելով սամարացիներին, բերեցին և բնակեցրին Գոյղանոն գետի ափին[43]։ Իսկ Խաղտիք հորջորջումը առաջացել է պարսից տոհմանունից և նրանց սկզբնական հայրենիք Քաղդիայից, որի անունից էլ նրանք քաղդեացիներ կոչվեցին[44].

## ԻՆՆԵՐՈՐԴ ԲԱՆԱԿԱԹԵՄ ՄԻՋԱԳԵՏՔ[45]

Միջագետք բանակաթեմը շատ հին չէ, ոչ էլ շատ հայտնի կամ հռչակավոր մի [նահանգ] է. նախապես անվանում չունեցող ինչ-որ կլեյսուր էր[46]։ Իմ երանելի և սուրբ հոր Լևոնի ժամանակ Պանգրատուկաս հայր, նրա եղբայրներ Փուքրիկաս ու Տավտուկասր[47] անցան [կայսեր կողմը] և այդ վայրի բերդերը նրան հանձնեցին, որով շրջանն ընդարձակվեց և զորավարության անուն ստացավ։

## ՏԱՍՆԵՐՈՐԴ ԲԱՆԱԿԱԹԵՄ ԿՈԼՈՆԻԱ[48]

Կոլոնիան ղառիթափ [վայրում դտնվող] շատ ամուր բերդ է։ Այդ քաղաքի անունից էլ ահա շրջանն ստացավ իր հորջորջումը. հույները բարձրադիր և վեր խոյացող վայրերին կոլոնոս էին կոչում[49]։ Սա Փոքր Հայքի հողերն է և ծայր առնելով Գրիգոր Սքանչելագործի հայրենիք Նեոկեսարիայում և այսպես կոչված Ճաղատ լեռան[50] մոտ, այն ընդարձակվում է դեպի Արաբրակենացիների[5] քաղաքը՝ հռչակավոր վկա Եվստրատիոսի հայրենիքը[52], և հասնում մինչև Նիկոպոլիս և Տեֆրիկե կոչվածը[53], որը գտնվում էր մանիքեցիների[54] վստահամբավ առաջնորդ Խրիսոքիրի[55] և նրանից ավելի ամբարիշտ Կարբեասի[56] իշխանության ներքո, մանիքեցիների, որոնց քրիստոսասեր տեր Վասիլը՝ իմ պապը և մեր կայսրերից բարեբախտն ու ամենաբարեպաշտը գլխովին ոչնչացրեց և

դժոխքի տարտարոսներն ուղարկեց։ Ահա այսքանը Կոլոնիայի մասին։ Ինչպես նախապես ասացինք, բանակաթեմը ծագում է Առաջին Հայք նահանգից։

## ՏԱՍՆՄԵԿԵՐՈՐԴ ԲԱՆԱԿԱԹԵՄ ՍԵԲԱՍՏԻԱ[57]

Սեբաստիայի բանակաթեմը ծագել է Երկրորդ Հայքից, իսկ քաղաքն էլ կոչվել է Հուլիոս Կեսար Սեբաստոսի անունից[58], որ առաջինը Կեսարի իշխանությունը հզորացրեց և բազմիշխանությունը մենիշխանության վերածեց։ Բայց նա Կեսար կոչվեց ոչ թե այդ աստիճանի [անունից], այլ իր մոր արգանդի հատման պատճառով, որովհետև երբ նրա մայրը վախճանվեց, մանուկն [արգանդում] դես ու դեն էր ընկնում, աքացի տալիս, և արգանդն հատելուց հետո նա աշխարհ եկավ՝ կորյունի պես մռնչալով։ Հռոմայեցիները հատմանը ցեսե են ասում, դրանից էլ ահա նա ցեսար կոչվեց, հատման պատճառով, ինչպես ասացինք։ Այսքանը Սեբաստիայի մասին։ Կեսարիա կոչվող բոլոր քաղաքները իրենց անունը պարտական են այս շատ սիրելի Կեսարին։

## ՏԱՍՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ ԲԱՆԱԿԱԹԵՄ ԼԻԿԱՆԴՈՍ[59]

Լիկանդոսը քիչ առաջ, հենց վերջերս բանակաթեմի վերածվեց և քաղաք դարձավ, իմ երանելի և սուրբ հոր ժամանակ։ Անցյալում նա ամայի և անմարդաբնակ մի վայր էր, ինչպես և Ցամանդոս[60] կոչվածը և հայոց մերձակա շրջանները։ Այդ շրջաններն անուն չունեին, ոչ էլ այդ անունով զորք կար։ Երբ այն մեծ և հսկա հայը, Լեկաստրիա Անդուրինեի փեսան, այն երկայնաբազուկն ու կոփվածը, որին հայերեն Ադոտ[61] էին անվանում, չգիտեմ որպես փախստական, թե բարեկամ եկավ իմ երանելի և սուրբ հոր մոտ, որպես սպասավոր ուներ հենց վերջերս, մի փոքր առաջ վախճանված հռչակավոր Մելիասին[62], ով նրա հետ մասնակցեց բուլղարական շատ անհաջող պատերազմին[63]։ Ամենաանաստված բուլղարի՝ Սիմեոնի դեմ մղված հիշածս պատերազմում Հայն սպանվեց (նա էքսկուբիտոսներ կոչված կայսերական տագմայի հրամանատարն էր), անհայտ կորավ և իմ երանելի հոր պրոտովեստիարիոս Թեոդոսը[64]։ Ահա վերոհիշյալ Մելիասը այս պատերազմում մի կերպ կենդանի մնալով գնաց հայոց երկիրը. լինելով տաղանդավոր մարդ և ավազակային գործերին հմուտ, հայերից

բաղկացած ինչ-որ խումբ կազմեց և ինչպես որ կարողացավ ամրացրեց այդ [Լիկանդոս] քաղաքի միջնաբերդը։ Կամաց-կամաց նա ամբողջ քաղաքին հարություն տվեց։ Ժամանակի ընթացքում անչափ բարեբեր, ձիեր և ամեն տեսակի անասուններ բուծելու շատ հարմար այս ողջ շրջանը լցվեց հայերով և այդ նույն խոհեմ Մելիասի ջանքերով բանակաթեմի վերածվեց և բարձրացավ նշանավոր զորավարության աստիճանին։ [Լիկանդոս] քաղաքի անունը հին է և վերաբերում է հայկական ցեղին ու լեզվին։ [Լիկանդոսի] մասին կա մի գեղեցիկ սլատմվածք, մի շատ լավ առակ. Քաղաքի պարսպապատի վրա գտնվում է հետևյալ արձանադրությունը. «Ի՞նչ Կոստանդնուպոլիս, ի՞նչ Լիկանդոս, ի՞նչ Թովմա մեծատուն, ի՞նչ կայսր»։ Այս արձանագրության աշխարհ գալու պատճառը հետևյալն է։ Մեծ և հռչակավոր կայսր Հուստինիանոսը[65], երբ Հռոմեական կայսրության գայիսոնը գտնվում էր նրա հորեղբոր՝ Հուստինոսի[66] ձեռքում, ահա այն ժամանակ [Հուստինիանոսը], լինելով կեսար, հռոմեական զորաբանակների գլխավոր հրամանատարն էր։ Անցնելով Փոքր Հայքի շրջաններից, նա կանգ առավ Լիկանդոսում։ Ահա այդ քաղաքի մեծատուն Թովման[67]. այնքան հարուստ էր անասուններով, սուրբ գրքի երանելի Հոբի նման, որ Հուստինիանոսին, ընդունված կարգի համաձայն, նվեր արեց, բայց հրաշալի և արժանահիշատակ՝ տարբեր գույնի տաս հազար ոչխար. հազար սև, հազար սպիտակ դեղմով, հազար մոխրագույն, նույն քանակությամբ բծավոր, հազար շեկ, նույնքան թուխ, նույն թվով խարտյաշ, նույն քանակությամբ մուգ գույնի, հազար գլուխ կարմիր դեղմով, հազար ոսկեգույն՝ ինչպես պիննոսի բրդով, հույների հռչակավոր ոսկեգեղմի պես։ Մի խոսքով տարբեր գույնի և երանգի տաս հազար ոչխար։ Կեսարը ապշեց և ընդունելով Թովմայի նվերը, կատակով հրամայեց գրել քաղաքի դարպասի վրա հիշածս արձանագրությունը։ Այս քաղաքը իմ երանելի հոր ժամանակ վերոհիշյալ Մելիասի շնորհիվ, բայց ավելի ճիշտ իմ երանելի հոր, որ պետական գործերը վարում էր խոհեմությամբ և գնահատում մարդու առաքինությունները, բանակաթեմի անուն ստացավ։ Ահա այսքանը Լիկանդոսի և նրան սահմանակից Ցամանդոսի մասին։

## ՏԱՍՆՀԻՆԳԵՐՈՐԴ ԲԱՆԱԿԱԹԵՄ, ՈՐ ԿՈՉՎՈՒՄ Է ԿԻՊՐՈՍԻ ՆԱՀԱՆԳ

...[Կիպրոսի] վրա նախկինում թագավորում էին բազում և տարբեր թագավորներ. այդ թագավորությանը վերջ տվեցին Մակեդոնացիները, այն է Պտղոմյանները... Երբ [կղզուն] տիրացան հռոմայեցիները, [Կիպրոսը] վերածվեց նահանգի և, ինչպես վերևում ասվեց, բաժանվեց տասնհինգ քաղաքների։ Ժամանակի ընթացքում, երբ անհոգության պատճառով հռոմեական հզորությունը նվազեց, [կղզուն] տիրացան սարակինոսները՝ Հերակլ կայսեր ժամանակ։ Այնտեղ ոտք դնող առաջին [սարակինոսը] և կղզուն տիրացողը Աբուբախարոսն էր[68], որի դստեր գերեզմանը մինչև օրս էլ այնտեղ կարելի է տեսնել։ Երանելի, հռչակավոր և երջանկահիշատակ Վասիլ կայսրը բանակաթեմի վերածեց այն, տեղում որպես զորավար հաստատելով ազգությամբ հայ, անուն հանած Ալեքսիոսին[69], որը և [կղզու] վրա տիրեց յոթ տարի։ Սակայն [Կիպրոսը] նորից սարակինոսների ձեռքն անցավ և նրանք այն հարկադրում են, ինչպես անցյալում։

# ԿՈՍՏԱՆԴԻՆ ԾԻՐԱՆԱԾԻՆԻ ՇԱՐԱԴՐԱՆՔԸ ՔՐԻՍՏՈՍԻ ԱՆՁԵՌԱԳՈՐԾ ՊԱՏԿԵՐԻ ՄԱՍԻՆ

## NARRATIO DE IMAGINE EDESSENA

## ԿՈՍՏԱՆԴԻՆ ԾԻՐԱՆԱԾԻՆԻ՝ ՇՆՈՐՀԻՎՆ ԹԱԳԱՎՈՐ ՔՐԻՍՏՈՍԻ ՀՌՈՄԱՅԵՑԻՆԵՐԻ ԿԱՅՍԵՐ ՏԱՐԲԵՐ ՊԱՏՄՎԱԾՔՆԵՐԻ ՀԻՄԱՆ ՎՐԱ ԾԱՂԿԱՔԱՂՎԱԾ ՇԱՐԱԴՐԱՆՔԸ՝ ՄԵՐ ԱՍՏՎԱԾ ՔՐԻՍՏՈՍԻ՝ ԱԲԳԱՐԻՆ ՈՒՂԱՐԿՎԱԾ ԱՍՏՎԱԾԱՅԻՆ ԱՆՁԵՌԱԳՈՐԾ ՊԱՏԿԵՐԻ ՄԱՍԻՆ։ ԵՎ ԹԵ ԻՆՉՊԵՍ ԵԴԵՍԻԱՅԻՑ ԱՅՆ ՓՈԽԱԴՐՎԵՑ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ՝ ԱՅՍ ԱՄԵՆԱԵՐՋԱՆԻԿ ԵՎ ՔԱՂԱՔՆԵՐԻ ԹԱԳՈՒՀԻՆ[1]

Ա. Ոչ միայն Նա, Հոր պես հավիտենական Աստված-Բանն է անհասանելի։ Նրա բազում, ավելի ճիշտ՝ բոլոր գործերն էլ ծածկրված են անհասանելիության նույն խավարով։ Արարիչն ամենայնի ոչ միայն իր արարչագործությունների, այլև նախախնամությամբ մեր [մարդկային] ցեղի ընդունման առթիվ մեզ հետ խոսելու ընթացքում էլ ներգործում էր իր աստվածության առաջին և միակ զորությամբ։ Իրեն լավ ճանաչող մարդը, իր գիտելիքների չափն ու սահմանն իմացող մարդը, չպետք է չափից դուրս մեծամտանա, չպետք է տգիտորեն դատարկաբանությամբ զբաղվի՝ վիճի, ասելով, թե ամեն ինչ գիտի, իր չիմացածի վրա չպնդի։ Խոսքը վերաբերում է նաև [Քրիստոսի] աստվածային պատկերին, որն Արարչի գերբնական ցանկությամբ առանց նկարվելու դրոշմըվեց կերպասի վրա և դեռ այն ժամանակ ուղարկվեց ի ապաքինումն Աբգարի, իսկ այժմ էլ Աստուծո նախախնամությամբ փոխադրվեց քաղաքների այս թագուհին՝ ի փրկություն և ի պահպանություն նրա, որպեսզի ոչ մի լավ բանից զուրկ չմնա, քաղաք, որ կոչված է տիրել բոլորի վրա։ Ես կարծում եմ, որ բարեպաշտ և արդար ունկնդիրը և հանդիսատեսը պետք է իմանա, ճիշտ գաղափար ունենա [այդ պատկերի] պատմության ու նախապատմության մասին, իմանա թե ինչպես խոնավությամբ [միայն] առանց ներկերի և նկարչության արվեստի կտավե կտորի վրա կենդանագրվեց դիմապատկերը, թե ինչպես դյուրամաշ նյութը ժամանակի ընթացքում չքայքայվեց։ Բացարձակապես ոչինչ չի իմանա, անըմբռնելիության վիհը կգլորվի, մեծ վտանգի կենթարկվի, անչափ վնաս կկրի նա, ով, անտես առնելով Աստու-

ծո իմաստության անհասանելիությունը, կչանա բնական մեկնաբանություն տալ երևույթներին, ով կփորձի գիտական բացատրություն տալ նրանց։ Արդ, այստեղ հավաքված ուղղափառներ և ջերմ հավատքի տեր մարդիկ, եկե՛ք լսե՛ք, և կպատմեմ ես ձեզ այն, ինչ մանրակրկիտ կերպով և անհրաժեշտ ջանասիրությամբ գրի առա, ես հոգնաջանությամբ ճշմարտությունը պրպտեցի՝ պատմիչների գործերում և այնտեղից[2] մեզ մոտ ժամանողների (պատմածներում) կարողացա ճշգրտել նրանց հիշողությունները։

Բ. Երբ մեր Տեր Աստված և Փրկիչ Հիսուս Քրիստոսը մեր՝ մարդկության փրկության համար առ մեզ եկավ, երկրում, ինչպես մարգարեն է ասում, անսահման խաղաղություն էր տիրում, բազմիշխանությունը վերացել էր և ամբողջ տիեզերքը կարծես մեկ գոտիի մեջ էր առնված, նա մեկ կառավարչի իշխանության տակ էր գտնվում։ Այդ իսկ պատճառով բոլորը հանգիստ փոխադարձ կապեր էին հաստատում միմյանց հետ։ Մարդիկ բնակվում էին ոչ թե բաժան-բաժան արված աշխարհում, այլ [միասնական] մի երկրում, որը մեկ Տիրոջ կալվածը լինելով, մեկ Արարչի ստեղծածը, ենթարկվեցին [ստուածո] առաջին ծառային[3] և միմյանց միջև խաղաղություն հաստատեցին։ Ահա Եդեսիայի այդ ժամանակվա տոպարքես[4] Աբգարը Եգիպտոսի կառավարչի ծանոթն էր և բարեկամը. երկուսի ծառաներն էլ փոխադարձաբար լինում էին միմյանց մոտ։ Երբ մեր Տերն ու Աստվածը, կատարելով Հոր կամքը սկսեց մարդկանց մեջ փրկության վարդապետությունը [քարոզել], գերբնական և զարմանալի հրաշագործությամբ մարդկանց հավատքի կոչել, Աբգարի ծառաներից մեկը, անունը Անանիա, Պաղեստինի միջով Եգիպտոս գնալիս, հեռվից ականատես եղավ Քրիստոսին, ով իր վարդապետությամբ մարդկանց հեռացնում էր մոլորությունից և զարմանալի հրաշքներ գործում։ Հասնելով Եգիպտոս և կատարելով իր պարտականությունները, նա վերադարձավ իր տիրոջ [Աբգարի] մոտ, որը երկար ժամանակ հոդատապով էր տառապում, մաշվում սև բորոտությամբ։ Նա տառապում էր կրկնակի հիվանդությամբ, ավելի ճիշտ՝ բազմակի. նրան տանջում էին հոդատապը և բորոտության ցավերը։ Այդ բոլորի վրա բարդվել էր և իր այլանդակված [դեմքի] կապակցությամբ զգացած ամոթը, որի պատճառով նա գրեթե չէր երևում մարդկանց։ Նա չէր էլ կարողանում երկար ժամանակ անկողնում պառկած մնալ, և ամոթից թաքնվում էր իրեն տեսության եկող բա-

բեկամներից։ Ահա այդ պատճառով Նրա [սպասավորը] իր վերադարձի ճանապարհին ուզեց ավելի ճշգրիտ իմանալ [Քրիստոսի գործած հրաշքների] մասին, որպեսզի հնարավորություն ունենա ավելի հանգամանորեն տեղեկացնել իր տիրոջ, հուսալով, որ մի գուցե նա էլ [Քրիստոսի] օգնությամբ բուժման արժանանա։ Նա Տիրոջ գտավ նորից հրաշքներ գործելիս. նա մեռյալներին հարություն էր տալիս, կույրերին աչքի լույս պարգևում, կաղերին բուժում և ամեն տեսակի ցավերով տառապող մարդկանց ապաքինում։

Գ. Ականատես լինելով Տիրոջ բացահայտ [հրաշագործությանը] և համոզվելով դրա ճշմարտացիությանը, նա Աբգարի մոտ վերադառնալով, նրան մանրամասն պատմեց իր տեսածի և լսածի մասին։ Որպես իր պարտականություններր ավելիով կատարած և որպես իրեն, Աբգարին, բարի լուր հաղորդած, նա արժանացավ անհրաժեշտ գովասանքի և համարվեց ամենանվիրված մարդկանցից մեկր։ Եվ քանի որ տառապող մարդը միշտ էլ ձեռք է կարկառում բարի լուրին, [բարի] լուրն ու հույսր սիրտ է տալիս նրան, [Աբգարր] համոզում է [իր սպասավորին] անհապաղ գտնել հիշածր [Քրիստոսին]։ Աբգարր հիվանդություններ բուժել կարողացող Տիրոջ բոլորիս հայտնի նամակր գրեց, որն ուներ հետևյալ բովանդակությունը.

Դ. «Աբգար[5], իշխան աշխարհի, առ Յիսուս Փրկիչ և բարերար, որ երևեցար յԵրուսաղէմացւոց աշխարհիդ, ողջոյն։ Լուեալ է իմ վասն քո և վասն բժշկութեանդ, որ լինի ի ձեռս քո առանց դեղոց և արմատոց. զի որպէս ասի՝ տաս դու կուրաց տեսանել և կաղաց գնալ, և զբորոտս սրբես և զայսս պիղծս հանես, և որ միանգամ չարչարեալ են յերկար հիւանդութեամբք՝ բժշկես. դու և զմեռեալս յարուցանես։ Եւ իբրև լուայ վասն քո զայս ամենայն՝ եդի ի մտի իմում մի յերկուց աստի. կա՛մ թէ դու Աստուած իցես, իջեալ յերկնից, և գործես զայդ. կամ թէ որդի իցես դու Աստուծոյ, և զայդ առնես։ Արդ վասն այնորիկ գրեցի ես առ քեզ՝ աղաչել զքեզ, զի աշխատ լինիցիս և եկեսցես առ իս և բժշկեսցես զհիւանդութիւնս զոր ունիմ ես։ Նա և լուայ, զի Հրեայք տրտնջեն զքէն և կամին չարչարել զքեզ. բայց քաղաք մի փոքրիկ և գեղեցիկ է իմ, և բաւական է մեզ երկոցունցս[6]» խաղաղությամբ բնակվելու այնտեղ։

Ե. Աբգարը Հիսուսին առաքեց այդ նամակը Անանիայի միջոցով, քանի որ Անանիան արդեն ցույց էր տվել տիրոջ հանդեպ տածած նվիրվածությունը, ծանոթ էր ճանապարհին, ապա և հմուտ նկարչության արվեստին, միաժամանակ պատվիրելով, որ եթե այդ նամակով իրեն չհաջողվի Քրիստոսին համոզել իր՝ Աբգարի մոտ գալ, ապա թող նրա ճշգրիտ դիմանկարը կատարի և իրեն բերի, որպեսզի ոչ միայն ունկամբ, այլև ակամբ ծանոթանա, կարծես նրա ստվերին, այդ սքանչելագործի հետ։ Առաքված մարդը, հասնելով Հուդայի երկիրը, Տիրոջ հանդիպեց բացօթյա տեղում՝ հավաքված ժողովուրդին վարդապետելիս, և զարմանալի հրաշքներ գործելիս։ Ամենատարբեր նպատակների համար կուտակված բազմության պատճառով Անանիան չկարողացավ Հիսուսին մոտենալ. նա գնաց և Տիրոջից մի փոքր հեռավորության վրա գտնվող ոչ բարձր մի քարի վրա նստեց։ Այսպիսով ավելի բարձրադիր տեղում գտնվող Անանիային բազմության կողմից ծածկված Փրկիչը տեսանելի էր. իսկույն աչքերը [Քրիստոսին] ուղղած, ձեռքն էլ թղթին, նա սկսեց նկարել նրան։

Զ. Հիսուսը սուրբ Հոգու ներշնչմամբ իմացավ այդ մասին և կանչելով Թովմային[7], ասաց. «Գնա՛ այդ վայրը և քարի վրա նստած ու ինձ նկարող մարդուն՝ իր երկրից բերած նամակի հետ միասին իմ մոտ բեր, որպեսզի նա այդպիսով կատարի իրեն ուղարկողի հրամանը»։ Թովման գնաց և [Քրիստոսի] ասածից թե նա նկարելիս կլինի, ճանաչեց Անանիային և հրավիրեց Հիսուսի մոտ։ Քրիստոսը դեռ նրանից նամակը չառած ասաց իր Անանիայի, գալստյան պատճառի, ինչպես և նամակի բովանդակության մասին։ Ապա վերցրեց նամակը, ընթերցեց այն և բացի հետևյալ պատասխան նամակը շարադրեց։

Է. «Երանի քեզ, Աբգար, որ առանց ինձ տեսնելու հավատացիր ինձ։ Քանզի գրված է իմ մասին, թե[8] «Զի որք տեսանեն զիս ոչ հաւատասցեն յիս, և որք ոչն տեսանեն՝ նոքա հաւատասցեն և կեցցեն։ Իսկ վասն այնր զի գրեցեր դու առ իս, գալ ինձ առ քեզ արժան է ինձ կատարել աստ զամենայն ինչ վասն որոյ առաքեցայ ես։ Եւ իբրև կատարեցից զայս՝ ապա համբարձայց առ այն[9] որ առաքեացն զիս. և յորժամ համբարձայց՝ առաքեցից զմի յաշակերտացն աստի իմոց, զի զցաւս քո բժշկեսցէ[10], և շնորհե քեզ կյանք հավիտենական և խաղաղություն, հզորացնի քո քաղաքը, որպեսզի և ոչ մի թշնամի չկարողանա պարտության մատնել այն»։

Ը. Քրիստոսը այդ նամակը տվեց Անանիային, բայց ուզեց կատարել նրա տիրոջ մյուս հանձնարարությունը ևս, այն, որի համար ջանք էր թափում Անանիան. խոսքը իր, Քրիստոսի, պատկերը բերելու մասին է։ Փրկիչնահա լվաց դեմքը, ապա դեմքի խոնավությունը չորացրեց իրեն տրված վարշամակով, որի վրա գերբնականորեն, աստվածային նախախնամությամբ արտատրպվեց իր դիմապատկերը։ Վարշամակը նա տվեց Անանիային, հրամայեց այն տալ Աբգարին, որպեսզի վերջինիս ցանկությունը կատարվի, և նրա ցավերն ամոքվեն։ Այդ բոլորն առած, Անանիան բռնեց վերադարձի ճանապարհը. նա հասավ Հիերապոլիս, որ սարակինոսների լեզվով Մեմբիջ[11] է կոչվում, իսկ ասորերեն՝ Մաբուք։ Կանգ առնելով այդ փոքր քաղաքից դուրս, նա այնտեղ գտնվող նոր պատրաստված աղյուսների կարկառի մեջ թաքցրեց այդ սուրբ շորի կտորը։ Կես գիշերին այդ տեղը համակվեց մեծ կրակով, այնքան մեծ, որ քաղաքի ներսում գտնվողներին թվաց, թե [քաղաքի] ողջ շրջակայքը կրակի ճարակ է դառնում։ Իրենց կյանքը վտանգված համարելով, նրանք [քաղաքից] դուրս եկան և սկսեցին հետաքրքրվել թվացող հրդեհով։ Տեղում Անանիային գտան, և նրան հրձիգ համարելով, սկսեցին քննել, ո՞վ է նա, ո՞ւր է դնում, և ո՞րտեղից։

Թ. Տարօրինակ հարցից զարմացած, Անանիան պարզեց իր ծագումը, որտեղից գալը, ասաց, թե ինչ է իր հետ բերում, ասաց, որ աղյուսների կարկառի մեջ է զետեղել իր հետ բերածը, այնտեղ, որտեղ թվում է, թե բոց է դուրս գալիս։ Ասվածը ստուգելու համար նրանք փնտրտուքներ կատարեցին տեղում, և ոչ միայն Անանիայի՝ այնտեղ զետեղածը գտան, այլև մերձակա աղյուսներից մեկի վրա տեսան աստվածային անձեռագործ պատկերի մի այլ արտատպությունը, որը, գերբնական, մարդու մտքին անհասանելի եղանակով կտորից անցել էր աղյուսին։ Ականատես լինելով դրան, նրանք ապշեցին ոչ միայն [պատկերի] պատճառով, այլև այն պատճառով, որ ոչ մի տեղում կրակ չգտան. հենց պատկերից բխող լույսն էր, որ բոցի տպավորություն էր թողնում։ Աստվածային պատկերն իր մեջ ընկալած աղյուսը որպես սուրբ, որպես թանկագին գանձ նրանք վար դրեցին, իրենց տեսածից համոզվելով, որ աստվածային ներգործության հետ գործ ունեն։ Ինչ վերաբերում է նախատիպին և վերջինիս սպասավորին, ապա նրանք վախեցան տիրանալ դրանց և Աբգարին ուղարկեցին։ Ահա

այդ փոքր քաղաքի բնակիչները [մինչև օրս] պահում և պատվում են պատկերը կրող այդ աղյուսը, անգիր պատկերից անգիր եղանակով առաջացածը, անձեռագործ պատկերից անձեռագործ եղանակով արտանկարվածը։ Իսկ Անանիան մնացած ճանապարհը կտրելով, հասավ ու տիրոջը պատմեց տեղի ունեցածի մասին և նրան հանձնեց իր բերած փրկչական իրերը։

Ժ. Ահա մեր Փրկչի անձեռագործ պատկերի մասին լայն տարածում գտած պատմությունը։ Բայց այդ մասին մի այլ պատմություն էլ կա, որը [նույնպես] ճշմարիտ լինելու հիմքերն ունի, ունենալով վստահելի ապացույցներ։ Ես այդ էլ կպատմեմ, որպեսզի չկարծեն, որ դրան անտեղյակ մենք ավելի հավատ ենք ընծայում առաջինին։ Բոլոր դեպքերում ոչ մի տարօրինակ բան չկա, որ այսքան երկար ժամանակի ընթացքում պատմությունը հաճախ այլափոխված ձևով է հանդես գալիս, թեև բոլորի մեջ նրա ատաղձը միասնական է, այն, որ Տիրոջ դեմքից է, որ գերբնականորեն կտորի վրա արտատպվեց պատկերը։ Բայց մանրամասների մեջ, այն է ժամանակի հարցում, տարակարծություններ կան։ Հակառակ այդ բոլորին իրողությունը չի փոխվում եթե ընդունենք, որ դեպքը այս կամ այն չափով շուտ կամ ուշ է տեղի ունեցել։ Մյուս տարբերակն ահա հետևյալն է։

ԺԱ. Պատմում են, որ երբ Քրիստոսը կամովին չարչարանքներն ընդունեց, նա հանդես բերեց մարդկային թուլություն. նրան տեսնում էին տագնապի մեջ, աղոթելիս։ Արդ, ավետարանի համաձայն «հոսէին ի նմանէ քրտունք իբրև զկայլակս արեան»[12]։ Դրա վրա, պատմում են, որ [Քրիստոսի] աշակերտներից մեկը վերցրեց այժմ մեր տեսած շորի կտորը և սրբեց նրա քրտինքները. սրբիչի վրա իսկույն աստվածային դեմքի արտատպությունն երևաց։ [Քրիստոսը] սրբիչը թողեց Թովմային և հրամայեց, որ իր երկինք համբառնալուց հետո Թադևոսի[13] միջոցով Աբգարին ուղարկել այն, կատարելու համար իր նամակում տված խոստումը։ Մեր Տիրոջ Հիսուս Քրիստոսի երկինք համբառնալուց հետո Թովման Տիրոջ անձեռագործ պատկերը Թադևոսի միջոցով ուղարկեց Աբգարին։

ԺԲ. Թադևոսը, հասնելով Եդեսիա, նախապես օթևանեց այնտեղի հրեաներից մեկի տանը։ Նրա անունը Տոբիաս էր։ Քրիստո-

սի աշակերտը ուզեց, որ Աբգարը իրեն նախ և առաջ գործով ճանաչի, քան թե խոսքով. նա քաղաքի հիվանդներին լոկ հանուն Քրիստոսի բուժեց։ Քրիստոսի համբավը տարածվեց (նման դեպքերում այդպես է լինում, քանզի անհավատալի լուրը բազում տարածողներ է գտնում)։ Քրիստոսի առաքյալի գալստյան մասին լուրը Աբգարին հասցրեց վերջինիս մեծամեծներից Ամդու անունով մեկը։ Աբգարն իսկույն կանխազգաց, որ նա Քրիստոսի նամակում հիշված և իրեն ավետված մարդն է։ [Ամդուից] նա հանգամանորեն տեղեկացավ Թադևոսի մասին, կարգադրեց նրան իր մոտ հրավիրել։ Տոբիասը[14] եկավ և առաքյալին պատմեց այդ մասին, վերջինս էլ պատասխանելով, որ ինքը լիազորված է [Աբգարի] մոտ գալու, ներկայացավ Աբգարին։ Երբ [Թադևոսը] պետք է անձամբ հանդիպեր Աբգարին, պատկերը իր ճակատին՝ նա մտավ վերջինիս մոտ։ Աբգարը հեռվից ավելի շուտ նրա դեմքից պսպղացող լույս տեսավ, որ պատկերն էր ցոլացնում, քան թե [առաքյալի] դեմքը։ Ուժեղ լույսից զարմացած, նա մոռացավ իր ցավերը, մարմնի երկարամյա թուլությունը. նա իսկույն ելավ մահճակալից և սկսեց վազել։ Մարմնի թուլությամբ տառապողն ահա այս կերպ [բուժվեց], Թաբոր լեռան վրա փայլատակած դեմքին ականատես եղողներից տարբեր[15]։

ԺԳ. Առաքյալից վերցնելով խնդրո առարկա պատկերը և ակնածությամբ հպելով իր գլխին ու շրթներին, դեռ ավելին, իր մարմնի մյուս մասերին այն դեռ չհպած, նա իսկույն զգաց, որ իր մարմնի բոլոր մասերը ապաքինվում են, լավանում, բորոտությունը մաքրվում է և անհետանում. այդ հիվանդության ինչ-որ հետք միայն մնաց ճակատին։ Առաքյալից ավելի հանգամանորեն սովորելով ճշմարտության խոսքը, հասու լինելով Քրիստոսի զարմանալի հրաշագործություններին, նրա աստվածային չարչարանքներին, թաղման, ի մեռելոց հարություն առնելու և հերկինս համբառնալու, նա Քրիստոսին ճշմարիտ աստված խոստովանեց։ Նա հետաքրքրվեց դիմապատկերը կրող վարշամակով, որովհետև մանրամասն հարցուփորձ անելով իմացել էր, թե առանց նյութեղեն ներկերի է այն պատրաստված։ Նա ապշել էր նրա ունեցած զորության վրա, որի շնորհիվ ինքն անակնկալ կերպով մահճակալից վեր էր կացել և առողջացել։ Թադևոսը դրա վրա պատմեց նաև [Քրիստոսի] ապրած տագնապի և [նրա] քրտինքից, առանց ներկերի առաջացած պատկերի մասին։ Նա հայտնեց նաև Տիրո-

կարգադրությունը՝ նրա [Աբդարի] մոտ գալու, և բոլոր այն մասին, ինչ ասվեց վերևում։

ԺԴ. Երբ Աբգարն զգաց, որ Թադևոսի՝ իր՝ Աբգարի վրա հանուն Հիսուս Քրիստոսի ձեռքերը դնելով ցավերը չքվում են, թուլացած անդամները կարծես ամրանում, այլանդակությունը վերանում և ամեն ինչ ապաքինվում, ապշած խոստովանեց. «Ճշմարիտ, դու աշակերտն ես աստուծո՝ Հիսուս Քրիստոսի, ով բուժում է առանց դեղերի և դեղաբույսերի։ Ես այնքան եմ նրան կապվել սիրով և հավատով, որ եթե չվախենայի հռոմայեցիների պետության մեծ հզորությունից, հռոմայեցիների, ովքեր չեն հանդուրժում, որ իրենց հպատակները միմյանց դեմ զենք ճոճեն, իսկույն զենքով կհարձակվեի Տիրոջը խաչող հրեաների վրա և կնվաճեի նրանց։ Այժմ, իմանալով [Քրիստոսի] կամովին չարչարվելու մասին, համոզվեցի, որ եթե նա չուզեր, ապա ապերախտ [հրեաները] չէին հաղթահարի նրան, այդ բանի վրա ես ամենևին չեմ կասկածում։ Արդ, ես ուզում եմ արժանանալ սուրբ մկրտության, ամբողջ ընտանիքով ընտանեանալ և նվիրվել Տիրոջ Քրիստոսին»։ Տիրոջ աշակերտն արդեն բազում հրաշքներ էր գործել, բոլորին բուժել իրենց ցավերից, այդ թվում և ամենից առաջ իր համբավը Աբդարին բերողին. նրան նա փրկել էր հոդատապից։ Արդ, նա Աբդարին մոտեցրեց սուրբ ավազանին, և նրա վրա պետք եղածը կատարելով, նրան, կնոջ ու երեխաներին, ապա և նրա տան բոլոր անդամներին մկրտեց։ Աբգարն այդ սրբազան ու մաքրող ջրից դուրս եկավ կատարյալ մաքուր և առողջ. նրա ճակատից իսկույն անհայտացել էր նաև բորոտության մնացած հետքը։

ԺԵ. Դրանից հետո ահա տոպարքեսը պատվեց ու պաշտեց Տիրոջ դիմապատկերը և այլ [սրբությունների] շարքին այն դասեց։ Անցյալում Եդեսիայի երևելի քաղաքացիները քաղաքի հասարակական դռան առջև հունական մի աստվածության արձանն էին կանգնեցրել. ով որ ցանկանար քաղաք մտնել, նա պարտավոր էր երկրպագել [արձանը] և սահմանված բարեմաղթություններն հղել, որից հետո միայն ընթանալ քաղաքի փողոցներով ու ճանապարհներով։ Արդարը գետին տապալեց այդ [արձանը] և նույն տեղում մեր Տիրոջ Հիսուս Քրիստոսի անձեռագործ պատկերը կանգնեցրեց՝ տախտակի վրա կպցնելով այն և պաճուճելով մինչև օրս երևացող ոսկե զարդերով, որի վրա նա ոսկե տառե-

րով դրեց հետևյալը. «Քրիստոս Աստված, քեզ հավատացողը երբեք չի սխալվի»: Նա օրենք սահմանեց, որ այդ դռնով ներս մտնողը հին, անպետք և անօգուտ արձանի փոխարեն, անհրաժեշտ ակնածանքը, երկրպագությունն ու պատիվը Քրիստոսի բազմահրաշ սքանչելագործ պատկերին հղի և դրանից հետո մուտք գործի Եդեսիա քաղաքը: Բարեպաշտ Աբգարի այդ օրենքը պահպանվեց նրա ամբողջ կենդանության ընթացքում, ապա նաև վերջինիս որդու, որ ժառանգեց հոր իշխանությունն ու բարեպաշտությունը: Բայց վերջինիս որդին և [Աբգարի] թոռը թեև ժառանգեց հոր և պապի իշխանությունը, այդուհանդերձ չժառանգեց [նրանց] բարեպաշտությունը: Նա, այսպես ասած, աքացեց բարեպաշտությունը և հանձնվեց դևերին ու կուռքերին: Ուզենալով փոխհատույց լինել դևերին, նա վճիռ արձակեց ոչնչացնել Տիրոջ պատկերը, քանի որ իր պապը ոչնչացրել էր այդ կուռքը: Բայց նենգը իր նպատակին չհասավ, քանզի տեղի եպիսկոպոսը իմացավ այդ մասին, և անհրաժեշտ քայլերին դիմեց: Պատկերի գտնված տեղը կիսաշրջան գլանի ձև ուներ. [եպիսկոպոսը] պատկերի առջև ապակի դրեց, նրա առջևն էլ՝ կղմինդր, ապա ամբողջ մակերեսը կրով ու թրծած աղյուսով հյուսեց ու հարթացրեց: Ամբարիշտի աչքին այլևս չէր երևում իրեն ատելի պատկերը, դրա համար էլ նա հրաժարվեց իր ծրագրից: Իմ կարծիքով եպիսկոպոսը պատկերի առջև կղմինդր դրեց, որպեսզի շինարարության բորբոսը և կրի խոնավությունը պատկերի մեջ չներծծվի և ժամանակի ընթացքում չվնասի այն:

ԺԶ. Անցավ բազում ժամանակ, մարդիկ մոռացել էին սուրբ պատկերի և՛ կանգնեցման, և՛ թաքցնելու մասին: Պարսից արքա Խոսրովը[16] գրավելով Ասիայի քաղաքները հասավ Եդեսիա, պաշարեց այն, գործի դրեց քաղաքավեր ամեն տեսակի մեքենաներ և ամեն ջանք թափեց քաղաքի վրա նետերի տարափ թափելու, պարիսպները խախտելու և դարպասները խորտակելու համար: Այդպիսի վտանգի ենթարկված եդեսացիք, ճիշտ է, հնարավոր բոլոր միջոցներով պաշտպանվում էին, բայց նպատակահարմար գտան օգնության դիմել հռոմայեցի զորավարին: Այն ժամանակ հռոմեական զորքերի հրամանատարը Հելիոնն էր, որը սակայն թշնամիների կողմից դժվարին դրության մեջ ընկած, հնարավորություն չուներ եդեսիային օգնություն ուղարկել: Նա հուսադրեց նրանց՝ հիշելով Տիրոջ նամակը, նրա մեջ արձանագրված ճշմա-

*րիտ վճիռը՝ քաղաքի անառիկ լինելու մասին։ Պարսիկները ոչ միայն բացահայտ կերպով գրոհի էին անցել, այլև թաքուն միջոցառումների էլ էին դիմում։ Նրանք սկսեցին հեռվից գետնափոր անել, որոշելով նրա միջով մուտք գործել քաղաք։ [Պարսիկները] ստորջրյա լողորդների նման հասան պարիսպների հիմքերին, բայց նրանց գոյության մասին պաշարյալներն իմացան հետևյալ կերպ. երբ պարսիկներր փորում էին գետինը և հողը դուրս հանում, [քաղաքացիների] բնակարանների [պատից] կախված պղինձները իրար էին գալիս և հնչում։ Անել վիճակի մատնված և կատարյալ հուսալքության հասած քաղաքացիները, սրտաճմլիկ ու արտասվալից դիմում են աստծուն։ [Քաղաքի] եպիսկոպոսին (նա Եվլալիոսն էր) գիշերով տեսիլք երևաց՝ փառավոր և արգալից, գերմարդկային մի կին, որը հուշեց իրեն վերցնել Քրիստոսի անձեռակերտ պատկերը և նրանով թափոր կազմած դուրս գալ։ Տերը իր հրաշքը ցույց կտա։ Եպիսկոպոսը պատասխանեց, թե ամենևին անտեղյակ է այդ մասին, ո՞ւմ մոտ է գտնվում այն։ Դրա վրա կնոջ կերպարանքով հանդես եկողն ասաց, թե քաղաքի դռան վրա ահա այս կերպ է թաքնված պատկերը։*

*ԺԷ. Եպիսկոպոսը, իր տեսիլքի ճշմարտությանը համոզված, առավոտյան թափորով եկավ նշված վայրը, փնտրեց և գտավ ոչ մի փոփոխություն չկրած պատկերը. այդքան երկար տարիների ընթացքում պատրույգն անգամ չէր հանգել[17]։ Բացի այդ, ճրագի առջև դրված կղմինդրի վրա պատկերից արտատպվել էր մի ուրիշ պատկեր, որը մինչև օրս էլ պահվում է Եդեսիայում։ Եպիսկոպոսն իր ձեռքն առնելով աստվածամարդ Քրիստոսի պատկերը, սիրտ առած եկավ այն տեղը, որտեղ [գետնափոր] անող պարսիկների [հարվածներից] հնչող պղինձներից՝ նրանց գոյությունը հայտնի էր դարձել։ Քաղաքացիներն սկսեցին ներսից փորել և երբ մոտեցան իրենց թշնամիներին, նրանց դեմ պատրաստված կրակի մեջ ճրագից ձեթ կաթեցրին, ապա կրակը գցելով գետնափորում գտնվող պարսիկների վրա, բոլորին ոչնչացրեցին։ Այդ վտանգից փրկված, նրանք նույն կերպ վարվեցին պարիսպներից դուրս գտնվող մեքենաների հետ և նույն ձևով մոխիր դարձրին. նրանց մեջ գտնվող բաղում թշնամիների ոչնչացրին։ Սիրտ առած, նրանք սկսեցին պարիսպների վրայից քարերի տարափ թափել, որոնց հարվածներից ընկավ և պիղծ զորքի հրամանատարը, նրա հետ նաև շատ ուրիշներ։ Բացի այդ, [քաղաքացիների համար] ապա-*

վեն դարձած աստվածային պատկերը թշնամիների վրա շուռ տվեց դրսում՝ [քաղաքացիների] գլխին թափելու համար [հակառակորդի կողմից] պատրաստված կրակը, որը գնալով թեժանում էր ձիթենիների և այլ ծառերի անսահման քանակության փայտով։ Դա կատարվեց հետևյալ կերպ. Եվլալիոսը [պատկերը] իր ձեռքերի մեջ առած քաղաքի պարիսպների վրայով էր տանում։ Երբ հասավ նշված վայրը, հանկարծակի սաստիկ քամի բարձրացավ և ասածս խարույկի բոցը շուռ տվեց այն բորբոքողների վրա. նա փախուստի մատնեց նրանց և հրո ճարակ դարձրեց, ինչպես անցյալում քաղդեացիներին։

ԺԸ. Մեր պատմածն անհիմն չէ, մեր հորինածն էլ չէ՝ ինչ-որ խաբեության կամ էլ ունկնդիրներին դուր գալու համար. երեք պատրիարքներ՝ այն է Ալեքսանդրիայի Հոբը, Անտիոքի Քրիստափորը և Երուսաղեմի Բարսեղը[18] են գրել այդ մասին, հաստատել դրա ճշմարտացիությունը և իրենց շարադրանքը սուրբ պատկերներն անարգող Թեոփիլոս[19] կայսեր ներկայացրել։ Նրանք պատկերների սրբությունն ու ակնածության արժանի լինելն ապացուցող բազում փաստերի թվին ավելացրին և [վարշամակի] մասին պատմությունը։ Ցանկացողը թող կարդա [նրանց] այդ մանրամասն նամակը և իմանա այդ մասին։ Եթե ոք ուշադիր ծանոթանա նաև Եվագրիոսի եկեղեցական պատմությանը, այնտեղից էլ կիմանա դրա վերաբերյալ, քանի որ խնդրո առարկա սուրբ պատկերի մասին նա խոսում է չորրորդ գրքում։

ԺԹ. Նա պատմում է, որ Խոսրովը, ցանկանալով միանգամայն ապացուցել այդ քաղաքի անառիկության մասին քրիստոնյաների շրջանում տարածված համբավի կեղծ լինելը, ի միջի այլոց կատարեց և հետևյալը. Նրա հրամանով՝ առկա զինվորների մեծաթվության պատճառով կարճ ժամանակամիջոցում հսկայական քանակությամբ փայտ կուտակվեց. դրանցով նա երկու շարք պատ կազմեց և քաղաքը շրջապատեց։ Այնուհետև այդ փայտերի երկու շարքերի արանքում հող լցրեց և Եդեսիայի պարսպի դեմ մի այլ պարիսպ կանգնեցրեց՝ քաղաքի պարսպից ավելի բարձր։ Այդպիսով նա շատ ավելի նպաստավոր դիրքից նետեր պիտի արձակեր քաղաքի պաշտպանների վրա։ Եդեսացիք տեսնելով պարսպի դիմաց բարձրացվող լեռը, համոզված էին, որ թշնամիները քաղաքի վրա կհարձակվեն կարծես ուղիղ գետնի վրայով։

Թեև նրանք անել վիճակում էին, բայց և այնպես հնարավորին չափ հակամիջոցների դիմեցին. նրանք նոր կանգնեցված պարսպի առաջից գետնափոր արեցին, նպատակ ունենալով հողի առջևում գտնվող փայտամածր կրակի տալ, ապա նրա [մինչև եղած] հողը գետնափորի միջով դուրս հանել, համոզված լինելով, որ այդ ճանապարհով ցնորական պարիսպն իսկույն կավերվի, փուլ կգա։ Գետնափորի աշխատանքն հաջողությամբ առաջ էր գնում, բայց նրանց չէր հաջողվում փայտերը կրակի տալ. նրանց արանքում թափված հողը, ապա և նրանց խոնավությունը հնարավորություն չէր տալիս կրակին առանց որևէ նոր միջոցի բռնկվելու։ Ահա դրա վրա նրանք սուրբ պատկերը նորակերտ գետնափորը մտցրին. նրանով ջուր օրհնեցին, որը ցանելով փայտերի վրա կրակը բռնկեցրին։ Ջուրը, այդ բանը գործողների հավատքից աստվածային զորություն ձեռք բերելով, կրակի մեջ կարծես յուղի վերածվեց, բոցը թեժացրեց և հանդիպածը ոչնչացրեց։ Պարսից արքան, քաղաքին տիրանալու հույսը կտրած, ապա և իմանալով, թե ով է հասել [քաղաքացիների] օգնության, դիմեց բանակցությունների և հաշտություն կնքելով, վերադարձավ իր երկիրը։

Ի. Բայց [պարսից արքան] շատ չանցած ինքն էլ արժանացավ իր թշնամիների համար բարեգործ, իսկ իր համար ավերիչ դարձած այդ սրբազան պատկերի բարերարությանը։ Իր դուստրը դիվահար և խելակորույս, դևից դրդված անվերջ աղաղակում էր, թե «Մինչև Եդեսիայից չբերվի անձեռագործ պատկերը իմ մեջ բնակություն հաստատած [դևը] դուրս չի գա»։ Արքան, լսելով դա, հիշեց պաշարման ժամանակ տեղի ունեցած դեպքերը, (նրանից չէր վրիպել եդեսացիների տարօրինակ, անակնկալ կերպով ձեռք բերած հզորությունն ու քաջությունը)։ Նա իսկույն նամակ գրեց քաղաքի մեծին, մետրոպոլիտ Եվլալիոսին և քաղաքի համայնքին, խնդրելով շտապ իրեն ուղարկել աստվածային ամենազոր պատկերը, ավելացնելով և այն [խնդրելու] պատճառը, այն է, դստեր դժբախտությունը։ Նա ամեն կերպ խնդրում էր այն, աղերսում չմերժեն իր խնդիրքը։ [Եդեսիայի քաղաքացիները] գիտեին, որ չի կարելի պարսիկներին հավատ ընծայել, նրանք կասկածում էին, որ պարսիկն ուզում է չարանենգորեն խլել իրենց հզորությունը։ Մտահոգված լինելով չզրկվել իրենց պաշտպանից ու բարերարից, բայց և չուզենալով դրա պատճառով վերացնել խաղաղությունը, օգտաբեր և խոհեմ մի միտք հղացան։ Նրանք

հար և նման մի պատկեր արտանկարեցին՝ անձեռագիր նկարից ձեռագիր, հնարավորին չափ [նախատիպարին] նմանեցրին, և այն խնդրողին ուղարկեցին։ Պատկերը տանողները հենց որ մուտք գործեցին պարսից սահմանները, դևը աստուծո դրդմամբ-արքայի դստեր բերանով գոչեց, թե եկող ուժի պատճառով շուտով դուրս կգա և կփոխի իր բնակության վայրը, եթե խնդրված պատկերը ետ վերադարձվի և այն մուտք չգործի ո՛չ արքունիք, ո՛չ էլ պարսից քաղաքը։ Այդ առթիվ նա շատ էր խնդրում և աղաչում արքային։ Արքան խոստացավ. դրա վրա դևը դուրս եկավ իր դստրից. արքայի աղջիկն առողջացավ։ Խոսրովը, կամ ընդառաջ գնալով իրեն խնդրող դևի աղերսանքին, գուցե և իր խոսքի տերը կանգնելով, և կամ էլ իր վատ ու պիղծ արարքների համար եկող ուժի աշվեհարդարից երկյուղած, հրամայեց վերադարձնել պատկերը այն քաղաքը, որտեղից որ ուղարկվել էր։ Նա իր կողմից նվերներ էլ պարգևեց [պատկերն] իրեն ուղարկողներին։

ԻԱ. Ահա այսպես եդեսացիների մոտ էր գտնվում այդ թանկագին գանձը, անհատնում հարստությունը, այդ նախատիպ և անգիր պատկերը, որ պաշտվում էր նրանց կողմից և պահպանում իրենց։ Բայց որովհետև քաղաքների այս թագուհու[20] մեջ ամեն տեղից հավաքվեցին ամենալավ ու գեղեցիկ [իրերը], ապա աստվածային կամքն էր, որ այդ սրբազան պատկերը այլոց հետ միասին այստեղ պահվի։ Հռոմայեցիների պետության տեր Ռոմանոսը[21] ջանք էր թափում, որ ինքն արժանանա դրան և հարստացնի մայրաքաղաքը։ Այդ նպատակով նա ստեպ-ստեպ դիմում էր Եդեսիա և խնդրում այն, ինչպես և Տիրոջ ինքնագիր նամակը, խոստանալով դրանց փոխարեն տալ մինչև երկու հարյուր [ռազմագերի] սարակինոս և տասներկու հազար մաքուր արծաթ։ Բայց եդեսացիք պատասխանեցին, թե իրենց համար ձեռնտու չէ սեփական քաղաքի պահակն ու պահապանը փոխանակել արծաթով և մահկանացու մարդկանցով։

ԻԲ. Նա նորից խնդրեց նրանց, բայց բազմիցս անգամ մերժում ստացավ։ Վերջապես աշխարհի արարչագործության վեց հազար չորս հարյուր հիսուն երկրորդ տարին[22] Եդեսիայի ամիրան դիմեց կայսեր, պահանջելով ոսկե կնիքով հաստատված վավերագիր այն մասին, որ հռոմայեցիների զորքերը թշնամական նպատակներով չեն դիմի հետևյալ չորս քաղաքների վրա, այն է

Ռոխայի[23] (բարբարոս լեզվով այդպես է կոչվում Եդեսիան), Խարանի, Սարատի և Սամոսատի, ավարի չեն տա այդ [քաղաքների] արտերը, չեն դերեվարի նրան բնակիչներին։ [Պահանջեց] նաև ազատ արձակել և իրեն ուղարկել իր ցեղակից երկու հարյուր սարակինոսներին՝ առաջարկված արծաթով հանդերձ, որոնց դիմաց ինքը խոստանում է տալ խնդրված պատկերը և Քրիստոսի նամակը։

ԻԳ. Կայսրը նման բարիքին արժանանալու համար համաձայնվեց բոլոր պահանջներին և Սամոսատի աստվածասեր եպիսկոպոս Աբրամիոսին, որն այն ժամանակ այստեղ[24] էր գտնվում, ուղարկեց ստանալու սուրբ պատկերը և մեր աստված Քրիստոսի նամակը։ Ե՛վ ուղարկողին, և՛ պարտականությունը կատարողին մտահոգում էր մի բան, որ հանկարծ իրենց կխաբեն և անձեռագործ ու իսկական պատկերի փոխարեն կտան այն, որ սլարսկական դեպքերի առթիվ արտանկարվեց։ [Պատգամավորը] ստուգելու համար պահանջեց, որ իրեն բերեն երկուսն էլ, ապա և նեստորականների եկեղեցում պաշտվողը, որը, ինչպես հայանի է, անցյալում նույնպես նախատիպարից էր արտատպվել։ Իսկականն ու իրականը վար դնելով, նա մյուսներն իսկույն ետ վերադարձրեց։

ԻԴ. Բայց դա տեղի ունեցավ հետագայում։ Այն ժամանակ Եդեսիայի հավատացյալները խռովություն բարձրացրին, քաղաքում մեծ տակնուվրայություններ եղան. [քաղաքացիները] չէին ուզում զրկվել իրենց ամենահարգի [իրերից], իրենց պաշտպաններից, մինչև որ սարակինոսների գլխավորը ոմանց համոզելով, ոմանց վրա ճնշում գործադրելով, ոմանց էլ մահապատժի սպառնալիքի տակ ստիպեց տալ այն։ Երբ պատկերը և Քրիստոսի նամակը պետք էր քաղաքից դուրս բերվեին, հանկարծակի ինչ-ինչ պատճառով կամ նախախնամությամբ որոտ ու փայլակներ, տեղատարափ անձրև թափվեցին։ Ովքեր որ չէին ուզում այդ [սրբությունները] տալ, նորից ոտքի ելան. Նրանք պնդում էին, որ [բնության այդ երևույթները] վկայությունն են այն բանի, որ սրբությունների տեղափոխությունը տեղի է ունենում աստուծո կամքին հակառակ։ Բայց սարակինոսների զորավարը, որի ձեռքում էր գտնվում բովանդակ իշխանությունը, որոշեց չդրժել համաձայնությունը, կատարել խոստումը. Նա քաղաքից դուրս հանեց ամենա-

Հարգի պատկերը ու Քրիստոսի ձեռքով գրված նամակը և այստեղ էր բերում։

ԻԵ. Այդ սրբությունները բերողները ճամփա կտրելով, հասան Եփրատ, երբ եդեսացիք նորից, նախկինից ոչ պակաս աղմուկ բարձրացրին. նրանք ասում էին, որ մինչև աստվածուստ որևէ հրաշք չկատարվի, իրենց պաշտպաններին չեն տա։ Դրա վրա ահա այդ անհավատներին և փորձողներին հրաշք է ցույց տրվում։ Աստվածային պատկերը և նամակը տանող եպիսկոպոսները, երբ խռովարարները դեռ հուզման մեջ էին, մտան Ասորիքի ափին կանգնած նավը, որի վրա պետք է կտրեին անցնեին Եփրատ գետը։ Հանկարծակի, առանց թիավարների, առանց նավավարի միջամտության, լոկ աստուծո կամքով, նավը լողաց անցավ դիմացի ափը։ Դա բոլոր ներկաներին և ականատեսներին ապշեցրեց և զարմացրեց, համոզեց կամովին թույլ տան գնալու։

ԻԶ. [Սրբությունները] տանող սպասավորները, այն է Սամոսատի և Եդեսիայի եպիսկոպոսը, նրա ավագ երեցը, նաև ամենաբարեպաշտ քրիստոնյաներ և ամիրայի սպասավորը, որին մականվանում էին Հռոմից[25], հասնում են Սամոսատ։ Մի քանի օր մնալով այնտեղ, որոնց ընթացքում բազում հրաշքներ կատարվեցին, նրանք ճամփա ընկան։ Ճանապարհին սրբազան պատկերը և Քրիստոսի նամակը անթիվ հրաշքներ էին գործում. կույրերը անակնկալ կերպով տեսնում էին, կաղերն առողջանում, երկար ժամանակ անկողնին գամված մարդիկ ապաքինվում, չորացած ձեռքեր ունեցողները բուժվում։ Մի խոսքով ամեն մի հիվանդություն և ցավ փախուստի էին դիմում. ապաքինվողները փառավորում էին աստծուն և փառաբանում նրա հրաշքները։

ԻԷ. Երկար ճանապարհ կտրելով, նրանք հասնում են Օպտիմատոն[26] բանակաթեմում գտնվող սուրբ Աստվածածնի վանքը, որը Եվսեբիոսի է կոչվում։ Ահա այս վանքի տաճարում ակնածությամբ ամփոփվում է հրաշագործ պատկերի տուփը։ Մաքուր սրտով այստեղ դիմած բազում մարդիկ իրենց ցավերից ապաքինվեցին։ Այստեղ եկավ և մի դիվահար, որին չար ոգին օգտագործում էր որպես գործիք և այդ դիվահարի բերանով գովաբանում պատկերն ու նամակը և Տիրոջ դիմելով ասում. «Գիտենք ով ես դու, սուրբն Իսրայելի»։ Ի վերջո նա կարծես մարգարեանալով,

ասաց. «Ըմբոշխնի՛ր, ո՜վ Կոստանդնուպոլիս, փառք ու բերկրություն, և դո՛ւ Կոստանդին Ծիրանածին թագավորությունը քո»: Այդ խոսքերն ասվելուց հետո մարդը բուժվեց և ազատվեց դևի ազդեցությունից: Այս խոսքերի բազում վկաներ կան: Այդ բանին ականջալուր եղան և դրա վկաները այդ ցանկալի [սրբությունները] դիմավորելու եկած՝ կայսեր ուղարկած ավագ ծերակուտականները, նրանց միացած բազմաթիվ նիզակակիրներ, ապա մագիստրոսներ և պատրիկներ, ավելի ցածր աստիճանավորներ: Երբ [դևի] կանխագուշակությունները շուտով իրականություն դարձան, բոլորն ապշած մնացին, թե ո՞րտեղից դևը կանխավ գիտեր այդ մասին: Մարդիկ հավատացած են, որ դևերն ի բնե [կանխագիտության] շնորհքով չեն օժտված, քանի որ նրանք աստվածային փառքից դուրս են սայթաքած և լույսի փոխարեն խավար դարձած: Հայտնի է, որ աստվածային զորությունը հնում կանխագուշակելու գործում օգտագործում էր Բաղաամի ծառայությունները ապա բազմիցս և այլևայլ, այդ բանի համար անարժան մարդկանց, բայց բոլոր դեպքերում իմաստուն և խոհեմ նախախնամությամբ: Ահա տվյալ դեպքում ևս սուրբ պատկերի մեջ եղած զորությունը դևին օգտագործեց և փոքր անց տեղի ունենալիքը կանխագուշակեց[27]: Ավելորդ չէ հիշել այդ, ի միջի այլոց տեղի ունեցածի մասին: Անցնենք պատմության շարունակությանը:

ԻԸ. Երբ օգոստոս ամսի տասնհինգին Վլախեռնայի[28] Աստվածածնի ամենասուրբ տաճարում կայսրերը սովորության համաձայն նշում էին միշտ կույս Աստվածամոր Ննջման տոնը, այդ սրբությունների սպասավորները տեղ հասան. նշված սուրբ տաճարի վերնատան աղոթարանում ամփոփվեցին պատկերն ու նամակը բովանդակող տուփը: Կայսրերը, ժամանելով ակնածությամբ երկրպագեցին և համբուրեցին այն ղրսից: Այնուհետև փառք ու պատվով, բազում ջահեր վառած տուփը տարան կայսերական տրիերան[29], որով գնացին պալատ. տուփը նրանք ամփոփեցին այնտեղի՝ Փարոս կոչված տաճարում (այդպես է կոչվում հավանաբար այն պատճառով, որ ինչպես պայծառ զգեստ շատ է պաճուճված): Հաջորդ օրը, այն է ամսի տասնվեցին, հարդանքով ու ակնածությամբ նորից երկրպագեցին այն. այնուհետև հոգևորականները և երիտասարդ կայսրերը[30] (ծերունի տանտերը[31] հիվանդության պատճառով [տանը] մնաց), սաղմոսերգությամբ

ու տաղերգությամբ, առատ լուսավորությամբ, գնացին քարափ, նորից մտան կայսերական տրիերան, գրեթե ամբողջ քաղաքի ափով թիավարեցին, որպեսզի [սրբությունները] այդ կերպ փրկեն քաղաքը՝ իրենց՝ ծովով ընթանալիս, և խարիսխ գցեցին քաղաքի արևմտյան պարսպի դրսի կողմում։ Այնտեղ նրանք նավից իջան և ոտքով՝ և՛ կայսրերը, և՛ բոլոր ծերակուտականները, ապա պատրիարքը եկեղեցու համայն կազմով, անհրաժեշտ փառք ու պատվով առաջ էին տանում սրբությունները բովանդակող սպասքը որպես ինչ-որ նոր տապանակ, ավելի ճիշտ՝ նրանից էլ ավելի [արժեքավոր]։ Պարսպի դրսից նրանք հասան Ոսկե դուռ[32], այնտեղից մտան քաղաք։ Բարձրաբարբառ սաղմոսերգությամբ, տաղերգությամբ ու շարականներով, անթիվ ջահերի լույսի տակ, համաժողովրդական թափորով ընթացքը շարունակեցին քաղաքի միջով, համոզված լինելով, որ այդպիսով քաղաքն արժանանում է օրհնության, անչափ հզորանում է այն, որ դարեր շարունակ նա անվնաս ու անառիկ կպահպանվի։ Անգործ ամբոխը փութաց ականատես լինելու. ժողովուրդը կոհակների նման ամեն կողմից շարժվում էր և հոսում. անդամալույծ մի մարդ, որ երկար ժամանակ հիվանդությամբ էր տառապում, իր ծառաներին հենված վեր ելավ տեսնելու համար անցնող աստվածային պատկերը։ Տեսնելու հետ մեկտեղ նա զարմանալի կերպով առողջացավ, իր ոտքերը կայունացած զգաց. նա վազեց, կաթոգին համբուրեց սուրբ պատկերի տուփը, փառավորեց Աստծուն՝ իր անձի հետ կատարված հրաշքը պատմելով։ Բոլոր ներկաները այդ բանին ականատես եղած և նրա խոսքերին ականջալուր, փառավորեցին բոլորի Աստծուն, միշտ հրաշքներ ու սքանչելիքներ գործողին։

ԻԹ. Անհնարին է նկարագրել, թե աստվածային պատկերի և հարգո նամակի քաղաքի միջով տարվելու ժամանակ ինչքա՜ն ուրախության արցունք թափվեց, ինչպես մարդիկ աղաչեցին Տիրոջ իրենց միջնորդը լինել, ինչքա՜ն գոհանամ ասացին. անսովոր երևույթներին լավ է ականատես լինել, քան թե ականջալուր, քանզի նրանց համբավը սովորաբար ավելի ուշ է տեղ հասնում։ Թափորի կազմակերպիչները հասան Ավգուստեոնի[33] առջև գտնվող հրապարակը և պողոտայից մի փոքր ձախ թեքվելով, հասան Աստվածային իմաստության[34] անվանը նվիրված տաճարը և աղոթարանի ադիտոնում[35] ամփոփեցին պատվական պատկերն ու նամակը։

Լ. Այդտեղ եկեղեցու ողջ կազմը երկրպագեց, պետք եղած պատիվը ցուցաբերեց, որից հետո թափորի կազմակերպիչները սուրբ բեռան հետ միասին նորից դուրս եկան և ուղղվեցին դեպի կայսերական պալատ. նրանք Խրիսոտրիկլինի[36], որտեղ սովորաբար տեղի են ունենում ամենակարևոր ընդունելությունները, կայսերական գահի վրա ամփոփեցին աստվածային պատկերը։ Այդպիսով արքայական գահը սրբագործվեց, այդ [գահի] վրա բազմող ճշմարիտ հավատացյալներին առատորեն փոխանցվեց արդարություն ու բարություն։ Ընդունված կարգի համաձայն [Աստծուն] երկար պաղատելուց հետո, այնտեղից նորից վերցվեց աստվածային պատկերը և ամփոփվեց վերոհիշյալ Փարոսի տաճարում՝ նրա արևելյան կողմի աջ մասում՝ ի փառս հավատացյալների, ի պահպանումն կայսերաց, ի անվտանգություն ամենայն քաղաքի և քրիստոնյաների պետության։

ԼԱ. Ո՜վ աստվածային նմանություն՝ Հոր հար և նման նմանության։ Ո՜վ կերպար՝ Հայրական ինքնության կերպարի։ Ո՜վ դու Քրիստոսի սրբազան և անգին դրոշմ, մեր աստուծո նախատիպ գեղեցկություն (ես, հավատացյալս, դիմում եմ քեզ որպես կենդանի էակի), դու միշտ փրկիր և պահպանիր մեր բարեպաշտ և բարի կայսեր, քո վերադարձը փառավոր կերպով նշողին, որին ներկայությամբ քո բարձրացրիր հայրական և պապենական գահին։ Պահպանի՛ր նրա զավակին[37]՝ ի հարատևումն տոհմի և ի հաստատություն գայիսոնի։ Պետությանը խաղաղություն պարգևիր, քաղաքների այս թագուհուն անառիկ պահիր։ Թո՛ւյլ տուր մեզ, քո նախատիպին՝ մեր աստված Քրիստոսին հաճոյացողներիս ընդունվել նրա երկնային թագավորությանը, մեզ, ովքեր փառավորում ենք և գովերգում նրան, քանզի նրա՛ն է վայել փառքը և երկրպագությունը՝ հավիտյանս հավիտենից։ Ամեն։

ՀԱՎԵԼՎԱԾ Ա

## «ՎԱՍԻԼԻԿԱՆԵՐԻ» 56-ՐԴ ԳՐՔԻ, 8-ՐԴ ՏԻՏՂՈՍԻ § 11-Ը «ՀԱՅԿԱԿԱՆ» ՀԱՐԿԵՐԻ ԳԱՆՁՄԱՆ ՄԱՍԻՆ[1]

«Անաստասիոս կայսրը պրետորյան էպարխոս Անթեմիոսին

*...Պետական բոլոր հարկերը պետք է գանձվեն երեք նվագով, այդ թվում և* հայկական *կոչվածները, այն է հունվարին, մայիսին և տարեվերջին[2], ընդ որում հարկերի նվագների չափերը բաժանվում են երեք հավասար մասերի. հարկատուների նկատմամբ իրավունք չկա որևէ նորամուծություն կատարելու։ Բայց քանի որ մինչև օրս* հայկական հարկերը[3] *երկու նվագով էին գանձվում, ապա հարկատուները իրենց հայեցողությամբ եթե նախընտրում են հին կարգը պահպանել, թող կես առ կես երկու նվագով վճարեն, ընդ որում երկրորդ նվագը պետք է վճարեն հաջորդ տարվա սեպտեմբեր ամսին։ Իսկ եթե կամենում են* հայկական հարկերը *երեք նվագով վճարել, [երրորդ նվագը] թող հաջորդ տարվա սեպտեմբեր ամսին տան՝ հետաձգման կարգով»։*

ՀԱՎԵԼՎԱԾ Բ

## «ՎԱՍԻԼԻԿԱՆԵՐԻ ՄԵԾ ՍԻՆՈՊՍԻՍԸ»[4] ՀԱՅԱՍՏԱՆԻՑ ԳԱՆՁՎԵԼԻՔ ՀԱՐԿԵՐԻ ՉԱՓԵՐԻ ՄԱՍԻՆ

ՍԿԻԶԲԸ Ω

Ա

Հորիարների մասին, որ հյուպոդեկտներ էլ են կոչվում[5], ինչպես և հացի շտեմարանների և այնտեղ ամբարված մթերքների մասին

*1. (Ընթերցի՛ր «Վասիլիկաների» 56-րդ գրքի, 9-րդ տիտղոսի, առաջին, երկրորդ և երրորդ գլուխները, ինչպես և 11-րդ տիտ-*

ղոսի յոթերորդ գլուխը[6]): Օրենքը կարգադրում է, որ կշռաքարերը լինեն պղնձե կամ քարե, որպեսզի յուրաքանչյուր հարկատու վճարի ճշգրիտ չափով։ Հյուպոդեկտները թող վերցնեն ցորենի հիսուներորդ մասը, գարու՝ քառասուներորդ մասը, գինու և ճարպի՝ քսաներորդ մասը։ Իսկ Հայաստանի հյուպոդեկտները թող վերցնեն գարու և ցորենի քառասուներորդ մասը, իսկ գինու և ճարպի՝ տասնհինգերորդ մասը։

ՀԱՎԵԼՎԱԾ Գ

## «ՎԱՍԻԼԻԿԱՆԵՐԻ» ՓՈՔՐ ՍԻՆՈՊՍԻՍԸ ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ԿԱՅՍՐՈՒԹՅԱՆ ՍԱՀՄԱՆՆԵՐՈՒՄ ԱՊՐՈՂ ՀԱՅԵՐԻ ՔԱՂԱՔԱՑԻԱԿԱՆ ԴՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ[7]

«Հայերը պարտավոր են ամեն ինչում հետևել հռոմայեցիների օրենքներին[8]։ Դրա տակ ենթադրվում է, որ նրանք հետևում են [բացի աշխարհիկ օրենքներից], նաև դավանաբանական [սահմանումներին]։ Եթե չեն ուզում, ապա եկեղեցական հարցերում թող գործեն իրենց ազգային կարգի համաձայն, իսկ այս օրենքը թող տարածվի նրանց քաղաքացիական դրության վրա միայն»։

ՀԱՎԵԼՎԱԾ Դ

## «ՏԵՐ ՆԻԿԵՓՈՐ ԿԱՅՍԵՐ [ԵՐԿԱՍԻՐՈՒԹՅՈՒՆԸ] ՄԱՍՆԱԿԻ ՊԱՏԵՐԱԶՄ՝ [ՄՂԵԼՈՒ] ՄԱՍԻՆ[10]»

### Ներածություն

Մենք ցանկանում ենք հաղորդել մասնակի պատերազմ մղելու եղանակը. թեև ներկայումս դրա, այդ եղանակի, անհրաժեշտությունը արևելյան շրջանների համար չի զգացվում (Քրիստոսը, մեր ճշմարիտ աստվածը, Իսմայելի որդիների[11] մեր դեմ ուղղած ուժն ու կարողությունը շատ է թուլացրել և նրանց արշավանքները սանձել)։ Մենք ցանկացանք այն գրավոր ներկայացնել, որպեսզի ժամանակը մոռացության չտա այն, որպեսզի [ապագա սերունդները] տեղյակ լինեն նրա օգտակարության մասին և երբ

ապագայում քրիստոնյաներին այն պետք գա, և՛ նրան դիմողները, և՛ ողջ ժողովուրդը պատրաստի լավ օգնական ունենան։ Մենք այդ [եղանակի] մասին գիտենք ոչ միայն լսածից։ Մենք փորձով էլ ենք դրան ճանաչել, նախ աշակերտելով նրանց, ովքեր, այսպես ասած, հորինեցին այդ եղանակը, ապա նաև անձամբ օգտագործելով այն՝ մեր ուժերի ներածի չափով փորձառություն ձեռք բերելով։ Այդ եղանակի օգտակարությունն այն է, որ դրան դիմողները փոքրաթիվ մարտիկներով հսկայական և արժանահիշատակ մեծագործություններ կատարեցին։ Այն, ինչ ի վիճակի չեղավ գլուխ բերել հռոմայեցիների ողջ բանակը, (խոսքը կիլիկեցիների և Խամբդայի[12] հզորության գագաթնակետի ժամանակի մասին է), հաճախ ամենահմուտ զորավարներից մեկը, թշնամիների դեմ խոհեմություն և փորձառություն հանդես բերելով, խելացիորեն տնօրինելով գործերը և դիմելով ռազմավարական արվեստի օգնության, լոկ իր բանակաթեմի զորքով գլուխ բերեց։ Այդ բանն ընդգծելով մենք չենք ուզում ասել, որ փոքրաքանակ [զորքը] ավելի մարտունակ է, քան մեծաքանակը, ոչ էլ այն, թե մենք ռազմավարական արվեստի մյուս բոլոր եղանակներից այս մեկն ենք ամենից բարձր դասում, այլ [սոսկ այն], որ այդ եղանակը ամենահմուտ զորավարների ձեռքում լավագույն օգնականը դարձավ։ [Ուզում ենք ասել], որ այն դեպքում, երբ հնարավորություն չկա թշնամիներին ընդդիմակայել ճակատ առ ճակատ, այդ եղանակին դիմելով կարելի է իրենց էլ, իրենց ենթակա շրջաններն էլ անվնաս պահել։ Ինչքան գիտեմ, այդ [եղանակը], որ միանգամայն մոռացության էր տրվել, կատարելապես կյանքի կոչեց և բարեփոխեց երանելի կեսար Վարդասը[13]։ (Ես չեմ ուզում այստեղ մեկ առ մեկ թվել հին զորավարներին, այլ կանգ եմ առնում միայն բոլորին հայտնի, կամ մեր ժամանակներում ապրածների վրա)։ Նա Տարսոնին[14] հարևան բանակաթեմերի զորավար լինելով, ինչպես նաև Կապադովկիայի և Անատոլիկոնի, բազում վերքեր հասցրեց տարսոնցիների և կիլիկեցիների զորքերին և նրանց դեմ մեծամեծ հաղթանակներ տարավ։ Ահա նրանից սովորելով այդ եղանակը, որոշ փորձ էլ մե՛նք ձեռք բերեցինք։ Պատրիկ Կոստանդինը ևս, մականունը Մելեինոս[15], որ երկար տարիներ Կապադովկիայի զորավար էր, [այդ եղանակի] օգնությամբ բազում սխրագործություններ կատարեց։ Նրանց թվում և Նիկեփորը[16], երանելի կայսրը, որ հմտորեն օգտվեց այդ [եղանակից]։ Ո՛ր [բանակաթեմի] զորավար էլ նա չնշանակվեց, դիմելով այդ

[եղանակին] գովելի բազում մեծագործություններ կատարեց, այսպես ասած բյուրավոր անգամ թշնամիներին փախուստի մատնեց, ջարդեց նրանց մեծամեծ զորաբանակները։ Նրա սխրագործությունները, որ շատ շատ էին և հանրահայտ, երբ նա դեռ զորավար էր, գրի չառնվեցին մեկ առ մեկ, այդ բանը մարդկանց համար տաղտկալի համարվելու պատճառով, բայց նա սովորած այդ դյուրին եղանակը գրավոր ներկայացրեց՝ հասարակաց օգտի համար, [նշելով], թե ինչպե՞ս պետք է օգտվել նրանից։ Նա ինձ հանձնարարեց[17], ինչքան հնարավոր է ճշգրիտ կերպով այդ մասին գրել և հաղորդել սերունդներին, ոչ միայն այն, ինչ վերաբերում է Արևելքին, այլ և Արևմուտքի համար օգտաբեր դարձածը, որովհետև այնտեղ մենք բազում ռազմավարական հաջողություններ ենք ձեռք բերել, և մեր կարողության չափ՝ փորձառություն։ [Արևմուտքի] մասին ավելի հանգամանորեն մի այլ տեղում կասվի։ Մեր նպատակը այստեղ մյուսի՝ [Արևելքի] վրա կանգ առնելն է։ Ահա նրա պատգամը պահպանելով, աջակցությամբ աստուծո շնորհքի, որ ամեն մի բարի գործին նեցուկ է կանգնում, այսպես եմ սկսում շարադրանքը։

### Գլուխ Ա. Վիգլաների[18] մասին. և այն մասին, թե նրանք իրարից ինչքան հեռավորության վրա պետք է գտնվեն

Նրանք, ովքեր ստանձնում են մեծ և սահմանամերձ բանակաթեմերի հոգացողությունը, ովքեր իրենց իրավասության տակ ունեն կլեյսուրներ, պետք է ամեն միջոցով և պատրաստակամությամբ, աչալրջորեն հոգ ու ջանք թափեն, աշխատեն, որպեսզի հռոմեական շրջանները թշնամիների հարձակումներից անվնաս և անվտանգ պահեն՝ ճանապարհներին ամենայն ուշադրությամբ հսկող հաղթանդամ և հմուտ վիդլատորներ[19] նշանակելով։ Եթե կան թշնամիների երկիրը սահմանազատող բարձրաբերձ և դժվարանցանելի լեռներ, ապա պետք է վիգլաները նրանց վրա տեղադրել։ Վիգլատորների կայանները պետք է գտնվեն իրարից երեք կամ չորս մղոն հեռավորության վրա։ Երբ նրանք նկատեն թշնամիների ներխուժում, պետք է փութանակի դիմեն մյուս կայանը և իրենց տեսածը հայտնեն, նրանք էլ իրենց հերթին պետք է շատ շտապ կարգով դիմեն մյուս կայանը։ Ահա այսպես հաջորդականությամբ պետք է իմաց տալ հարթավայրում գտնվող հեծելազորային կայաններին, որոնք տեղեկացնում են զորավարին այլազ-

գիների հարձակման մասին։ [Վիգլատորները] ճանապարհների վրա են հսկում տասնհինգ օր, իրենց հետ բերելով այդքան օրվա անհրաժեշտ պարեն։ Ապա գալիս են նրանք, ովքեր պետք է առաջիններին փոխարինեն, որոնց արխոնտները պետք է հմտությամբ հավաքագրեն և նախապատրաստեն, ուղարկեն խստորեն սահմանված քանակի համաձայն և ոչ պակաս, չպետք է թույլ տալ, որ նրանք տանը մնան՝ չարաշահության նպատակով։ Վիգլատորների պարտականությունն է իմանալ, թե թշնամիների դեմ որտե՞ղ է հարմար ամրություններ կառուցել, որտե՞ղ կա մշտական ջուր կամ հարթ տեղանք։ Ուրիշները պետք է իմանան, թե որտե՞ղ է ճանապարհը նեղանում, ուրիշները, թե որտե՞ղ կա դժվարանցանելի գետ։ Եթե այդ բոլորի վրա նրանք լավ հսկեն, ապա թշնամիները չեն կարողանա թաքուն կերպով ներխուժել։ Ապա պետք է [վիգլատորներին] վերահսկող վստահելի և փորձառու մարդկանց ուղարկել [ստուգելու], արդյո՞ք լավ և աչալրջությամբ պահպանում են իրենց կայանները, թե ո՛չ։ [Փոխարինվելու] դեպքում վիգլատորները պետք է բոլորը հեռանան, ինչքան որ հաստատվել էին, և ոչ պակաս։ Նրանք պետք չէ լքեն իրենց կայանները, որտեղ որ հաստատվել են ճանապարհներին հսկելու և պահպանելու համար։ Նրանք իրենց կայաններում պետք չէ [որոշված] ժամանակից ավելի մնան, այլ պետք է որ [անընդհատ] փոխեն իրենց տեղերը, ուրիշ տեղ գնան, որովհետև եթե երկար ժամանակ նույն վայրում մնան, կնկատվեն թշնամիների կողմից և հեշտությամբ նրանց ձեռքը կընկնեն։

## Գլուխ Բ. Կամինովիգլիաների[20] և հետախույզների մասին

Կամինովիգլատորները անհրաժեշտ են և օգտամատույց։ Զորավարը պետք է շատ մեծ ուշադրություն բևեռի նրանց վրա ն կամինովիգլիաները հաստատի կարևոր տեղերում, որպեսզի երբ թշնամիների տեղաշարժում լինի, վիգլատորները կամինովիգլիաների միջոցով այդ մասին իմանան, որով և ինքը՝ զորավարը նախօրոք տեղյակ կլինի թշնամիների հարձակման մասին, ապա և այն, թե նրանք ո՞ր ճանապարհով են որոշել շարժվելու։ [Կամինովիգլատորները] և էքսպիլատորները[21] գյուղերի [բնակչությանը] այդ մասին տեղյակ պահելով, վերջինիս հնարավորություն են տալիս իր անասուններով հանդերձ ապաստանելու ամրություններում։ Արմենիական բանակաթեմերի սահմանամերձ

վայրերում, Հայերի վիգլաներում, պետք է պահպանել դեռ հնուց հաստատված կարգը, քանի որ Հայերը վիգլատորների պարտականությունները վատ են կատարում և անհուսալի։ Այն է, պետք է ընտրել և հավաքագրել բանիմաց մարդկանց, նրանց տալ ամսական ռոճիկ՝ զինվորներին հասանելիքից, որի դիմաց վերջիններս պարտավոր էին վիգլաներում ծառայել։ Նրանց պետք է ամեն ամիս տալ նաև սահմանված ուտեստը։ [Կամինովիդլատորներին] անհրաժեշտ է ամիսը մեկ փոխել և նրանց միջոցով ապահովաբար հսկել թշնամիների ներխուժման ճանապարհները։ Բայց քանի որ նրանք ռոճիկ և ուտեստ ստանալով հանդերձ, լինելով Հայեր, վատ են կատարում վիգլատորների պարտականությունները, պետք է [թշնամու] զորքերի տեղաշարժումների մասին իմանալ այնտեղ ուղարկվող հետախույզներից։ Պետք է քաջարի տրապեզիտներ[22] ընտրել, որոնց Հայերը տասինարիոս[23] են անվանում, և ցուցակագրել, նրանց վրա ղեկավար նշանակել այնպիսի մարդկանց, ովքեր աչքի են ընկնում իրենց արիությամբ. ճանապարհների և Ասորիքի շրջանների քաջատեղյակությամբ։ Նրանց պետք է անընդհատ թշնամու երկիրը ուղարկել, որպեսզի քայքայիչ և վնասարարական գործունեություն ծավալեն, եթե այդ բանն իրենց հաջողվի, ապա պետք է նաև թշնամիներից ոմանց բռնեն և զորավարի մոտ բերեն, որպեսզի վերջինս նրանց միջոցով իմանա թշնամիների տեղաշարժումների և ծրագրերի մասին։

Գլուխ Է. [Թշնամու] զորքի համակենտրոնացման և տեղաշարժման մասին, առևտրականների մուտքը թույլատրելու և հետախուզելու մասին

[Թշնամու] մեծ զորքերի համակենտրոնացումը սովորաբար տեղի է ունենում օգոստոս ամսին, այն ժամանակ, երբ Եգիպտոսից, Պաղեստինից, Փյունիկեից և Կյուլե Ասորիքից բազմությունները բարձրանում են Կիլիկիա, Անտիոքի շրջանները, Հալեպ և իրենց հետ վերցնելով արաբներին, սեպտեմբեր ամսին ներխուժում են Հռոմայեցիների երկիրը։ [Զորավարը], լսելով թշնամիների մեծ զորքի նախապատրաստությունների, տեղաշարժման և համակենտրոնացման մասին, պետք է տրապեզիտներին, այն է, տասինակիաները ավելի հաճախակի ուղարկի, ինչպես նաև հմուտ և վստահելի բազում հետախույզների։ Պետք է նաև առևտրականների մուտքը թույլատրել, մեր սահմաններին մոտ գտնվող բեր-

*դերի ամիրաներին բարեկամություն ձևացնել, նրանց նամակ գրել և նրանց մոտ նվերներով մարդկանց ուղարկել։ Այսպիսի բազմատեսակ աղբյուրներից հնարավոր կլինի ճշգրիտ իմանալ թշնամիների նպատակների և ծրագրերի մասին, իմանալ համակենտրոնացվող զորքերի (ձիավոր թե հետևակ) քանակի մասին, նրանց հրամանատարների մասին, և թե ո՞ր շրջաններն են որոշել ներխուժել։ [Զորավարը] տեղեկանալով [թշնամու] բանակի համփա ընկնելու մասին, նրա Ռոմանիա[24] ներխուժելու ճանապարհի մասին, հավաքում է բոլոր զորքերը և ուղարկում սահմանները։ Նա շատ փորձառու մի տուրմարխի, կամ էլ բարձրաստիճան և հեղինակավոր հրամանատարներից որևէ մեկին ընտիր հեծյալներով ուղարկում է ընդդիմակայելու թշնամիներին, նախքան վերջիններս ներխուժեն մեր շրջանները։ Նրանք պետք է հետապնդեն, հետևեն թշնամիներին և նրանց շարժումների մասին զորավարին տեղյակ պահեն։*

ՀԱՎԵԼՎԱԾ Ե

## ՆԻԿԵՓՈՐ ԿԱՅՍԵՐ ՆՈՎԵԼԼԱՆ ՀԱՅ ԶԻՆՎՈՐՆԵՐԻ ՀՈՂԵՐԻ ԵՎ ՄԱՐԴԱՍՊԱՆՆԵՐԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ[25]

(Հրապարակված 963—969 թթ. միջև)

«[Նիկեփորի] նովելլան հայերի և այլոց. ինչպես և մարդասպանության զանցանք թույլ տվողների վերաբերյալ»

*Ա. Եթե հ ա յ զինվորներից [ստրատիոտներից] ոմանք, ովքեր հեռացել են [իրենց հողերից] և երեք տարի անցկացրել այլ տեղում, և վերադառնալով, իրենց հողերը գտել են ի պահ տրված ուրիշի, որպես պարգև տրված այլ՝ աչքի ընկած զինվորների [ստրատիոտների], բանակաթեմային և տագմատային արխոնտների, սիրանքներ կատարած զորավարների, կամ էլ [վերջապես] ուրիշ ոմանց՝ հանրօգուտ օգտագործման նպատակներով, հրամայում ենք. երեք տարին լրանալուց հետո վերադարձող հ ա յ զինվորներն իրավունք չունեն պահանջելու և ստանալու այդպիսի հողերը։ Որովհետև եթե հ ա յ ո ց անկայուն (ἄστατον) և անվերջ թափառել սիրող (πολυπλανὲς) բնավորությունը այսպիսի օրենսդրու-*

թյամբ չսանձվի, և նրանք իրավունք ունենան այլ տեղ գնալ ու բնակվել, ապա նորից վերադառնալով, հեշտությամբ տիրել [իրենց] հողերին, ապա ողջ ճայութրյունը կչքանա։ Դրա համար պետք է, ինչպես ասվեց, եթե եռամյա ժամկետը լրացել է և հեռացած հ ա յ ե ր ը չեն վերադարձել, ապա ինչպես ասվեց, նրանց [հողերը] թող ի պահ տրվեն ուրիշներին, որպես մրցանակ՝ սրխրանքներ գործած զինվորներին։ [Բայց] եթե այդպիսի հ ա յ կ ա կ ա ն հողերից, ինչպես գրեցիր, տրվել են Լակապեի[26] կայսերական վանքին, կամ բաժին են հանվել որևէ կուրատորայի[27], կամ էլ տրվել են որևէ մեկին՝ ոչ [նրա] կատարած ինչ-որ հանրօգուտ ծառայության համար, այլ պարզապես ծանոթության կարգով, ապա այդ [հողերի] ժառանգորդները ոչ թե եռամյա, այլ և երեսնամյա ժամկետը լրանալուց առաջ էլ եթե վերադառնան, իրավունք ունեն վերստանալու իրենց սեփականությունը։ Այդ [հողերը], ինչպես ասվեց, ծանոթությամբ ստացողները, եթե նույնիսկ էպոպտների լիբելլներ[28] կամ խրիսովուլլներ ներկայացնեն, հրամայում ենք այդ բոլորը նկատի չառնել։ Մենք կամենում ենք, որ զինվորների ժառանգորդները վերստանան իրենց հողերը։ Եթե ոմանք [այդ հողերի] դիմաց փոխհատուցում են տվել, ապա զինվորները թող ստանան իրենց պատկանողը, իսկ տվողներն էլ թող դատարանով պահանջեն իրենց տվածը։ Եթե [վերջիններս] այդ [հողերի] վրա բարեփոխություններ են կատարել, և նրանց արածը ճոխության ու շքեղության համար չէ, այլ պիտանի է, օրինակի համար այգիների տնկում, աղացների, հարդանոցների, տների և այլնի կառուցում՝ կատարված զինվորներին վայել պարզությամբ, իրենց հողերը վերստացողները պետք է այդպիսիների համապատասխան արժեքը վճարեն։ Եթե այդ [կառույցները] գեղազարդային և ոչ կիրառական նշանակություն ունեն, ապա կառուցողները նրանց նյութական մասն ստանալով պետք է հեռանան։ Այն հ ա յ ե ր ը, ովքեր Ասորիք[29] են փախստական եղել, ոչ թե երեք տարին չլրացած, այլ նույնիսկ մեկ տարին լրանալուց առաջ էլ եթե վերադառնան, չեն կարող վերստանալ իրենց հողերը, նրանք պետք է զրկվեն իրենց տիրույթից և դա թող իրենց պատիժը լինի։ Բոլոր դեպքերում այդ վերադարձողների մասին պետք է հոգալ՝ ա՛յլ հողեր տրամադրելով։

Բ. Մարդասպանության զանցանք թույլ տվողներին պարտավոր ես. ոճրագործություն կատարողին օրենքով սահմանված պատիժը տալ, բայց նրա զինվորական հողը չպետք է տաս սպան-

վողի երեխաներին կամ ազգականներին՝ ի փոխհատուցումն։ Վերջիններս պետք է որպես փոխհատուցում ստանան շարժական գույք։ Անշարժ ունեցվածքը պետք է պահպանել զորքն համալրելու համար։ Եթե շարժական գույք չկա, ապա սպանողի ժառանգները պետք է անհրաժեշտ փոխհատուցումը տան սպանվողի ժառանգներին. չպետք է թույլ տալ, որ [սպանողի] զինվորական հողերը օտարացվեն։ Եթե սպանողի ընտանիքի բոլոր անդամներն են մեղսակից ոճրին, նրանցից յուրաքանչյուրը թող կրի օրենքի սահմանած պատիժը, իսկ զինվորական հողերը, ինչպես բազմիցս ասվեց, չպետք է օտարացվեն։ Եթե և ոչ մի ժառանգ չի մնացել, որ կցանկանար զինվորական ծառայության մեջ մըտնել, մի ուրիշը ստանալով այդ հողերը, թող ծառայի [բանակում]»։

## ԿԱՅՍՐՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ՄԱՍԻՆ

### ԳԼՈՒԽ 27

*1 Ծիրանածինի՝ Լանգոբարդիային նվիրված այս գլուխը սխալաշատ է և թերի։ Սխալը նախ և առաջ այն է, որ Ծիրանածինը լանգոբարդների մուտքը Իտալիա դնում է VIII դարում, Իրենե կայսրուհու ժամանակ (780—802), երբ իրականում նրանք մուտք գործեցին 566 թ.։ Ծիրանածինը սխալ է նաև Լանգոբարդիայի բանակաթեմի կազմավորման տարեթվի հարցում։ Նա ցույց է տալիս, որ լանգոբարդներն իրենց արշավանքի ժամանակ գրավեցին Լանգոբարդիայի և Կալաբրիայի բանակաթեմը, երբ իրականում Լանգոբարդիան առանձին բանակաթեմ կազմեց Լևոն VI-ի թագավորության ժամանակ։ Այդ բանակաթեմի կազմի մեջ էր մտնում ամբողջ հարավային Իտալիան, բացառությամբ Կալաբրիայի։ Լանգոբարդիայի բանակաթեմի կազմավորումը կապված էր բյուզանդական զորքերի կողմից Բենեվենտոսի գրավման հետ (891)։*

*2 Բնագրում* πριγκιπάτων, *որի տակ ենթադրվում են Լանգոբարդիայի Բենեվենտոսի (774 թ. սկսյալ, ապա միացյալ՝ Կապուա-Բենեվենտոսի՝ 899 թ. սկսյալ) և Սալերնոյի (839 թ. սկսյալ) պրինկիպատները։*

*3 Բնագրում* ἀρχοντιῶν, *որի տակ ենթադրվում են իրավական տեսակետից Բյուզանդիային ենթակա, բայց իրականում անկախ Ամալֆեի և Գաետայի պետությունները։*

*4 Նարսեսն այստեղ ցույց է տրված Իրենե կայսրուհու (780—802) և պապ Զաքարիայի (741—752) ժամանակակիցը, մի բան, որ միանգամայն սխալ է։ Նարսեսն, անկասկած, Հուստինիանոս I կայսեր (527—565) հայազգի նշանավոր զորավարն է, ներքինի գանձապահը։ Նա իսկապես որ հրավիրել էր լանգոբարդներին մուտք գործել Իտալիա։ Ծիրանածինը սխալմամբ դեպքերը երկու դար առաջ է բերում։ Իրենե կայսրուհու և պապ Զաքարիայի աթոռակալության թվականների հակասությունը ուսումնասիրողները լուծում են հետևյալ կերպ. ենթադրում են, որ խոսքը ոչ թե Լևոն IV-ի (775—780) կին Իրենեի մասին է, այլ Կոստանդին V-ի (741—775)։ Ինչ վերաբերում է պապական պետությանը, ապա այն փաստորեն ստեղծվեց 767 թ.։ Վերոհիշյալի և առասպելի հորինման շրջանակների մասին մանրամասն տես* DAI, *II,* p. *88—89։*

*5 Այսինքն հունգարացիները։*

*6 Լանգոբարդները տիրացան Բենեվենտոսին 571 թ., քաղաքի պարիսպները ավերել էր Տոտիլան և դրանք չէին վերակառուցվել։*

## ԳԼՈՒԽ 43

1 Հունարեն վերնագիրն է. Περὶ τῆς χώρας τοῦ Ταρών։ Տարոնը նախապես պատկանելիս է եղել Մամիկոնյաններին, բայց 8-րդ դարի ընթացքում այն աստիճանաբար անցնում է Բագրատունիների ձեռքը։ Աշոտ Մսակերի մահից հետո (826), արաբներն ստիպվեցին նրա որդիներին բաժանել նրա տիրույթները։ 830 թ. Տարոնի իշխան է դառնում Բագարատը, իսկ նրա եղբայր Սմբատը տիրանում է Արաքսի շուրջ ընկած Բագրատունիների վաղեմի տիրույթներին։ Այս Բագարատը դառնում է Տարոնի Բագրատունյաց իշխանության հիմնադիրը։ 851 թ. Բագարատը գերի է ընկնում արաբների ձեռքը և վախճանվում Բաղդադում։ Բաղարատն ունենում է երկու որդի՝ Աշոտին և Դավթին։ Վերջինս հիշվում է նաև «Արքայիկ» ածականով։ Այս Դավիթ-Արքայիկը Ծիրանածինի հիշած ʼΑρχαιχας-ն է (նրա մասին տե՛ս ստորև, ծանոթ. 8)։ Երկուսն էլ ընկնում են արաբական խալիֆաթի զորավարներից մեկի՝ ազգությամբ թուրք Բուղայի ձեռքը, տարվում Բաղդադ և միայն 858 թ. ազատվում և վերադառնում հայրենիք։ Աշոտը աստիճանաբար հզորանում է, ստանում կուրապաղատի տիտղոս և իշխում Տարոնում մինչև 878 թ.։ Աշոտին հաջորդում է եղբայրը՝ Դավիթ-Արքայիկը, որ յոթ տարի է իշխում (ըստ Ադոնցի՝ տասնյոթ տարի) և վախճանվելով (895) թողնում է մի որդի, որ կոչվում էր Աշոտ։ Դավթի մահից հետո կարճ ժամանակով Տարոնում իշխում է կուրապաղատ Աշոտի որդի Գուրգենը, որից հետո օրինական տերը, Դավթի որդի Աշոտը, որին հաջորդում է Կոստանդին Ծիրանածինի հիշած Գրիգորիկը՝ Կրիկորիկը։ Մանրամասն տես N. Adontz, Les Taronites, p. 198, 220։ Ծիրանածինի «Կայսրության կառավարման մասին» աշխատության վերոհիշյալ գլուխը հայերեն է թարգմանել Կ. Տեր-Սահակյանը: Տե՛ս նրա «Հայերը բյուզանդական մատենագրության մեջ», Բազմավեպ, 1911, էջ 19—23։

2 Ծիրանածինը նախորդ գլխում խոսել էր Դանուբ գետից հյուսիս ապրող ժողովուրդների մասին, այդ թվում պեչենեգների, խազարների և թուրքական այլ ժողովուրդների, ինչպես նաև Սև ծովի հյուսիսային ափերին բնակվող սլավոնական ժողովուրդների մասին։

3 Բնագրում Κρικορίκιος (նաև Κρικορίκης և Γρηγόριος)։ Գրիգոր անունն է հայկական փաղաքշական -իկ վերջածանցով։ Այս Գրիգորը որդին էր Տարոնի իշխան Աշոտի՝ Բաղարատի որդու, Բագրատունիների նախարարական ընտանիքից։ Նա հայոց թագավոր Սմբատ 1-ի քրոջ որդին էր։ Իշխանության գլուխ անցավ 896 թ.։ Այս Գրիգորը հիշատակվում է նաև հայկական աղբյուրներում։ Հովհաննես Դրասխանակերտցին 910 թ. տակ հիշատակում է նրան որպես «մեծ, խոհեմ և հանճարեղ իշխանն Հայոց Գրիգոր», որ գնացել էր դեսպանությամբ Ավշինի մոտ բանակցություններ վարելու (Յովհաննու կաթողիկոսի Դրասխանակերտցւոյ, Պատմութիւն Հայոց, Թիֆլիս, 1912, էջ 233)։ Տե՛ս M. Canard, Histoire, p. 466—67: DAI, II, p. 160։ Ս. Ռենսիմենը ենթադրում է, որ անվան վերջին -իկ փաղաքշական վերջածանցը վկայում է այն մասին, որ հայերը նրան Գրիգորիկ են անվանել չշփոթելու համար մի այլ Գրիգորի հետ, որի մասին մենք տվյալներ չունենք (DAI, II, p. 160)։ Ենթադրությունը քիչ է հա-

վանական, որովհետև Կրիկորիկը Տիրանածինի մոտ հիշատակվում է նաև Γρηγόριος Գրիգոր ձևով, բացի այդ, բյուզանդական աղբյուրներում հայկական -իկ վերջածանցով անունների կարելի է շատ հաճախ հանդիպել, օրինակ Սիմբատիկ, Աստիկ, Պանգրատուկաս (Բագարատիկ), Կուրտիկ և այլն։ Նախարար Գրիգոր Մամիկոնյանը արաբների դեմ բարձրացված 748 թ. ապստամբության հերոսներից, բյուզանդական աղբյուրներում կոչված է Կրիկորակես (Կրիկորիկ—Գրիգորիկ)։ Տվյալ ժամանակաշրջանում բյուզանդական աղբյուրներում հանդիպող հայկական -իկ վերջածանցով անունների թիվը կարելի է բազմապատկել. Կակիկ, Թոռնիկ, Արքայիկ, Բարուցիկ, Մուսուլակ (Մուշեղիկ)։ Կարելի է հիշատակել և հայերի, որոնց անվան վերջում կցված է հունարեն փաղաքշական վերջածանցը՝ Նիկոլիցես, Թեոփիլիցես, Վոյիդիցես (Եզնիկ) և այլն։ Այս բոլոր դեպքերում իհարկե հազիվ թե ճիշտ կլիներ պնդել, որ վերոհիշյալ անձնավորություններին ինչ-որ նույնանուն այլ անձնավորությունների հետ չշփոթելու համար այդպես կոչած լինեին։ Հարցը փակված պիտի համարել, հիշելով հայոց թագավոր Հովհաննես-Սմբատին։ Սկիլիցեսի մոտ նա կոչվում է Ἰωβανεσίκης (Հովհաննեսիկ)։ Արդ, մենք չենք ունեցել այլ թագավոր Հովհաննես անունով, որի հետ չշփոթելու համար սրա անվանը կցած լինեին -իկ վերջածանցը։ Դա ըստ երևույթին հայկական մի սովորություն է, որ հարատևել է մինչև օրս, երբ 80 տարեկան ծերունին կարող է կոչվել Բենիկ, Ներսիկ, Հովիկ և այլն։ Ինչպես երևում է հայկական անունների հունարեն տառադարձությունից, ժամանակակից արևմտահայերեն արտասանությունը շատ հին պատմություն ունի։ Տվյալ դեպքում Կրիկորիկ Գրիգորի փոխարեն, (ապա և Պանգրատիոս Բագարատի փոխարեն, Կակիկ՝ Գագիկի, Պազուն՝ Բազունի, ինչպես նաև տեղանունների (Παιπερτ-Բայբերդի փոխարեն) վկայում են, որ X դարում, և անկասկած դրանից շատ առաջ (օրինակ Պետրոս Սիկիլիացին IX դարում հիշում է Կրիկորակես) արևմտահայերը ձայնեղ բաղաձայնները արտասանել են խուլ։ Թեև չպետք է ժխտել այն հանգամանքը, որ բյուզանդական հեղինակները ստիպված էին Գագիկը գրել Կակիկ, Բաբերդը Պայպերտ և այլն, այն պարզ պատճառով, որ հունարեն B արդեն արտասանվում էր Վ, Γ-ն՝ Ղ (կամ Յ), իսկ Δ-ն՝ th (անգլերեն this բառի մեջ)։

4 Բնագրում Ἀμερμουμνῆ, որ արաբերեն Ամիրա ալ-Մումինին-ի հունարեն տառադարձությունն է։ Նշանակում է «հավատացյալների իշխան», որի տակ ենթադրվում է արաբ խալիֆան։ Սամվել Անեցին հիշատակում է այս տիտղոսը «Ամերալմումնի» ձևով։

5 Խոսքը Լևոն VI Իմաստասերի մասին է (886—912)։

6 Նվերների ուղարկումն ուներ հատուկ նշանակություն։ Տե՛ս DAI, II, p. 160։

7 «Բարբարոս» բառը հնում չուներ այն նշանակությունը, ինչ տալիս ենք դրան այսօր։ «Բարբարոսի» տակ բյուզանդական հեղինակները նկատի ունեն ոչ հույն (կամ հռոմայեցի) ազգաբնակչությանը։ «Բարբարոս» բառը առաջացել է օտարների՝ հույների համար անհասկանալի, կոպիտ թվացող լեզվից։ Այդ մասին շատ հստակ բացատրություն է տալիս Ստրաբոնը (14, 2, 28). „οἶμαι δὲ τὸ βάρβαρον κατ'ἀρχὰς ἐκπεφωνῆσθαι οὕτως κατ ὀνοματοποιίαν ἐπὶ τῶν δυσεκφόρως καὶ σκληρῶς καὶ τραχέως λαλούντων"։

8 Արքայիկը հատուկ անուն չէ, այլ տիտղոս. Բագարատի որդի Աշոտը և նրա եղբայր Դավիթը իրենց անվանում են Արքաներ։ Տվյալ դեպքում Արքայիկի տակ ըստ Յ. Մարկվարտի և Ն. Ադոնցի ենթադրվում է Դավիթը (տես J. Markwart, Südarmenien..., S. 324; N. Adontz, Les Taronites, p. 204։ Ս. Ռենսիմենը իր հերթին, հենվելով Թովմա Արծրունու մի տվյալի վրա (Գ., 20), որտեղ ասված է, թե Դավիթը ուներ մեկ որդի՝ Աշոտին (որը Հովհաննես Դրասխանակերտցու ասելով (96) իր հոր մահից հետո ամուսնացավ Սմբատ թագավորի եղբայր Շապուհի դստեր հետ), իսկ Ծիրանածինի տվյալներով Արքայիկն ուներ երկու որդի, գալիս է այն եզրակացության, թե Ծիրանածինի Արքայիկը դա Աշոտն է, Դավիթ «Արքայիկի» որդին, և այս երկու որդիներն են, որ մանուկ հասակում գերվեցին, երբ իրենց հայրը պայքարում էր իր ժառանգության համար Գրիգորի դեմ։

9 Պատրիկը (հունարենում πατρίκιος) բյուզանդական բարձրագույն աստիճաններից մեկն էր։ 900 թվականին կազմված Ֆիլոթեոսի «Կլետորոլոգիոն»-ում (որն, ի միջի այլոց, ամբողջությամբ մտել է Ծիրանածինի «Բյուզանդական արքունիքի արարողությունների մասին» աշխատության մեջ) պատրիկները գտնվում էին 12-րդ շարքում (նա ընդամենը նշում է 18 աստիճան)։ Պատրիկների աստիճանը հաստատվել է Կոստանդին I կայսեր կողմից և հարատևել է մինչև Բյուզանդական կայսրության վերջը։ IV և V դարերում նա շատ բարձր աստիճան էր՝ հազվադեպ պարգևվող։ Հուստինիանոս I-ը պատրիկի աստիճան շնորհեց բոլոր իլլյուստրիոսներին և նրա ժամանակ պատրիկների թիվը զգալիորեն աճեց։ Նույն կայսրը կարգադրեց, որ հյուպատոս (կոնսուլ) կարող են լինել այն անձնավորությունները, որոնք արդեն պատրիկներ են աստիճանով։ Հուստինիանոս II կայսեր ժամանակ 711 թ. հանդես է գալիս մի հայազգի Վարազբակուր, Օպսիկիոն բանակաթեմի զորավար, որին Թեոփանեսը անվանում է պրոտոպատրիկիոս (πρωτοπατρίκιος) տե՛ս Theoph. Chron. p. 380), որը ցույց է տալիս, որ նա գլխավորում էր այլ պատրիկներին։ (Տե՛ս Bury, IAS, p. 27—28)։ Պրոտոպատրիկ աստիճանը հանդիպում է Գրիգոր Մագիստրոսի ՀԸ թղթի վերնագրում («պռատոսպատրիկն» ձևով)։ Տես Գրիգոր Մագիստրոսի թղթերը, Ալեքսանդրապոլ, 1910, էջ 225։

Ըստ արաբ հեղինակ Իբն Խորդադբեհի «Հռոմայեցւոց (Ալ-Ռում) պատրկաց թիվը միշտ տասներկու է, որոնց վեցը Կոստանդնուպոլիս (ալ-Կոնսթանթինիա), իսկ մնացածները գավառները կնստին։ Այս պատրիկներն են՝ պատրիկ Ամուրիայի, պատրիկ Անկիրիայի, պատրիկ Արմինիակի, պատրիկ Տարակիայի (իմա՛ Թրակիայի), որ Կոստանդնուպոլսո ետևը՝ Բորջանի (իմա Բուլղարիա) քով երկիր մըն է, պատրիկ Սիկիլիո, որ Ափրիկեի դիմաց մեծատարած կղզի ու ընդարձակ թագավորություն մըն է, պատրիկ Սարտանիայի, որ Ծովուն բոլոր կղզյացը վրա կտիրե» (տե՛ս Գեյցեր, Սկզբնավորությունք, էջ 39)։ Պատրիկների մասին մանրամասն տես R. Guilland, Les patrices byzantins sous le règne de Constantin VII Porphyrogénète, Studi bizantini e neoellenici, IX, 1957։

10 Հայկական աղբյուրներում հիշատակվում է «պռոտոսպաթար» ձևով (Սմբատ սպարապետի Պատմություն, Մոսկվա, 1856, էջ 36), «պռտոսպաթար»

(Մատթեոս Ուռհայեցի, էջ 27, 28), նաև «պրոտասպաթար» (Գրիգոր Մագիստրոս, էջ 104)։ Սկզբնական շրջանում պրոտոսպաթար տիտղոսը տրըվում էր կայսեր թիկնապահին, հետագայում դարձավ սովորական տիտղոս։ Հիշատակվում է գլխավորապես Մակեդոնական հարստության ժամանակաշրջանում։ Ֆիլոթեոսի ցուցակում պրոտոսպաթարները գտնվում էին 11-րդ շարքում։ Ինչպես վկայում է տիտղոսի առաջին պրոտո- (πρωτο-) նախածանցը, պրոտոսպաթարները կայսերական սպաթարների հրամանատարներն էին։ Հուստինիանոս I կայսեր հայազգի նշանավոր գանձապահ և զորավար ներքինի Նարսեսը, Թեոփանեսի տվյալների համաձայն (էջ 243) պրոտոսպաթար էր։ Մեզ են հասել VIII—IX-րդ դարերի բազմաթիվ պրոտոսպաթարների կնիքներ։ Տե՛ս Bury, IAS, p. 27։ Պրոտոսպաթարների մասին ավելի մանրամասն տես **R. Guilland,** Etudes sur l'histoire administrative de l'Empire Byzantine, Les titres auliques des eunuques, Le protospathaire, Byzantion, t. 25—26—27 (1955—1956—1957) fasc. 2, p. 649—695։

11 Բնագրում Ἀσώτιος։ Հայկական Աշոտ անունն է։

12 Իշխանաց իշխան Սմբատը հայոց թագավոր Սմբատ I-ն է։ Բյուզանդական հեղինակները Բագրատունյաց, ինչպես նաև Արծրունի թագավորներին անվանում են «իշխանաց իշխան»-ներ։

Բյուզանդական աղբյուրների ἄρχων τῶν ἀρχόντων-ը հայերը թարգմանում էին «շահնշահ»։ Տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, Ժամանակագրություն, Վաղարշապատ, 1898, էջ 19։

13 Բնագրում τῷ Ταρωνίτῃ։ Ծիրանածինը հաճախ իշխան Գրիգորին անվանում է պարզապես Տարոնացի, առանց անունը տալու։ Տե՛ս նաև նրա «Բյուզանդական արքունիքի արարողությունների մասին» աշխատությունը (նույն գրքի 124-րդ էջում)։

14 Բնագրում Σινούτης։ Ն. Ադոնցը ենթադրում է, որ Սինուտեսը անուն չէ, այլ ածական, որ վկայում է տվյալ անձնավորության որտեղից լինելու հանգամանքը։ Նա կարծում է, որ տվյալ անձնավորությունը սյունեցի է (—ούτης կամ —ίτης վերջածանցը հունարենում համապատասխանում է հայկական -եցի-ին)։ Պրոկոպիոս Կեսարացին (Պարսկական պատերազմի մասին, գիրք առաջին, գլուխ 15) հիշատակում է Սունիտներ —Σουνῖται անունով մի ժողովուրդ, որին Ն. Ադոնցը նույնացնում է սյունեցիների հետ և հիշատակում այս Սինուտեսի կապակցությամբ (տե՛ս Adontz, Les Taronites, p. 221, նաև DAI, II p. 162)։ Պրոկոպիոս Կեսարացու սունիտներին նույնացնել սյունեցիների հետ հազիվ թե ճիշտ է։ (Պրոկոպիոս Կեսարացին նրանց համարում՝ է ալաններին հարևան), ավելի շուտ նրանց կարելի է նույնացնել սվանների հետ։ Այդ մասին տե՛ս «Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին», Բյուզանդական աղբյուրներ, Գիրք առաջին, Պրոկոպիոս Կեսարացի, էջ 324։

15 Բնագրում Χαρτουλάριος τοῦ ὀξέως δρόμου։ Ֆիլոթեոսի ցուցակում վարչական պաշտոնեությունը բաժանված է յոթ դասի. 1. զորավարներ, 2. դոմեստիկոսներ, 3. դատավորներ, 4. սեկրետիկոսներ, 5. դեմոկրատներ, 6. ստրատարխներ և 7. հատուկ աստիճաններ։ Այդ մասին տե՛ս նույն աշխատության 156-րդ էջում։ Սեկրետական դասը առնչություն ուներ

պետական ֆինանսների հետ։ Սեկրետական դասում կային բազմաթիվ պաշտոնյաներ, այդ թվում և վերոհիշյալ օքսեոս դրոմոսի խարտուլարը, որը ենթարկվում էր դրոմոսի լոգոթետին, որը ժամանակակից տերմինով ասած հաղորդակցությունների մինիստրն էր։ Նրան էին ենթարկվում մի շարք պաշտոնյաներ. այն է դրոմոսի պրոտոնատարները, դրոմոսի խարտուլարները և վերոհիշյալ օքսեոս դրոմոսի խարտուլարը, օքսեոս դրոմոսի լոգոթետը և օքսեոս դրոմոսի կուրատորը։ Վերջիններիս տրամադրության տակ էին գտնվում վերեդոս կոչված արագավազ ձիեր։ Մանրամասն տես Κ. Ἀμάντου, Ταχυδρομικὸν σημείωμα, Ἑλληνικά, ἔτος Η΄. τεῦχος 2, Ἀθῆναι. 1935, σελ. 268—270։

Բյուրին խնդրո առարկա խարտուլարներին նույնացնում է V դարի նշանավոր հուշարձան՝ Notitia dignitatum-ում հիշատակված curiosi per omnes provincias, ինչպես և պատրիկ Պետրոսի հիշատակած χαρτουλάριοι τῶν βαρβάρων-ի հետ, որոնք մասնակցում էին պարսից դեսպանի ընդունելության արարողությանը։ Bury, IAS, p. 92 (Պատրիկ Պետրոսի աշխատությունը օգտագործվել է Կոստանդին Ծիրանածինի կողմից իր «Արարողությունների մասին» աշխատության մեջ, որի թարգմանությունը տե՛ս այս հատորում, էջ 124 և հտ. ): Կային նաև բանակաթեմերի խարտուլարներ. տես սույն աշխատության 148, 156-րդ էջերում)։ Խարտուլար բառը նույնությամբ մուտք է գործել հայոց լեզվի մեջ, դառնալով քարտուղար

16 V դարի սկզբում կուրապաղատների պարտականությունն էր հոգալ կայսերական պալատի նյութական վիճակը։ Հետագայում, մինչև X դարը, կուրապաղատը դարձավ խոշոր դեմք, և, ինչպես պատրիարք Նիկեփորն է գրում, կուրապաղատը կայսրից հետո երկրորդ մարդն էր, հասկանալի է, եթե գոյություն չուներ Կեսարը (սրա մասին տես ստորև, էջ 256)։ Լևոն VI-ը վրաց թագավոր Ատրներսեհին շնորհեց կուրապաղատի պատիվը։ Աղբյուրների տակ ենթադրվում է վրաց թագավոր Ատրներսեհը, որ աղբյուրներում կոչվում է նաև «մեծ կուրապաղատն վրաց՝ Ատրներսեհ» (Դրասխանակերտցի, էջ 184), կամ «թագաւորն վրաց Ատրներսեհ» (անդ, էջ 197)։

17 Հայ թարգման Թեոդորոսին նույնացնում են 911 թ. Կրետեի դեմ տեղի ունեցած արշավանքի ժամանակ հայկական զորաբանակներ գլխավորած «Բագարատի որդի պրոտոսպաթար Թեոդորոսի» հետ (տե՛ս «Արարողությունների մասին» աշխատության մեջ, սույն հատորի 147-րդ էջում)։ Հովհաննես Դրասխանակերտցին 913—914 թթ. ընթացքում, երբ փախստական ապաստանել էր Տարոնում, նամակով. դիմել էր բյուզանդական կայսեր՝ օգնություն հայցելով։ Կայսրը բանակցություններ վարելու համար Տարոն է ուղարկում «զոմն Թէոդորոս վասլիկոս» (Դրասխանակերտցի, էջ 284—285), որ հավանաբար նույն այս Թեոդորոսն է։ Տես Adontz, Les Taronites, p. 221—222, DAI, II, p. 162։

18 «Կայսեր պատգամավոր» է թարգմանված բնագրի «վասիլիկոս» (հունարենում βασιλικός։ Տերմինը հանդիպում է նաև հայկական աղբյուրներում, տես նախորդ ծանոթագրությունը) բառը։ Հանդիպում է նաև βασιλικοὶ ἄνθρωποι (թագավորական մարդիկ) ձևը։ Սրանք զբաղված էին գլխավորապես երկու հարցով. դիվանագիտությամբ և ներքին անվտանգության

Հարցերով և համապատասխանում են նախկին «մագիստրիանոսներին», որոնք ենթարկվում էին Magister officiorum-ին և կոչվում agentes in rebus։ Վերջիններս հարատևել էին մինչև VIII դարը, երբ նրանց անունը այլևս չի հանդիպում աղբյուրներում, իսկ նրանց պարտականությունները կատարում են վերոհիշյալ «վասիլիկոսները»։ Տե՛ս DAI, II, p. 79։ Ցահյա Անտիոքացու տվյալներով «վասիլիկոս»-ը հարկային պաշտոնյա է։ Տե՛ս Adontz, Les Taronites, p. 222։

19 Բնագրում Κωνσταντῖνος ὁ τοῦ Λιβός։ Ենթադրում են, որ Λίβος-ը Λίψ (հարավային քամի) բառից է և դա այդ Կոստանդնի ածականն է։ Նա այդպես է կոչվել իբր թե այն պատճառով, որ 908 թ. հունիսին, երբ ընդունում էր Լևոն VI կայսեր իր կողմից կառուցված մի տաճարում, փոթորիկ բարձրացավ։ Կոստանդին Լիպսը 913 թ. մասնակցել է Կոստանդին Դուկասի խռովությանը՝ ընդդեմ Նիկողայոս Միստիկոս պատրիարք-խնամակալի, ներում ստացել Զոե խնամակալ-կայսրուհու կողմից, և ի վերջո սպանվել 917 թ. Աքելոոսի ճակատամարտում։ Կոստանդին Ծիրանածինը մի տող հետո գրում է, թե այս Կոստանդինը այժմ էլ (այսինքն 952 թ.) «անթիպատ պատրիկ և մեծ հետերիարխ է», որ սխալ է համարվում։ Ռենսիմենը ենթադրում է, որ խոսքը Վարդաս Լիպսի մասին է, Կոստանդին Լիպսի որդու, որ Կեդրենոսի տվյալներով մասնակցել է 961 թ. կազմակերպված մի դավադրության (տե՛ս DAI, II, p. 162—163)։ Ն. Ադոնցը այլ եզրակացության է հանգել։ Նա գտնում է, որ եղել են երկու Կոստանդին Լիպս, որ պատմիրակությամբ Հայաստան եկողը հայրն է՝ 917 թ. սպանված՝ Ծիրանածինի ժամանակ ապրող Կոստանդին Լիպսի (տե՛ս Adontz, Les Taronites, p. 224)։ Ն. Ադոնցը, ելնելով Վարդաս Լիպսի անունից, գալիս է այն եզրակացության, որ Լիպս ընտանիքը ծագումով հայկական է եղել (տե՛ս նույն տեղում)։

20 Բնագրում δομέστικος τῆς ὑπουργίας։ Նա հավանաբար գտնվում էր ὁ ἐπὶ τῆς τραπέζης-ի (սեղանապետի) իրավասության ներքո և պատասխանատու էր կայսերական սեղանի համար։

21 «Անթիպատ պատրիկ»։ Առաջին անգամ «անթիպատ պատրիկ» տիտղոսը մենք հանդիպում ենք IX դարում, երբ կայսր Թեոփիլոսը անթիպատ պատրիկ է նշանակում հայազգի Ալեքսիոս Մուսելեին (տե՛ս Theoph. Cont. p. 108)։ Ինչպես Բյուրին է կարծում, սա ցույց է տալիս, որ այս ժամանակ այլևս անթիպատոսների աստիճան չկար։ Հայկական աղբյուրներից Ստեփանոս Տարոնացին ցույց է տալիս, որ անթիպատ պատրիկի աստիճան ուներ Շապուհ Բագրատունի պատմիչի հայրը («որպէս ուսուցանէ քեզ պատմութիւնն Շապհոյ Բագրատունւոյ, որդւոյ Աշոտայ անթիպատրիկի» Ասողիկ, էջ 138)։ Հ. Աճառյանը (Արմատական բառարան, հատ. Ա, էջ 328) սխալմամբ հայկական աղբյուրներում հանդիպող «անթիպատրիկ»-ը որ անթիպատ պատրիկի բառերի միացումից է առաջացել կրկնվող մեկ «պատ»-ի կրճատմամբ (միակցված հանդիպում է և հունարենում ἀνθυποπατρικίους, de Cer., p. 485), բացատրում է «փոխ-պատրիկ», ըստ երևույթին «անտիպատրիկ կարդալով (հունարենում ἀντι նշանակում է փոխարեն, ի տեղի), մի տիտղոս, որ գոյություն չի ունեցել։ Անթիպատ պատրիկ տիտղոսը հանդիպում է հայերեն վիմական արձանագրություններում։ Անթիպատ պատրիկ էր Վահրամ Պահլավունին Մարմաշենի կա-

ռուցողը (XI դար) և Վեստ Սարգիս Սյունեցին (Վիմական տարեգիր, էջ 16, 17)։ Անթիպատոսը համապատասխանում է հռոմեական շրջանի proconsul-ին։ Ավելի մանրամասն տես Guilland, Proconsul, p. 5—41։

22 Մեծ հետերիարխ էր կոչվում մեծ հետերիայի, օտարերկրացիներից բաղկացած կայսերական թիկնապահ զորքի հրամանատարը։

23 Արաբական տիրապետության ազդեցությամբ հայերի մոտ արաբական անունները բավականին լայն տարածում էին գտել։ Բայց արաբական անուն կրող անձնավորությունները միաժամանակ ունենում էին երկրորդ՝ քրիստոնեական անուններ։ Ապոգանեմը (հունարենում 'Απογανεμ. արտասանվում էր Ապողանեմ) դա արաբական Աբու Ղանիմն է, որի քրիստոնեական անունը սակայն հայտնի չէ։ Ըստ Ն. Ակինյանի, դա հայկական աղբյուրներում հանդիպող Ապուղամր անունն է։ Տես Ակինյան, Մատ. հետ. հատոր Դ, էջ 77 և հտ.), որը քիչ է հավանական։

24 Խոսքը Խալդիա (Χαλδία) խաղտիքի բանակաթեմի մասին է։ Բանակաթեմի մասին մանրամասն տե՛ս Ծիրանածինի «Բանակաթեմերի մասին» աշխատության ութերորդ բաժինը (սույն աշխատության 170-րդ էջում։ Խաղտիքի բանակաթեմը ստեղծվել է VIII դարի երկրորդ կեսին, Արմենիակների բանակաթեմի վերակառուցման կապակցությամբ։ Տարածվում էր Սև Ծովի հարավ-արևելյան ափերին, նախկին Պողեմոնյան Պոնտոսի շրջաններում։

25 Կրիկորիկի Կոստանդնուպոլիս ժամանելու մասին Ծիրանածինը, առանց նրա անունը տալու, հիշատակում է նաև իր «Արարողությունների մասին» աշխատության մեջ (տե՛ս սույն աշխատության 123-րդ էջում, որտեղ մանրամասն նկարագրվում է կայսերական ընդունելությունը սուրբ Բարսեղի (հունվարի 1) տոնի օրը, որին մասնակցում էր նաև մագիստրոսը, Տարոնի իշխանը իր շքախմբով)։ Ուսումնասիրողների մի մասը գտնում է, որ խոսքը այս Կրիկորիկի մասին է։ Ընդունելության տարեթվի շուրջը բյուզանդագետների մոտ բավականին սուր վեճեր են գնացել։ Ուսումնասիրողները գտնում են, որ եթե այդ ընդունելությունը տեղի է ունեցել Լևոն VI-ի թագավորության ժամանակ, ապա դա եղած պիտի լինի 900 թվականի հունվարի 1-ին (Ծիրանածինը նշում է թվական՝ 3-րդ ինդիկտիոն, որ կարող է համապատասխանել 899/900, 914/915, 929/930 թվականներին), իսկ տվյալ 43-րդ գլխում պատմված դեպքերը կարող են տեղի ունեցած լինել 896—899 թթ. ընթացքում։ Ն. Ադոնցը իր մի հոդվածի առաջին մասում ընդունում է, որ տվյալ անձնավորությունը Կրիկորիկն է (տե՛ս Adontz, Les Taronites, p. 198)։ «Արարողությունների մասին» աշխատության մեջ ցույց է տրվում, որ Տարոնի իշխանին ընդունեցին «կայսրերը», հետևաբար հիմքեր չկան «Կայսրության կառավարման մասին» աշխատության տվյալ գլխում հիշատակվող կայսեր տակ անպայման տեսնել Լևոն VI-ին։ Ռենսիմընը գտնում է, որ այդ կայսրերի տակ կարելի է ենթադրել Լևոնին և Ալեքսանդրին, որոնք միասին են թագավորել, ապա նաև Ռոմանոս I-ին, նրա որդիներին և փեսային։ «Արարողությունների մասին» աշխատության մեջ ցույց է տրված, որ Տարոնի իշխանի ընդունելությանը մասնակցել են նաև «բուլղար բարեկամները», որոնց ավելի հարմար է տեսնել 927 թվականից հետո ընկած տարիներին։ Այդպիսով, Տարոնի իշխանի Կոստանդնուպոլիս ժամանելը ընկնում է 929/930 թթ. և հասկանալի է, չի կարող խոսք լինել Գրիգորի մասին։ Ավելի շուտ դա

վերաբերում է Գրիգորի որդուն՝ Բագարատին (տե՛ս DAI, II, p. 163)։ Ռենսիմենի ենթադրությունը վիճելի է, քանի որ Բագարատին Ծիրանածինը պատրիկ է անվանում և ոչ մագիստրոս։ A. Vogt-ը ևս գտնում է, որ այդ դեպքը տեղի է ունեցել 929/930 թթ., բայց գտնում է, որ խնդրո առարկա անձնավորությունը Գրիգորն է և որ վերջինս մեռել է 930 թ. հետո, ելնելով այն բանից, որ բոլոր տարոնացիների թվում միայն Գրիգորն է «մագիստրոս» անվանվում։ Տե՛ս Vogt, Commentaire, I, p. 153—154։

26 Մագիստրոսը բյուզանդական բարձրագույն տիտղոսներից մեկն էր։ Դրանից բարձր տիտղոսները շնորհվում էին միայն կայսեր ազգականներին։ VIII դարում և IX դարի առաջին կեսում միաժամանակ մագիստրոս կարող էին լինել երկու հոգուց ոչ ավելի։ Նրանցից մեկը Սենատի նախագահն էր և կոչվում էր պրոտոմագիստրոս (πρωτομάγιστρος), ինչպես և κεφαλὴ τοῦ σεκρέτου։ Կայսեր բացակայության դեպքում այս պրոտոմագիստրոսը պրեպոզիտոսի և պրեֆեկտի հետ կառավարում էին երկիրը։ Միքայել III-րդի ժամանակ է, որ մագիստրոսների թիվն ավելացավ։ Կոստանդին Ծիրանածինի թագավորության վերջին շրջանում մենք հանդիպում ենք չորս մագիստրոսների, որոնք են՝ Հովհաննես Կուրկուասը, Կումասը, Ռոմանոս Սարոնիտեսը և Ռոմանոս Մուսելեն։ Տե՛ս Bury, IAS, p. 31—32։ «Մագիստրոսը» ամենաբարձր տիտղոսն էր, որ կարող էր շնորհվել օտարերկրացուն։ Բյուզանդական արքունիքն ընդհանրապես խուսափում էր ավելի բարձր տիտղոսներ տալ օտարներին։ Այդ հանգամանքը շատ հետաքրքիր ձևով մեկնաբանված է Կեկավմենոսի «Խորհուրդներ կայսեր» աշխատության մեջ (XI դարի երկրորդ կես) և որպես օրինակ է բերված Վասպուրականի Սենեքերիմ թագավորի դեպքը։ «Ես քեզ մի բան էլ եմ ասելու, տեր սուրբ,—գրված է այնտեղ,—Սենեքերիմը, դու գիտես, որ հին թագավորներից էր սերում։ Նա ցանկացավ իր երկիրը տալ ծիրանածին տեր Վասիլ կայսեր, և դառնալ նրա ծառան։ [Վասիլն] ընդունեց պարգևը և նրան մագիստրոսի աստիճանով պատվեց, բայց ոչ ավել, թեպետև [Սենեքերիմը] թագավոր էր՝ հին թագավորներից սերող» (տե՛ս Cecaumeni Strategicon et incerti scriptoris De officiis regiis libellus, ediderunt B. Wassiliewsky—V. Jernstedt, Petropoli, 1896, p. 96)։ Շատ հետաքրքիր կերպով է մեկնաբանում դա նույն հեղինակը և ավելորդ չէ նրա խոսքերը այստեղ մեջբերել։ «Օտարերկրացիներին,—գրում է նա,—եթե նրանք նույնիսկ իրենց երկրի թագավորական զարմից սերեն, բարձր աստիճաններ մի՛ շնորհիր, ոչ էլ վստահիր նրանց բարձր պաշտոններ։ Հակառակ դեպքում դու և՛ քեզ կխայտառակես այդպես անելով և՛ քո հռոմայեցի իշխանավորներին։ Եթե դու, օրինակի համար [կայսրություն] եկած օտարերկրացուն շնորհես պրիմիկերիոսի կամ զորավարի աստիճան, ապա հռոմայեցի զորավարին ի՞նչ [ավելի] աստիճան կարող ես շնորհել։ Բոլոր դեպքերում նրան թշնամացնելու ես, Իսկ [օտարերկրացու] երկրում էլ, երբ լսեն, որ իրենց [հայրենակցին] նման աստիճան ու պաշտոն են տվել, բոլորը ծիծաղելու են և ասելու, թե մեզ մոտ նա ոչինչ էր, գնաց Ռոմանիա և արժանացավ նման աստիճանի, պարզ է, որ Ռոմանիայում հարմար մարդ չկար, դրա համար է, որ մեր [հայրենակիցը] այդպես բարձրացավ» (Նույն տեղում, էջ 95)։

27 IX—X դարերում զորավարը (ստրատեգոս) բանակաթեմի բացարձակ կառավարիչը չէր, ինչպես VIII դարի սկզբում։ Ստրատեգոսը գլխավորում էր բանակաթեմի զորքերը և իր զինվորների դատավորն էր, բայց քաղաքացիական վարչությունը գտնվում էր իրենից անկախ գտնվող պրետորի կամ բանակաթեմային դատավորի (κριτής) ձեռքում, որին հիշում է և Արիստակես Լաստիվերցին։ Վասիլ Բ-ը Հայաստանում «տիրէ բազում գաւառաց և բերդից և քաղաքաց։ Եւ կացուցանէ ի վերայ նոցա գործակալս և դատաւորս և վերակացուս» (էջ 24)։ Հմմտ. «դատաւորն որ ունէր զհոգս արևելից» (նույն տեղում, էջ 106)։ Երբ Թոնդրակեցիները ջարդեցին Բազմաղբյուրի խաչը և դրությունը Մանանաղիում բարդացավ, «առաքի և Թագաւորէն դատաւոր իրաւանց աշխարհին» (նույն տեգում, էջ 130)։ Այդ «դատավորը» պարտավոր էր բանակաթեմում տիրող դրության մասին ուղղակի կայսեր զեկուցել։ Տե՛ս История Византии, том II, стр. 169։ Նա պրովինցիաներում կայսեր ներկայացուցիչն էր, որ նշանակվում էր կայսեր կողմից։ Նա որպես կանոն ունենում էր պատրիկի կամ անթիպատ պատրիկի բարձր աստիճանը։ Ավելի հազվադեպ են դեպքերը, երբ զորավարի պաշտոնը տրվում էր պրոտոսպաթարին։ Զորավարի պարտականությունն էր պաշտպանել նահանգի սահմանները թշնամիների հարձակումներից, ինչպես և ճնշել ներքին խռովություններն ու ապստամբությունները։ Զորավարին էին ենթարկվում մի շարք ավելի ցածր աստիճանավորներ, ինչպես տուրմարխները, դրունգարները, կոմեսները և այլն՝ ռազմական գործերում, և դատավորներ, բանակաթեմի խարտուլարներ, պրոտոմանդատորներ քաղաքական գործերում։ Աղբյուրներում զորավար է անվանվում (գերագույն զորավար) բյուզանդական կայսրը, իսկ բանակաթեմերի մնացած զորավարները այդ դեպքում հանդես են գալիս որպես ենթազորավարներ՝ ὑποστράτηγοι։ Լևոն Զ-ի ռազմագիտական երկում (Տակտիկա) զորավարի (ստրատեգոսի) մասին ասված է. «Ստրատեգոս է կոչվում համայն բանակի գլխավորը և առաջնորդը։ Իսկ հյուպոստրատեգոս (փոխզորավար) է կոչվում նրան անմիջապես ստորադասը։ Հին ժամանակներում ստրատեգոսներին հյուպոստրատեգոս էին կոչում այն պատճառով, որ գլխավոր ստրատեգոս և տեր էր համարվում կայսրը և յուրաքանչյուր բանակաթեմի զորավարը նրա ներկայացուցիչն էր։ Ահա այդ պատճառով ստրատեգոսը հյուպոստրատեգոս էր կոչվում, իսկ ստրատեգոս էր կոչվում գլխավորապես ամենքին գլխավորելու ուղարկվող կայսեր ներկայացուցիչը, որի համար բանակաթեմերի ստրատեգոսները հյուպոստրատեգոսներ էին։ Այժմ հյուպոստրատեգոսներ չկան, այլ այդպես են կոչվում միայն մերարխները»։ Տե՛ս Leonis imperatoris Tactica, col. 701։ Նահանգների զորավարներին նշանակում էր կայսրը երեք կամ չորս տարի ժամկետով, որի ընթացքում նրանք առանց կայսեր կարգադրության իրավունք չունեին հեռանալ նահանգի սահմաններից, բացի, հասկանալի է, պատերազմական դրության պայմաններում՝ արշավանքի ժամանակ։ Նահանգներից բացի, զորավարներ են հիշատակվում առանձին ամրոցներում և քաղաքներում (Մանրամասն տե՛ս Ahrweiler, Recherches, p. 38 sqq.)։ Զորավար աստիճանի հիշատակությունը Տարոնի իշխանի կապակցությամբ վկայությունն է այն մասին, որ Ծիրանածինի երկի գրության ժամանակ Տարոնը Բյուզանդիան համարում էր իր անբաժանելի մասը, թեև

այն ձևականորեն գրավվեց բյուզանդացիների կողմից միայն 966/967 թթ. (տե՛ս DAI, II, p. 164)։

28 Բնագրում „οἶκος τοῦ Βαρβάρου", ենթադրում են, որ բարբարոսը՝ Վասիլ պարակիմոմենոսի ածականն էր։ Այս տունը պատկանելիս է եղել Ասպարին, կայսրը տվել է Վասիլ Մակեդոնացուն, ապա Ապոգանեմին և վերջապես Կրիկորիկին։ Տան տեղադրությունը հայտնի չէ։ Տե՛ս Janin, Const. byz. p. 298։ Վասիլ պարակիմոմենոսը Ռոմանոս I կայսեր ապօրինի որդին էր։ Նա ծառայել է հինգ կայսրերի և պարակիմոմենոս էր 945-ից մինչև 959 թ.։ Պաշտոնանկ արվեց 985 թ. Վասիլ II կայսեր կողմից։ Սրբոց վարքում ցույց է տրված, որ գոյություն ուներ նաև Կոստանդին բարբարոսի տուն, որ գտնվում էր Արկադիոսի հրապարակի մոտ (տե՛ս DAI, II, p. 164)։

29 Պարակիմոմենոսի պաշտոնի մասին մանրամասն տես «Վասիլ I կայսեր կենսագրության» 50-րդ ծանոթագրությունը։

30 Տաս լիտր ոսկին հավասար է 720 ոսկեդրամի՝ դահեկանի։ Տաս լիտր միլիարիսիա՝ տաս լիտր արծաթ դրամ։ Մեկ միլիարիսիոնը հավասար էր ոսկեդրամի 1/12 մասին։ Այդքան էր մագիստրոսի ռոճիկը։

Կայսրության՝ օտարերկրացիներին հռոգ (ռոճիկ) տալու սովորությունը գալիս է ավելի վաղ ժամանակներից։ Այդ մասին մի կարևոր վկայություն է պահպանել Սեբեոսը։ Նա ցույց է տալիս, որ բյուզանդական կայսր Կոստանդ II-ը (641—668) իր թագավորության 12-րդ տարին դիմեց հայոց իշխան Թեոդորոս Ռշտունուն, առաջարկելով հրաժարվել արաբների հետ կնքած դաշինքից։ Այդ բանի դիմաց կայսրը հայոց իշխանին խոստանում էր հռոգ (ռոճիկ). «Ես գամ առ ձեզ,—գրում էր կայսրը,—և տամ ձեզ աւգնութիւն հռոգի» (տե՛ս Սեբէոսի եպիսկոպոսի Պատմութիւն. Երևան, 1939, էջ 141)։ Ծիրանածինը հռոգը համարում է պարգև, ընծա (δῶρον)։ Գ. Աբգարյանը Սեբեոսի բնագրին առաջարկում է մի ուղղում. «աւգնութիւն ՀՌ ոգի», որ իբր Կոստանդ կայսրը Թեոդորոս Ռշտունուն խոստանում է 70.000-անոց զորք (տես նրա «Սեբեոսի պատմությունը» և Անանունի առեղծվածը, Երևան, 1965, էջ 149—198)։ VII դար կեսերից սկսած մինչև IX դարի երկրորդ կեսը Բյուզանդական կայսրությունը հայ իշխանների հետ անմիջական շփման մեջ չէր կարող մտնել այն պարզ պատճառով, որ Հայաստանը գտնվում էր արաբական տիրապետության ներքո։ IX դարի վերջերից, երբ այդ հնարավորությունը տրվեց, Կայսրությունը վերահաստատեց հայ իշխաններին հռոգ (ռոճիկ) տալու վաղեմի սովորությունը և հնարավոր է, որ կայսերական ռոճիկ առաջինն ստացավ Տարոնի իշխան Գրիգորը։ Այդ ռոճիկը այնքան մեծ նշանակություն ուներ, որ դրան արժանանալու էին ձգտում ոչ միայն Շիրակի հայ Բագրատունիները, այլև վրաց կուրապաղատն ու Վասպուրականի Արծրունիները։

31 Հայերի, ինչպես նաև վրացիների իշխանավորների ձգտումը խնամիական կապեր հաստատելու բյուզանդական արքունիքին մոտիկ կանգնած ընտանիքների հետ բավական տարածված երևույթ էր։ Այդ սովորությունը գալիս է ավելի վաղ ժամանակներից։ Պրոկոպիոս Կեսարացին լազերի թագավոր Գուբազեսի կապակցությամբ գրում է. «Դեռ վաղուց լազերի թագավորները Բյուզանդիոն մարդ էին ուղարկում և կայսեր համաձայնությամբ խնամիանում սենատորների հետ ու իրենց համար կին բերում։

Գուբազեսն, անկասկած, հռոմայեցի կնոջ որդի է» (տե՛ս Պրոկոպիոս Կեսարացի, Գոթական պատերազմի մասին, Գիրք Դ, գլուխ 9)։

32 Խրիսովուլլը (χρυσόβουλλον. χρυσῆ βοὺλλα), նշանակում է ոսկե կնիք, դրոշմ, որ կախված էր լինում պաշտոնական գրության ծայրից։ Հասցեատիրոջ գրված դիրքի, աստիճանի համաձայն, այն լինում էր մեկից մինչև չորս սոլիդ կշիռ ունեցող (այդ մասին տե՛ս «Բյուզանդական արքունիքի արարողությունների մասին» բաժնում, էջ 150)։ Խրիսովուլլ միաժամանակ նշանակում էր կայսեր հրովարտակը, կարգադրությունը, իր կողմից ստորագրված և կնքված։ Խրիսովուլլը հայկական աղբյուրներում կոչվում է «ոսկե մատանի» (որտեղ մատանին «կնիք» նշանակություն ունի) և նրա հիշատակությանն ենք հանդիպում վիմական արձանագրություններում։ Այսպես, Անիի կառավարիչ Ահարոն Բուլղարը 1056 թ. Անի է բերում կայսրուհու մի հրամանը. որոշ հարկերի վերացման մասին, որը հաստատված էր «ոսկե մատանեաւ» (տե՛ս Դիվան հայ վիմագրության, հատ. Ա, կազմեց Հ. Օրբելի, Երևան, 1966, էջ 38)։

Խրիսովուլլը «ոսկե մատանի» է կոչված նաև Գրիգոր Մագիստրոսի Կեչառիսի տաճարի պատի վրա թողած արձանագրության մեջ։ Տե՛ս Կ. Կոստանյանց. Վիմական տարեգիր, էջ 23։ Գրիգոր Մագիստրոսի թղթերում (էջ 104) խրիսովուլլը կոչված է «կնիք ոսկեղէն» ինչպես և «ոսկե մատանի» (նույն տեղում)։ Խրիսովուլլ բառը Չմշկիկի՝ հայոց Աշոտ Գ թագավորին ուղղած նամակում չի թարգմանված. «բայց խոսովօլօնն, զոր յուղարկեցաք. տուր տանել առ զօրավարն մեր»։ (Բնագրում գրիչների կողմից թույլ է տրված աղավաղում և «խոսովօլօնն» բառի առաջին երկու տառերը՝ խո ընդունվելով որպես թվական՝ քառասուն հազար, ենթադրվել էր, որ խոսքը քառասուն հազար օվոլոսների մասին է։ Սխալը շատ սրամտորեն ուղղեց Ն. Ադոնցը։ Տե՛ս նրա Notes armeno-byzantines, *II*, La lettre de Tzimisces au roi Ashot (Ašot), Etudes armeno-byzantines Lisbonne, *1965*, p. *145*։ Ինչպես հայտնի է, Չմշկիկի թուղթը պահպանվել է Մատթեոս Ուռհայեցու «Ժամանակագրության» մեջ։ Տե՛ս էջ 27։

Կնիքները լինում էին նաև արճիճից և կոչվում մոլիվդովուլներ (μολυβδόβουλλον)։ Երբ Ծիրանածինը ընդգծում է, որ «Բարբարոսի տունը» տրվեց Ապոդանեմին «առանց խրիսովուլլի» նշանակում է, որ կայսրը իրավունք ուներ ցանկացած ժամանակ այն ետ վերցնել, մի բան, որ նա չէր կարող անել, եթե տունը տրված լիներ խրիսովուլլով (տե՛ս նաև Adontz, Notes *I*, p. *147*)։

33 Ռոմանոս I Լեկապենոս (919—944), Կոստանդին Ծիրանածինի աները։

34 Բնագրում Κελτζηνή, խոսքը Եկեղյաց գավառի մասին է, որ հունական աղբյուրներում հանդես է գալիս նաև ᾿Ακιλισηνή ձևով։ Կելցենեն Միջագետք բանակաթեմի մի տուրման էր, որի կենտրոնն էր ժամանակակից Երզնկան։

35 Պրոաստիոն (հունարենում προάστειον, հանդիպում է նաև հայկական սկզբնաղբյուրներում պռաստ, պռաստին և պռաստնոց ձևով) հին հունարենում նշանակել է քաղաքի արվարձան։ Միջնադարում դա կալված էր, որտեղ որպես կանոն բնակվում էին ոչ թե վերջինիս տերերը, այլ նրանց ենթակա մարդիկ՝ ստրուկներ, վարձակալողներ, և ուրիշներ։ Պրոաստիոնն հաճախ ունենում էր հսկայական չափեր։ Ավելի մանրամասն տե՛ս Г. А. Острогорский, Византийский податной устав, Сборник статей,

посвященных памяти Н. П. Кондакова, Прага, 1926, стр. 121: *Համտ. նաև Հ. Բարթիկյան, Եվստաթիոս Բոյիլասի կտակը (1059), որպես Հայաստանի և Վրաստանի պատմության կարևոր սկզբնաղբյուր, Բանբեր Մատենադարանի, հտ. 5, 1960, էջ 421, ծանոթ. 19։ Նաև* А. П. Каджан, Формирование феодального поместья в Византии X в., Византийский Временник, т. XI, 1956, стр. 100—101:

36 *Տաճատին հիշատակում է Թեոփանեսի Շարունակողը, ցույց տալով, որ նա մի մեծահարուստ հայ էր* (Τατζάτης *(տպված է* Τατζάκης) Ἀρμενιοπλούσιος πάνυ), *որ միացավ իր ազգակից Վարդաս Բոյիլասին, Խաղտիք բանակաթեմի զորավարին 923 թ. բարձրացրած ապստամբությանը ընդդեմ Ռոմանոս I կայսեր։ Ապստամբները գրավում են Բաբերդը։ Ապստամբությունը ճնշում է մի այլ հայ՝ սխոլերի դոմեստիկոս Հովհաննես Կուրկուասը, որը կուրացնում է ապստամբության պարագլուխներին և բռնագրավում նրանց ունեցվածքը։ Տաճատը ամրացած էր մի շատ անառիկ բերդում, բայց անձեռնմխելիության մասին երաշխիքներ ստանալով, հանձնվում է, գնում Կոստանդնուպոլիս և Թեոփանեսի Շարունակողի ասելով մանգլավիտ դառնում Մանգանայում։ Բայց երբ փորձում է փախուստի դիմել, ձերբակալվում է և կուրացվում (տե՛ս* Theoph. Cont., p. *404)։ Ն. Ադոնցը ապստամբությունը թվագրում է 921 թ., Կուրկուասի դեպի Դվին կատարած արշավանքի թվականով։ Ռենսիմենը հակադրվում է Ադոնցին, գրելով, որ Կուրկուասը 922 թ. առաջ հավանաբար դոմեստիկոս չէր։ Ենթադրվում է, որ խոսքը վերոհիշյալ Տաճատի բռնագրավված կալվածների մասին է (տե՛ս* DAI, *II*, p. *164*; Adontz, Les Taronites, p. *217)։*

37 *Տե՛ս 13 ծանոթագրությունը։*

38 *Թեոփանեսի Շարունակողը (էջ 372, 384) հիշատակում է ոմն Գրիգորաս Իբերիցեսի, Կոնստանդին Դուկասի աներոջ, որ 913 թ. ապստամբություն բարձրացրեց։ Ն. Ադոնցը այս Գրիգորաս Իբերիցեսին նույնացնում է Ծիրանածինի հիշատակած Գրիգորասի հետ (տես* Adontz, Les Taronites, p. *219)։ Ռենսիմենը առաջ քաշելով այն փաստը, որ Իբերիցեսը այնուհետև վանական է դառնում, և որ փաստ չունենք, որ նա Կելցենեում կալվածներ է ունեցել, այդ երկու անձնավորությունների նույնացումը համարում է կասկածելի (տե՛ս* DAI, *II*, p. *164), մի բան, որ իհարկե ընդունել չի կարելի։ Իբերիցեսը կարող էր որպես պատիժ, բռնի վանական դարձվել։ Ինչ վերաբերում է նրա ազգությանը, ապա, ըստ Ն. Ադոնցի, նա վրացադավան հայ էր և «Իբերիցես» (միջնադարում արտասանվում էր Իվիրիցես) հայերեն «իբերացի-վրացի» բառի հունարեն գրությունն է (տե՛ս* Adontz, Les Taronites, p. *219)։*

39 *Բնագրում* Βασπαραχᾶ*։ Խոսքը Վասպուրականի մասին է և Վասպուրականի Գագիկ Արծրունի թագավորի (908—943)։ Բյուզանդական աղբյուրներում Վասպուրականի գրության ձևերը տարբեր են։* Βασπραχανία, Βασπραχᾶ, Ἀσπραχανία*։ Գագիկին Ծիրանածինն այստեղ անվանում է* ἄρχων*-իշխան։ Իր «Արարողությունների մասին» աշխատության մեջ նրան անվանելով* ἄρχων *ավելացնում է, որ նա այժմ, այսինքն վերոհիշյալ գրքի գրության ժամանակ, «իշխանաց իշխան» էր, այն է թագավոր (տե՛ս նույն աշխատության 151 էջում)։*

40 Իբերիայի կուրապաղատի և ընդհանրապես վրացիների մասին Ծիրանածինը խոսում է «Կայսրության կառավարման մասին» աշխատության 45 և 46 գլուխներում։

41 Խոսքը հայոց թագավոր Աշոտ Երկաթի մասին է (913—929)։ Ծիրանածինը նրան Աստիկ է անվանում։ Աշոտ Երկաթի մասին հատուկ ուսումնասիրություն է գրել Ն. Ադոնցը։ Ašot Erkat ou de Fer, roi d' Arménie de 913 à 929, EAB, p. 265—283։

42 Բնագրում παχτον։ Նշանակում է նաև հարկ։ Հայկական սկզբնաղբյուրներում այդ բառը հանդիպում է ընդամենը մեկ անգամ՝ Ահարոն Մագիստրոսի 1056/1057 թ. թողած արձանագրության մեջ, որ փորագրվել է Անիի մայր տաճարի պատին։ Ավելի մանրամասն այդ մասին տե՛ս Հ. Բարթիկյան, Ահարոն Մագիստրոսի արձանագրության մեջ հիշատակվող հարկերի մասին, Պատմա-Բանասիրական հանդես, 1959, № 4։

43 Բնագրում προϊχα։ Նշանակում է նաև նվեր, ընծա։

44 Կրինիտեսների՝ ծագումով հայ ընտանիքը կարևոր դեր է խաղացել Բյուզանդական կայսրության մեջ։ Ն. Ադոնցի ենթադրությամբ նրանց անունը կապված է Դեգիկում (Չորրորդ Հայք) գտնվող Կոնի վայրի անվան հետ։ Տե՛ս **Adontz**, Les Taronites, p. 229։

«Կրինիտես» մականվան վերաբերյալ կարելի է առաջ քաշել գուցե ավելի հավանական մի ենթադրություն։ Կրինիտեսն արդյոք հունարեն թարգմանությունը չէ՞ «Ակնցի»-ի. Չէ՞ որ հունարեն χρήνη (կրենե, արտասանվում է կրինի) նշանակում է աղբյուր, ակն, իսկ կրինիտես՝ ակնցի։ Եթե ընդունենք Ակնի կառուցման մասին պատմագրության մեջ տիրապետող դարձած թվագրումը՝ Վասպուրականի թագավոր Սենեքերիմի գաղթը (1021), պարզ է, որ մեր ենթադրությունը անհիմն կլիներ, քանի որ Կրինիտեսները հիշվում են դրանից շատ առաջ։ Բայց սխալված Ակնի կառուցման մասին այդ թվագրումը ճիշտ չէ, Ակնը 1021 թ. գաղթից առաջ էլ գոյություն է ունեցել և այդ բանը հաստատում է բյուզանդական «Դիգենիս Ակրիտաս» էպոսը։ Այդ էպոսի տվյալների համաձայն էպիկական Կարոեսը (այն է պատմական Կարբեասը, պավլիկյան առաջնորդը, որ մեռել է 863 թ.) ի թիվս այլ քաղաքների, ավերել է նաև ՚Αχινα-ն, որ ոչ այլ ինչ է, քան Ակնը, ժամանակակից Էգինը։ Տե՛ս H. **Grégoire**, Ο Διγενης ᾽Αχριτας, Ἡ βυζαντινὴ ἐποποΐα στὴν ἱστορία χαὶ στὴ ποίηση New York, 1942, σελ. 54։

Կրինիտես ազգանունը կրող անձնավորությունը առաջին անգամ հանդիպում է IX դարում։ Դա նշանավոր Ալեքսիոս-Մուսելեն է (Մուշեղ), Թեոփիլոս կայսեր փեսան և կայսրության կեսարը։ Թեոփանեսի Շարունակողը պարզ վկայում է, որ նա հայ էր. ὁ δ᾽ἀνὴρ τῆς τῶν Κρηνιτῶν κατήγετο γενεᾶς, χώρας τῆς τῶν ᾽Αρμενίων, ᾽Αλέξιος τοὔνομα, Μουσελὲ τὴν ἐπωνυμίαν. Theoph. Cont. p. 107։ Այդ նույն անունով (Ալեքսիոս Մուսելես) VIII—X դարերում հիշատակվում են չորս հոգի, իսկ Կրինիտես մականունով հիշվում են հինգ հոգի ևս՝ Պրոկոպիոս, Գեորգ, Արոտրաս, Արևալոմ և Պասխալիոս Կրինիտները։ 1065 թ. հիշատակվում է մի վերջին Կրինիտես՝ Մելիտենեի կատեպանը (մանրամասն տե՛ս **Adontz**, Les Taronites, p. 225—229)։ Հետաքրքրական է նշել, որ Կոստանդնու-

պոլսի պատրիարք Եսայասի (1323—1334) երկու նամակներում ուղղված Կիլիկիայի հայոց թագավորին և կաթողիկոսին (Լևոն V և Կոստանդին IV Լամբրոնացի) նշված է, որ վերջիններիս հետ բանակցություններ վարելու համար Բյուզանդական կառավարությունն ուղարկել է Միքայել Կալլիկրինիտեսին, որը, հնարավոր է, պատկանում էր Կրինիտեսների ընտանիքին (տե՛ս Հ. Բարթիկյան, Նոր նյութեր Կիլիկիայի հայկական պետության և Բյուզանդիայի փոխհարաբերությունների մասին, Բանբեր Մատենադարանի, հատ. 4, 1958, էջ 293)։

45 Բնագրում Παγκράτιος։ Բագարատ անվան բյուզանդական արտահայտությունը։

46 Այս Թեոփիլակտոսի մասին տե՛ս N. Adontz, Les Taronites, p. 229—230։

47 Բնագրում κομμερκιάριος, այսինքն կոմմերկիոնի (κομμέρκιον կամ κουμμέρκιον. լատ. commercium) պաշտոնյան։ Կոմմերկիոն էր կոչվում մաքսատունը, ինչպես նաև մաքսը։ Բյուզանդացիների մոտ կային չորս կարգի «կոմմերկիոն». «կայսերական», այսինքն պետական, «բանակաթեմային», այսինքն բանակաթեմերին պատկանող, նահանգային և քաղաքային։ Աղբյուրներում հիշատակվում են «ընդհանուր», «կայսերական», «մեծ» կոմմերկիարիոսներ, որոնք Հուստինիանոս կայսեր ժամանակ ունենում էին ապոհյուպատոսի կամ ապոէպարքոսի տիտղոսներ։ Նրանք որպես կանոն հաստատվում էին նավահանգիստներում և գլխավոր առևտրական ճանապարհների վրա, ապա և պետական պահեստներում, որտեղ վաճառելու կամ արտահանելու նպատակով բերվում էին գլխավորապես գյուղատնտեսական մթերքներ՝ նահանգներից կամ բանակաթեմերից։ «Կոմմերկիոն» բառը մինչև օրս էլ պահպանվել է նույնիսկ թուրքերենում՝ գոմրյուկ ձևով։ Բյուզանդական մաքսերի և մաքսատների մասին մանրամասն տե՛ս վերջին մասնագիտական ուսումնասիրությունը. H. Antoniadis—Bibicou, Recherches sur les douanes à Byzance, L' "octava", le „kommerkion" et les commerciaires, Paris, 1963։

48 Պսոմաթիան կամ Պսամաթիան Կոստանդնուպոլսի մի թաղամասն էր։ Գտնըվում էր քաղաքի արևմտյան մասում, Մարմարայի ափին, Ոսկե դռների մոտ։ Այժմ կոչվում է Սամաթիա (տե՛ս Janin. Const. byz. p. 384)։

49 Բնագրում Οὐλνούτιν։ Համապատասխանում է հայկական Ողնուտին կամ Եղնուտին, Տարոնի հյուսիս-արևմուտքում։

## ԳԼՈՒԽ 44

1 Ծիրանածինի «Կայսրության կառավարման մասին» աշխատության 44-րդ գլուխը մասնավոր քննության է ենթարկված հետևյալ ուսումնասիրություններում. Markwart, Südarmenien..., S. 299—306, 505—508, Canard, Les Hamdanides, p. 80 sqq.

2 Բնագրում՝ Περὶ τῆς χώρας τῆς Ἀπαχουνῆς։ Ծիրանածինը այստեղ կանգ է առնում Ապահունիքում հաստատված և այնտեղ տիրող կայսիկ ամիրաների պատմության վրա։ Կայսիկները որպես Ապահունիքի տեր են հիշ-

վում IX դարի 60-ական թվականներից, թեև այնտեղ էին գաղթել VIII դարի վերջին՝ Հարուն ալ-Ռաշիդի խալիֆայության օրոք։ Տե՛ս Տեր-Ղևոնդյան, Ամիրայությունները, էջ 96 և հտ.։

3 Բնագրում՝ Μαντζικίερτ։ Խոսքը Մանազկերտի մասին է։ Ավելի հին շրջանում կոչվում էր Մանավազակերտ, այժմ Մելազգերդ։ Մանազկերտում էր հաստատված Սուլայմ ցեղին պատկանող ամիրայական տունը, որ հայկական աղբյուրներում կոչվում է Կայսիկներ։ Մանազկերտը Ապահունիքի կենտրոնն էր։ Տե՛ս նախորդ ծանոթագրությունը։

4 Բնագրում՝ Περκρί։ Հայոց Բերկրին է, որ խնդրո առարկա ժամանակաշրջանում գտնվում էր արաբական Ութմանիկ ամիրաների տիրապետության ներքո։ Արաբական տարրն այստեղ բավական ուժեղ էր նույնիսկ IX դարի 30-ական թվականներին, երբ նրանք կատաղի դիմադրություն ցուցաբերեցին Բյուզանդիայի դեմ մղվող պայքարում։ Տե՛ս Տեր-Ղևոնդյան, Ամիրայությունները, էջ 201—202։

5 Բնագրում τοῦ Χλιάτ καὶ τοῦ Χαλιάτ (պիտի լինի τοῦ Χλιάτ τοῦ καὶ Χαλιάτ) Ծիրանածինը տալիս է Խլաթի հայկական (Խլաթ) և արաբական՝ (Ախլաթ) անվանումները։ Խլաթը ևս պատկանում էր կայսիկներին։ Տե՛ս Տեր-Ղևոնդյան, Ամիրայությունները, էջ 104։

6 Բնագրում՝ ῎Αρζες։ Հայոց Արճեշն է, Տուրուբերանի Աղիովիտ գավառում։ Արճեշի անունով Վանա լիճը երբեմն կոչվել է Արճեշի ծով (տե՛ս Երեմյան, Հայաստանը, էջ 39)։ Արճեշը խնդրո առարկա ժամանակաշրջանում գտնվում էր կայսիկների ձեռքում (տե՛ս Տեր-Ղևոնդյան, Ամիրայությունները, էջ 144)։

7 Բնագրում Τιβί, հաջորդ 45-րդ գլխում Τιβίον։ Դվին քաղաքն է։ Պրոկոպիոս Կեսարացու մոտ այն անվանված է Դուվիոս (Δούβιος)։ Տե՛ս «Պարսկական պատերազմի մասին», Գիրք Բ, գլ. 30։

8 Բնագրում Χέρτ։ Պարսկահայք նահանգի IX գավառը՝ Հերը, կենտրոնը՝ Հերը, այժմ Խոյ։

9 Բնագրում Σαλαμάς (Սալմաստ)։ Պարսկահայքի VIII գավառ Զարեհավանը։ Տե՛ս Երեմյան, Հայաստանը, էջ 52։

10 Բնագրում Τζερματζοῦ։ Նույնանում է Վանա լճի հարավում գտնվող Ջերմաձորի հետ՝ Մոկքում (Honigmann, Die Ostgrenze, S. 147, 197)։ Մարկվարտը (Südarmenien, S. 305), Կանարը (Les Hamdanides, p. 81, նույնի Histoire, p. 475, n. 230), և Ռենսիմենը (DAI, II, p. 168), ենթադրում են, որ խոսքը Սերմանցի մասին է՝ Հարքի հյուսիս-արևմուտքում։ Հմմտ. Տեր-Ղևոնդյան, Ամիրայությունները, էջ 144։

11 Հայոց թագավոր Աշոտ I Բագրատունին (886—890)։

12 Բնագրում ʼΑποσάτα։ Ոստիկան Յուսուֆ արու Կասիմ իբն արու Սաջը (901—919)։

13 «Իշխանաց իշխան» Սմբատը հայոց Սմբատ I թագավորն է, որ Յուսուֆի հրամանով «յետ... անհնարին և դառն կտտանացն և խոշտանգանաց և քրտնահար աշխատութեանց՝ հատանէին սրով զգլուխ նորա» (Դրասխանակերտցի, էջ 240)։

14 Բնագրում ʼΑσώτιος։ Աշոտ II Երկաթ թագավոր Հայոց (913—929)։ Նախորդ գլխում Ծիրանածինը նրան անվանում է Աշոտիկ (ʼΑσωτίκιος)։

15 Բնագրում 'Απασάκιος։ Ինչպես ցույց է տալիս Բանդուրիուսը Ծիրանածինի սույն աշխատության ձանոթագրություններում (տե՛ս Ծիրանածինի երկերի Բոննյան հրատարակությունը, էջ 372) ձեռագրերում հանդիպում է 'Απασίκιος— Աբասիկ գրության ձևը, որն ավելի ճիշտ է։ Խոսքը Հայոց թագավոր Աբասի մասին է, Սմբատ II-ի որդու և Աշոտ II Երկաթի եղբոր։ Հայոց թագավոր դարձավ Աշոտ II-ի մահից հետո (929—953)։ Նա Բագրատունիների մայրաքաղաքը Երազգավորսից տեղափոխեց Կարս։ Ծիրանածինը նրան մագիստրոս է անվանում և երբեք նրան «իշխանաց իշխան» (այսինքն թագավոր) չի ճանաչել։ Տվյալ ժամանակամիջոցում «իշխանաց իշխան» էր ճանաչում Վասպուրականի թագավոր Գագիկ Արծրունուն։ Աբասի քաղաքականությունը ավելի արաբասիրական էր (Հմմտ. DAI, II, p. 168)։

16 Εἰς τὴν μεγάλην 'Αρμενίαν, εἰς τὸ κάστρον τὸ Κάρς։ Ծիրանածինի սույն գլխի գրության ժամանակ ճիշտ է, որ Բագրատունիների մայրաքաղաքը Կարսն էր։ Բայց Կարսը, ինչպես ասացինք, մայրաքաղաք դարձավ Աբասի ժամանակ, որին սակայն բյուզանդացիները «իշխանաց իշխան» տիտղոսը չտվեցին, իսկ տվյալ դեպքում Ծիրանածինը «իշխանաց իշխան»-ի նստավայրը համարում է Կարսը և նկատի ունի Աբասից առաջ թագավորածներին։ Ծիրանածինի մոտ պարզապես անախրոնիզմ է։

17 Բնագրում 'Απελβάρτ, Ապահունիքի արաբ ամիրա Աբուլ Վարդ I-ը, որ երկրին տիրեց 860-ական թվականներին։ Հայտնի է նաև հայկական աղբյուրներից։ Թովմա Արծրունին նրան հիշատակում է Ապլբառ ձևով, Գրիգոր Նարեկացին իր թղթում՝ Ապլվարդ ձևով։ Վերջինիս տվյալների համաձայն, Ապլվարդը հալածել է Թոնդրակեցի աղանդավորներին, որոնք հենց Ապահունյաց գավառի Թոնդրակ գյուղում էին առաջացել և սպանել նրանց առաջին աղանդապետ Սմբատ Զարեհավանցուն (տե՛ս Գիրք Թղթոց, էջ 498, 500)։ Աբուլ Վարդի և Թոնդրակեցիների փոխհարաբերությունների մասին մանրամասն տե՛ս Հովհաննիսյան, Դրվագներ Գիրք Ա, էջ 341 և հտ.։ Աշ. Հովհաննիսյանը Աբուլ Վարդի հանդես գալու ժամանակը շուրջ 30 տարով առաջ է բերում։ Տե՛ս Տեր-Ղևոնդյան, Ամիրայությունները, էջ 98։ Աբուլ Վարդը իր արտացոլումն է գտել բյուզանդական Դիգենիս Ակրիտաս էպոսում 'Απλορράβδης ձևով։ Տե՛ս Բարթիկյան, Բյուզանդական վիպերգությունը։

18 Ա. Տեր-Ղևոնդյանը գտնում է, որ Հայոց թագավոր Աշոտ I-ի Աբուլ Վարդ I-ին Խլաթը, Արճեշը և Բերկրին շնորհելու մասին ասվածը փաստերի գիտակցական խեղաթյուրում է Ծիրանածինի կողմից, հետագայում կատարված իրողությունը ավելի վաղ շրջանին վերագրելու ձգտում, որովհետև X դարում կայսիկները Բյուզանդիային որոշ չափով ենթակա էին դարձել, և Ծիրանածինը իր այդ խորամանկությամբ ուզում է ցույց տալ, որ նշված քաղաքներն էլ դեռևս Աբուլ Վարդ I-ի ժամանակ գտնվում էին Բյուզանդիայից վասսալական կախման մեջ։ Ծիրանածինը այդ մասին պարզ ասում է մի քիչ հետո. «Քանի որ,—գրում է նա,—իշխանաց իշխանը (հայոց թագավորը Հ. Բ.) հռոմայեցիների կայսեր ծառան է [վասալը] համարվում, որովհետև [կայսրն] է նշանակում նրան և ընձեռում այդ պաշտոնը, ապա պարզ է, որ նրա տիրապետության տակ գտնվող ամրոցները, քաղաքներն ու գյուղերը հանդիսանում են հռոմայեցիների կայսեր

[սեփականությունը]»։ Կայսրկների Հայոց արքային վասսալական կախման մեջ լինելու հանգամանքը Կանարը կասկածելի է համարում (Canard. Histoire p. 476)։ Հայոց թագավորն էլ անվանապես էր Բյուզանդիայի վասսալը (DAI, II, p. 170)։ Փաստ է, որ, օրինակի համար, Բերկրին Աշոտ I-ի օրոք, նույնիսկ նրա որդի Սմբատ 1-ի օրոք գտնվում էր Ութմանիկների ձեռքում, այնինչ Ծիրանածինը այն ես սխալմամբ դնում է Աբու Վարդի իշխանության ներքո։ Տե՛ս Տեր–Ղևոնդյան, Ամիրայությունները, էջ 97։

19 Բնագրում 'Απελχαμίτ — Abd al-Hamid։

20 Բնագրում 'Αποσεβατᾶ — Abu Sawada։

21 Բնագրում 'Απολεσφουετ — Abu-l-Aswad։

22 Բնագրում 'Αποσελμης — Abu Salim։

23 Խոսքը Հովհաննես Կուրկուասի մասին է (տե՛ս 45-րդ գլխի 19-րդ ծանոթագրությունը)։ Բյուզանդական բանակը կազմված էր հետևյալ զորամասերից. 1. Նահանգական զորքերից, որոնք ընդհանուր անվամբ կոչվում էին «Թեմատա» (θέματα). այսինքն բանակաթեմային, որոնց գլխավորում էին յուրաքանչյուր բանակաթեմի զորավարները։ Ամենագլխավոր բանակաթեմը «Անատոլիկոնն» էր։ 2. Կայսերական զորքերից, որոնք կոչվում էին «տագմատա» (τάγματα). որոնք չորսն էին. սխոլաններ, էքսկուբիտոններ, վիգլաններ և հիկանատոսներ, որոնց գլխավորում էին համապատասխանաբար սխոլերի դոմեստիկոսը, էքսկուբիտոնների դոմեստիկոսը, վիգլայի դրունգարը և հիկանատոսների դոմեստիկոսը։ (Մատթեոս Ուռհայեցու «Ժամանակագրության» մեջ պահպանվել է Հովհաննես Չմշկիկ կայսեր մի ընդարձակ թուղթը հասցեագրված հայոց Աշոտ Գ Ողորմած թագավորին, որտեղ կայսրը ամենայն մանրամասնությամբ խոսում է իր քաջագործությունների մասին Ասորիքում, Պաղեստինում և Փյունիկեում։ Խոսելով Տրիպոլիս քաղաքի գրավման մասին, նա ի միջի այլոց ասում է. «Եւ յառաջ քան զհասանիլն մեր ի Տրապօլիս հեծելազօրս առաքեցաք զթիմացիսն և զՏաշխամատացիսն ի կապանն որ կոչի՝ Քարերես» Մատթեոս Ուռհայեցի, Ժամանակագրություն, Վաղարշապատ, 1896, էջ 25։ Ընդգծված բառերը ոչ այլ ինչ են, քան խնդրո առարկա «թեմատիկոս» և «տաղմատիկոս» զորամասերը։ Այդ մասին մանրամասն տե՛ս Հ. Բարթիկյան. Մատթեոս Ուռհայեցու Ժամանակագրության մեջ հանդիպող մի քանի բյուզանդական տերմինների մասին, «Լրաբեր հասարակական գիտությունների», № 3, 1969)։

Սխոլարիոսները գիշեր-ցերեկ ծառայում էին կայսեր Մեծ պալատում։ Լինելով զինվորներ, նրանք ապրում էին սովորական քաղաքացիների պես։ Նրանց զորաբանակը կայսերական զորքի ամենակարևոր մասն էր կազմում, և համալրվում էր օտարերկրացիներից։ Պրոկոպիոս Կեսարացին ցույց է տալիս, որ Զենոն կայսեր ժամանակ սխոլարիոսները միմիայն հայերից էին բաղկացած (տե՛ս Գաղտնի պատմություն», գլուխ 24, 16)։ Սխոլանները 7 մասից էին բաղկացած, որի յուրաքանչյուրը բաղկացած էր շուրջ 500 մարդուց, այնպես որ սխոլանների զինվորների ընդհանուր թիվը 3500 մարդ էր։ «Սխոլերի դոմեստիկոսը» առաջին անգամ հիշատակվում է Թեոփանեսի ժամանակագրության մեջ 767 թ. դեպքերի կապակցությամբ։ Ավելի վաղ շրջանում սխոլերի դոմեստիկոսի անվան փո-

խարեն համընկնում է magister officiorum տերմինը։ Պատերազմի ժամանակ, սակայն, սխոլերի դոմեստիկոսը դառնում էր զորքերի գլխավոր հրամանատարը։ Նա գլխավորում էր մեծ արշավանքները, այն ժամանակ, երբ կայսրը անձնապես չէր մասնակցում դրանց։ X դարում սխոլերի դոմեստիկոսի իրավունքները ընդարձակվում են։ Նա լինելով հանդերձ սխոլերի զորահրամանատարը, միաժամանակ Փոքր Ասիայի բոլոր զորքերի զորահրամանատարն էր, և նա արդեն սկսում է կոչվել ὁ δομέστικος τῶν σχολῶν τῆς 'Ανατολῆς (τῆς ἑώας. τῶν ἑώων ταγμάτων)։ Նիկեփոր Փոկասը նախքան կայսր դառնալը Արևելքի զորավար էր և սխոլերի դոմեստիկոս (τῶν τῆς 'Ανατολῆς στρατευμάτων κατάρχοντα (Δομέστικον τῶν σχολῶν Ῥωμαῖοι ἀρχὴν τὴν τοιαύτην ἐπιφημίζουσιν). Leonis Diaconi Historiae, Bonnae, 1828, p. 7)։ Ավելի մանրամասն տես Ռ. Գիյանի արժեքավոր հոդվածը. Etudes sur l'histoire administrative de Byzance. Le domestique des scholes, Revue des Études Byzantines, t. VIII, 1950, p. 5—63։ Համմտ. նաև Հ. Հյուբշման, Հայկականք, «Բազմավեպ» 1902, էջ 213։

24 Բնագրում Κοργ. VII դարի «Աշխարհացույց»-ում Կորի։ Համապատասխանում է Կորոյ Ձորին, Տուրուբերան նահանգի 15-րդ գավառը։ Ընդգրկում էր Կորոյ Ձոր գետի (այժմ Քյոռ-սու դերեսի) հովիտը՝ Խաչլու լճի շրջանը ներառյալ (տե՛ս Երեմյան, Հայաստանը, էջ 61, 108)։Ըստ Մ. Կանարի, Կորին արաբական աղբյուրներում անվանվում է al-warak (տե՛ս Les Hamdanides, p. 80)։

25 Բնագրում Χαρκά։ Հարք գավառն է, արաբ. al-Hark։ Տուրուբերան նահանգի 9-րդ գավառը։ Համապատասխանում է այժմյան Բուլանխ շրջանին։ Երեմյան, Հայաստանը, էջ 62։

26 Բնագրում ἀνεψιός. որ նշանակում է և եղբորորդի, և քրոջորդի։ Կարող է նշանակել նաև հորեղբորորդի։ Նրա հոր անունը տալիս է Իբն ալ-Ազրակը, անվանելով նրան որդի Աբդ առ-Ռահմանի, որը հասկանալի է, դառնում է Աբդ ալ-Համիդի՝ երեք եղբայրներ՝ Աբու Սևադայի, Աբուլ Ասվադի և Աբու Սալիմի հորեղբայրը։

27 Բնագրում 'Αχμετ։ Իբն Ազրակի տվյալներով Համդանյան ամիրայական տան նշանավոր ներկայացուցիչ Սայֆ ալ-Դաուլան 939 թ. աշնանը արշավանքի դուրս եկավ դեպի Հայաստան և Մանազկերտի վրայով հասավ Կարին։ Նա գրում է. «Ասվում է, որ երբ հարյուր քսանութ թվականին (հոկտեմբեր 939—սեպտեմբեր 940) Սայֆ ալ-Դաուլան Մայյաֆարիկինից (Նփրկերտ) ուղղվեց Հայաստան և իջավ Թայթուանայում (Դատվան), որը լճի վրա է։ Եվ կանչեց իբն Ջաչիկ իբն ալ-Դայրանիին (Գագիկ որդի Դերենիկի), Անմատ իբն Աբդ ալ-Ռահման Աբու-լ-Մուիզզին՝ Խիլաթի, Դատ ալ-Ջաուզի (Արծկե), Արջիշի (Արճեշ) և Բարքարիի (Բերկրի) տիրոջը, Աբդ ալ-Համիդին՝ Մանազջերդի (Մանազկերտ) և Դաշտ ալ-Ուարքի ու ալ-Հարքի տիրոջը...» և այլն։ (Թարգմանությունը Տեր-Ղևոնդյանի, տե՛ս Ամիրայությունները, էջ 152)։ Այս տեղեկության հիման վրա Մարքվարտը գտնում է, որ Ահմադ իբն Աբդ ալ-Ռահման Աբու-լ Մուիզզը մի մարդ է և նույնանում է Ծիրանածինի Ախամետի հետ։ Դա հաստատվում է այն փաստով, որ այն վայրերը, որոնք Իբն Ազրակի մոտ վերագրվում են Աբու-լ-Մուիզզին ճշտությամբ նույնանում են Ծիրանածինի մոտ Ախա-

մետին վերադրված վայրերին և որ նույն բնագրում այլևս չի հիշատակվում Ահմադը, այլ միայն Աբու-լ Մուիզզը, ով, ի դեպ ասած, չի նույնանում Ծիրանածինի հիշատակած Ապելմուզե-ի հետ, որի մասին կայսրը հիշատակում է մի քիչ հետո (տե՛ս DAI, II, p. 169)։

28 Բնագրում 'Αλ-Ζιχέ։ Հայոց Արծկեն, արաբների Դատ ալ Ջաուզ (որտեղից ժամանակակից Ալջավազ կամ Աղիլջեվազ անունը), Խլաթի և Արճեշի միջև, Բզնունիք գավառում (տե՛ս Երեմյան, Հայաստանը, էջ 39)։

29 «Իսկ սրա մահից հետո էլ Մանցիկկերտին և վերոհիշյալ բոլոր շրջաններին տիրացավ Ապոսևատայի և Ապոսելֆուետի երրորդ եղբայր Ապոսելմին։ Բայց ինչպես տեսանք վերևում մեջ բերված ծանոթագրության մեջ (№ 27) Իբն ալ-Ազրակը 940 թ. Մանազկերտի տեր է համարում Աբդ ալ-Համիդին, որն, ինչպես գիտենք Ծիրանածինից, Աբու Սալիմի հայրն էր։ Ուսումնասիրողները առաջարկում են Աբդ ալ Համիդի անվան առաջ ավելացնել «իբն» բառը, որ նշանակում է «որդի» և գրել Աբու Սալիմ իբն Աբդ ալ Համիդ—(Աբու Սալիմ որդի Աբդ ալ Համիդի), որով հաստատվում է Ծիրանածինի ծննդաբանական ծառը (տե՛ս DAI, II, p. 169, նաև Տեր-Ղևոնդյան, Ամիրայությունները, էջ 154)»։

30 Բնագրում 'Αβδεραχείμ Abd ar-Rahim։

31 Բնագրում 'Απελμουζε Abu al-Muizz։

32 Աբուլ Վարդ II-ը։ Նա իշխանության գլուխ անցավ 940 թ. հետո։ Ծիրանածինի սույն երկի գրության ժամանակ (952) Աբուլ Վարդ II-ը դեռ իշխանության գլուխ էր։

33 «Հորեղբայր Ապոլեսֆուետ»։ Բնագրում θεῖος, որ հորեղբայր է նշանակում, բայց իրականում խոսքը հորեղբորորդու մասին է։

## ԳԼՈՒԽ 45

1 «Քարթլիս ցխովրեբայի» համաձայն Բագրատունիների անմիջական նախահայրը Սողոմոն անունով մի հրեայի որդին էր, որ ազգակցական կապ ուներ սուրբ Հովսեփի եղբայր Կլեոպասի հետ։ Կլեոպասից 27 սերունդ հետո, VI դարի կեսերին, Սողոմոնի յոթ որդիները դալիս են Եկեղյաց գավառը Ռաքել թագուհու մոտ և մկրտվում։ Սրանցից երեքը խնամիական կապեր են հաստատում հայ թագավորական տների հետ, իսկ մնացած չորսը, որոնց մեջ էր և Գուրամը կամ Գուարամը, անցնում են Վրաստան՝ Բակուր III-ի (557—570) ժամանակ։ Այս Գուարամը դարձավ վրաց թագավոր և կուրապաղատ 575—600 թթ.։ Նրան հաջորդած որդին՝ Ստեփանոսը, որ թագավորեց 600—619 թթ. Հերակլիոս կայսեր դաշնակիցն էր (տե՛ս Ն. Ադոնց, Բագրատունյաց փառքը, էջ 103—107, նաև Մարկվարտ, Վրական Բագրատունյաց ծագումը, էջ 93—95, DAI, II, p. 171—172)։

Բագրատունիների հրեական ծագման վարկածը հայ հեղինակներից պահպանել է Մովսես Խորենացին (Ա., 22, 23), հենվելով Մար-Աբասի վրա. «Առ սովաւ (Հրաչեայի—Հ. Բ.) գրում է նա,—ասեն կեցեալ զնաբուգոդոնոսոր արքայ Բաբելացւոց, որ գերեաց զՀրեայս։ Եւ սորա ասեն

զմի ի գլխաւորաց Եբրայեցւոցն գերելոց խնդրեալ ի Նաբուգոդոնոսորայ՝ Շաբաթ անուն, ածեալ բնակեցոյց յերկրիս մերում մեծաւ պատուով. և ի սմանէ ասէ պատմագիրն լինել ազգն Բագրատունեաց, և հաւաստի է»։

Պատմաբանների մոտ Բագրատունիների ծագման հարցը վիճելի է մնացել։ Ն. Ադոնցը միանգամայն մերժում է նրանց հրեական ծագումը, ցույց տալով, որ Սողոմոնի մասին գրույցը հորինվել է XI դարում (նույն տեղում, էջ 109)։ Ռենսիմենը (DAI, II, p. 172) գտնում է, որ Բագրատունիների հրեական ծագումը հնարավոր է, որ պատճառ չկա կասկածելու դրա վրա, որ բազում հրեաներ էին հաստատվել Հայաստանում, որոնք ունեին ժառանգական ղեկավարներ, որոնք իրենց ծագումը բերում էին Դավթից, որ Բագրատունիները, նաև Ամատունիները, կարող են պատկանել այդ հրեա գաղթականներին։ Կ. Թումանովը Բագրատունիներին վերագրում է ուրարտական կամ խուրիտո-սուբարյան ծագում։

Վրաց Բագրատունիները ծագում են հայոց պատրիկ Աշոտ Բագրատունուց (որ 748 թվականին կուրացվեց Մամիկոնյանների կողմից)։ Այդ մասին ամենաարժանահավատ աղբյուրն է Վարդան պատմիչը։ Նա գրում է. «Յայնմ ժամանակի աղմկեալ Իսմայելի ընդ միմեանս, հանգչէր երկիրս Հայոց, և սկսան զօրանալ իշխանքն մեր յիւրաքանչիւր իւր տեղիս։ Եւ տայր իշխանն Իսմայէլի Աշոտի որդւոյ Ատրներսեհի որդւոյ Վասակայ, որդւոյ Աշոտոյ Հայոց իշխանի՝ զերկիրն Վրաց. որոյ երթեալ հնազանդեցուցանէ ինքեան. և կայսր առաքէ նմա պատիւ կիւրապաղատութեան» (Հաւաքումն Պատմութեան Վարդանայ վարդապետի, Վենետիկ, 1868, էջ 77)։ Սա կատարվել է IX դարի 10-ական թվականներին (տե՛ս Մարկվարտ, Վրական Բագրատունյաց ծագումը, էջ 105—106)։ Մի այլ տեղում Վարդանը գրում է. «սմա [այսինքն Աշոտ Բագրատունուն, որ կուրացվեց 748 թ.] լինին երկու որդիք, Սմբատ՝ նախնի թագաւորացն Հայոց, և Վասակ սկիզբն թագաւորացն Վրաց. որոյ որդին Ատրներսեհ, սորա Աշոտ, սորա Բագարատ, որոյ եղբայրն Գորամ, հետ սմա՝ Դաւիթ որդի Բագարատայ՝ որ սպանաւ ի Գորամայ հօրեղբօրէ իւրմէ որոյ որդին Ատրներսեհ, սորա որդի Դաւիթ. սմա եղբօրորդի Գուրգէն, որոյ որդին Բագարատ, որ առ իւր կին դդուստր Սենեքերիմայ թագաւորին Վասպուրականի» (Նույն տեղում, էջ 81—82)։

Վրաց Բագրատունիների մասին ընդհանրապես և Ծիրանածինի նրանց վերաբերող տվյալների մասին մասնավորապես տես նաև M. Brosset, Additions et Eclaircissements a l'Histoire de la Georgie, depuis l'antiquite jusqu'en 1469, St.-Petersbourg, 1851, Addition IX, p. 138 sqq.

2 Ծիրանածինը ցույց տալով, որ վրացիների մոտ արենակցական կապ ունեցող մարդկանց միջև ամուսնությունն արգելված չէր, չի մեղանչում իրականության դեմ։ Դա իսկապես որ այդպես էր և այդ ժամանակվանից կան բազմաթիվ փաստեր։ Տե՛ս Toumanoff,, The Bagratids, p. 25։

3 Բնագրում Σπανδιάτης։ Ռենսիմենը սխալմամբ ենթադրում է, որ Սպանդիատ անունը Սմբատ կամ Շամբաթ (հայկական առասպելի համաձայն՝ Բագրատունյաց նախահայրը այսպես էր կոչվում) անունից է ծագում, կամ էլ կապ ունի հայկական «սպանդ» (որտեղից ըստ նրան՝ Սպանդունիք)

բառի հետ (DAI. II, p. 171)։ Իրականում դա Սպանդարատ անունն է, որ պահլավերենում դարձել է Spandyat, ինչպես Ծիրանածինի մոտ և նշանակում է «սրբատուր»։ Սպանդիատ անունը հանդիպում է և հայերի մոտ դեռևս IV դարից (տե՛ս Աճառյան. Անձնանունների բառարան հատոր Դ, Երևան, 1948, էջ 597—598։ Հմմտ. նաև F. Justi, Iranisches Namenbuch, Marburg. 1895, S. 308)։

4 Հերակլիոս կայսեր (610—641) պարսկական արշավանքների մասին տե՛ս Հ. Մանանդյան. Հերակլ կայսեր պարսկական արշավանքների ընթացուղիները (մարշրուտները), Քննական տեսություն հայ ժողովրդի պատմության հատոր Բ, Բ մասի նյութեր, Երևան, 1960, էջ 141—172։

5 Վրացիների կապերը Երուսաղեմի հետ շատ ավելի վաղ են, քան Բագրատունյաց հարստության հաստատումը Վրաստանում։ Ուշ շրջանի ավանդության համաձայն, վրաց առաջին քրիստոնյա թագավոր Միրիամը ուխտի է գնացել Երուսաղեմ։ Շուրջ 470 թ. Երուսաղեմ այցելեցին Վախթանգ թագավորը իր մոր և քրոջ հետ։ Պրոկոպիոս Կեսարացու տվյալներով, Հուստինիանոս կայսրը սամարացիների ապստամբության ճնշումից հետո վերակառուցեց երկու վանք, որոնք հավանաբար կառուցված էին Վախթանգ թագավորի կողմից (Կառուցումների մասին, Ե., 9)։ Վրացիները հետագայում ևս սերտ կապերի մեջ էին Երուսաղեմի հետ։

6 Ինչպես Մարկվարտն է ցույց տվել, Ծիրանածինի մոտ Դավթի սերնդի շարքը սխալ է։ Հիմնվելով վրաց պատմության և Վարդան պատմիչի տվյալների վրա, նա ապացուցել է, որ պիտի լինի ոչ թե Դավիթ, Բագարատ, Աշոտ, Ատրներսեհ, այլ Աշոտ, Բագարատ, Դավիթ, Ատրներսեհ։ Տե՛ս Աղոնց. Բագրատունյաց փառքը, էջ 96—97։ Ընդ որում Դավիթը (Աշոտը) ոչ 452 և ոչ էլ 552 թվականի անձնավորություն է, այլ VIII դարի վերջի և IX դարի սկզբի։

7 Խոսքը, իհարկե, Ծիրանածինի հոր, Լևոն VI իմաստասեր կայսեր մասին է (886—912 թթ.)։ Ատրներսեհ կուրապաղատը որդին էր Դավթի (և ոչ Աշոտի, ինչպես գրում է Ծիրանածինը) և թագավորել է 881—923 թթ.։ Նրա մասին առատ նյութ կա Հովհաննես Դրասխանակերտցու Պատմության մեջ։ Հայոց կաթողիկոսը Յուսուֆի ասպատակությունների ժամանակ հենց այս Ատրներսեհի մոտ էր ապաստան գտել։

8 Ծիրանածինի մոտ պահպանված վրաց Բագրատունիների մասին առասպելի կեղծիքը երևում է տվյալ փաստի մեջ։ Դուրս է գալիս, որ 400—500 տարվա ընթացքում գոյություն է ունեցել առասպելական Դավթի ընդամենը երեք սերունդ. Բագարատ, Աշոտ, Ատրներսեհ։ Ծիրանածինը թեև հաշվել է իր օրից (աշխարհի արարչագործության 6460 թ. համապատասխանում է մ. թ. 925 թ.), այնուամենայնիվ, վրաց Բագրատունիների տոհմածառը հասցնում է մինչև իր հոր օրերը՝ Լևոն VI ժամանակները, երբ Ատրներսեհը նրա կողմից արժանացավ կուրապաղատի պատվին (տե՛ս նաև Աղոնց. Բագրատունյաց փառքը, էջ 95—96)։

9 Ինդիկտիոնը (լատ. indictio) տասնհինգ տարվա շրջան է։ Ե՞րբ է սկիզբ առել ինդիկտիոններով հաշվելը, հայտնի չէ։ Նրա օգտագործումը վերականգնեց Կոստանդին I կայսրը, ինդիկտիոնի առաջին տարին հաշվելով 312 թ.։

10 Կոստանդին Ծիրանածին (913—959) և նրա որդի Ռոմանոս II-ը, որը հոր մահից հետո թագավորեց մինչև 963 թ.։

11 Բնագրում Φασιανή։ Հունական և բյուզանդական աղբյուրներում այդպես է հիշատակվում Այրարատի I-ին գավառ Բասենը (Բասեան)։ Մենանդրոսի մոտ հանդիպում է և Βασσιανή գրության ձևը։

12 Բյուզանդական աղբյուրներում այս բանակաթեմի գրության երկու ձև է հանդիպում, τὸ Ἀρμενιακόν (այսինքն θέμα—բանակաթեմ) և τὸ Ἀρμενιακῶν կամ τῶν Ἀρμενιακῶν (ենթադրվում է τὸ θέμα τῶν Ἀρμενιακῶν), որ իմաստային տեսակետից տարբեր են։ Τὸ Ἀρμενιακόν նշանակում է Արմենիակոն (հայկական) բանակաթեմ, իսկ τὸ Ἀρμενιακῶν կամ τῶν Ἀρμενιακῶν—Արմենիակների (այսինքն հայերի) բանակաթեմ։ Հմմտ. Հովհաննես Դրասխանակերտցի (էջ 17—18). «որ շուրջ զմեօքն են ազգք՝—... Արմանեակս զմեզ անուանեն»։

Արմենիակների բանակաթեմի մասին տե՛ս Ծիրանածինի «Բանակաթեմերի մասին» աշխատության մեջ, ինչպես և ծանոթագրությունը նրա վերաբերյալ (սույն աշխատության 167-րդ էջում)։

13 Զորավար պատրիկ Լալակոնը այլ աղբյուրներից հայտնի չէ։ Մեզ է հասել ոմն Լևոն Լալակոնի կնիքը, որը հիշվում է որպես կուրապաղատ և դուքս Արմենիակների բանակաթեմի։ Նույն մարդը մի այլ աղբյուրում (859 թ. հունվարին տեղի ունեցած դեպքերի կապակցությամբ) հիշվում է որպես «նումերոնի դոմեստիկոս», որը հասկանալի է, չի կարող նույնանալ Ծիրանածինի Լալակոնի հետ, բայց կարող է սրա ազգականը լինել։ Ծիրանածինը մնացած զորավարների անունները չի տալիս, բայց այդ ժամանակ Միջագետքի զորավարը հավանաբար Օրեստեսն էր, որին Ծիրանածինը հիշատակում է այս աշխատության մի այլ տեղում։ Լալակոնի գլխավորությամբ եղած արշավանքը թվագրվում է 901 թ.։ Լալակոն անունը հունական չէ։

14 Կոլոնիայի բանակաթեմի մասին մանրամասն տե՛ս Ծիրանածինի «Բանակաթեմերի մասին» աշխատության մեջ, ինչպես և նրան վերաբերող ծանոթագրությամբ (սույն աշխատության 170-րդ էջում)։

15 Միջագետքի բանակաթեմի մասին տե՛ս «Բանակաթեմերի մասին» աշխատության մեջ (սույն աշխատության 170-րդ էջում)։

16 Խաղտիք բանակաթեմի մասին տե՛ս «Բանակաթեմերի մասին» աշխատության մեջ (սույն աշխատության 170-րդ էջում)։

17 Մագիստրոս Կատակալոնի տակ ենթադրվում է Լևոն Կատակալոնը, որը 896 թ. Բուլգարոֆիգոնի ճակատամարտում պարտություն կրեց բուլղարների կողմից։ Այդ մասին հիշատակում է Թեոփանեսի Շարունակողը, ցույց տալով, որ Լևոն VI կայսրը Կատակալոնին նշանակելով զորքերի ընդհանուր հրամանատար, ուղարկում էր ցար Սիմեոնի դեմ։ (Theoph. Cont., p. 359—360)։ Կատակալոնի արշավանքը դեպի Թեոդոսուպոլիս տեղի ունեցավ 902 թ.։ XI դարում իր գործունեությամբ փայլած Կատակալոն Կեկավմենոսը ազգակցական կապ ուներ այս Կատակալոնի հետ։ [Լևոն] Կատակալոնը Թեոփանեսի Շարունակողի մոտ հիշատակվում է որպես δομέστικος τῶν σχολῶν ὁ μάγιστρος։ Նույն ձևով նա հիշատակվում է նաև Ծիրանածինի մոտ։

18 Թեոդոսուպոլիսն այն ժամանակ գտնվում էր արաբների ձեռքում (տե՛ս Տեր-Ղևոնդյան, Ամիրայություններ, էջ 160 և հտ.)։

19 Հայազգի զորավար Հովհաննես Կուրկուասի Դվինի [Տիվի] արշավանքը, ըստ Ասողիկի տվյալների, թվագրվում է 922 թ.։ Ստեփանոս Տարոնացին գրում է, որ Ռոմանոս Լեկապենոս կայսրը. իր թագավորության երկրորդ տարին «գումարեաց զօր բազում և դեմեսլիկոս (իմա՛ δομέστικος) առաքեաց ի Դուին քաղաք յորում էր Սպքի ամիրայ որ զԱշոտ Շահնշահ օգնական իւր արկ ի քաղաքն։ Եւ եկեալ զօրն Յունաց՝ պաշարեցին զԴուին և ոչ կարացեալ ստանանել դարձան անդրէն» (Ասողիկ, էջ 170)։ Ռեն-սիմենը և ուրիշներ, ենթադրելով, որ Կուրկուասը 922 թ. չէր կարող դոմեստիկոս եղած լինել, դվինյան արշավանքը Թեոփանեսի Շարունակողի տվյալների հիման վրա թվագրում են 927 թ. (DAI. II, p. 164, 174)։ Բյուզանդական աղբյուրները մեծ գովեստով են խոսում Կուրկուասի մասին, ընդգծելով նրա հայկական ծագումը (ἐκ γένους τῶν 'Αρμενιακῶν ἦν)։ Նրա ծննդավայրը է հիշվում ἀπὸ Δοκιαν χωρίου Δαβιδοῦν. հայրը եղել է շատ հարուստ պալատական։ Կուրկուասը սուրբ գիրքը սովորել է իր ազգական՝ Գանգրայի մետրոպոլիտ Խրիստոֆորոսից։ Թեոփանեսի Շարունակողի ասելով, Հովհաննես Կուրկուասը կրկնապատկեց Բյուզանդիայի տերիտորիան, սահմանները հասցնելով մինչև Եփրատ և Տիգրիս։ Նա քսանչերկու տարի անընդմեջ սխոլների դոմեստիկոս էր, և այդ ընթացքում, ըստ նույն աղբյուրի, գրավեց հազար քաղաք և հիշվում է որպես երկրորդ Տրայանոս և Բելիսարիոս։ Նրա քաջագործությունները ութ գրքով գրել է Մանվել պրոտոսպաթարը։ Այդ աշխատությունը մեզ չի հասել։ Կուրկուասը վախճանվել է 946 թվականից փոքր անց։

Հովհաննես Կուրկուասը թողել է մի որդի՝ պատրիկ Ռոմանոս Կուրկուասին, որը տարբեր բանակաթեմերի զորավար էր նշանակվել և շարունակել իր տոհմի փայլուն ավանդությունները. Նա ստացավ նույնիսկ մագիստրոսի աստիճան։ Հովհաննես Կուրկուասի եղբայր Թեոփիլոս Կուրկուասը պատրիկ էր և Խաղտիքի ու Միջագետքի բանակաթեմերի զորավար։ Սրան համեմատում են Հուստինիանոս Մեծի նշանավոր զորավար Սոլոմոնի հետ (տե՛ս հաջորդ ծանոթագրությունը)։

Հովհաննես Կուրկուասի մասին տե՛ս Theoph. Cont. p. 426—428. նաև Guilland, Le domestique, p. 29—31։

20 Հովհաննես Կուրկուասի եղբայր Թեոփիլոսը Խաղտիքի զորավար դարձավ 923 կամ 924 թվականին, Վարդաս Բոյիլասի ապստամբության ճնշումից հետո։ Նրա մասին պակաս գովեստով չի խոսում Թեոփանեսի Շարունակողը, ցույց տալով, որ նա բազում արշավանքներ է կատարել արաբների դեմ, հաճախ գերեվարել, նաև հարկադրել Թեոդոսուպոլսի և նրա շրջակայքի արաբներին։ Նա փայլուն գործունեություն է ծավալել նաև Միջագետքում։ Նիկեփոր Փոկասի թագավորության ժամանակ հանդես եկած սխոլների դոմեստիկոս Հովհաննես Չմշկիկը (ապա կայսրը) այս պատրիկ Թեոփիլոսի թոռն էր։ Տե՛ս Theoph. Cont., p. 428։ Թեոփիլոսը իշխանությունը գլուխ մնաց մինչև 940 թ.։

21 Բնագրում 'Αβνίκου։ Հայոց Անիկը, տաճիկ Ջիվան-կալե։ Այժմ Ավնիկ գյուղ։ Գտնվում էր Բասենի հարավում, Թեոդոսուպոլսից 40 մղոն արևելք (տե՛ս Երեմյան, Հայաստանը, էջ 42, նաև DAI, II, p. 174։ Մանրա-

ման տե՛ս նաև Պ. Տեր-Պողոսյան, Տեղագրական հետազոտություններ Հայաստանի մեկ քանի քաղաքներու և բերդերու մասին, Վիեննա, 1951, էջ 106։

22 Բնագրում Κετζέον։ Հայտնի չէ, թե ո՞ր տեղին է համապատասխանում։ Հոնիգմանը հնարավոր է գտնում նույնացնել Հինգախ գյուղի հետ, Թեոդոսուպոլսից Տայք տանող ճանապարհի վրա, կամ էլ այդ ճանապարհի լեռնանցքի վրա գտնվող մի ամրոցի, որ վրացիները կոչում են Քարթլիս Քելի, իսկ թուրքերը՝ Գյուրջի բողազ (տե՛ս DAI, II, p. 175)։

23 Բնագրում ταξάτοι, ավելի ճիշտ ձևը՝ ταξεῶται։ Զորավարի հրամանատարության ներքո գտնվող ոստիկանական պարտականություններ վարող մի մարմին էր։ Տաքսեոտները դասվում էին հասարակ զինվորներից բարձր։ Նրանց մասին տե՛ս Zepos, Jus graecoromanum, V, p. 521։ Հմմտ. Ahrweiler, Recherches, p. 42, 71։

24 «Կուրապաղատի և նրա եղբայրների» տակ ենթադրվում են Ատրներսեհ II-ի որդի Աշոտը և նրա եղբայրներ Դավիթը, Բագարատն ու Սմբատը։ Աշոտը կուրապաղատ դարձավ իր հոր մահից հետո (923)։

25 Բնագրում ἐξουσιαστής։ Արքայական մագիստրոսի և էքսուսիաստեսի տակ ենթադրվում է թագավոր Գիորգին, որին Ծիրանածինը հանվանե հիշատակում է մի փոքր հետո։ Բյուզանդական աղբյուրներում էքսուսիաստես է կոչվում նաև բուլղարների Սիմեոն ցարը, (ἐξουσιαστὴς τῶν Βουλγάρων տե՛ս Κ. Ι. Ἀμάντου, Ἱστορία τοῦ Βυζαντινοῦ κράτους. τόμος Β΄, Ἀθῆναι. 1960, σελ. 66). Նույնիսկ Շիրակի հայ Բագրատունի թագավորը—ἐξουσιάρχης (Cedr. II, p. 498)։

26 Բնագրում Βασπαρακανίτης (վասպուրականցի)։ Նկատի ունի Վասպուրականի թագավոր Գագիկ Արծրունուն (908—943)։

27 Բանակաթեմը (զորաբանակի իմաստով) ստորաբաժանվում էր բանդոնների (βάνδον —դրոշ. հայերենում նույնպես դրոշ բառն ունի «գունդ», «վաշտ» նշանակությունը. հմմտ. «Բայց ուր լինէր հանդէս, ի նշանաւոր տեղիս գնդի գնդի, դրօշու դրօշու, վաշտուց վաշտուց...» Փավստոս, Գ., 7), որոնք իրենց հերթին կազմում էին μοῖρα-ներ և δρουγγον-ներ, որոնց գլխավորում էին մերարխները կամ դրունգարները։ Երեք μοῖρα-ն կազմում էր մեկ տուրմա (τοῦρμα) կամ մերոս (μέρος). որը գլխավորում էր տուրմարխը և մերարխը (μέρος γάρ ἐστιν ἡ τοῦρμα. τὸ ἐκ τριῶν μοιρῶν ἤγουν συγκειμένων ἄθροισμα. Leon VI, Tactica, Migne, P. G. t. 107, col. 708). մերոսը դա տուրման է, որը երեք մասից, այսինքն դրունգոններից է բաղկացած։ Մի այլ տեղում կարդում ենք, որ տուրմարխը նա է, ով իր հրամանի տակ ունի երեք դրունգոն (τουρμάρχης ὁ τρεῖς δρούγγους ὑφ'ἑαυτὸν ἔχων)։ Ծիրանածինը վկայում է, որ տուրմարխը իր հրամանի տակ ունի 500 նետաձիգ, 300 վահանակիր, և 100 նիզակակիր, հետևաբար մի բանակաթեմի զորքը բաղկացած էր շուրջ 2500—3000 մարդուց։

Տուրմարխը բանակաթեմի զորավարից հետո ամենաբարձր անձնավորությունն էր նահանգում։ Նա ուներ պրոտոսպաթարի աստիճան (տե՛ս Bréhier, Les Institutions p. 361—362; Ahrweiler, Recherches..., p. 3)։

28 Բնագրում βασιλικοί, բառացի նշանակում է թագավորական։ Այդպես էին կոչվում կայսեր մերձավոր մարդիկ, պալատականները։ Տերմինը հանդի-

պում է նաև հայկական սկզբնաղբյուրներում «վասլիկոս» ձևով։ Ավելի մանրամասն տե՛ս վերը, գլ. 43, ծանոթ. 17, 18։

29 Հետաքրքիր է, որ Ծիրանածինի մոտ էլ օգտագործված է «կարավան» բառը (χαρβάνια), որը փոխառություն է պարսկերենից։

30 Պրոտոսպաթար Զուրվանելիի (Ζουρβανέλη) տակ ենթադրվում է Դերջանցի Զորտվանելը։ Աթոնի վրա վանքի կառուցող սինկելլոս Հովհաննես Թոռնիկի հայրը։ 977 թ. գրված վրացերեն մի ձեռագրի հիշատակարանում դրված է հետևյալը. «Ես Յովհաննէս, որ առաջ Թոռնիկն կոչէի, և եղբայր իմ Յովհաննէս Վարազվաչէ, որդիք օրհնելոյն Զորտվանելի, ստացաք և գրեցաք ղմատեանս այս...» (տե՛ս Ակինյան, Մատ. հետ., Դ, էջ 55։ Համտ. նաև էջ 57)։ Ն. Ակինյանը ենթադրում է, որ այս Զորտվանելի հայրը պետք է լինի 945 թ. աքսորված Նիկոլաոս Թոռնիկը կամ Լևոն Թոռնիկը, որոնց մասին հիշատակություն կա Ծիրանածինի (de Cer. I, 96, p. 435), Կեդրինոսի (II, p. 324) և Լևոն Գրամատիկոսի մոտ (էջ 329)։ Տե՛ս Ակինյան, նույն տեղում, էջ 59—60։

Մամիկոնյանները, հալածվելով արաբների կողմից, ապաստանում են Տայքում, որտեղ նրանք ունեին կալվածներ։ Հենց Տայքում է, որ X դարում հանդես է գալիս Թոռնիկյան մի նոր ճյուղ, որի առաջին ներկայացուցիչը վերոհիշյալ Զորտվանելն է։ Ակինյան, նույն տեղում, էջ 52։

Ն. Ադոնցը (Les Taronites, p 234) ցույց է տալիս, որ Զորտվանելը վրացադավան հայ էր։ Նույն միտքն է առաջ քաշում նաև Ն. Ակինյանը (նույն տեղում, էջ 53)։ Ռենսիմենը նրան վրացի է համարում (DAI. II, p. 175)։

Ծիրանածինը նշում է, որ Զուրվանելին «ազատ» էր (τοῦ ἀζάτου αὐτοῦ), այսինքն ազնվական։

31 «Աներոջ» տակ, հասկանալի է, ենթադրվում է Ռոմանոս I Լեկապենոսը։ Կոստանդին Ծիրանածինը ամուսնացել էր Ռոմանոսի դուստր Եղենայի հետ։ Ռոմանոսը դարձավ «վասիլեոպատոր»—կայսերահայր, մի տիտղոս, որ առաջին անգամ ստեղծվեց Լևոն VI կողմից և տրվեց իր աներոջ, հայազգի Ստիլիանոս Զաուցային։

32 Խոսքը Աշոտ կուրապաղատի եղբայր Բագարատի որդու մագիստրոս Ատրներսեհի մասին է։ Մահացել է 961 թ.։

33 Բնագրում Μασταταν։ Տեղը հայտնի չէ։ Հոնիգմանը տեղադրում է Ավնիկի մոտ։

34 Ծիրանածինը Արաքս և Ֆասիս գետերը նույնացնում է։ Իրականում Ֆասիսը համապատասխանում է Ռիոնի գետին։ Բյուզանդացիները Բասեան գավառի անունից ընթեցնելով Ֆասիսը, սխալմամբ նույնացնում են Արաքս գետի հետ։

35 Սպաթարները (σπαθάριοι —սուսերակիրներ) կազմում էին կայսեր թիկնապահ զորքը։ Բառը հանդիպում է և հայկական աղբյուրներում. «հրամայեաց սպաթարին բաղում հարուածովք պահել ի բանտին». «հիւանդացաւ սպաթարն»։ Տե՛ս Նոր Բառգիրք Հայկազյան լեզվի, հատ. Բ, էջ 734։

36 Բյուզանդացիները IX դարի վերջին և X դարի առաջին կեսին բազում անգամ արաբների ձեռքից փորձեցին խլել Թեոդոսուպոլիսը։ Քաղաքը հաճախ էր ձեռքից ձեռք անցնում։ Թովմա Արծրունին ցույց է տա-

լիս, որ 895 թ. «պաշարեն զԿարնային քաղաքն զօրքն Յունաց. և դարձեալ անդրէն ի կամս իւրեանց թողեալ գնացին» (Թովմա Արծրունի, էջ 231)։ Հաջորդ անգամ Թեոդոսուպոլսի վրա հարձակվեց, ինչպես Սիրանածինն է ցույց տալիս, զորավար Կատակալոնը 902 թ.։ Հայտնի չէ գրավեց նա այն, թե ոչ։ Երբ շուրջ քսան տարի անց Հովհաննես Կուրկուասը սկսեց իր արևելյան արշավանքը, Թեոդոսուպոլիսը գտնվում էր արաբների ձեռքում։ Միքայել Ասորու տվյալներով շուրջ 934—935 թթ. Կարինը բյուզանդացիների ձեռքում էր, բայց 939 թ. հավանաբար նորից էր անցել արաբների ձեռքը, երբ Սայֆ-ադ Դաուլան քշեց բյուզանդացիներին Հավճիջից։ Կարինը բյուզանդացիների ձեռքում չէր և 945 թ.։ Այն վերջնականապես գրավվեց 949 թ.։ Ինչպես Սիրանածինն է ցույց տալիս, 952 թ. Կարինի կառավարիչն էր պատրիկ Թեոփիլոսը։ Կարինի այս վերջին գրավման մասին հիշատակություն ունի Ասողիկը. «յՅՂԸ թուականին առաքէր կայսրն Կոստանդին զդեմեսլիկոսն (δομέστικος) զՉմշկիկ զօրու ծանու ի կողմանս Կարնոյ։ Որ եկեալ պաշարեաց զԹեոդուպոլիս և պատերազմեցաւ, պարտեալ զզօրն Իսմայիլի՝ պատառեաց զխանդակ քաղաքին և փլոյց զբարձրաբերձ աշտարակս նորա և էառ զքաղաքն։ Ուր բազում գործ արութեան ցուցեալ Կիւռ-Յան թոռն Չմշկայ, ի մանկութեան տիս գոլով յայնժամ»։ (Ասողիկ, էջ 179)։ Մեր բոլոր ձեռագրերում Հովհաննես Չմշկիկը կոչվում է Կյուր ժան, որը սխալ է, պիտի լինի Կյուր Յան։ Յան-ը դա Հովհաննեսի— Ἰωάννης հունարեն արտասանությունն է (Յանիս)։

37 Պրոտոսպաթար Պետրոնաս Բոյիլասը պատկանում է Բոյիլասների ընտանիքին, որի բազմաթիվ ներկայացուցիչներն են բյուզանդական աղբյուրներում հիշատակվում։ Բոյիլաս դա բուլղարերեն բառ է և նշանակում է «բոյարին»։ Այդ ընտանիքից հայտնի են Կոստանդին Բոյիլասը 798 թ., Վարդաս Բոյիլասը 923 թ., ինչպես նաև Կոստանդին Բոյիլասը։ XI դարի կեսերին հիշատակվում է Ռոմանոս Բոյիլասը, իսկ 1059 թ. Եվստաթիոս Բոյիլասը, որը բազմաթիվ կալվածքներ ուներ Տայքում։ Վարդաս անվան առկայությունը այս ընտանիքի անդամների մեջ գուցե վկայությունն է այն բանի, որ այն խնամիական հարաբերությունների մեջ էր հայերի հետ։ Բոյիլասների ընտանիքը կալվածներ ուներ նաև Խաղտիք բանակաթեմում։ Բոյիլասների մասին տե՛ս Հ. Բարթիկյան, Եվստաթիոս Բոյիլասի կտակը (1059 թ.) որպես Հայաստանի և Վրաստանի պատմության կարևոր սկզբնաղբյուր, Բանբեր Մատենադարանի, № 5, էջ 397։

38 Նիկոպոլսի տակ ենթադրվում է Կոլոնիայի բանակաթեմի Նիկոպոլիսը, որն այժմ կոչվում է Բուրգ (Պյուրկ)։ Տե՛ս Երեմյան. Հայաստանը, էջ 72։

39 Κατεπάνω։ Սիրանածինն այս նույն աշխատության 27-րդ գլխում գրում է. „μαστρομήλης ἑρμηνεύεται τῇ Ῥωμαίων διαλέκτῳ κατεπάνω τοῦ στρατοῦ“, այսինքն «մաստրոմիլիս հունարեն թարգմանվում է զորքի կատեպան»։ «Մաստրոմիլիս» դա հռոմեական շրջանի magister militum-ի աղավաղված ձևն է, որ նշանակում է զորավար։ Հետևաբար կատեպան նույնանում է ավելի վաղ շրջանի magister militum-ի հետ։ Լինում էին կատեպաններ, որոնք ամբողջ երկրներ էին կառավարում։ XI դարի կեսերին օրինակ, ամբողջ Հայաստանն ու Վրաստանը գտնվում էին բյուզանդական մեկ կատեպանի իրավասության ներքո։ Բայց կային և ավելի փոքր գա-

վառների, գավառակների կատեպաններ, նույնիսկ առանձին քաղաքների, ինչպիսին էր Պետրոնաս Բոյիլասը Ծիրանածինի ժամանակ։ «Կատապան» բառը հանդիպում է և հայկական աղբյուրներում։ Մատթեոս Ուռհայեցու մոտ (Ժամանակագրություն, Վաղարշապատ, 1898, էջ 99, 111, 122), որն այդ բառը թարգմանում է «զորագլուխ, զորապետ, զորավար», Սամվել Անեցու (Վաղարշապատ, 1893, էջ 108), Վարդանի (Վենետիկ, 1862, էջ 99) և ուրիշների։ 1060 թ. Անիի կառավարիչ նշանակված Բագարատ Վխկացին իրեն անվանում է «Արևելից կատապան» (տե՛ս Դիվան հայ վիմագրության, հատ Ա, Երևան, 1966, էջ 37)։ Ավելի ուշ շրջանում «կատապան» բառը ստացել է այգեպան, այգու պահապան իմաստը։ Ավելի մանրամասն տե՛ս Hübschmann, Armenische Grammatik, Bd. 1, 2, S. 355։ Հ. Աճառյան. Արմատական բառարան, հատ. Գ, Երևան, 1933, էջ 1028—1031։ E. Schutz, Ungarisch Katapan, armenisch Katapan Հանդես Ամսօրյա, 1961, սյունակ. 515—520։ T. Wasilewski, Les titres de duc, de catepan et de pronoetes dans l'Empire Byzantin du IXe jusqu'au XIIe siecle, Actes du XIIe Congres International des Etudes Byzantines, t. II, Beograd, 1964, p. 233—239:

40 Պանգրատի տակ ենթադրվում է Աշոտ կուրապաղատի եղբայրը, Բագարատը, Ատրներսեհ մագիստրոսի հայրը։ Հայտնի է Բաղարատի մահվան թվականը՝ 945 թ.։

41 Ֆասիսի, տվյալ դեպքում Արաքսի ձախ կողմ ասելով Ծիրանածինը ենթադրում է գետի հյուսիսային ափը, իսկ աջ կողմի տակ ենթադրվում է հարավային ափը, ավելի ճիշտ հարավ-արևմտյանը, դեպի Կարին ձգվող։ Իլլիրիայի տակ ենթադրվում է Արիստակես Լաստիվերտցու հիշատակած «Աղօրի աշխարհ»-ը կամ «գաւառը» Հավճիջի մոտ՝ Թեոդոսուպոլսից հարավ։ Տե՛ս Հյուբշման. Տեղվո անունները, էջ 245։ Համտ. DAI, II, p. 177։

## ԳԼՈՒԽ 46

1 Նախորդ գլխում Ծիրանածինը կանգ առավ Աշոտ կուրապաղատի Քարթլիի ճյուղի վրա։ 46-րդ գլխում նա կանգ է առնում Աշոտ կուրապաղատի շառավիղների Արտանուջի (Տայքի և Կղարջքի) ճյուղի վրա։ 830 թ. վախճանված Աշոտ կուրապաղատի որդի Ատրներսեհն (11-րդ) ունեցավ երեք որդի՝ Աշոտ Կեկելան, որ մահացավ 867 թ., Տայքի Գուրգենը, որ վախճանվեց 891 թ. և Արտանուջի Սմբատը՝ վախճանված 889 թ.։ Այս վերջին Սմբատի որդիներն էին Բագարատը (Պանգրատիոս) Արտանուջ—Կղարջքի դուքսը (վախճանված 900 թ.), Դավիթ Մամպալին՝ վախճանված 943 թ.։ Ծիրանածինը վրացերեն «Մամպալիս» բառը սխալ է թարգմանում՝ «ամենասուրբ»։ Այդ բառը նշանակում է «կառավարիչ» և խնդրո առարկա տիտղոսը կրում էր ոչ միայն Դավիթը, այլ բոլոր հիշյալները։ Տե՛ս DAI, II, p. 177։

2 Տե՛ս նախորդ ծանոթագրությունը։

3 Բագարատի որդի Ատրներսեհը դարձավ վանական և վախճանվեց 945 թ., Գուրգենը՝ 923 թ., իսկ Աշոտ «Կիսկասին» 939 թ.։ Վրաց ժամանակագիր

Դավթի որդի Սմբատը ցույց է տալիս, որ Բագարատն ունեցել է մի որդի ևս՝ Դավթին, որ մահացել է իր եղբայրներից առաջ՝ 922 թ.։ Դրա համար Ծիրանածինը, որ գրում էր 948—952 թթ. ընթացքում, նրան զանց է առել։ Տե՛ս Toumanoff, The Bagratids, p. 22։

Արտանուջը ավանդության համաձայն կառուցել է Վախթանգ Գորգասալը։ Աշոտ կուրապաղատն այն վերաշինեց։ Տե՛ս Մարկվարտ, Բագրատունյաց ծագումը, էջ 109։ Այս վերաշինման մասին հիշում է և Գեորգ Մերչուլը Գրիգոր Խանձթացու վարքում։ Տե՛ս Георгий Мерчул, Житие св. Григория Хандзтийского, введение, издание, перевод Н. Марра, С. Петербург, 1911 (перевод, стр. 128):

4 Գուրգենն անզավակ չմահացավ։ Նա ունեցավ մի որդի, որը սակայն ծնվեց իր մահվանից հետո։ Բայց իր մահվան ժամանակ ոչ ոք չկար, որ իրեն ժառանգեր, բացի իր եղբայր Աշոտից։ Տե՛ս Toumanoff, The Bagratids, p. 22։

5 Բնագրում Κισκάση, որ ըստ ուսումնասիրողների վրացերեն բառ է, և նշանակում է «ճարպիկ»։ Բայց հետազոտությունը ցույց տվեց, որ տվյալ բառը վրացերեն չէ, այլ հունարեն ձեռագրերում «Վիխկացի» մականվան աղավաղումը։ Վխկացիները, որոնք հայկական ընտանիք էին և միաժամանակ կրում էին Կեկավմենոս ազգանունը, մեծ ծառայություն են մատուցել Բյուզանդական կայսրության։ Նրանցից նշանավոր էին Սմբատ Վխկացին Թորթումում XI դարի սկզբներում և Բագարատ Վխկացին նույն դարի կեսերին։ Այդ մասին մանրամասն տե՛ս H. Bartikian, Le genealogie du Magistros Bagarat, REA, t. II, 1965։

Աշոտի «Կիսկասի» (Վխկացի) մականունը հայտնի է միմիայն Ծիրանածինից։

6 Այս մագիստրոս Կուրկենի տակ ենթադրվում է Տայքի Գուրգենը, որ վախճանվեց 941 թ.։ Նա Տայքի Ատրներսեհ III կրտսեր որդին էր։ Հովհաննես Դրասխանակերտցին հիշում է երկու Գուրգեններ, որոնց հետ Հայաստանը դաշնակցային հարաբերությունների մեջ էր։ Տայքի Գուրգեն I-ին, որ մահացել է 891 թ., իսկ երբ խոսում է Աշոտ II Երկաթի հետ վրաց իշխան Գուրգենի մասին, ապա այդ դեպքում նա նկատի ունի Գուրգեն առաջինի թոռան՝ Գուրգեն II-րդին։ Այս Գուրգենի և նրա աներոջ՝ Աշոտ Կիսկասիի ընդհարումը տեղի է ունեցել 930—935 թթ. ընթացքում։ Տե՛ս Toumanoff, The Bagratids, p. 26 sq.։

7 Բնագրում Τυρόκαστρον, որ թարգմանաբար նշանակում է «Պանրի բերդ»։ Հունարենը թարգմանությունն է վրացերեն «Քվելիս ցիխե»-ի։ Ծիրանածինը իր «Արարողությունների մասին» աշխատության մեջ տալիս է այս բերդի իսկական, վրացական անունը, τοῦ Κούελ։ Բերդը Ջավախքի կենտրոնն էր, որն ուներ իր իշխանը։ Այգ շրջանը բերդի անունից կոչվում էր Κουελ։ Հմմտ. «Արարողությունների մասին» աշխատության II գրքի 92-րդ ծանոթագրությունը։

8 Բնագրում την ποταμίαν τοῦ 'Ατζαρα (հունարենում τζ համապատասխանում է ոչ միայն ց-ին, այլև ծ-ին և ձ-ին։ Քանի որ հունարենում չկան «չ» և «ճ» հնչյունները, դրանք արտահայտվում են τζ-ով)։ Աչարա գետը թափվում է Ճորոխի մեջ նրա գետաբերանից մի քանի մղոն հեռավորության վրա։

9 րնագրում Κωλωρινι Մինչև օրս չի պարզված, թե ինչին է համապատասխանում։ Տե՛ս Toumanoff, Studies, p. 495, n. 264։

Գուցե խոսքը Տայքի առաջին գավառ Կող-ի մասին է, վրաց. Կոլա, այժմ Գյոլե, կամ էլ Տայքի 6-րդ գավառ Ոքաղե-ի (ուրարտական արձանագրություններում՝ Kali), Թորթում գետի վերին և միջին հոսանքում։ Տե՛ս Երեմյան, Հայաստանը, էջ 59, 76։

10 Մագիստրոս Գեորգիսը իշխել է Ափխազիայում 915/916-ից մինչև 959/960թթ.. Գեորգիոսը (II-րդ) Կոստանդին III-րդի որդին էր։ Ծիրանածինը նրան անվանում է ἐξουσιαστής։ Հմմտ. 45-րդ գլխի 25-րդ ծանոթագրությունը։ «Արարողությունների մասին» աշխատության մեջ պահպանված պաշտոնական գրություններում ևս Ափխազիայի թագավորները կոչվում են ἐξουσιαστὴς 'Αβασγίας (Գիրք Բ, գլ. 48)։

11 Ծիրանածինը բացատրում է, թե ինչպիսի ազգակցական կապեր ունեին Արտանուջ-Կղարջքի Բագրատունիները Բաղրատունիների իբերական (քարթլիական) ճյուղի հետ։ Այս՝ 46-րդ գլխում նույնանուն Ատրներսեհների անվան հունարեն գրության ձևերը իրարից տարբերվում են։ Ատրներսեհ IV-րդ (II-րդ) թագավոր-կուրապաղատը հիշատակվում է 'Αδρανασε ձևով, կուրապաղատ Ատրներսեհը, քանի նա դեռ մագիստրոս էր՝ Ատրներսեհ III-րդ գրվում է 'Αδρανασῆ, իսկ Արտանուջ-Կղարջքի Ատրներսեհը 'Αδρανασῆρ ձևով։ Այս սիստեմը նախորդ գլխում (45-րդ) չի պահպանված։ Այնտեղ Ատրներսեհ IV-րդ (II-րդ) և Ատրներսեհ III-րդը հիշվում են նույն ձևով 'Αδρανασῆ, Իսկ 43-րդ գլխում Ատրներսեհ IV-րդը 'Αδρανασῆρ է։ Տե՛ս Toumanoff, The Bagratids, p. 22—23։

12 Արվարձան ենք թարգմանում բնաղրի ῥαπάτιν -ը, որ արաբերեն բառ է (ռաբատ)։ Այդ մասին տե՛ս Հոնիգմաննի հոդվածը Byzantion հանդեսում, հատ. 10, 1935, էջ 148—149։ Այդ բառի մասին տե՛ս նաև П. Л. Гусев, Откуда произошло название Ропата? Сборник Новгородского Общества Любителей Древности, вып. 2, Новгород, 1909, стр. 12—14. Հետաքրքրական է նշել, որ Ակնի գյուղերից մեկը կոչվում էր Ռապատ։ Տե՛ս Էփրիկյան, Բնաշխարհիկ բառարան, հատ. Ա, էջ 80։ Քարթլիս Ցխովրեբայում կա մի հետաքրքրական պատմություն Արտանուջ ամրոցի վերակառուցման մասին, որ վերագրվում է Աշոտ կուրապաղատին։ «...բնակչության (Շավշեթի և Կղարջքի) այս տկար բեկորներն ուրախությամբ և սիրով հյուրընկալեցին Աշոտ կյուրապաղատը, որ հոն հաստատվեցավ։ Ատված դինքը հաղթող րրավ և Շավշեթի ու Կղարջքի վրա իր իշխանությունը ամրացուց։ Իր դրամովը քանի մը գյուղեր գնեց, ուրիշներու ավերակները կանգնեց և իր երկիրներուն մեջ շատ մը նոր գյուղեր շինեց։ Աստուծո շնորհքովը հույն կայսրներն անոր իշխանությունը ճանչրցան։ Անտառներուն մեջ գտավ այն քարաժայռը, որուն վրա Վախտանգ Գուրգասալը՝ Արտանուջ ամրոցը հիմնած էր, բայց Քրուի արշավանքին զոհ գացած րլլալով, վերստին շինցուց ղայն, ամրոց կանգնեց և անոր պարիսպներուն առջևն և անոնց կից քաղաքի մը հիմը դրավ»։ Նույն աղբյուրի համաձայն Աշոտի երեք որդիներն էլ Ատրներսեհ, Բաղրատ և Գուրամ իրենց կրթությունը ստացան Արտանուջ բերդի մեջ։ Մարկվարտ, Վրական Բագրատունյաց ծագումը, էջ 108—110։

13 Բնագրում 'Αρζῶν։ Տեղանուն չէ, այլ արաբերեն «Արդուն» բառը, որ նշա-

նակում է երկիր, հողատարածություն և հոմանիշ է հունարեն γῶρζ-ի, Տե՛ս Brosset, Additions, p. 149, n. 6.

14 Բնագրում τῶν Μεσχίων Վրաց Մեսխեթին, այսինքն Սամցխե գավառ, այժմյան Ախալցիխեի շրջանը։ Սամցխե, Թաո և Աճարա գավառները միասին կազմում էին Ստրաբոնի Μεσχιακῆς երկրի իբերական (վրացական) մասը, որը ճանները կոչում էին Մոցխիւ իսկ եգերացիք (մենգրելները) Օծրխե։ Նա կոչվում էր նաև «Վերին աշխարհ Վրաց» Տաշիս-Կարիից մինչև Ճորոխի գետաբերանը ձգվող երկրամասը։ Տե՛ս Երեմյան, Հայաստանը էջ 79, 83։

15 Նավատորմիղի դրունգարի տակ ենթադրվում է ծովակալը։ Այս պատրիկ Կոստանդինը Ռեյնսիմենի կարծիքով նույնանում է Կոստանդին Գոնգիլիոսի կամ Գոնգիլեսի հետ, որին Թեոփանեսի Շարունակողը 949 թ. տակ և այլ ‌ճեղինակներ հիշատակում են որպես ծովակալ Κωνσταντῖνον τὸν Γογγύλην ναυμαχίας ἡγήτορα. (Theoph. Cont., p. 436):

16 Բնագրում μαγγλαβῖται։ Մանգլավիտները մի տեսակ ոստիկաններ էին։ Նրանք ուղեկցում էին կայսեր և՛ ցամաքով, և՛ ծովով ճանապարհորդելիս։ Զինված էին գուրզերով։ Մանգլավիտների պետը պրոտոսպաթարի աստիճան էր ունենում։

Մանգլավիտ բառի արմատը (մանկլաւ) հանդիպում է և հայկական աղբյուրներում. «որ զկարգաւ իւրով յաւուր մարտին զանց առնէ, մանկլաւով ծեծեն» (Աճառյան, Արմատական բառարան, հտ. Դ., էջ 820)։ Բառը ծագում է լատիներեն manualis clava (ձեռքի գավազան, կամ մահակ)։ Տե՛ս Աճառյան, Արմատական բառարան, հատ. Դ, էջ 820։

17 Ծիրանածինը իր «Արարողությունների մասին» աշխատության մեջ տալիս է մագիստրոսական հիմատիոնի նկարագրությունը։ Այն կոչվում էր σπιγάριν καὶ βαλτίδιον. (De Cer., p. 144)։

18 Կյումենա լեռան վանքերը հաճախ են հիշատակվում, բայց նրանց տեղադրությունը վիճելի է։ Ի. Սոկոլովի կարծիքով գտնվում էին Բյութանիայում։ Տե՛ս И. Соколов, Состояние монашества в византийской церкви с половины IX до начала XIII века, Казань, 1894.

19 Սիմեոն պրոտոասեկրետի տակ ենթադրվում է հայտնի ժամանակագիր Սիմեոն Լոգոթետեսը։

20 Πιττάκιον (լատ. pittacium), գրություն, երկտող։ Այս բառից է ծագում հայերեն «պիտակ»-ը, որ նշանակում է «թուղթ գրեալ, կամ գրելի ի պետս ինչ թղթիկ, նամակ»։ Տե՛ս Ն. Բ. Հ. Լ., հատ. Բ, էջ 649։ Համեմատ. նաև Հ. Աճառյան, Հայերեն արմատական բառարան, հատ. Ե, էջ 1064—1066։

21 Կուրապաղատ Աշոտը մահացավ 954 թ., նրա եղբայր Դավիթը՝ 937 թ.։ Նրանք ունեին երկու եղբայր ևս, Բագարատ մագիստրոս և Սմբատ կուրապաղատ։ Նրանց հայրն էր Ատրներսեհ II կուրապաղատը։

22 Ժամանակակից տերմինով՝ պրեմիեր մինիստրը։

23 Ակամսին Ճորոխ գետն է, իսկ Մուրգուլին (հունարենում կարելի է կարդալ նաև Մուրղուլի) այսօր էլ կոչվում է Մուրգուլ սու։

24 Այսինքն Հովհաննես Կուրկուասը։

25 Ծիրանածինը դիմում է իր որդուն՝ Ռոմանոսին (Ռոմանոս II 959—963 թթ.)։ Ծնվել է 938 թ.։

## Ծանոթագրություններ

### ԳԼՈՒԽ 50

1 Հուստինիանոս Մեծի մահից հետո նրա ստեղծած լայնատարած կայսրությունը սկսեց փուլ գալ։ Կայսրության թշնամիները ամեն կողմից արշավանքներ էին կազմակերպում և տիրանում Բյուզանդիայի նորանոր շրջաններին։ Բալկաններում սլավոններն ու ավարները իրենց արշավանքների ժամանակ հասնում էին մինչև Կոստանդնուպոլսի դարպասները։ Բյուզանդիան արդեն ստիպված էր ինքը սլավոններին բնակեցնել կայսրության տերիտորիաներում, հատկապես Դանուբ գետից հարավ ընկած շրջաններում և Պելոպոնեսում։ Այդ երևույթը ավելի լայն չափեր ստացավ Հերակլիոս կայսեր թագավորության վերջում։ Բյուզանդական պատմիչները մեզ հասցրել են սլավոնական այդ համայնքների անունները. Թեսաղոնիկեի արևմուտքում ապրում էին սագուդատները, ռենխինները, դրուգուվիտները, արևելքում ստրիմոնները, վայունիտները։ Կենտրոնական Մակեդոնիայում ապրում էին վերզիտները։ Պելոպոնեսում՝ Տայիգետոս լեռան ստորոտում. պատմական Սպարտայի շրջակայքում ապրում էին միլինգներն ու էզերիտները։ VII դարում սլավոնական համայնքներ կային նաև Փոքր Ասիայում՝ Բյութանիայում։

Սլավոնական համայնքների մասին Բյուզանդիայում տե՛ս Е. Э. Липшиц, Византийское крестьянство и славянская колонизация, Византийский сборник, М.—Л., 1945, стр. 96—143; Ее же, Очерки, стр. 18—49; Сборник документов по социально-экономической истории Византии, М., 1951, стр. 65—66, 73—102.

2 Մայինա ամրոցը գտնվում էր Լակոնիայի նույնանուն լեռնային շրջանում։

3 Նախորդ գլխում (49-րդ) Ծիրանածինը խոսում է Պելոպոնեսի բանակաթեմի սլավոնների առաջին ապստամբության մասին՝ ընդդեմ Բյուզանդական կայսրության։ Այն տեղի ունեցավ Նիկեփոր I կայսեր ժամանակ (802—811) և թվագրվում է 807 թ.։ Այս առաջին ապստամբության մասին արժեքավոր տեղեկություններ է հաղորդում այսպես կոչված «Մոնեմվասիայի ժամանակագրությունը», որի համաձայն ապստամբության ճնշողների թվում էր «ծագումով Փոքր Հայքից Սկլերոսների ընտանիքին պատկանող մի զորավար»։ Նիկեփոր կայսրը ապստամբության ճնշումից հետո կատարեց մասսայական բնակեցում։ Լակեդեմոն քաղաքում բնակեցվեցին նաև հայեր։ Տե՛ս N. A. Bees, Τὸ „Περὶ κτίσεως τῆς Μονεμβασίας" χρονικὸν καὶ ἡ ἱστορικὴ σημαντικότης αὐτοῦ, „Βυζαντίς„ 1909, No 1, σελ. 68.

Ծիրանածինը 50-րդ գլխում խոսում է Պելոպոնեսի սլավոնների երկրորդ ապստամբության մասին, որ տեղի ունեցավ Թեոփիլոս կայսեր (829—842) և նրա որդի Միքայել III կայսեր ժամանակ (842—867) 841—842 թթ. (Թեոփիլոսն ու Միքայելը 840—842 թթ. թագավորել են միասին)։

4 Թեոկտիստոս Վրիեննիոսի արշավանքը Պելոպոնես տեղի ունեցավ Թեոփիլոսի մահվանից անմիջապես հետո՝ 842 թ., հետևաբար ապստամբությունը ծագեց նախորդ տարին՝ 841 թ։ Թեոկտիստոս Վրիեննիոսին չշփոթել նրա նշանավոր ժամանակակից լոգոթետ Թեոկտիստոսի հետ։

5 Խոսքը Ռոմանոս I Լեկապենոսի մասին է։ Պելոպոնեսի սլավոնների այս երկրորդ ապստամբությունը թվագրվում է 921 թ.։

6 Բնագրում ἄρχων։ Բյուզանդական «Էպանագոգե» դատաստանագրքի համաձայն «արխոնտը գավառում կայսրից հետո բարձրագույն իշխանությունն ունի» (ὁ ἄρχων ἐν τῇ ἐπαρχίᾳ μείζω ἁπάντων ἐξουσίαν ἔχει μετὰ τὸν βασιλέα. Epanag., tit. VI, cap. 3)։

7 Բնագրում Κρινίτην τὸν Ἀροτρᾶν։ Կրինիտեսների հայկական ընտանիքի մասին տե՛ս վերը, գլուխ 43, ծանոթ. 44։

8 Ինչպես վկայում է անունը, Վարդաս, Կրինիտեսին փոխարինողն էլ ծագումով հայ էր։ Պլատիպոդես նշանակում է «լայնոտն»։ Նա, ավելի ճիշտ նրա որդի Փոտինոսը, հիշատակվում է Թեոփանեսի Շարունակողի կողմից (Theoph. Cont., p. 401)։

9 Սլավոնների հարձակումը, որ թվագրվում է 922 թ. նույնանում է բուլղարների դեպի Պելոպոնես կատարած արշավանքի հետ։ Ծիրանածինը իրարից սահմանազատում է սլավներին (Σκλάβοι) սլավոններից (Σκλαβησιάνοι)։ Նրանց մասին ավելի մանրամասն տե՛ս Κ. Ἄμαντος. Σκλάβοι, Σκλαβησιάνοι καὶ βάρβαροι, Πρακτικὰ Ἀκαδημίας Ἀθηνῶν, τόμ. 7 (1932)։

10 Կապադովկիայի զորավարության և Անատոլիկոնի զորավարության մասին տե՛ս «Բանակաթեմերի մասին» աշխատության մեջ (տե՛ս սույն աշխատության 164—169-րդ էջում)։ Զորավարություն (στρατηγίς) տերմինը հոմանիշ է «բանակաթեմ» (θέμα) տերմինին։ Բանակաթեմի ղեկավարը զորավարն էր, հետևաբար բանակաթեմը հաճախ կոչվում է նաև զորավարություն։

11 Տուրմայի մասին տե՛ս 45-րդ գլխի 27-րդ ծանոթագրությունը։

12 Խարսիանոնի և Արմենիակների զորավարության մասին տե՛ս «Բանակաթեմերի մասին» աշխատության մեջ (սույն աշխատության 168-րդ էջում)։

13 Բուկելլարների և Կապադովկիայի բանակաթեմերի մասին տե՛ս «Բանակաթեմերի մասին» աշխատության մեջ (սույն աշխատության 165-րդ էջում)։

14 Բանդոն (հունարեն βάνδον) բառացի նշանակում է դրոշ։ Բանակում բանդոնի տակ ենթադրվում էր զորամաս (այլ խոսքով տագմա կամ ալլագիոն), բաղկացած 200—400 հետևակայիններից կամ 50—400 ձիավորներից։ Այն գլխավորում էր կոմեսը։ Բանդոնը տուրմայի ստորաբաժանումն էր։ Բանդոնը կոչվում էր նաև տոպոտերեսիա (τοποτηρησία), որ բացի զորամասի հասկացողությունից, ուներ նաև տերիտորիալ նշանակություն, այսինքն այն շրջանը, որտեղ գտնվում էր տվյալ տոպոտերեսիան (պահակատեղին)։

15 Բնագրում Βαρέτας։

16 Բնագրում τοποτηρησία Βαλβαδῶνος։

17 Բնագրում τοποτηρησία Ἄσπονας։

18 Բնագրում τοποτηρησία Ἀκαρκοῦς։

19 Բնագրում τοποτηρησία Εὐδοκιάδος։

20 Բնագրում τοποτηρησία τοῦ ἁγίου Ἀγαπητοῦ։

21 Բնագրում τοποτηρησία Ἀφραζίας։

22 Բնագրում Κόμματα։

23 Բնագրում τοποτηρησία Μυριοκεφάλου։

24 Բնագրում τοποτηρησία Βερινουπόλεως։

25 Բնագրում Σανίανα։

26 Բնագրում Κομοδρόμου τοποτηρησία։

27 Բնագրում τοποτηρησία Ταβίας։ Տավիան գտնվում էր Անկյուրայի շրջանում։

28 Բնագրում τοῦρμα Κασῆς։

29 Բնագրում τοποτηρησία Νύσσης։ Խոսքը Կապադովկիայի հին քաղաք Նյուսայի մասին է, Անկյուրայից Կեսարիա տանող ճանապարհի վրա, Ալիս գետի մոտ։

30 Բնագրում τὸ τοῦ Χοζάνου θέμα։ Խոսքը Չորրորդ Հայքի Խոզանի մասին է, որ գտնվում էր Պաղնատուն գավառում։ Գեորգ Կիպրացին հիշատակում է այն πολίχνη Χοζάνου ձևով։ Կա ենթադրություն, որ այն կազմում է այժմյան Դերսիմի սանջակի կենտրոնը։ Խոզանում էր գտնվում Չմշկածագը։ Ծիրանածինը այն անվանում է «բանակաթեմ»։ Հմմտ. Հյուբշման, Տեղվո անունները, էջ 157—158։

31 Բնագրում τὸ τοῦ Ἀσμοσάτου θέμα։ Խոսքը Արշամաշատ գավառի մասին է։ Կենտրոնն էր նույնանուն Արշամաշատ քաղաքը։ Գավառը այդպես էր կոչվում 387 թ. առաջ։ 387 թ. հետո գավառը անցավ բյուզանդացիների ձեռքը և Բալու կենտրոնից սկսեց կոչվել Բալահովիտ։ Միքայել Ատալիատեսը գավառը կոչում է Ἀνθίας։ Տե՛ս Երեմյան, Հայաստանը, էջ 43։

32 Բնագրում Χανζῆτ։ Խոսքը Անձիտի մասին է, Չորրորդ Հայքի 6-րդ գավառի։ Գրավում էր Խարբերդի դաշտի հիմնական մասը։ Այս գավառում էին գտնվում Անձիտ, Հոռեբերդ (Խարբերդ), Ծովք և այլ ամրությունները։ Գավառը հիշատակվում է Հուստինիանոս I կայսեր հրովարտակներում Ἀνζιτηνή և Anzetena ձևով։ Տե՛ս Երեմյան, Հայաստանը, էջ 36, ավելի մանրամասն տե՛ս Honigmann. Une «Scala» geographique p. 92—93։

33 Ռոմանուպոլիսը կառուցվել է Ռոմանոս I կայսեր կողմից։ Հիշատակվում է նաև հայկական աղբյուրներում։ Մատթեոս Ուռհայեցին 1031 թ. դեպքերի կապակցությամբ գրում է, որ Ռոմանոս կայսրը «շինեաց յիւր անուն բերդ և անուանեաց զնա Ռոմանապօլիս» (Ուռհայեցի, էջ 63)։ Նույն դարի երկրորդ կեսի սկզբներին Վասիլ Ապուքապը «շինեաց... զպարիսպն բերդաքաղաքին՝ որ կոչի Ռնապօլիս, զոր շինեաց Ռամանոս թագաւորն Հոռոմոց» (անդ, էջ 216)։ Մինչև վերջերս Ռոմանոպոլսի տեղադրության հարցում աշխարհագրագետների միջև բազմաթիվ վեճեր են եղել։ Վեճի վերացման պատճառ դարձավ մի պտի-արաբ աշխարհագրական տեղանունների ցուցակ։ Պտիերենի «Ռոմանուպոլսի» դիմաց արաբերենում գրված է՝ «Ջանջուր», որ Հոնիգմանը ուղղում է «Ճապաղջուր»։ Այս և մնացած փաստերի համադրությունից ելնելով, նա հնարավոր է գտնում Ռոմանուպոլիսը տեղադրել հայկական Ճապաղջուրի տեղում։ Տե՛ս Honigmann. Une «Scala» géographique, p. 87—123. Ս. Երեմյանը ենթադրում է, որ Ճապաղջուրը ավելի վաղ շրջանում կոչվել է Կիթառիճ (Պրոկոպիոս Կեսարացու Կիթարիզոնը)։

34 Բնագրում ὄρους τοῦ Φατιλάνου։ Տեղագրությունը հայտնի չէ։ Հոնիգմանը ենթադրում է, որ խոսքը Ճապաղջրի լեռան մասին է. տե՛ս Honigmann. Une «Scala» géographique, p. 97։

35 Բնագրում Τεληῆς։ Հնում կոչվում էր Διγισηνή։ Հայոց Դեգիքը, Չորրորդ Հայքի 8-րդ գավառը, Եփրատ գետի և Չմշկածագի միջև։ «Աշխարհացույց»-ը այս գավառում հիշատակում է երեք բերդ՝ Կոնի, Քրվիկ և Սոկ։ Տե՛ս Հյուբշման, Տեղվո անունները, էջ 154—155։ Երեմյան, Հայաստանը, էջ 49։

36 Մանվելը հայազգի էր։ Այլ աղբյուրներում նա չի հիշատակվում, այլ միայն նրա որդիները։ Տե՛ս ստորև։

37 Բնագրում Κάμαχα τ. τοῦρμα, խոսքը Անի-Կամախի մասին է, Բարձր Հայքում, որ Կոլոնիայի բանակաթեմի ծայրագույն գավառն էր հարավ-արևելքում։

38 Բնագրում Κελτζινῆς τοῦρμα։ Խոսքը Եկեղյաց գավառի մասին է։ Ծիրանածինը այն հիշատակում է նաև «Բանակաթեմերի մասին» աշխատության մեջ «Խաղտիքի բանակաթեմի» կապակցությամբ։ Տե՛ս սույն աշխատության 170-րդ էջում։

39 Միջագետքի բանակաթեմի մասին մանրամասն տե՛ս Ծիրանածինի մոտ «Բանակաթեմերի մասին» աշխատությունը (9-րդ բանակաթեմ)։ Լևոն կայսեր տակ ենթադրվում է Լևոն VI-րդը։

40 Մանվելի որդիների՝ Պանգրատուկասի, Յախնուկասի, Մուղաֆարի և Հովհաննեսի մասին տե՛ս Ծիրանածինի «Բանակաթեմերի մասին» աշխատության Միջագետքի բանակաթեմին նվիրված բաժնում։ Այնտեղ Մանվելը չի հիշատակվում, այլ միայն նրա որդիները, այն էլ որպես Պանգրատուկաս, Փուքրիկաս և Տավթուկաս անունների տակ։

41 Հիկանատոս (ἱκανάτος) էր կոչվում բյուզանդական կայսերական թիկնապահ մի զորամասը, ամբողջությամբ բաղկացած ընտիր մարտիկներից։

42 Նիկոպոլսի զորավարի տակ ենթադրվում է Նիկոպոլսի կատեպանը, ինչպես որ Ծիրանածինն անվանում է նույն քաղաքի կառավարիչին այս նույն աշխատության 43-րդ գլխում՝ Պետրոնաս Բոյիլասի կապակցությամբ։

43 Խարսիանոնցի Օրեստեսի մասին տես Ա. Գրեգուարի Διγενὴς Ἀκρίτας աշխատությունը, էջ 13։ Ջենկինզը ենթադրում է, որ Օրեստեսը նույնանում է այն δομέστικος τῶν νουμέρων-ի հետ, որի եղբորորդուն Արեթաս Կեսարացին երկու նամակ է ուղարկել։ Տե՛ս М. А. Шангин, Византийские политические деятели первой половины X в., Византийский сборник, стр. 229.

44 Լարիսան Հոնիգմանը տեղադրում է Մանգուլիկում։ Լարիսան Լիկանդոս բանակաթեմի կենտրոնն էր։ Տե՛ս Honigmann, Die Ostgrenze, S. *50*։ Լարիսան շատ հաճախ հիշվում է և հայկական սկզբնաղբյուրներում։ Գրիգոր երեցը, հիշելով Սեբաստիայի ամիրա Աղուպ Ասլանի նվաճումների մասին, գրում է, որ ամիրան «եկն յերկիրն Լիկանդոսին և տարեալ զքրիստոնեայսն սիրով յերկիր իւր. և զամուրն Լառիս՝ և զայն ես էառ»։ (Մատթ. Ուռհայեցի. էջ *408*)։

45 Գրեգուարը Կյումբալեոսը նույնացնում է Կամուլիանայի հետ՝ Ալիս գետից հարավ, Կեսարիայից մի քանի մղոն հյուսիս-արևմուտք։ Իսկ Սյումպոսիոնը՝ Սոբեսոս-Սյուվեշի հետ, Կեսարիայից հարավ-արևմուտք։ Տե՛ս H. Gregoire, Byzantion, t. *8*, *(1933)*, p. *85—87*։

46 Այս Եվստաթիոս Արգիրոսին մանրամասն հիշատակում է Թեոփանեսի Շարունակողը։ Նա ցույց է տալիս, որ Եվստաթիոսը ծագում էր Արգիրոսների նշանավոր ընտանիքից, որ նա պատրիկ էր և Անատոլիկոն բանակաթեմի ենթազորավար (ὑποστράτηγος) և բազմիցս պարտության է մատնել արաբներին։ Վերջիններս նույնիսկ նրա անունից էին սարսափում (Theoph Cont., p. *368—369*)։ Այս Եվստաթիոս Արգիրոսը որդին էր Լևոն Արգիրոսի, որն աչքի ընկավ Միքայել կայսեր ժամանակ պավլիկյանների դեմ մղված պայքարում։ (Theoph. Cont., p. *165*, *374*)։ Բայց Լևոն VI

կայսրը, կասկածելով Եվստաթիոս Արգիրոսի հավատարմության վրա (կասկածում էին, որ նա մասնակցություն է ունեցել Անդրոնիկոս Դուկասի ապստամբությանը (906)), նրան պաշտոնանկ է անում, երբ նա վիգլայի դրունգարիոս էր և ուղարկում «իր տունը՝ Խարսիանոն»։ Բայց ճանապարհին թունավորում են նրան։ Նրա որդիների անուններն էին Պոթոս և Լևոն, ստրատիոտ մանգլավիտներ (Theoph Cont., p. 374)։ Լևոնն հետագայում դարձավ Սեբաստիայի զորավար, մագիստրոս և սխոլերի դոմեստիկոս։

47 Մելիասը հայկական Մլեհ անվան հունարեն արտասանությունն է։ Նա Լիկանդոս բանակաթեմի առաջին զորավարն էր և այդ պաշտոնում մնաց մինչև իր մահը՝ 934 թ. Ա. Գրեգուարը բյուզանդական Դիգենիս Ակրիտաս էպոսի գլխավոր հերոս Դիգենիսին նույնացնում էր այս Մելիասի հետ (տե՛ս նրա հոդվածը Revue des Etudes grecques, (t. XLVII, 1933, p. 63 sqq.) հանդեսում), բայց հետագայում հրաժարվեց այդ մտքից (տե՛ս նրա Διγενής 'Ακρίτας աշխատությունը, էջ 36—37)։ Մելիասի մասին Ծիրանածինը ավելի մանրամասն խոսում է «Բանակաթեմերի մասին» աշխատության մեջ (տե՛ս սույն աշխատության 171-րդ էջում)։ Հայտնի է մի Մելիաս ևս, սխոլերի դոմեստիկոս, որ Հովհաննես Ցմշկիկ կայսեր օրոք գլխավորում էր բյուզանդական զորքերը արաբների դեմ։ Նա վերջիններիս ձեռքը գերի ընկավ և սպանվեց 973 թ.։ Այս Մելիասի մասին հիշատակություն ունի Մատթեոս Ուռհայեցին ՆԻԱ թվականի տակ. «...զորապետն Հոռոմոց Դեմեսլիկոսն, որում անուն Մլեհ ասէին, ելեալ բազում զօրօք գայր ի վերայ Տաճկաց...» (Ուռհայեցի, էջ 14—16)։ Ն. Ադոնցը ենթադրում է, որ այս Մելիասը պատկանում էր վերոհիշյալ առաջին Մելիասի ընտանիքին և «անկասկած» նա Լիկանդոս բանակաթեմի կազմակերպողի որդին էր։ Տե՛ս Adontz, Notes I, p. 139։ Ավելի շուտ նրա թոռը կարող էր լինել և ոչ որդին։ Հայոց մոտ այնքան էլ ընդունված չէ հոր անունը տալ որդուն, այլ պապի, բացի այդ ժամանակագրական տվյալներն էլ մեր միտքն են հաստատում, եթե, իհարկե, Մելիասը անուն չէ, այլ վերածվել էր ազգանվան, որովհետև հայտնի է մի ոմն պրոտոսպաթար Գևորգ Մելիաս, որի կնիքը հասել է մեզ և Ադոնցի ենթադրությամբ նա երկրորդ Մելիասի որդին կարող է լինել (տե՛ս Ն. Ադոնց, նույն տեղում)։ Մելիաս [երկրորդից] հետո Լիկանդոսի բանակաթեմն անցնում է նույնպես հայկական մի ընտանիքի ձեռքը, Մխիթարի, որի որդին Վասիլը, հավանաբար, 973 թ. հետո դարձավ Լիկանդոսի կառավարիչը։ Լիկանդոս բանակաթեմի մի մասը Վասիլ II կայսրը տվեց Սենեքերիմ Արծրունուն, երբ վերջինս իր տիրույթները զիջեց կայսրության (Տե՛ս Ն. Ադոնց, նույն տեղում, էջ 140)։ Մելիասների մասին տե՛ս նաև սույն աշխատության 330-րդ էջում։

48 Բնագրում Βαασάκιος (Վասակ)։ Ադոնցը գտնում է, որ Վասակավանը (Անձիտում) հիշեցնում է այս Վասակի անունը, և որ Մատթեոս Ուռհայեցու հիշատակած Մխիթար մեծը (Ուռհայեցի, էջ 7), որի մոտ՝ Վասակավան փախան Ռոմանոս կայսեր որդիները Ցմշկիկի ձեռքից, այս Վասակի հետնորդն էր (տե՛ս N. Adontz, Notes I, p. 138)։

49 Բնագրում Παζούνης։ Հայոց Բազունի անունն է։ Բացի այս Παζούνης-ից հիշված են Բազունի՝ իշխան Կիլիկիայի (XI-րդ դար) և մի այլ Բազունի՝ որդի պարոն Լևոնի Բաղունեաց (Կիլիկիա, XI—XII-րդ դար)։ (Տե՛ս Հ. Աճառյան, Անձնանունների բառարան, հատ. Ա, 1942, էջ 361)։

50 Հայոց մեջ առկա արաբական անունների մասին տես վերը, գլուխ 43-ի 23-րդ ծանոթագրությունը։ Իմ կարծիքով բոլոր այս վերոհիշյալ անձնավորությունները, այն է Մելիասը, Վասակը, Կրիկորիկը, Պազունը, Իսմայիլը, ինչպես և Մանվելը և նրա որդիները պավլիկյան աղանդավորներ էին, ովքեր IX դարի 70-ական թվականներին Վասիլ Ա-ի սրանց հասցրած ջարդից հետո ապաստան էին գտել արաբների մոտ Մելիտենեում և Չորրորդ Հայքում։ Վասիլի մահից հետո, երբ Լևոն Զ կայսրը պավլիկյանների նկատմամբ նոր քաղաքականության սկիզբ դրեց, նրանք վերադարձան Բյուզանդիա։ Մանրամասն տե՛ս Հ. Բարթիկյան, Բյուզանդական էպոսը և Արևմտյան Հայաստանի նվաճումը Լևոն Զ-ի ժամանակ, Բանբեր Երևանի համալսարանի, 1969, № 2։ Արտահայտվել է այն կարծիքը, որ Մելիասը մասնակցել է Անդրոնիկոս Դուկասի ապստամբության (906) ընդդեմ Լևոն Զ-ի և դրա անհաջող ելքից հետո փախել Մելիտենե։ Բայց Մելիասը հիմնադրեց բյուզանդական կլեյսուր Լիկանդոսը 907 թ. ոչ ուշ. հազիվ թե 906 թ. ապստամբության մասնակցողը և փախչողը հենց հաջորդ տարին վերադառնա Բյուզանդիա։ Ծիրանածինի ասածն էլ, թե Մելիասը «դեռևս Մելիտենեում փախստական էր», ցույց է տալիս, որ նա վաղուց էր փախել այնտեղ։

51 Մելիասի խրիսովուլը իր արձագանքն է գտել բյուզանդական Դիգենիս Ակրիտաս էպոսում (Տրապիզոնի տարբերակ, տող 1540 և հտ. տե՛ս Adontz. Notes *I*, p. *146*)։

52 Բնագրում Εὐφρατεια։ Հոնիգմանը Եփրատիան տեղադրում է Եփրատից արևմուտք, Տիվրիկի (հյուսիսում) և Արաբկիրի (հարավում) միջև։

53 Τρύπια-ի մասին տես Հոնիգման Die Ostgrenze, էջ 65, նաև Ա. Գրեգուար, Διγενῆς Ἀκρίτας. σ. 118։ Համտ. Adontz, Notes *I*, p. *192*։ Տրյուպիա հունարեն նշանակում է «Ծակեր», որը, հասկանալի է, համահնչուն օտար բառի հիման վրա է ձևված։ Ենթադրում են, որ արաբերեն ալ-Դուրուբ բառն է, որ նշանակում է կիրճ, կապան։ Տե՛ս H. Grégoire—N. Adontz Aux confins militaires de l' Orient byzantin, Hussards, trabans, tasnaks. Byzantion t. XIII (1938), fasc. 1, p. 281; Համտ. Byzantion, t. X (1935), p. 255։

54 Լիկանդոսի մասին մանրամասն տե՛ս «Բանակաթեմերի մասին» աշխատության մեջ (սույն աշխատության 171-րդ էջում)։

55 Բնագրում ὄρος τῆς Τζαμανδοῦ։ Հայկական աղբյուրներում Ծամանդավ, Կեսարիայից արևելք։ Կար նույնանուն ամրոց, որն այժմ կոչվում է Զամանտի կալեսի և Ծամանդաւ գետ (այժմ Զամանտի սու). Տե՛ս Երեմյան, Հայաստանը, էջ 56։ Ուռհայեցու տվյալներով, երբ Սենեքերիմ Արծրունու որդի Դավիթը սպանեց կայսեր դեմ ապստամբություն բարձրացրած Նիկեփոր Ծռվիզին, 1022 թ., Վասիլ II-ը նրան որպես փոխհատուցում տվեց «զԿեսարիա և զԾամնդաւ և խաւատանէքն հանդերձ սահմանօքն»։ Նույն Ուռհայեցու տվյալներով հետագայում Կարսի թագավոր Գագիկը, երբ թողեց իր երկիրը և գնաց Բյուզանդիա, «թագաւորն Տուկիծ տայր նմա զԾամնդաւ» (Ուռհայեցի, էջ 51, 151, 216)։

Կեդրինոսը հիշում է Ծամնդավ քաղաք (πόλις), որ կառուցված է բարձր ժայռի վրա, բազմամբոխ և անչափ հարուստ. πολυάνθρωπος καὶ πλούτῳ περιβριθής։ Cedr., *II*, p. *423*։

56 խոսքը Կոստանդին Ծիրանածինի (913—959) և նրա մոր Զոեի մասին է։

57 Արարան Ծիրանածինը հիշատակում է նաև Վասիլ I-ի կենսագրության մեջ (տե՛ս սույն աշխատության 67-րդ էջում), ցույց տալով, որ այն Տիվրիկի մոտակայքում գտնվող բերդ էր և պատկանում էր պավլիկյան աղանդավորներին։ Գրավվեց և կործանվեց Վասիլ I-ի կողմից 871 թ.։ Կեդրինոսի տվյալներով Վասպուրականի թագավոր Սենեքերիմ Արծրունին Վասիլ II-ից ստացավ բացի Սեբաստիայից և Լարիսայից, նաև Աբարան։ (Տե՛ս Cedr. II, p. 464)։

## ԳԼՈՒԽ 51, 53

1 «Կայսրության կառավարման մասին» աշխատության 51-րդ գլուխը նվիրված է կայսեր անձնական նավատորմիղին։ Բյուրին որպես կռվան ունենալով այն փաստը, որ Ֆիլոթեոսի Կլետորոլոգիոնում, որ կազմված է 900 թ., կայսերական դրոմոնիոնների և աղրարիոնների գլխավորող ֆիալայի պրոտոսպաթարի մասին խոսք չկա, ենթադրում է, որ Լևոն VI-րդի կայսերական անձնական նավատորմիղ ստեղծելու այս որոշումը իրականացել է 900 թ. հետո, (Bury, IAS, p. 110)։ Կայսերական նավատորմիղը բաղկացած էր ագրարիա կոչված դրոսանավերից, ռազմանավերից և խելանդիոններից։ Ծովայինները բաժանված էին առանձին խմբերի, որոնց միավորը՝ ուսիան (οὐσία) բաղկացած էր 108 հոգուց։ Ավելի մեծ չափի խելանդիոնները կոչվում էին դրոմոն կամ դրոմոնիոն, որոնց յուրաքանչյուրի վրա ծառայում էին երկու ուսիա։ Օտարազգի նավաստիները ծառայում էին մի երկրորդ տեսակի խելանդիոնի վրա, որը կոչվում էր «պանֆիլոն խելանդիոն» կամ «պամֆիլոս դրոմոն»։ Յուրաքանչյուրի վրա լինում էր 150 նավաստի և փաստորեն ճետերիաների ծովային ուժերն էին ներկայացնում։ Կայսերական նավատորմիղը բաղկացած էր 100 սովորական խելանդիոնից, որոնց յուրաքանչյուրի նավաստիների թիվը 103 էր, հետևաբար 10.800 հոգի, ութ պամֆիլոն նավերից, յուրաքանչյուրը 150 նավաստիներով, 1.200 հոգի։ Ընդամենը 12.000 հոգի։ Հարյուր ուսիաները ստորաբաժանվում էին չորս բանակաթեմի (θέμα) և համապատասխանում են կայսերական թիկնապահ զորքի չորս տագմաներին։

2 Պրոտոկարավոս (πρωτοκάραβος) էին կոչվում կայսերական անձնական նավերի նավապետները։ Նրանք ընտրվում էին կայսերական նավատորմիղի լավագույն նավապետների միջից։ Նրանցից ոմանք իրենց պաշտոնավարության վերջում ստանում էին ֆիալայի պրոտոսպաթարի բարձր աստիճանը (տե՛ս Brehier, Les Institutions, p. 411)։ Որոշ ուսումնասիրողներ դեմ են այս բացատրությանը։ Նրանք ցույց են տալիս, որ պրոտոկարավոսը նավապետ չէ, որ նավապետը կոչվում էր կենտարխոս, իսկ պրոտոկարավոսները համապատասխանում են ժամանակակից միչմաններին (տե՛ս DAI, II, p. 200)։ Տե՛ս և հաջորդ ծանոթագրությունը։ Լևոն Զ-ի ասելով, պրոտոկարավոս էին կոչվում դրոմոնի ցուկի երկու նավավարները։ Տե՛ս Leonis imperatoris Tactica, col. 993։

3 Բնագրում πρωτοσπαθάριος τῆς φιάλης, ծովային դատարանի նախագահը, որի իրավասության տակ էին դրված կայսերական անձնական նավատոր-

միրի նավաստիները (տե՛ս Brehier, Les Institutions, p. 411)։ Կա նրան նվիրված մասնավոր ուսումնասիրություն։ Տե՛ս A. Vogt, Le protospathaire de la phiale et la marine byzantine, Echos d'Orient, t. 39 (1941/1942), p. 328—332։

4 Այս Հովհաննես Թալասսոնը ամենայն հավանականությամբ հայ էր և պատկանում էր Դալասսեններ| նշանավոր ընտանիքին։ Դալասսենների տոհմի մասին մանրամասն տե՛ս Adontz, Notes I, p. 163—177։ (Ունի հայերեն թարգմանություն, իրականացված Ինգիլիզյանի կողմից։ Տե՛ս Հանդէս Ամսօրեայ, 1936, սյունակ. 269—276)։

5 Պոդարոնը փոխարինեց Հովհաննես Թալասսոնին 902 թ.։ Պոգարոնը և նրա հաջորդ Լևոն Հայր այդ պաշտոնը վարեցին ոչ ավելի քան տաս տարի, քանի որ Լևոն Հայի հաջորդը՝ Բիմբիլիդեսը այդ պաշտոնն ստացավ 913 թ. առաջ։ Բիմբիլիդեսը այդ պաշտոնը վարեց 916 թ. ոչ հետո, որի հաջորդ Թեոդորոսը նշանակվեց սեննեկապետ Կոստանդինի կողմից, որի պաշտոնավարությունն ավարտվեց 919 թ. ամռանը (տե՛ս DAI, II, p. 199)։

6 Արսեն պրոտոսպաթարի և մանգլավիտի մասին մանրամասնություններ է հաղորդում Թեոփանեսի Շարունակողը, նա ցույց է տալիս, որ 921 թ. Արսենը և Պավլոս անունով մի այլ մանգլավիտ դավադրություն են կազմակերպել Ռոմանոս I Լեկապենոս կայսեր դեմ։ Դավադրությունը մատնությամբ հայտնի է դառնում, և Արսենին ու Պավլոսին գանահարելուց և նրանց ունեցվածքը բռնագրավելուց հետո աքսորում են (տե՛ս Theoph. Cont., p. 398—399)։

7 Բնագրում δρουγγάριος τοῦ πλωΐμου։ Նախքան Լևոն III կայսրը Բյուզանդական կայսրության ռազմածովային ուժերը գտնվում էին բարձրաստիճան մի ծովակալի ձեռքում, որ կոչվում էր στρατηγὸς τῶν Καραβισιάνων։ Նրան էր ենթարկվում δρουγγάριος τῶν Κιβυρραιωτῶν-ը։ Լևոն III-րդը վերացրեց ծովային ուժերի գերագույն հրամանատարությունը և ստորաբաժանեց այն։ Նա Կիբիրեոտների դրունգարին բարձրացրեց ստրատեգոսի (զորավարի) աստիճանին։ Մյուս ծովային կարևոր բանակաթեմն էր Դոդեկանեզը, որ կոչվում էր նաև էգեական ծովի բանակաթեմ և VIII դարի ընթացքում, մինչև Միքայել III կայսեր թագավորությունը, գտնվում էր դրունգարի հրամանների ներքո։ Միքայել III-րդի և Վասիլ I-ինի ժամանակ ստեղծվեց երրորդ ծովային բանակաթեմը՝ Սամոսը։ Այս նավատորմիղը հայտնի էր որպես բանակաթեմի նավատորմիղ (θεματικὸς στόλος)։ Ահա այս նավատորմիղից միանգամայն անկախ էր Կոստանդնուպոլսի նավատորմիղը։ Կոստանդնուպոլսի և նրա շրջանների մշտական պաշտպանության համար առանձնացված նավատորմիղը կոչվում էր βασιλικοπλώιμον (կայսերական նավատորմիղ), ի տարբերություն բանակաթեմերին պատկանող նավատորմիղից։ Այս կայսերական նավատորմիղի զորամասերը կատարում էին ծովային ոստիկանության դեր և բռնած էին կարևոր ստրատեգիական դիրքեր՝ Դարդանելի և Բոսֆորի մուտքի մոտ, Դիրախիոնում, Դալմատիայում և Սիկիլիայում։ Այս նավատորմիղի նավապետնահա կոչվում էր «նավատորմիղի դրունգար» (δρουγγάριος τοῦ πλωΐμου)։ (տե՛ս Bury, IAS, p. 108—109; Brehier, Les Institutions, p. 410—411)։ Նավատորմիղի դրունգար Նասարը քաջա-

ծանոթ է բյուզանդական աղբյուրներում, նրա մասին Ծիրանածինը հիշատակում է նաև Վասիլ կայսեր կենսագրության մեջ (տե՛ս § 62—63)։

8 Բնագրում πρωτελάται։ Յուրաքանչյուր նավի վրա լինում էր մեկ պրոտելատ և մեկ դևտերոելատ։

9 Բնագրում τοποτηρητὰς τοῦ βασιλικοῦ πλωΐμου։ Նրանց մասին Ծիրանածինը հիշատակում է և «Արարողությունների մասին» աշխատության մեջ (տե՛ս սույն աշխատության 149-րդ էջում), որտեղ ցույց է տրված, որ այդ տոպոտերետեսները չորսն էին։ Ենթադրվում է, որ 900—910 թվականների ընթացքում կայսերական անձնական նավատորմիղում տեղի է ունեցել ռեֆորմ և այն բաժանվել է չորս մասի։ Ինչպես այդ չորս տագմատաներն ունեին իրենց տոպոտերետեսներին, ապա և կայսերական նավատորմիղը ուներ իր չորս տոպոտերետեսներին։

10 Կիբիրեոտների ծովային բանակաթեմի կազմի մեջ էին մտնում Հոնիայի և Կարիայի մեծ մասը, ամբողջ Լիկիան, Պամֆիլիան, Պիսիդիան և Կիլիկիայի մի մասը։ Նրա կազմում էին Միլետոս, Միլասա, Հալիկառնասոս, Մյուրա, Նյուսա, Պերգե, Սիդե և այլ քաղաքներ։ Մայրաքաղաքն էր Փոքր Կիբիրա քաղաքը։

11 Կոստանդին Ծիրանածինի առաջին մենիշխանությունը՝ 913 թվականի հունիսի 7-ից մինչև 920 թվականի դեկտեմբերի 17-ը։

12 Քաղաք Ղրիմում։ Այժմ էլ կոչվում է Խերսոն։ Ծիրանածինի աշխատության 53-րդ գլուխը ինչպես դժվար չէ համոզվել, անմշակ նյութ է, որ պատահաբար է կցվել «Կայսրության կառավարման մասին» աշխատությանը։

13 Այս դեպքերը տեղի են ունեցել հավանաբար 284—293 թվականների միջև, երբ Դիոկլետիանոսը կայսր էր, իսկ Կոստասը (խոսքը Կոստանդին I կայսեր հոր մասին է) տրիբուն և դեռ չէր ուղարկվել Գալլիա։ Սարմատների այս արշավանքի մասին Ծիրանածինը եզակի աղբյուր է (տե՛ս DAI, II, p. 206)։

14 Դիոկլետիանոսի ժամանակ Բոսպորոսի թագավորն էր Թոթորսեսը։ Բոսպորոսում թագավորել են բազմաթիվ անձինք՝ Սավրոմատես անունով։ Դիոկլետիանոսի ժամանակ թագավորում էր Սավրոմատես IV (275—276 թթ. ), Ռեսկուպորիսի որդին, որի անունը Ծիրանածինի մոտ աղավաղվել է և դարձել Կրիսկորոնոս (տե՛ս DAI, II, p. 206)։

15 Մեոտիս լիճ էր կոչվում Ազովի ծովը։

16 Համատարխայի տակ ենթադրվում է ռուսական աղբյուրների Տմուտարականը՝ Ղրիմում։ Նրա մասին տե՛ս Е. Ч. Скржинская, Греческая надпись из Тмутаракани, Виз. Вр., т. XVIII, 1961, стр. 79; G. G. Litavrin, A propos de Tmutorokan, Byzantion, t. XXXV (1966), p. 221—234։

17 Զեխիայի տակ ենթադրվում է ադիղեյցիների երկիրը (տե՛ս Анчабадзе, Из истории, стр. 110)։ Ծիրանածինը իր այս աշխատության 42-րդ գլխի վերջում համառոտ խոսում է Զեխիայի մասին, ցույց տալով, որ «Տամատարխայից (Տմուտորականից) հոսում է մի գետ՝ 18 կամ 20 մղոն երկարությամբ, որը կոչվում է Ուկրուկ (հավանաբար Կուբանը). սա բաժանում է Զեխիան Տամատարխայից։ Ուկրուկից մինչև Նիկոպսիս գետը, որտեղ և գտնվում է համանուն ամրոցը, Զեխիա երկիրն է։ Տարածությունը 300 մղոն է»։ Նիկոպսիսը համապատասխանում է ժամանակակից

Նիշեպստւխո գետին, շուրջ 20 կմ ուղիղ գծով Տուապսե քաղաքից հյուսիս։ Նիկոպսիս ամրոցի ավերակները մինչև օրս էլ երևում են այս գետի ծովը թափվելու վայրում (տե՛ս Ачнабадзе, Из истории, стр. 110)։ Ծիրանածինը ցույց է տալիս նաև, որ Նիկոպսիս գետից այս կողմ գտնըվում է Արազգիան (Ափխազիան)։ Տե՛ս DAI, II, p. 156։

18 Պապագե վայրը այլ աղբյուրներից հայտնի չէ։ Տեղադրությունը անհայտ է։

19 Խոսքը Դերջանի մասին է։

20 Բնագրում Τζιλιαπερτ։ Պարզ չէ, թե ինչի մասին է խոսքը։ Ենթադրում են, որ կարող է Բաբերդը լինել (DAI. II, p. 209)։ VII-րդ դարի հայկական «Աշխարհացույց»-ի տվյալներով պատմական Հայաստանի հետևյալ շրջաններում կար նավթ (սպիտակ և սև). Տուրուբերան նահանգում՝ Մեղեդուղի և Այծպտունք լեռներում, ինչպես և Աղձնիքում։ Տե՛ս Երեմյան, Հայաստանը, էջ 107, 108։

21 Բնագրում Σρεγιαβαράζ։ Պարզ չէ ի՛նչը նկատի ունի։

# ՎԱՍԻԼ I ՄԱԿԵԴՈՆԱՑԻ ԿԱՅՍԵՐ ԿԵՆՍԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

1 *Բառախաղ Վասիլ անվան* (Βασίλειος) *և* βασιλεία *բառի, որ նշանակում է թագավորություն։*

2 *Փարթամացած ծառի տակ ենթադրվում է Մակեդոնական հարստությունը, իսկ նրա արմատի տակ՝ Վասիլ I կայսրը, հարստության հիմնադիրը։*

3 *«Վասիլի ընտանիքի անդամը» Կոստանդին Ծիրանածինն է, Վասիլ I-ի թոռը և Լևոն VI Իմաստասեր կայսեր որդին։*

4 *Վասիլի տոհմի պատմությունը մինչև Ծիրանածինի որդի Ռոմանոս II-ը շարադրել են անանուն հեղինակներ, որոնց գործը գիտությանը հայտնի է Թեոփանեսի Շարունակող կամ Շարունակված Թեոփանես անվան տակ (հունարեն բնագրում* Οἱ μετὰ Θεοφάνην)*։ Խնդրո առարկա ժամանակագրությունն սկսվում է այն տեղից, որտեղ Թեոփանեսը վերջացրել է իր պատմական երկը, այն է Լևոն V Հայկազնից։ Ինչպես այդ մասին ասվել է սույն հատորի Առաջաբանում, Թեոփանեսի Շարունակողի ժամանակագրությունը բաղկացած է վեց գրքից, որի հինգերորդը՝ Վասիլ I-ի կենսագրությունը շարադրել է ինքը՝ Կոստանդին Ծիրանածինը։*

5 *Ծիրանածինը Վասիլի ծննդավայրն է համարում Մակեդոնիան։ Մի փոքր հետո (§ 4) կոնկրետացնում է, ցույց տալով Ադրիանուպոլիս քաղաքը, որը սակայն Թրակիայում է գտնվում։ Մի այլ տեղում (§ 9) Ծիրանածինը գրում է «Թրակիայի Մակեդոնիա»* ἐκ Μακεδονίας τῆς Θράκης*։ 1011 թվակիր հայերեն մի ավետարանի հիշատակարանում ցույց է տրված, որ Ադրիանուպոլիսը Մակեդոնիայում է գտնվում. «ի գաւառին Մակեդոնիոյ ի քաղաքն որ կոչի Անդոնապաւլիս» (տե՛ս* Ադոնց, *Վասիլ Հայազն, էջ 458։ Հայերեն հիշատակարանի «Անդոնապոլիս» ձեր աղավաղում չէ։ Այդպես էր նա կոչվում տվյալ ժամանակաշրջանում։ Խան Կրումին վերագրվող մի հունարեն արձանագրության մեջ քաղաքի անունը բերված է* 'Αδριανόπολης *ձևով։ Տե՛ս* I. Venedikov, La population byzantine en Bulgarie au debut du IX-e siecle, Byzantino-Bulgarica, t *I*, Sofia, *1962,* p. *264)։ Հայկական ավանդությունը Վասիլի ծննդավայրը համարում է Հայաստանը։ Այսպես՝ Կիրակոս Գանձակեցին գրում է. «և յետ նորա (Միքայելի Հ. Բ.) Վասիլն, զսա ասեն ի Տարօնոյ, ի գեղջէ Թլայ» (տե՛ս Պատմություն Հայոց, Երևան, 1961, էջ 80)։*

6 *Սկզբնաղբյուրների տվյալների համաձայն Վասիլի հայկական ծագումն անվիճելի է։ Շատ հետաքրքիր է այդ տեսակետից X դարի առաջին կիսում գրված «Եվթիմիոսի վարքը» (կոչվում է նաև «Պսամաթիական ժամանակագրություն»), որն հիմնականում ընդգրկում է Լևոն VI-ի (886—912) պատմությունը։ Այնտեղ գրված է հետևյալը. «[Վասիլը] խնամակալ է թողնում Ստիլիանոսին, որին հայերեն Զաուցա էին անվանում, որովհետև նա էլ էր մակեդոնացի և ծագումով հայ, ինչպես և ինքը»։*

տե՛ս Vita Euthymii, ed. de Boor, p. 6)։ Տվյալ տեղի ռուսերեն թարգմանությունը, որ իրականացրել է Ա. Պ. Կաժդանը («Царь оставил опекуном Стилиана, армянское имя которого было Зауца (он был армянином, родившимся в Македонии, подобно самому императору») ճիշտ չէ այն պատճառով, որ փոխում է բնագրում եղած «մակեդոնացի» և «հայ» բառերի հերթականությունը, որով շեշտը դրվում է Վասիլի և Զաուցայի մակեդոնացի լինելու հանգամանքի վրա, այնինչ բնագրում շեշտը դրված է այդ երկուսի «հայ» լինելու հանգամանքի վրա։ Բնագրում այսպես է. „Στυλιανῷ δὲ τῷ καὶ Ζαούτζῃ κατὰ τῆς τῶν Ἀρμενίων διάλεκτον προσαγορευομένῳ, ὡς ἅτε Μακεδόνι ὄντι καὶ τὸ γένος Ἀρμένιον, καθὼς καὶ αὐτός"։ (Գրիգոր Բակուրյանի՝ Ֆիլիպուպոլսի Բաչկովո վանքի համար 1083 թ. գրած «Կանոնադրության» մեջ հիշվում են վանքին պատկանող մի շարք գյուղեր, այդ թվում և Բակուրյանի կողմից նրան նվիրաբերված մի պրոաստիոն, որ կոչվում է «Զաուցայի» (προάστειον τὸ ὀνομαζόμενον τοῦ Ζαούτζῃ). Այն գտնվում էր Վոլերոյի թեմում։ Տե՛ս Сведения византийских писателей о Грузии, том V, греческие тексты с грузинским переводом издал и примечаниями снабдил С. Г. Каухчишвили, Тбилиси, 1963, стр. 122)։ Առաջին անգամ Reiske-ն էր, որ Ծիրանածինի մասին գրած ծանոթագրություններում առաջ քաշեց Վասիլի սլավոնական ծագման մասին տեսությունը։ Նա հենվում էր Համզա Իսպահանցու տվյալների վրա, որի համաձայն Վասիլը սլավոն էր, հակառակ այն բանի, որ Herbelot-ն վաղուց էր ցույց տվել, որ արաբ հեղինակները «սլավոնի» տակ նկատի ունեն մակեդոնացուն (հմմտ. Ադոնց, Վասիլ Հայազն, էջ 495։ Նույնի L' age p. 104)։ Ռուս բյուզանդագետ Վասիլևը առաջ քաշեց Վասիլի արմենո-սլավ ծագման մասին տեսությունը (տե՛ս B. B., XII, 1906, p. 148—165։ Նույնի Histoire..., t. I, p. 398)։ Ն. Ադոնցը կանգ է առնում նաև Վասիլի արտաքինի նկարագրության վրա, որ տալիս է Սիմեոն Մագիստրոսը (ըստ նրան, Վասիլն ուներ իրար միացած հոնքեր, սև աչքեր, թուխ դեմք) և մի անգամ ևս ապացուցում, որ մենք ամենևին էլ գործ չունենք սլավոնական տիպարի հետ։ Բյուզանդական պատմիչ Իոելը Վասիլին անվանում է κεφαλᾶς «մեծ գլուխ» (տե՛ս Ioellis Chronographia compendiaria, Bonnae, 1836, p. 55)։

7 Վասիլն, իհարկե, ծագումով Արշակունի չէր։ Արշակունիների տոհմը վաղուց էր սպառվել (Adontz, L' age, p. 105)։ Աղբյուրները որպես կանոն ընդգծում են Վասիլի համեստ ծագումը։ Ն. Ադոնցը հակառակ դրան, ուզում է Վասիլին տալ Բագրատունի կամ Մամիկոնյան ծագում (տե՛ս L' age, p. 106)։

8 Նկատի ունի Պարթևների Արշակ I արքային, որ 249/248 թ. մ.թ.ա. հիմնադրեց Պարթևական հարստությունը Պարսկաստանում։

9 Ն. Ադոնցը ենթադրում է, որ այս Արտավանի տակ նկատի է առնված Հուստինիանոսի ժամանակ Պարսկահայաստանից Կոստանդնուպոլիս փախած և ապաստանած, ապա նշանավոր զորավար դարձած Արտավան Արշակունին, որի մասին մանրամասն խոսում է Պրոկոպիոս Կեսարացին։ Ծիրանածինը ցույց է տալիս, որ Արտավանն ապրում էր Լևոն I կայսեր

*թագավորության ժամանակ, իսկ Պրոկոպիոսի մոտ պատմական, իրական Արտավանը գործել է Հուստինիանոս I-ի ժամանակ։ Ադոնցը ժամանակագրական այս տարբերությունը չնչին է համարում (տե՛ս* L' age. p. *89)։ Ինչ վերաբերում է Կլեյեննեսին, ապա այդ անունը ևս հունական չէ։ Ամմիանոս Մարկելլինոսը IV-րդ դարում հիշատակում է երկու հայ մեծամեծների, ովքեր կոչվել են Արտավան և* Cylaces (Amm. *29,՛12, 30, 1. վերջինիս անունը Ն. Ադոնցը ուղղում է* Gylaces*)։ Նրանք ըստ Ադոնցի համապատասխանում են Փավստոսի Մուշեղ Մամիկոնյանին և Գլակ Մարդպետին։ VI-րդ դարում վերոհիշյալ Արտավանի ժամանակ գործում էր մի Գլակ զորավար ևս։ Ըստ Ադոնցի այս երկու զույգերը՝ Արտավան և Գլակ, համապատասխանում են Տիրանածինի Արտավանին և Կլեյեննեսին և նրանց նախատիպարներն են (տե՛ս* L' age, p. *90։ Նույնի, Վասիլ Հայազն, էջ 487)։ Պետք է ընդունել, որ Ն. Ադոնցի այս նույնացումները բավականին համարձակ են։*

10 *Խոսքը Լևոն I կայսեր մասին է (457—474)։*

11 *Արաբ խալիֆան։*

12 *Հերակլ կայսրը (610—641)։*

13 *Կոստանդին VI կայսրը (776—797) և նրա մայրը Իրենեն (780—797)։ Իրենեն միահեծան թագավորեց 797—802 թթ.։*

14 *Մայիկտես կամ Մաշկես-Մայակես, ըստ Ն. Ադոնցի հայկական Հմայակ անունն է։ Ղևոնդ պատմիչը վկայում է, որ 771 թվականի ապստամբության հերոս Արտավազդը, որ ստիպված անցավ բյուզանդացիների կողմը և դարձավ Անատոլիկոն բանակաթեմի զորավարը, Հմայակի որդին էր (Ղևոնդ, էջ 19, հմմտ. Կաղանկատվացի, Բ, 46)։ Ն. Ադոնցը կարծում է, որ Վասիլի ծննդաբանության մեջ հենց այս Հմայակի արձագանքներին ենք հանդիպում։ Եվ քանի որ Մայիկտես-Հմայակը գնաց Կոստանդնուպոլիս Կոստանդին և Իրենեի ժամանակ (780—781), ապա, ըստ Ադոնցի, Արտավազդը ըստ երևույթին ունեցել է որդի, որ կոչվել է պապի անվամբ Հմայակ (տե՛ս* L' age, p. *92. Նույնի, Վասիլ Հայազն, էջ 488—489)։ Հմայակ անունը ինչպես ցույց է տալիս Ադոնցը, Մամիկոնյան ընտանիքին է յուրահատուկ, բայց Վասիլի եղբոր անունը Սմբատ էր, մի անուն, որ տարածված էր Բագրատունիների մոտ։ Ադոնցը այդ հակասության համար էլ ելք է գտնում, ենթադրելով, որ Վասիլի (Մամիկոնյան) ընտանիքը խնամիական կապեր էր հաստատել Բագրատունիների հետ։ Ինչ վերաբերում է Լևոնին, Մայիկտեսի աներոջ, ապա, ըստ Ն. Ադոնցի, նրան կարելի է նույնացնել այն Լևոնի հետ, որ հետագայում դարձավ կայսր՝ Լևոն V Հայազն անվամբ (813—820) (տե՛ս Ադոնց, Վասիլ Հայազն, էջ 489։ Նույնի* L' age, p. *94). Այս բոլորը հասկանալի է, պարզ ենթադրություններ են, որոնց հավաստիությունը և ոչ մի աղբյուրով հնարավոր չէ հաստատել։ Այն հանգամանքը, որ Լևոն V-ի մի որդին կոչվում էր Սմբատ, իսկ մյուսը Վասիլ, իսկ Սմբատն էլ թագաժառանգ նշանակվեց Կոստանդին անվամբ, անուններ, որոնք տարածված էին Վասիլ 1-ի ընտանիքում, դեռևս ապացույց չի կարող հանդիսանալ Լևոնի և Վասիլի ենթադրյալ ազգակցության։*

15 *Վասիլի ծագման մասին առասպելը հորինողները աշխատել են ցույց տալ,*

որ Վասիլը սերում է Արևմուտքի առաջին քրիստոնյա կայսր Կոստանդինից և Արևելքի առաջին քրիստոնյա թագավոր Տրդատից։ Ծագումը Կոստանդին Մեծից բերելը երևի շատ մոդայական էր։ Հայազգի մի այլ ընտանիք ևս նշանավոր Փոկասները նույնպես իրենց Կոստանդին Մեծի ազգականներ էին համարում։ (Տե՛ս Michaelis Attaliotae Historia, Bonnae, 185, p. 217)։ Վասիլի ծնողների անունները Ծիրանածինն այստեղ չի հիշատակում, բայց «Արարողությունների մասին» աշխատության մեջ նա ցույց է տալիս, որ Վասիլի մոր անունը Պանկալո էր (տե՛ս սույն աշխատության 144-րդ էջում)։ Ըստ Ադոնցի Պանկալոն հայ էր (Վասիլ Հայազն, էջ 490։ Նույնի L'âge, p. 93) և որպես հիմք է ընդունում այդ կնոջ որդիների անունները. Սմբատ, ապա Մարիանոս (Մանվելի եղբայրը՝ կեսար Վարդասի, զորավար Պետրոնասի և կայսրուհի Թեոդորայի հայրը կոչվում էր Մարիանոս)։ Տե՛ս հաջորդ ծանոթագրությունը։

16 Հայ հեղինակներից Վարդան Արևելցին վկայում է, որ Վասիլի մայրը հայ էր. «քանզի Վահան ոմն եպիսկոպոս Տարօնոյ ասէր նմա (Վասիլ կայսեր Հ. Բ.), թէ Արշակունի իցէ. զի մայրն հայ էր. և կատարիլ թուէր Տեսլեանն Սահակայ սրբոյ՝ նստիլ թագաւոր Արշակունի. և կամէր պսակիլ ի Բագրատունւոյն։ Զոր կատարէ Աշոտ...» (Վարդան, էջ 85)։

17 Վասիլ Ա-ի կեղծ տոհմածառի հեղինակը պատրիարք Փոտն է, որը ևս, ինչպես հայտնի է, հայկական ծագում ուներ (Փոտի մայրը պատրիկ և մագիստրոս Արշավիրի, հավանաբար Կամսարական, Թեոդորա կայսրուհու փեսայի քրոջ՝ Իրենեի որդին էր)։ Փոտի խարդախության մասին արժեքավոր տեղեկություններ է տալիս Իգնատիոս պատրիարքի կենսագրության հեղինակ Նիկետա Պափլագոնացին։ Նա ցույց է տալիս, որ Փոտը իր տասնամյա արտաքսության ժամանակ ցանկանում էր սիրաշահել Վասիլ I-ին և իր նպատակին հասնելու համար դիմում է հետևյալ խորամանկության։ Նա վերցնում է Վասիլի ընտանիքի անդամների անունների սկզբնատառերը՝ Վ(ասիլ), Ե(վդոկիա), Կ(ոստանդին), Լ(ևոն), Ա(լեքսանդր), և Ս(տեփանոս) և սարքում Վեկլաս անունը։ Այնուհետև մի կեղծ ծննդաբանություն հորինում, սկսելով հայոց Տրդատ թագավորից։ Պատմությունը հասցնում է մինչև Վասիլի հորը և գրում, որ նա մի որդի է ունենալու (նկարագրում է այդ որդու արտաքին գծերը, որոնք ըստ էության նման են Վասիլի արտաքին գծերին), որի անունը իբր թե Վեկլաս է լինելու, և որ նա դառնալու է ամենաերջանիկ թագավորը։ Իր հորինվածքը այնուհետև Փոտը ալեքսանդրյան (այսինքն երկաթագիր) տառերով գրում է մի հին, մագաղաթյա մատյանում, աշխատելով գրքին տալ հնադարյան արտաքին։ Փոտի խաբեության մասնակից է դառնում պալատական մի քահանա Թեոփանես Սֆինոդեմոն անունով, որն իմաստուն մարդու համբավ ուներ, և հետագայում դարձավ Կեսարիայի եպիսկոպոս։ Նա վերցրեց Փոտի հեղինակությունը, դրեց գրադարան և մի պատեհ առիթով հանեց ու ցույց տվեց կայսեր։ Ոչ ոք չի կարողանում լուծել գրքի բովանդակության առեղծվածը։ Թեոփանեսն ասում է, թե մի մարդ միայն կարող է մեկնել այն, Փոտը։ Վերջինիս մոտ մարդ են ուղարկում։ Փոտը ձևացնում է, թե չի կարող գաղտնիքը բացահայտել ուրիշին, այլ միայն [Վասիլ] կայսեր, որովհետև խոսքը հենց նրա մասին է (տե՛ս Ignatii

archiepiscopi Constantinopolitani Vita sive certamen, Auctore Niceta servo Christi cognomento Davide Paphlagonae, Migne, Patrologia graeca, t. 105, col. 487—574)։ *Փոտը գալիս է կայսեր մոտ, հայտնում «գաղտնիքը», որ իբր հրեշտակի միջոցով է իմացել։ Դրանից հետո, Սիմեոն Մագիստրոսի ասելով, Փոտի և կայսեր փոխհարաբերությունները բարելավվում են (տե՛ս* Sym. Mag., p. *689—690)։*

18 *Բուլղարների խան Կրումը, որն Ադրիանուպոլիսը գրավեց 813 թ. հունիսի 22-ին (այս մասին տե՛ս* Scriptoris incerti De Leone Bardae Armenii filio, ed. Bonn., p. *342—344)։ Բյուզանդացիների և բուլղարների միջև ճակատամարտը տեղի ունեցավ Ադրիանուպոլսի մոտ գտնվող Վերսինիկիա կոչված վայրում։ Մանրամասն տե՛ս* Българското военно изкуство през феодализма, София, 1958, стр. 172—177։ *Ծիրանածինը ցույց է տալիս, որ գերիների թվում էին գտնվում Վասիլի ծնողները և «դեռ խանձարուրում գտնվող» Վասիլը։ Եթե այս տվյալին հավատանք, պետք է եզրակացնենք, որ Վասիլը պետք է ծնված լինի 813 թ. սկզբներին, կամ առնվազն 812 թ. վերջերին, մի բան, որ չի համապատասխանում իրականությանը։ Ն. Ադոնցը ենթադրում է, որ Վասիլը ծնվել է ոչ թե Կրումից գերվելու տարին, այլ գերությունից ազատվելու՝ 836 թ. (Տե՛ս Վասիլ Հայազն, էջ 458։ Նույնի,* L' age, p. *67)։*

19 *Կրումի ձեռքն ընկան բյուզանդական անվանի մարդիկ, զորավարներ, այդ թվում Կորդիլեսը և նրա որդին Վարդասը։ Ադոնցը գտնում է, որ Կորդիլես, դա հայկական Գարչույլ կամ Գարչուլ անունն է (տե՛ս* L'age, p. *54)։ Շատ հետաքրքրական է նշել, որ Համբարլիի վիմագիր արձանագրության մեջ, որ փորագրել է տվել Կրումը 813 թվականի վերջում կամ 814-ի սկզբում, ցույց է տրված, որ բուլղարական պետության աջ մասի կառավարիչն է բոյիլա (բոյար) Տուկը, որին են ենթակա զորավարներ Վարդանն ու Յանիսը* (Βαρδάνης καὶ ὁ Ἰάνης). *իսկ պետության ձախ մասի կառավարիչն է բոյիլա-կավխան Իրիտայսը, որին են ենթակա Կորդիլեսն ու Գրիգորաս զորավարները* (Κορδύλης καὶ ὁ Γρηγορᾶς). *Տե՛ս* I. Venedikov, La population byzantine en Bulgarie au debut du IXe siecle, Byzantino-Bulgarica, t. I, Sofia, 1962, p. 265, 273 sqq.

*Ստացվում է, որ խնդրո առարկա Կորդիլեսը (Գարչույլը) ոչ թե գերի է տարվել, այլ կամավոր կերպով անցել է բուլղարների տրամադրության տակ։ Ապա և հայազգի Վարդանի ծառայելը բուլղարներին վկայում է, որ Թրակիայի հայերը դեռ շատ վաղուց սերտ հարաբերությունների մեջ էին բուլղարների հետ։ Հետաքրքրական է նաև նշել, որ Կրումի արշավանքի առթիվ նահատակված մարտիրոսների մեջ հիշվում են հայկական անուններ կրող երկու անձնավորություններ՝ Արտավազդ և Վարդան, որոնց ուսումնասիրողները չեն կասկածում նրանց հայկական պատկանելիության հարցում։ Տե՛ս* E. Follieri—I. Dujçev, Un' acolutia inedita per i martiri di Bulgaria dell'anno *813,* Byzantion, t. *XXXIII (1963),* p. *104։ Կրումի ձեռքը գերի ընկնողների թվում հիշվում է և զորավար Ցանցեսը* (Τζάντζης)։ *Այս անունը Ն. Ադոնցը նույնացնում է Լևոն Զ կայսեր ժամանակ հանդես եկած հայազգի նշանավոր գործիչ Ստիլիանոս Զաուցայի անվան հետ, և գտնում, որ վերջինս խնդրո առարկա Ցանցեսի*

որդին էր (տե՛ս L'âge, p. 55)։ Ն. Ադոնցը ենթադրում է, որ Ցանցես անունը առնչություն ունի «ճանճ» բառին (այդ մասին տե՛ս ստորև, ծանոթ. 25), թեև մի ուրիշ տեղ առաջ է քաշում այն միտքը, որ Ցանցեսը հայկական Տաճատ (Τατζάτης) անունն է (տե՛ս նրա Les Taronites, p. 217, n. 1)։

20 Բուլղարները քրիստոնեություն ընդունեցին ցար Բորիսի ժամանակ, 864 թ.։

21 «Սկյութների» տակ ենթադրվում են սլավոնները։

22 Բնագրում Μουτράγων կամ ὁ Μουτράγων, որ Ὀμουρτάγων-ի աղավաղված ձևն է։ Խոսքը բուլղարաց խան Օմուրտագի մասին է։ Նա որդին էր Կրումի, որի մահից հետո (814 թ. ապրիլի 14) ժառանգեց նրա իշխանությունը։ Սա Լևոն V Հայկազնի հետ կնքեց երեսունամյա խաղաղություն։ Հաշտությանը նախորդել էր Լևոն V-ի հաղթական արշավանքը բուլղարների դեմ։ Հաշտության պայմանագիրը փորագրվել էր մարմարյա մի սյան վրա, որի բեկորները հայտնաբերվել են (տե՛ս Bréhier, Vie et mort, p. 103)։

23 Փիլիպպիկոս Վարդանը (711—713) ևս նախքան կայսր դառնալը իբրև թե երազ էր տեսել, որ մի արծիվ իր թևերը փռել էր նրա գլխին։ Նման մի պատմություն է պատմում և Մովսես Խորենացին՝ Արծրունիների անվան ստուգաբանության կապակցությամբ (տե՛ս Ադոնց, Վասիլ Հայազն, էջ 459)։

24 Խոսքը Եղիա մարգարեի մասին է։

25 Ինչպես ցույց է տալիս Սիմեոն Մագիստրոսը, Վասիլը նախքան Կոստանդնուպոլիս գնալը ծառայում էր Մակեդոնիայի բանակաթեմի զորավար Ցանցեսի մոտ։ Սիմեոնի տվյալներով այն ժամանակ Վասիլը 25 տարեկան էր։ «Ոչ մի օգուտ չքաղելով նրանից, ասում է պատմիչը, եկավ քաղաք [Կոստանդնուպոլիս]» (տե՛ս Sym. Mag., p. 655։ Հմմտ. Georg. Monach. Cont. p. 819)։ Ն. Ադոնցը կարծում է, որ Ցանցեսը կարող է հայկական «ճանճ» բառից առաջացած լինել (տե՛ս Ադոնց, Վասիլ Հայազն, էջ 456), որ քիչ հավանական է։ Հայերի մոտ ճիշտ է ավելի ուշ, XVIII դարում հիշատակվում է Ճանճայ անունը (տե՛ս Աճառյան, Անձնանունների բառարան, հատ. Գ, Երևան, 1946, էջ 157։ Տե՛ս նաև Ս. Բարխուդարյան, Հայ կնոջ իրավական վիճակը միջին դարերում, Պատմա-բանասիրական հանդես, № 2, 1966, էջ 33), որ գուցե առնչություն ունի բյուզանդական աղբյուրների Ցանցեսի հետ։ Կեդրինոսի մոտ խնդրո առարկա անունը հանդես է գալիս որպես ազգանուն։ Պատմիչը ցույց է տալիս, որ Լևոն VI-ի դեմ դավադրություն կազմակերպողների մեջ էին հայազգի Ջաուցայի որդի Լևոնը և Քրիստափոր Ցանցեսը (տե՛ս Cedr., II, 257)։ Ն. Ադոնցը (տե՛ս վերը, ծանոթ. 19) կարծում է, որ Ցանցես և Ջաուցա նույն անուններն են, որ քիչ է հավանական, եթե նկատի ունենանք Կեդրինոսի վերոհիշյալ փաստը, երբ Ջաուցա և Ցանցես անունները կողք կողքի են բերված։

26 Կոստանդնուպոլիսը ուներ մի քանի դարպասներ։ Ոսկե դարպասները (կամ Դռները) կայսրերի մուտք գործելու պաշտոնական դռներն էին, երբ վերադառնում էին պատերազմական արշավանքներից։ Ենթադրվում է, որ կառուցվել են 386 և 391 թվականների միջոցին Թեոդոս Մեծի հաղ-

թանակի առթիվ ընդդեմ Մաքսիմոսի (մանրամասն տե՛ս Janin, Const. byz., p. 252—256)։

27 Սիմեոն Մագիստրոսը և Գեորգ Վանականի Շարունակողը (Sym. Mag., p. 656, 691; Georg. Mon. Cont. p. 819, 842) հիշում են վանահոր անունը. προσμονάριος Νικόλαος 'Ανδροσαλίτης. Նա հետագայում Վասիլի կողմից նշանակվեց սբ. Սոֆիայի տաճարի սինկելլոս և էկոնոմ։

28 Միքայել III (842—867)։ Պատմության հայտնի է «Հարբեցող» մականունով։ Նա Թեոփիլոս կայսեր որդին էր և Միքայել II-ի թոռը։ Երեք տարեկան էր, երբ վախճանվեց հայրը և թագավորեց իր մոր Թեոդորայի և մորեղբոր Վարդասի խնամակալությամբ։ 859 թ. Վարդասի հետ արշավեց արաբների և պավլիկյանների դեմ, բայց բոլոր ճակատամարտերում պարտություն կրեց։

29 Կեսարը (լատ. caesar) որպես կանոն ընտրվում էր կայսեր կողմից։ Նա կայսրության երկրորդ մարդն էր և եթե կայսրը վախճանվեր առանց արու զավակի, թագավորությունը ժառանգում էր կեսարը։ Կեսարը հաճախ հիշվում է և հայկական աղբյուրներում։ Լաստիվերտցին ասում է, որ Միքայել կայսրը «զքեռորդին իւր կեսար անուանէ. և կեցիալ ի թագաւորութեանն ամս եօթն և ամիսս ութ, հիւանդացեալ զքուն մահու ջերանի։ Իսկ թագուհւոյն զկեսարն յորդեգիրս իւր արարեալ, թագաւորեցուցանէ ի տեղի առն իւրոյ» (էջ 50)։ Նրան հիշում է և Մատթեոս Ուռհայեցին (էջ 189)։ Կեսարի մասին մանրամասն տե՛ս R. Guilland, Recherches sur les Institutions byzantines, t. II, Berlin, 1967, p 25—43։

30 Հայազգի կեսար Վարդասը Բյուզանդական կայսրության նշանավոր դեմքերից մեկն էր։ Նա հարազատ եղբայրն էր բյուզանդական կայսրուհի Թեոդորայի՝ Թեոփիլոս կայսեր կնոջ և Միքայել III կայսեր մոր։ Վարդասի հայրը կոչվում էր Մարինոս, մայրը՝ Թեոկտիստե (վերանվանյալ Փլորինա)։ Մեզ հայտնի է նաև Վարդասի եղբոր անունը և մանրամասն գործունեությունը։ Նա կոչվում էր Պետրոնաս։ Վարդասի հայկական ծագումն ընդգծում է ոչ միայն նրա անունը (Վարդ), այլև նրա հորեղբոր մասին աղբյուրներում եղած տեղեկությունները։ Հորեղբայրը կոչվում էր Մանվել, և նա նշանավոր զորահրամանատար էր։ Թեոփանեսի Շարունակողն ու Գենեսիոսը ցույց են տալիս, որ նա հայ էր (Theoph. Cont., p. 110) և նրա որպես քաջ մարդու համբավը տարածվել էր ամբողջ կայսրության ապա և արաբական տիրապետության մեջ (ἐ 'Αρμενίων γὰρ τὴν γένεσιν ἦν; Μανουὴλ τὸν γεννάδα τῶν 'Αρμενίων; ÷ Genesii Regum, p. 52)։ (Այս Մանվելի մասին հիշատակություն ունի նաև հայ պատմիչ Վարդանը. «Ելանէր, գրում է նա, ի խնդիր մեծ զօրավարին Մանուէլի Մամիկոնենոյ. և նորա աճապարեալ հարիւր և յիսուն արամբք անկանի ի Կամախ և անտի առ Մամուն իշխանն Իսմայէլի» (Վարդան, էջ 77)։ Այս փաստի հիման վրա Ն. Ադոնցը եկել է այն եզրակացության, որ կեսար Վարդասը, ինչպես և նրա քույր Թեոդորան ծագումով Մամիկոնյաններ են։

Միքայել III կայսրը չունեցավ որդի, դրա համար իր մորեղբայրը, կեսար Վարդասը իրերի բնական բերումով պետք է Միքայել III-ի մահից հետո կայսր դառնար։ Միքայելի թագավորության շրջանում Վար-

*դասը ամբողջ տաս տարի գլխավոր դեմքն էր կայսրության մեջ։ Նույնիսկ թշնամաբար տրամադրված բյուզանդական հեղինակները չեն ուրանում Վարդասի արտակարգ ընդունակությունները, նրա բարձր զարգացումը։ Գենեսիոսը ընդգծում է, որ Վարդասը իմաստուն մարդ էր* (περὶ πολλοῦ δὲ τῷ καίσαρι Βάρδᾳ ἡ σοφία πεφιλοτίμητο, p. 98)։ *Վարդասն էր, որ 863 թ. Կոստանդնուպոլսում հիմնադրեց առաջին բարձրագույն դպրոցը, նրան հատկացնելով Մագնավրա կոչված պալատը։ Այդ բարձրագույն ուսումնարանի տնօրեն նա նշանակեց հայազգի նշանավոր գիտնական Լևոն փիլիսոփային (սրա մասին տե՛ս ստորև, ծանոթ. 45)։ Վարդասին սակայն չհաջողվեց նստել բյուզանդական գահին, նրան խանգարեց մի ուրիշ հայ, Վասիլը, որին հաջողվեց 866 թ. ապրիլի 21-ին սպանելով Վարդասին, իրեն ճանապարհ հարթել դեպի կայսրերի գահը (տե՛ս նաև ծանոթ. 56)։*

31 *Իսկական անունն էր Թեոփիլոս, -իցես վերջածանցը փաղաքշական է և կապված է նրա փոքրահասակ լինելու հետ։ Նա ծագումով հայ էր, որովհետև ինքը Ծիրանածինն է ցույց տալիս մի քիչ հետո, որ նա կեսար Վարդասի ազգականն էր։*

32 *Բնագրում* πρωτοστράτωρ։ *Դա ստրատորների զորամասի պարագլուխն էր, որոնց սկզբնական պարտականությունն էր օգնել կայսեր ձի նստելու VI դարում հիշվում է ստրատորների հատուկ զորամաս։ Հուստինիանոս II-ի ժամանակ հանդիպում է ստրատորների գոմեստիկոս Օպսիկիոնի պրոտոստրատորի հետ միասին։ 765 թ. հանդիպում է մի «ասպաթար և կայսերական պրոտոստրատոր»։ Վասիլն իր գործունեությունն սկսեց որպես ստրատոր, ապա դարձավ պրոտոստրատոր։ Նախապես նա Թեոփիլիցեսի պրոտոստրատորն էր, ախոռապետը։ Պրոտոստրատորը ձի հեծած ուղեկցում էր կայսեր։ IX դարի վերջում և X դարի սկզբում պրոտոստրատորը այնքան էլ բարձր աստիճան չէր, բայց հետագայում նրա նշանակությունն ու կշիռը շատ է բարձրանում, իսկ Պալեոլոգների ժամանակ դառնում ամենաբարձր աստիճաններից մեկը։ Նա հավասարազոր էր արևմտյան մարշալներին (տե՛ս* Bury, IAS, p. *117—118):*

33 *Նոր կտակարանի Աննան, Փանվելի դուստրը, որ հանապազ հաճախում էր տաճար։ Ութսունչորս տարեկան հասակում տեսավ Քրիստոսին։ Ղուկաս, Բ. 36—38։*

34 *Դանելիսի մասին կա առանձին ուսումնասիրություն։ Տե՛ս* S. Runciman, The widow Danielis, Études dediées à la mémoire d'A. M. Andreades, Athenes, 1940.

35 *«Եղբայրացման» մասին տե՛ս* M. Ῥάλλης, Περὶ τῆς ἀδελφοποιίας. Ἐπετηρὶς τοῦ Πανεπιστημίου Ἀθηνῶν, 1908, σελ. 293—306։

36 *Սխոլերի դոմեստիկոս պատրիկ Անտիգոնոսը ծագումով հայ էր։ Նա կեսար Վարդասի որդին էր։*

37 *Հեստիատոր (բնագրում* ἑστιάτωρ)։ *Օգտագործելով միջնադարյան տերմինը, կարելի է թարգմանել տաճարապետ կամ հացերեց (հմմտ. Վ. Հացունի, Ճաշեր և խնճույք հին Հայաստանի մեջ, Վենետիկ, 1912, էջ 186)։*

38 *Դետիմոն (բնագրում* δαιτυμών։ *Հանդիպում է նաև* διαιτάριος, *լատ.* atrensis)։ *Կայսերական պալատի մատակարար։*



17—648

39 «Բուլղար բարեկամները» որպես կանոն մասնակցում էին կայսերական պաշտոնական ընդունելություններին, գտնվելով երկրորդ կարգում, «վելոն»-ում, և ընդունելությունների ժամանակ մուտք էին գործում կայսեր մոտ առաջին «վելոն»-ից՝ մագիստրոսներից հետո։ Այդ մասին Ծիրանածինը խոսում է և իր «Արարողությունների մասին» աշխատության մեջ (տե՛ս սույն գրքի 123-րդ էջում)։

40 Թովմայի հայր պատրիկ Կոստանդինը, ինչպես Ծիրանածինն է ցույց տալիս մի փոքր հետո, հայ էր։ Այդ մասին վկայում է նաև Սիմեոն Մագիստրոսը։ Նա գրում է, որ Միքայել կայսեր կազմակերպած ձիարշավի խաղերին մասնակցել է և «Կոստանդին հայը, պատրիկ Թովմայի և վիգլայի դրունգար Գենեսիոսի հայրը» (Κωνσταντῖνος δὲ ὁ ἐξ Ἀρμενίων ὁ πατὴρ Θωμᾶ πατρικίου καὶ Γενεσίου δρουγγαρίου τῆς βίγλας)։ Այդ հաստատում է և Գենեսիոսը. «Նա Կոստանդին հայն էր...» (Κωνσταντῖνος ἦν ὁ Ἀρμένιος. Genesii Regum, p. *101)։ Ըստ երևույթին, նա շատ կարևոր մի անձնավորություն էր, որովհետև ձիարշավի այդ խաղերին մասնակցում էին ընդամենը չորս հոգի, այդ թվում և կայսրը։*

41 Դրոմոսի լոգոթետը (λογοθέτης τοῦ δρόμου) զբաղված էր դիվանագիտական սուրհանդակների, օտար պետությունների դեսպանների ընդունման գործով, ինչպես և տնօրինում էր փոստը։ Նա ամեն առավոտ ներկայանում էր կայսեր խրիսոտրիկլինոն պալատում զեկուցելու։ (Տե՛ս Bury, IAS, p. 91—92)։ Լոգոթետների մասին ընդհանրապես տես նաև A. Semenov, Über Unsprung und Bedeutung des Amtes der Logotheten in Byzanz, Byzantinische Zeitschrift, Bd. XIX, (1910), S. 440—449։

42 «σὺν βασιλικοῖς φαλάροις»։ Ձիու ճակատին և սանձերի վրա եղած զարդերը։

43 Ախոռապան։ Ստրատորներին հիշատակում է և Մխիթար Գոշը. «Վեցերորդ դաս պաղատին Ստրատորքն, որք զձի թամբեն և հեծուցանեն զարքայն. և զգեստ է նոցա ուռեուռ կապայ (ըստ երևույթին աղճատված է բնագիրը—Հ. Բ.) և ի ձեռս իւրեանց թուր միասայրիք և ասպար փոքր» (Դատաստանագիրք, էջ 265)։ Համտ. նաև վերը, ծանոթ. 32։

44 Բնագրում Φιλοπάτιον։ Այդ անունով Կոստանդնուպոլսում երկու պալատ կար, մեկը՝ ներքին քաղաքում, մյուսը՝ արտաքին։ Առաջինը նույնացվում է Մանգանայի պալատի հետ։ Այստեղ խոսքը արտաքին Ֆիլոպատիոնի մասին է, որտեղ կային և որսավայրեր։ Արտաքին Ֆիլոպատիոնի պալատի ավերակները ուսումնասիրողները տեղադրում են ժամանակակից Թոփչըլար գյուղում, կամ Ադրիանուպոլսի դարպասի և Ոսկեդշրի միջև, և կամ էլ Վլախերնայի դիմաց (տե՛ս Janin, Const. byz., p. *142—143)։*

45 Հայազգի Լևոն փիլիսոփան իր ժամանակի ամենազարգացած մարդկանցից մեկն էր։ Նա առաջին տնօրենն էր կեսար Վարդասի հիմնադրած Մագնավրայի համալսարանի։ Ծնվել է շուրջ 800 թ. Թեսալիայում, սովորել քերականություն և պոեզիա Կոստանդնուպոլսում։ Անդրոս կղզում մի գիտնականի մոտ սովորեց փիլիսոփայություն, հռետորություն և թվաբանություն։ Թեոփանեսի Շարունակողը նրա մասին ասում է, որ Մագնավրայի համալսարանում փիլիսոփայության դասավանդումը գլխավորում էր «այն Լևոն

*Մեծը և փիլիսոփան, որ պատրիարք Իաննեսի (այն է՝ Հովհաննեսի) եղբորորդին էր և Թեսաղոնիկեի մետրոպոլիտը։ Մետրոպոլիտությունից հեռացվելուց հետո նա նշանակվեց այս դպրոցում ագիտությունը արտաքսելու համար»* (Theoph. Cont., p. *185)։ Լևոն փիլիսոփայի համբավը հասավ նույնիսկ արաբ խալիֆ Մամունի արքունիքը։ Խալիֆը նամակ գրեց կայսեր, որ նա իր մոտ ուղարկի նշանավոր փիլիսոփային և մաթեմատիկոսին* (Theoph. Cont. p. *186—190*; Sym. Mag., p. *640*· Georg. Mon. Cont. p. *860), բայց կայսրը չուղեց նրան ուղարկել, որովհետև նա հռոմայեցիների պարծանքն էր* (Theoph. Cont. p. *190)։*

*Հայազգի Լևոնի անվան հետ է կապված երկու գյուտ. լուսային նշանատվության սիստեմը, որի օգնությամբ բյուզանդական արքունիքում շատ կարճ ժամանակամիջոցում իմանում էին խալիֆայության մեջ տեղի ունեցող դեպքերի մասին, և ջրի օգնությամբ շարժման մեջ դրվող արձանների (մռնչացող առյուծների, երգող թռչունների), որոնք զարդարում էին Մեծ պալատի ընդունարանը։ Հսկայական նշանակություն ունեցավ Լևոնի գյուտը՝ այբուբենի տառերը որպես թվաբանական սիմվոլներ օգտագործելը, որով նա փաստորեն ալգեբրայի հիմքը դրեց։ Տե՛ս* История Византии, том II, стр. 86։

*Լևոն փիլիսոփան շատ սերտ հարաբերությունների մեջ էր կեսար Վարդասի հետ և շարունակ հուշում էր նրան ազուշանալ Վասիլից* (Sym. Mag., p. *676*; Georg. Mon. Cont. p. *829): Լևոն փիլիսոփայի մասին տե՛ս* Brehier, La civilisation, p. *465—466*; Աղոնց, *Գիտական դեմքեր, էջ 506 և հտտ.:* Е. Э. Липшиц, Византийский ученый Лев Математик, Виз. Временник, том II, 1949, стр. 106—149; *Նույնի,* Очерки, стр. 338—366։

46 *Արմամենտարիա անունը ծագում է լատիներեն* armamentum *բառից, որ նշանակում է զինանոց։ Արմամենտարիա թաղամասը գտնվում էր Ոսկեղջյուրում։ Նույնացվում է ժամանակակից Խասքյոյի հետ (տե՛ս* Janin, Const. byz., p. *416)։*

47 *Թեոդորա կայսրուհին, հայազգի Վարդասի քույրը, Թեոփիլոս կայսեր կինը և Միքայել III կայսեր մայրը։ Դեռ իր պատկերամարտ ամուսնու կենդանության օրոք ինքնուրույն քաղաքականություն էր վարում, ի պաշտպանություն պատկերապաշտների։ Թեոփիլոսը նրան նշանակեց իր մանկահասակ որդու խնամակալներից մեկը (մյուսներն էին Վարդասը, ապա Մանվելը և Թեոկտիստոսը)։ Թեոդորայի օրոք է, որ պատկերապաշտությունը վերջնականապես հաղթանակ տարավ (843) Բյուզանդական կայսրության մեջ։ Նա հեռացրեց պատկերամարտ պատրիարք հայազգի Հովհաննես Քերականին և պատրիարք նշանակեց պատկերապաշտների պարագլուխ Մեթոդիոսին։ Թեոդորան էր, որ սաստկացրեց կայսրության սահմաններում բնակվող պավլիկյանների հալածանքները, որոնց ժամանակ, համաձայն աղբյուրների տված տեղեկությունների, կոտորվեց շուրջ հարյուր հազար մարդ։ Ի վերջո սակայն Վարդասը հեռացրեց Թեոդորային իշխանությունից և նրան դստրերի հետ բռնի վանք ուղարկեց, որտեղ և նա վախճանվեց 867 թ.։ Բյուզանդական եկեղեցին սրբացրել է Թեոդորային և նրա հիշատակը նշում է փետրվարի 11-ին։ Մեզ է հասել Թեոդորայի վարքագրու-*

թյունը, որ հրատարակել է Վ. Ռեգելը. W. Regel, Analecta Byzantino-Russica, SPb. 1891: Թեոդորայի մասին մանրամասն տե՛ս Ն. Ադոնցի ուսումնասիրությունը. Մամիկոնյան իշխանուհին բյուզանդական գահի վրա. Պատմական ուսումնասիրություններ, Պարիս, 1948։

48 Թեոփիլոս կայսրը (829—842), Միքայել Թլվատի որդին: Դժվարին պատերազմ մղեց արաբ խալիֆա Մոտասսեմի դեմ։ 837 թ. գրավեց Սամոսատը, ավերեց Սոզոպետրան (Զապետրան), Մոտասսեմի ծննդավայրը: Դրա վրա Մոտասսեմը հսկայական բանակով հարձակվեց Թեոփիլոսի հայրենիք Ամորիոն քաղաքի վրա և 838 թ. սեպտեմբերի 23-ին գրավեց այն, որտեղ սարսափելի կոտորած կազմակերպեց։ 840 թ. Թեոփիլոսը ստիպվեց հաշտություն կնքել արաբների հետ։ Թեոփիլոսը վերջին պատկերամարտ կայսրն էր, բայց նրա գործը իր մահից հետո տապալվեց։ Նա արվեստի և գիտության մեծ սիրահար էր։ Նրա օրոք է, որ մեծ հռչակ են ձեռք բերում Լևոն փիլիսոփան և Հովհաննես Քերականը:

49 Սամփսոնը, Ենակը և Ներրովգը հին կտակարանի անձնավորություններ են, որոնք աչքի էին ընկնում իրենց ամեհի ուժով: Տե՛ս Դատ. ԺԳ—ԺԶ, Թիւք, ԺԳ, 34, Յես. ԺԱ, 22, ԺԵ, 14, Դատ. Ա, 20, Ծննդ. Ժ, 8—10, Ա. Մնաց. Ա, 10։

50 Պարակիմոմենոսը (թարգմանաբար նշանակում է «կից քնող») կայսեր սենեկապետն էր: Թեոփանեսը ցույց է տալիս, որ պարակիմոմենոսները երբեք հոգի էին լինում և կոչվում էին նաև կուբիկուլարիոս (լատ. cubiculum բառից, որ նշանակում է ննջասենյակ): Պարակիմոմենոս բառը առաջին անգամ հիշվում է Մավրիկիոս կայսեր ժամանակաշրջանում, 602 թ. (տե՛ս Theophanes, p. 285): Մավրիկիոսի ժամանակ պարակիմոմենոսը ենթարկվում էր պրեպոզիտոսին: Որպես կանոն պարակիմոմենոսը ներքինապետ էր լինում և կոչվում էր պրոտևնուխոս (πρωτευνοῦχος, ներքինապետ): Կոստանդին Ծիրանածինը իր «Կայսրության կառավարման մասին» աշխատության 50-րդ գլխում նրանց մասին գրում է հետևյալը. «Թեոփիլոս կայսեր ժամանակ պարակիմոմենոս դարձավ օստիարիոս Սքոլաստիկոսը, իսկ Թեոփիլոսի որդի Միքայելի ժամանակ պարակիմոմենոս էր պատրիկ Դամիանոսը, իսկ նրանից հետո՝ նույն կայսեր ժամանակ պարակիմոմենոս դարձավ [ապագա] քրիստոսասեր կայսր Վասիլը: Քրիստոսասեր Վասիլ կայսեր ամբողջ թագավորության ընթացքում պարակիմոմենոս չեղավ և ոչ ոք»:

Պարակիմոմենոսը հանդիպում է և հայկական աղբյուրներում (պառակամանոս, պառեկամանոս և այլն ձևերով), որտեղ շատ հաճախ ընդունվում է որպես հատուկ անուն: Տե՛ս Արիստակես Լաստիվերտցի, Պատմություն, էջ 42, Մատթեոս Ուռհայեցի. Ժամանակագրություն, էջ 2, 96, 233 և այլուր։

51 Երբ Վասիլը նշանակվեց պարակիմոմենոս, Վարդասը արդեն կեսար էր, իսկ նա կեսար դարձավ 862 թ. ապրիլի 26-ին, հետևաբար Վասիլն այդ պաշտոնն ստացավ նշված թվականից հետո։

52 Սիմեոն Մագիստրոսը և Գեորգ Վանականի Շարունակողը ցույց են տալիս, որ Վասիլը մինչ այդ ամուսնացած էր ոմն Մարիայի հետ։ Միքայելը բաժանեց Վասիլին նրանից և ամուսնացրեց Ինգերի դստեր, իր սիրուհի

Եվդոկիայի հետ։ Միքայելը Մարիային դրամ տալով «իր տունը» ուղարկեց, Մակեդոնիա (Sym. Mag., p. 675; Georg. Mon. Cont., p. 828)։ Նույն աղբյուրների տվյալների համաձայն Վասիլի ամուսնությունից հետո Վարդասի և Վասիլի միջև առաջացավ անվստահություն և յուրաքանչյուրը մտածում էր ինչպես ոչնչացնել հակառակորդին։

53 Բյուզանդական այլ աղբյուրներ ցույց են տալիս, որ կեսար Վարդասի սպանության նախօրյակին նրան էր դիմել Հովհաննես Նեատոկոմիտոսը, որ ոմն Պրոկոպիոսի միջոցով հայտնել էր, թե «Վասիլը քո դեմ դավադրություն է նյութում, որի վրա Վարդասը պատասխանել է. «դեռ երիտասարդ ես, հիմարություններ ես դուրս տալիս և որոմ սերմանում»։ Բայց հակառակ դրան, նա իր մերձավորների հետ խորհրդակցել է իր անելիքի մասին (տե՛ս Sym. Mag., p. 678—679)։

54 Այս կապակցությամբ շատ հետաքրքրական են հույն նշանավոր պատմաբան Կ. Պապարիգոպուլոսի խոսքերը, որ նոր պարակիմոմենոսը ոչ միայն առյուծ էր, այլև աղվես, որովհետև աչքի էր ընկնում ոչ միայն իր ֆիզիկական ուժով, այլև զարմանալի խորամանկությամբ։ Տե՛ս Κ. Παπαρρηγοπούλου. 'Ιστορία τοῦ 'Ελληνικοῦ ''Εθνους, ''Εκδοσις ἕκτη, 'Αθῆναι, 1932, τόμος Γ'. μέρος Β'. σελ. 306։

55 Գևորգ Վանականի Շարունակողը վկայում է, թե Վասիլը նախապես սարսափելի երդումներով վստահեցրել է Սմբատին, որ կայսր Միքայելը իբր շատ է սիրում նրան, Սմբատին, և իր՝ Վասիլի միջնորդությամբ ուզում է նրան կեսար հռչակել, բայց դրան խանգարում է Սմբատի աները, կեսար Վարդասը։ Պատմիչը ցույց է տալիս, որ Սմբատը հավատաց Վասիլի խոսքերին և թշնամացավ իր աներոջ, գնաց կայսեր մոտ և ասաց, թե կեսարը ուզում է նրան սպանել։ Կայսրը հավատ է ընծայում Սմբատի խոսքերին, նամանավանդ, որ այդ բանը հաստատում էր և Վասիլը և որոշում է Վարդասին սպանել (տե՛ս Georg. Mon. Cont, p. 828—829։ Համմտ. Sym. Mag., p. 676)։

56 Վարդասի այս արշավանքը կազմակերպել էր Վասիլը։ Պատճառն այն էր, որ Վասիլը չէր համարձակվում Վարդասի սպանության գործը իրականացնել Կոստանդնուպոլսում։ Վարդասը սիրված անձնավորություն էր։ Նրա սպանությունից հետո, երբ կայսրը վերադարձավ Կոստանդնուպոլիս, մի վանական բարձրանալով մի քարի վրա աղաղակեց. «լավ արշավանքի գնացիր, ո՜վ կայսր, սպանելով քո հարազատին և ազգականին։ Վա՜յ քեզ, որ նման քայլի դիմեցիր (տե՛ս Sym. Mag., p. 679; Georg. Mon. Cont. p. 831)։ Վարդասի բարեկամներից Լևոն փիլիսոփան խորհուրդ չէր տալիս Վարդասին արշավանքի գնալու, և զգուշացնում էր Վասիլից։ Վարդասի մյուս մերձակիցը, Փոտ պատրիարքը ևս համոզված էր, որ ծրագրված արշավանքը մի ծուղակ է Վարդասի համար (տե՛ս Sym. Mag p. 676—677)։ Նույն բանն ասում է և Գենեսիոսը։ Նա ցույց է տալիս, որ Վարդասը շատ էր սիրված ժողովրդի կողմից, և նրա սպանության առթիվ քաղաքացիական պատերազմ կսկսվեր, եթե զինվորականությունը դրունգար Կոստանդին հայի գլխավորությամբ անհրաժեշտ միջոցները ձեռք չառներ (տե՛ս Genesii Regum, p. 107)։ Թեոփանեսի Շարունակողը ցույց է տալիս, որ այնուամենայնիվ երկրում հուզումներ առաջացան, և

որ քիչ էր մնացել, որ Միքայելը զոհ գնար, բայց վիգլայի դրունգար Կոստանդինը կանխեց այդ (տե՛ս Theoph. Cont., p. 206)։

Կեսար Վարդասը սպանվեց 866 թ. ապրիլի 21-ին։ Վասիլին սպանության գործում աջակցում էին կեսարի եղբայր Մարիանոսը (կամ Մավրիանոսը), Վարդասի փեսա Սմբատը (Ծիրանածինը միայն սրա անունն է տալիս), Սմբատի եղբայր Վարդասը. Պետրոս Բուլղարը, Լևոն Ասորին՝ Պետրոսի հորեղբորորդին, Հովհաննես Խալդը և Կոստանդին Տոքսարասը (տե՛ս Sym. Mag.. p. 678; Georg. Mon. Cont. p. 830)։ Ն. Ադոնցը գտնում է, որ բոլորն էլ հայեր են եղել, որ Բուլղար, Ասորի, Խալդ հորջորջումները որոշիչ չեն ազգության, այլ փութ անուններ են, այլապես, գրում է նա, Բուլղարի (Պետրոս) հորեղբորորդին (Ադոնցը գրում է եղբորորդին) չէր կարող ասորի լինել (Լևոնը—Հ. Բ.)։ Տե՛ս Ադոնց, Վարդ Մամիկոնյան, էջ 351, նույնի Վասիլ Հայազն, էջ 477։ Ն. Ադոնցը անկասկած իրավացի է, որովհետև Թեոփանեսի ժամանակագրության մեջ հիշատակվում է մի Վարդան, Անատոլիկոն բանակաթեմի զորավարը, որը մականվանվում է «Թուրք»—Βαρδάνης ὁ πατρίκιος καὶ στρατηγὸς τῶν ἀνατολικῶν ὁ ἐπίκλην Τοῦρκος (p. 479)։ Ն. Ադոնցը Հովհաննես Խալդին նույնացնում է Գենեսիոսի մոտ հիշատակված Վարդասին սպանողներից մեկի՝ ոմն Խալդի հետ, որի մականունն էր Ցիֆինարիտես (-իտես վերջածանցը համապատասխանում է հայերենի -ացի-ին. Ցիֆինարիտես նշանակում է Ցիֆինարցի), տե՛ս Genesii Regum, p. 106)։ Ն. Ադոնցը գտնում է, որ Ցիփի (հայերեն Ցփնի) <Ցիփենի), վրացերեն ցիփելի, ձիփելի նշանակում է ծառի մի տեսակ։ Գրիգոր Դարանաղցին հիշում է մի գյուղ Սև Ծովի և Ճորոխի միջև, Համշենի մոտ, որ կոչվում է Ցբնի (դրա բնակիչը կոչվում է Ցբնցի) (տե՛ս Ժամանակագրութիւն Գրիգոր վարդապետի Կամախեցւոյ կամ Դարանաղցւոյ, Երուսաղէմ, 1915, էջ 405)։ Նշված շրջանը աշխարհագրական տեսակետից մտնում էր Խաղտիք բանակաթեմի մեջ, հետևաբար Հովհաննես Խալդը կարող էր այդ Ցբնիից լինել (տե՛ս L' age, p. 79։ Հմմտ. Վարդ Մամիկոնյան, էջ 351, Վասիլ Հայազն, էջ 477)։ Ինչ վերաբերում է Կոստանդին Տոքսարասին (Τοξαρᾶς) ընդունելի չէ Ն. Ադոնցի բացատրությունը, որ իբր դա ծաղրական մականուն է «անտարակույս իրանական բառ, գուցե և ծանոթ խալդական ձոնափումս» (էջ 477)։ Տոքսարաս հունարեն բառ է (ծագում է τόξον—աղեղ բառից) և նշանակում է աղեղնագործ (եթե, իհարկե τοξάρχης բառից չէ, որ նշանակում է աղեղնավորների զորահրամանատար)։ Վարդասի սպանության մասին վկայում է նաև Նիկետա Պափլագոնացին, Իգնատիոս պատրիարքի վարքագիրը (տե՛ս Vita Ignatii, M. P. G., t. 105, col. 536)։

Կոստանդին Ծիրանածինը խուսափում է իր պապին՝ Վասիլին ներկայացնել որպես Վարդասի անմիջական սպանող և ուզում է ցույց տալ, որ նա ոճրի սոսկ կազմակերպողներից մեկն էր։ Բայց ուրիշ աղբյուրներ վկայում են, որ Վասիլի ձեռքը բառացիորեն ներկվել էր Վարդասի արյամբ։ Ահա թե ինչ է գրում Սիմեոն Մագիստրոսը. Երբ կեսարին հայտնեցին, որ դավադրություն է նյութված իր կյանքի դեմ, «Վարդասը այդ գիշեր մնաց անքուն և իր մերձավորներին մոտը հրավիրելով, խորհրդակցեց անելիքի շուրջը։ Վարդասի մերձավորներից պրոտոսպաթար

Ցիլոթեոսը ասաց. վաղը, տե՛ր, հագիր քո ոսկեզօծ խիտոնը և ներկայացիր քո թշնամիներին, նրանք քո ներկայությունից կվախենան»։ Արևածագին Վարդասը շքեղ հանդերձներ հագած նստավ իր ձին և բազմաթիվ մարդկանց ուղեկցությամբ գնաց կայսեր վրանը։ Վասիլը եկավ, բռնեց նրա ձեռքից և ներս հրավիրեց կայսեր մոտ։ Վարդասը, հանդիպելով կայսր Միքայելին ասաց. «Ամբողջ զորքը գումարված է, տեր. հրամայիր շարժվել դեպի Կրետե»։ Իսկ Վասիլը, որ նրա ետևում էր կանգնած, իսկույն սրով հարվածեց նրան։ Դավադիրները հարձակվում են Վարդասի վրա և նրան կտոր-կտոր անում։ Կայսրը լուռ ու մունջ դիտողի դերում էր։ Առավոտվա երրորդ ժամն էր» (տե՛ս Sym. Mag., p. 678—679. Georg. Mon. Cont., p. 831)։

57 Այսինքն սուրբ Սոփիայի տաճարում։ Σοφια հունարեն նշանակում է իմաստություն։

58 Գենեսիոսի տվյալների համաձայն Միքայել III-ը որդեգրեց Վասիլին (υιον τε θετον επὶ πᾶσι βασιλεως ονομασθηναι) և ապա նշանակեց մագիստրոս և պարակիմոմենոս (տե՛ս Genesii Regum, p. 111)։ Նույն բանն է ասում և Թեոփանեսի Շարունակողը (տե՛ս Theoph. Cont., p. 207)։ Սիմեոն Մագիստրոսը և Գեորգ Վանականի Շարունակողը Վասիլի՝ Միքայել III-ի կայսերակիցը հռչակվելու կապակցությամբ հետաքրքրական մանրամասնություններ են տալիս։ 866 թ. Պենտեկոստեի նախօրյակին, շաբաթ օրը Միքայել կայսրը իր պրոտովեստիարիոս Ռենտակիոսի միջոցով հաղորդում է պատրիարք Փոտին, որ նա կազմակերպի Վասիլի կայսերացումը։ Հաջորդ օրը [տաճարում] դրվեց երկու գահ։ Մայրաքաղաքի բնակիչները զարմացան, թե ինչու համար մեկ կայսեր առկայության դեպքում դրվել են երկու գահ։ Կայսրից հետո գնում էր Վասիլը՝ սկարամանգիոն հագած, սուրը կապած, ինչպես սովորություն էր պարակիմոմենոսների համար։ Մինչև տաճարի կայսերական դարպասը, Միքայելը թագը չհանեց, ինչպես պարտավոր էր անել։ Նա թագը հագած գնաց մինչև սուրբ դուռը և թագը գլխին բարձրացավ աստիճաններից։ Կայսրից ցած կանգնած էր պարակիմոմենոս Վասիլը, Վասիլից ցած՝ ասեկրետ Լևոն Կաստորը՝ հրովարտակը ձեռքին, ապա պրեպոզիտոս Միքայել Անգուրիսը և դեմարքոսները դեմոսների [ներկայացուցիչների] հետ։ Լևոն ասեկրետեսը սկսեց ընթերցել կայսերական հրովարտակը, որտեղ գրված էր. Կեսար Վարդասը որոշել էր ինձ [այսինքն Միքայելին—Հ. Բ.] սպանել, դրա համար ինձ քաղաքից հեռու տեղ տարավ։ Եթե այդ մասին տեղյակ չպահեին Սմբատն ու Վասիլը, ես այժմ կենդանի չէի լինի։ Նա իր մեղքով վախճանվեց։ Ես ուզում եմ, որ պարակիմոմենոս Վասիլը, որպես հավատարիմ մարդ և թագավորությանս պահապան, թշնամուց ինձ փրկող և ինձ շատ սիրող, դառնա իմ թագավորությանս պահապանը և նրա մասին հոգացողը։ Թող բոլորի կողմից նա կայսր հռչակվի։ Վասիլի աչքերը լցվեցին արտասուքով։ Կայսրը թագը հանելով իր գլխից տվեց Փոտ պատրիարքին։ Փոտր [թագը] դրեց սուրբ սեղանին և օրհնեց այն։ Պրեպոզիտոսները Վասիլին զիքետեսիոն և ցանգիա հագցրին. հագնելով քղամիդը, նա երկրպագեց կայսեր։ Պատրիարքը կայսեր գլխից վերցրեց թագը և դրեց Վասիլի գլխին։ Գայիսոնները սովորության համաձայն խոնարհվեցին. Միքայելը

Վասիլին թագադրեց և բոլորը գոչեցին. «Շատ տարիներ Միքայելին և Վասիլին» (Georg. Mon. Cont., p. *831—833*; Sym. Mag., p. *679—680*)։ Վերոբերյալից կարելի է հանգել այն եզրակացության, որ Վասիլն ու Սմբատը վաղուց էին նախապատրաստում Վարդասի սպանությունը և իրենց ծրագրի իրականացման համար Միքայելի առջև զրպարտում Վարդասին, որ իբրև թե նա որոշել է ոչնչացնել կայսեր։

59 Նույն 866 թ.։ Խոսքը Վասիլի՝ Միքայել III-ի կայսերակից դառնալու մասին է։

60 Պեգանը՝ ազգանուն է։ Նրա անունն էր Գևորգ (տե՛ս Sym. Mag., p. *680*; Georg. Mon. Cont., p. *833*)։ Ն. Ադոնցը ենթադրում է, որ ծագումով նա հայ էր։ Նրա ազգանունը կապում է պարսկերեն paigan բառի հետ, որ նշանակում է հետևակ (տե՛ս N. Adontz, L' age, p. *78*)։

61 Հունարենում δυνατός (ուժեղ, հզոր)։ Այդպես էր կոչվում պետական ավագանին և հոգևորականության վերնախավը, այդ թվում մագիստրոսները, պատրիկները, մետրոպոլիտները, եպիսկոպոսները, վանահայրերը և այլն (տե՛ս Ռոմանոս I կայսեր 934 թ. նովելլան. Сборник документов по социально-экономической истории Византии, Москва, 1951, стр. 157—158)։

62 Բնագրում Πλατεῖα πέτρα, որ նշանակում է «Տափակ քար»։ Այս ամրոցը, որ գտնվում էր Թրակեսիոն բանակաթեմում, կարևոր դեր խաղաց նաև Կոստանդին Դուկասի, ինչպես և Վարդաս Սկլերոսի ապստամբություն-ների ժամանակ (տե՛ս Theoph. Cont., p. *421*; Cedr. *II*, p. *434*)։ Գևորգ Վանականի Շարունակողի տվյալներով Սմբատը ձերբակալվեց Կելցեննում (Եկեղյաց գավառում), Գևորգ Պեգանի ձերբակալությունից 30 օր անց (տե՛ս Georg. Mon. Cont., p. *834*)։

63 Բնագրում Κοτύαιον. ժամանակակից Քյոթահիան։

64 Սբ. Մամասի վանքն ու նրան կից պալատը գտնվում էին Սիգմա կոչված թաղամասում, Քսերոլոֆոսից արևմուտք, Բոսֆորի եվրոպական ափին, ժամանակակից Բեշիկթաշի տեղում։ Պալատը կառուցվել էր Լևոն 1-ի կողմից։ 813 թ. բուլղարների խան Կրումը կրակի տվեց այն, բայց հե-տագայում վերականգնվեց։ Հենց այս պալատում էր, որ 867 թ. սեպտեմ-բերի 24-ին սպանվեց Միքայել III կայսրը (տե՛ս Janin, Const. byz., p. *140, 431—432*; Idem, La topographie, p. *207—208*)։

65 Սմբատի և Գևորգ Պեգանի ճակատագրական վախճանի մասին հետա-քրքրական մանրամասնություններ են տալիս Սիմեոն Մագիստրոսը և Գևորգ Վանականի Շարունակողը։ Կեսարի փեսա Սմբատը (թեև անունն է հստակ վկայում սրա հայ լինելու մասին, բայց կա և ուղղակի փաստ այդ մասին։ Գևորգ Վանականի Շարունակողը գրում է Συμβάτιος ὁ Ἀρμένιος։ Georg. Mon. Cont., p. *834*), ինքն էր ուզում կեսար դառնալ (Վարդասի փոխարեն), և հավանաբար Վասիլը այդ հանգամանքը խայծ դարձրեց Սմբատին Վարդասի կյանքի դեմ նյութված դավադրության մաս-նակից դարձնելու համար։ Բայց երբ իրերի բերումով կայսերակից դար-ձավ Վասիլը, Սմբատը իրեն խաբված համարելով, դաշնակցեց ստրա-տելատ Գևորդ Պեգանի հետ և ապստամբություն բարձրացրեց՝ առերես Վասիլի դեմ և իբրև թե ի պաշտպանություն Միքայելի։ Նախ ձեր-բակալվեց Պեգանը, որին կայսեր հրամանով մայրաքաղաքի էպարքոս

Կոստանդին Միարեսը կուրացրեց և նստեցրեց քաղաքի հրապարակներից մեկում՝ անցորդներից ողորմություն խնդրելու։ Երեսուն օր հետո ձերբակալվեց Սմբատը Կելցեննեի (Եկեղիքի) մի պանդոկում։ Կայսեր հրամանով Սմբատին տանում են Պեգանի մոտ. վերջինիս ձեռքն են տալիս մի խնկաման, որի մեջ խունկի փոխարեն ծծումբ էր դրված և ստիպում նրան խնկարկել Սմբատին։ Այդ արարողությունից հետո կուրացնում են Սմբատի մեկ աչքը, կտրում նրա աջ ձեռքը և նրան ևս նստեցնում քաղաքի հրապարակներից մեկում մուրալու։ Երեք օր հետո երկուսին էլ իրենց տներն են ուղարկում և պահում տնային կալանքի տակ (տե՛ս Sym. Mag., p. 680—681; Georg. Mon. Cont., p. 833—834)։

66 Խոսքը սբ. Սահակի տեսիլքի մասին է, որ հանդիպում է Ղազար Փարպեցու Հայոց պատմության Առաջին Դրվագի վերջում (էջ 29—38)։ Դեռևս XII դարում Ներսես Լամբրոնացին կասկածել էր այդ տեսիլքի իսկության վրա։ Նա գրում է հետևյալը. «Տեսիլն այն ոչ հաւաստի առ մեզ գոլ սրբոյն Սահակայ» (տե՛ս Թուղթ Ներսեսի արքեպիսկոպոսի Կիլիկեցւոց Տարսոնի պատասխանի Յուսկանն արգելական ճգնաւորի ի մեծն Անտիոք, հրտ. Մ. Մսերյանց, Ծռաքաղ, 1859, էջ 5—6)։ Հայ պատմագրությունը խնդրո առարկա տեսիլքի հարցով զբաղվել է դեռևս Մ. Չամչյանից սկսած (մանրամասն գրականությունը տե՛ս Ն. Ակինեան. Քննութիւն տեսլեանն Ս. Սահակա, Հանդես Ամսօրյա, 1936, թիվ 10—12, սյունակ 470)։ Բոլոր ուսումնասիրողները միաբերան ընդունում են, որ տեսիլքը հետագա շրջանի կեղծիք է, և Սահակի հետ ոչ մի առնչություն չունի։ Ուսումնասիրողները միայն վիճում են այդ տեսիլքի հորինման ժամանակի և պայմանների հարցի շուրջը։ Գ. Խալաթյանը գտնում է, որ այն հորինվել է X դարում։ Մ. Գարագաշյանը՝ 452—482 թթ. միջև, Հ. Գաթրճյանը՝ V դարի վերջում։ Կ. Տեր-Սահակյանը գտնում է, որ տեսիլքի հորինողը Փոտ պատրիարքն է և որ տեսիլքի մեջ ակնարկված Արշակունի թագավորը Վասիլ I կայսրն է։ Գ. Սահակյանը տեսիլքի մեջ երեք շերտ է տեսնում. առաջինը տեսիլքի կմախքն է, որ VII դարում արդեն կար։ Երկրորդ շերտը VIII դարից է գալիս, իսկ IX դարում ստացել է իր վերջնական կերպարանքը։ Առաջին խմբագիրը Գրիգոր Սարկավագապետն է (654—660) երկրորդը՝ մի կրոնավոր (742), երրորդը՝ Փոտ պատրիարքը։ Ն. Ադոնցը գտնում է, որ տեսիլքը հորինվել է Մոնոզոնի կողմից, որ հայտնի է որպես Հայաստանը արաբական լծից ազատագրելու քարոզիչ (772)։ Ն. Ադոնցն այնուհետև ենթադրում է, որ Վասիլ կայսեր շրջապատում, գլխավորապես Փոտի ջանքերով փորձել են տեսիլքը հարմարեցնել Վասիլի կենսագրության, հիմնավորել նոր կայսեր Արշակունի ծագումը։ Փոտը այս կեղծիքը պիտի կատարած լիներ 867—875 թթ. միջև ընկած ժամանակամիջոցում։ Ըստ Ն. Ակինյանի, Փոտը ոչ մի առնչություն չունի տեսիլքի հետ, որ այն VIII դարի առաջին կեսին հրապարակ եկած մի կեղծիք է, որ մինչև վերջնական ձևն ստանալը ունեցել է բազում խմբագրություններ։ Սահակ Պարթևի տեսիլքի մասին տե՛ս նաև Հովհաննիսյան, Դրվագներ, Ա, էջ 36—37։

Բոլոր դեպքերում փաստը մնում է փաստ, որ Վասիլի ժամանակ այդ տեսիլքը օգտագործվել է Վասիլի վարկը բարձրացնելու համար։ Եվ եթե

*նկատի ունենանք Փոտ պատրիարքի առաջին կեղծիքը (տե՛ս ծանոթագրություն 17), ապա անհավանական չէ, որ խնդրո առարկա կեղծիքն էլ Փոտի հեղինակությունը լինի։ Ծիրանածինը ցույց է տալիս, որ Սահակի տեսիլքը 350 տարվա հնություն ունի, մի բան, որ չի համընկնում Սահակի ապրած ժամանակաշրջանի հետ։ Ն. Ադոնցը այդ հակասությունը լուծում է հետևյալ կերպ. Ծիրանածինը, ինչպես տեսանք, Վասիլի ծննդաբանության մեջ Արշակունյաց անկումը և Արտավանի ու Կլեյենեսի փախուստը կատարված է համարում Լևոն I կայսեր (457—474) օրով։ Վարդանանց պատերազմի կալանավորների դարձը տեղի ունեցավ Պերոզի 5-րդ տարին՝ 462 թ.։ Հավանական է, որ նոր խլրտումների հետևանքով հիշյալ Արշակունի իշխանների փախուստը վերաբերում է 462 թ.։ Արդ, այս թվից հաշվելով 350 տարի, ստացվում է ճիշտ 812 թ., այսինքն Վասիլի ծննդյան ավանդական տարին։*

67 *Միքայել կայսեր՝ սրբությունները ծաղրուծանակի ենթարկելու փաստը արձանագրված է նաև Իգնատիոս պատրիարքի վարքում։ Այնտեղ գրված է, որ Միքայելը «ոմն ծաղրածուի և միմոսի, որ Թեոփիլոս էր կոչվում (խոսքը Գրյուլլոսի մասին է։ Գրյուլլոս նրա ածականն էր, Միքայելը նրան Հիմերիոս էր անվանում (տե՛ս Վասիլի կենսագրության 27-րդ պարբերությունում—Հ. Բ.) և պրոտոսպաթարի աստիճան ուներ, ամբարիշտների մեջ ամենաամբարիշտին պատրիարք նշանակեց...։ Կայսրն ասում էր. Իմ պատրիարքը Թեոփիլոսն է, Կեսարի (Վարդասի—Հ. Բ.) պատրիարքը՝ Փոտը, իսկ քրիստոնյաներինը՝ Իգնատիոսը»։ Իգնատիոսի վարքագիրը հիշելով այս Թեոփիլոսի մի շարք սրբապղծությունները, մեղավոր է համարում Փոտին, որ նա ոչ մի ծպտուն չհանեց նրա դեմ (տե՛ս* Vita Ignatii, col. *528)։*

68 *Կոստանդնուպոլսի պատրիարք Իգնատիոսը (846—857 և 867—878), Միքայել Ռանգաբե կայսեր որդին էր։ Մինչև հոգևորական դառնալը կոչվում էր Նիկետա։ Չէր փայլում իր ընդունակություններով և վանականության ձեռքին դարձավ գործիք։ Վարդասն էր, որ նրան աթոռից զրկեց և վանք աքսորեց, նրա փոխարեն պատրիարք նշանակելով Փոտին։ Երբ 867 թ. Փոտն էլ աքսորվեց, Իգնատիոսը նորից ստացավ պատրիարքությունը։ Նա եկեղեցական ժողով գումարեց, որը նզովեց Փոտին։ Հունական եկեղեցին սրբացրել է Իգնատիոսին և հիշատակը նշում է հոկտեմբերի 23-ին։*

69 *Ծիրանածինի մոտ բառախաղ է։ Իգնատիոսին նա անվանում է* πατριάρχης *(պատրիարք, հայրապետ), իսկ Գրյուլլոսին՝* φρατριάρχης *(հրոսակապետ)։*

70 *Պանն* (Πάν) *ու Սատիրոսը* (Σάτυρος) *հին հունական առասպելաբանության կերպարներ են։ Պանն անտառների և լեռների աստվածն էր, գինու աստված Դիոնիսոսի ուղեկից։ Սատիրոսները երկրորդական աստվածություններ էին, որոնք աչքի էին ընկնում իրենց հաճույքասեր, գինեսեր գծերով, և նույնպես Դիոնիսոսի ուղեկիցների թվում էին։ Արվեստի մեջ Պանը, ինչպես և սատիրոսները պատկերված են այծի ոտքերով։*

71 *Խոսքը Թեոդորա կայսրուհու մասին է, Վարդասի քրոջ։*

72 *Խրիսոտրիկլինոսը* (Χρισοτρίκλινος. *թարգմանաբար նշանակում է ոսկե սեղան) բյուզանդական կայսրերի կենտրոնական պալատն էր, կառուցված Հուստինոս II կայսեր կողմից (565—578)։ Դա գահի մի մեծ դահլիճ էր,*

ութանկյուն, թաղակապ, տասնվեց լուսամուտներով։ Իր ձևերով նման էր Ռավեննայի սուրբ Վիտալ, ինչպես և Կոստանդնուպոլսի սուրբ Սերգիոս և Բաքոսի տաճարներին։ Կայսեր գահը գտնվում էր արսիդում, որի կամարը ծածկված էր խճանկարներով և պատկերում էր գահի վրա բազմած Քրիստոսին (տե՛ս Janin, Const. byz., p. *115—117*)։

73 «Քար ցանել, ծովի հետ խոսել, եթովպացուն սպիտակեցնելու փորձ անել» դարձվածքները առածներ են, որոնց միտքը այլ խոսքով «ձայն բարբառոյ յանապատի» է։ (Հմմտ. աստվածաշնչային մի առած. «Եթէ փոխիցէ Հնդիկ (հունարեն բնագրում՝ Եթովպացի) զմորթ իւր և ինձ զխայտուցս իւր, և դուք կարօղ լինիցիք գործել զբարիս՝ ուսեալք զչարիս». Երեմիա, ԺԳ, 23։

74 Միքայել III-ի Վասիլին սպանելու ծրագրի մասին վկայում է և Սիմեոն Մագիստրոսը։ Երբ նրանք գնացել էին որսի, մի վանական մոտենում է Վասիլին և մի թուղթ տալիս, որտեղ գրված էր, թե կայսրը ուզում է Վասիլին սպանել, որ կայսրը հրամայել է մեկին իր նիզակը նետել Վասիլի վրա (տե՛ս Sym. Mag., p. *683*)։ Գեորգ Վանականի Շարունակողը գրում է հակառակը, որ վանականը թուղթը տվել է կայսեր, որտեղ գրված էր, թե Վասիլը ուզում է նրան սպանել (տե՛ս Georg. Mon. Cont., p. *836*)։ Թյուրիմացությունը բացատրվում է հունարեն βασιλεύς (թագավոր, կայսր) և Βασίλειος (Վասիլ) բառի և անվան նման հնչելուց, և որտեղ որ կարող էր կայսր գրված լինել, շփոթվեր Վասիլ անվան հետ և ընդհակառակը։

75 Միքայել III-ը Վասիլիկինոսին էլ հռչակելով կայսերակից՝ նպատակ ուներ ամրապնդել իր դիրքը այն իմաստով, որ դավադիրները իրենց նպատակին չէին կարող հասնել միայն Միքայելին մեջտեղից հանելով։ Բայց Վասիլիկինոսը այնքան խղճուկ մի անձնավորություն էր, որ նրա գոյությունը ոչ մի փոփոխություն չէր կարող մտցնել իրադրության մեջ։ Հետագայում Վասիլը ևս, երբ իր դեմ դավադրություն կազմակերպվեց, դիմեց նույն քայլին և իր որդիներին կայսերակից հայտարարեց (տե՛ս Վասիլի կենսագրության 34-րդ գլուխը)։

76 Չակերտների մեջ առնված խոսքերը բնագրում չափածո են։

77 Հունական դիցաբանության գինու աստված Դիոնիսոսի մասին է խոսքը։

78 Էրիննիաները և տիտանները հունական դիցաբանության կերպարներ են։ Էրիննիաները (Ἐρινύς կամ Ἐριννύς) Հադեսի (անդրշիրիմյան աշխարհի) աստվածություններ էին, Գեայի և Սկոտոսի (խավարի) դուստրերը, որոնց պարտականությունն էր ոճիրների համար վրիժառու լինել, բնության օրենքների պաշտպան կանգնել, և աշխարհի ներդաշնակության մասին հոգալ։ Նրանք խստորեն պատժում էին ամեն մի օրինազանցություն և տեսանելի էին միայն զանցագործին։ Տիտանները (Τιτᾶνες) համարվում էին Ուրանոսի և Գեայի որդիները։ Տիտաններից Կրոնոսը գահընկեց արեց Ուրանոսին։ Հետագայում Կրոնոսի որդի Զևսը հոր և մյուս տիտանների դեմ պատերազմ սկսեց և հաղթող դուրս եկավ։ Արվեստի մեջ տիտանները պատկերված են մինչև մեջքը մարդկային կերպարանքով, իսկ մեջքից ցած՝ վիշապի։

79 Հոմերոսի մոտ Մահն (Θάνατος) ու Քունը (Ὕπνος) երկվորյակ աստվածու-

թյուններ են։ Սոփոկլեսը Մահին անվանում է Αἰώνιος Ὕπνος— Հավերժական Քուն և համարում Գեայի և Տարտարոսի որդին։ Արիստոֆանից սկսած Մահը բնորոշվում է որպես միակ աստվածությունը, որ չի ընդունում նվերներ, զոհաբերություններ և այլն։

80 Խոսքը Իսրայելի թագավոր Դավթի մասին է, Հեսսեի որդու։ Սրան է վերագրվում սաղմոսների հեղինակությունը։ Նրա մասին տես Ա. Թագավորությանց ԺԶ, Գ. Թագավորությանց Բ.։

81 Մեկ կենտինարը հավասար էր 100 լիտր ոսկու, մեկ լիտր ոսկին՝ 72 ոսկեդրամի՝ դահեկանի։ 970 կենտինար ոսկին հավասար էր 6.984.000 ոսկեդրամի։ Սիմեոն Մագիստրոսի տվյալների համաձայն Թեոփիլոսը թողել էր 1090 կենտինար միայն ոսկի, իսկ արծաթի հաշիվը չկար (տե՛ս Sym. Mag., p. 659)։ Կենտինարը հիշում է և Անանիա Շիրակացին. «Կենդինարն 100 լիտր է. և անուանեցաւ ըստ հոռվմայեցւոց լեզուին. զի կենդու 100 լսի. և է կենդինարն 7200 դահեկան»։ Տե՛ս Հ. Մանանդյան, Կշիռները և չափերը հնագույն հայ աղբյուրներում, Երևան, 1930, էջ 34։

82 Սիմեոն Մագիստրոսի տվյալներով Վասիլը գտավ ոչ թե երեք, այլ տասներեք կենտինար ոսկի (տե՛ս Sym. Mag., p. 659—660)։

83 Հիսուն լիտր ոսկին հավասար էր կես կենտինարի, 3600 դահեկանի։

84 Օբոլոսը պղնձե դրամ էր, դրամական ամենափոքր միավորը։

85 Ծիրանածինը, ինչպես և Վարդասի դեպքում, աշխատում է վստահեցնել, որ Միքայել III-ի սպանության մեջ իր պապը, Վասիլը, մասնակցություն չունի, որ այդ իրագործեցին «իշխանության գլուխ կանգնած բոլոր մեծամեծները և սենատի խելամիտ գործիչները»։ Բայց իրականությունն այլ է։ Այստեղ նպատակահարմար ենք գտնում թարգմանաբար մեջ բերել Միքայել III-ի սպանության մասին Սիմեոն Մագիստրոսի և Գեորգ Վանականի Շարունակողի հաղորդած անչափ հետաքրքրական տվյալները։ Վասիլիկինոսի կայսերակից դառնալուց հետո Վասիլը որոշեց Միքայելին սպանել։ «Կայսրը ընթրիքի էր նստել և հրավիրել էր դրան մասնակից դառնալու նաև Եվդոկիային և Վասիլին։ Կայսրը շատ խմեց. Վասիլը ինչ-որ պետքի համար դուրս եկավ։ Նա գնաց կայսեր ննջասենյակը, ջարդեց դռան փականքը (ինքը շատ ուժեղ մարդ էր), որպեսզի այլևս հնարավոր չլինի դուռը կողպել, որից հետո վերադարձավ և շարունակեց կայսեր հետ ընթրել։ Կայսրը նորից խմեց, իր հետ նաև Ինգերի դուստրը [Եվդոկիան], ապա վեր կացավ և Վասիլի օգնությամբ գնաց իր ննջասենյակը։ Վասիլը համբուրեց կայսեր ձեռքը ու դուրս եկավ։ Ննջասենյակում որպես կայսեր պահապան էր մնացել Վասիլիկինոսը, որը պառկել էր Ռեենտակիոսի [Միքայելի պրոտովեստիարիոսի—Հ. Բ.] մահճակալի վրա։ Իգնատիոս կիտոնիտեսը երբ գնաց ննջասենյակի դուռը կողպելու, տեսավ, որ [փականքը] ջարդված է, և դրա վրա նստեց իր մահճակալին և սկսեց մազերը փետել։ Հարբած կայսրը մեռածի պես քուն էր մտել, երբ Վասիլը հանկարծակի իր հետևորդների հետ ներս մտավ։ Իգնատիոսը սարսափած փորձեց Վասիլի ճամփան փակել։ Պետրոս Բուլղարը Վասիլի թևի տակից անցավ և մոտեցավ կայսեր մահճակալին, բայց Իգնատիոսը բռնեց նրան։ Կայսրը զարթնեց։ Հովհաննես Խալդը առանց հապաղելու սրով հարվածեց և կտրեց կայսեր ձեռքերը, իսկ ապելատ Հակոբիցես

Պարսիկը Վասիլիկինոսին սրահար արեց և դետին տապալեց։ Մարիանոսը, ռեկտոր Վասիլի հայր Վարդասը, Վասիլի եղբայր Սմբատը, Վասիլի եղբորորդի Ասիլեոնը (անունը տարածված է հայոց մեջ Ասիլ ձևով։ Հ. Աճառյանը ցույց է տալիս, որ հանդիպում է XIV դարից սկսած (տե՛ս Անձնանունների բառարան, հատ. Ա, էջ 223)։ Բայց ինչպես տեսնում ենք դեռ IX դարում կար), Կոստանդին Տոքսարասը կանգնել էին դրսում պահակության։ Միքայելի մարդկանցից և ոչ ոք չիմացավ տեղի ունեցածի մասին։ Վասիլի մարդիկ հավաքվեցին և սկսեցին խորհրդակցել։ Ասիլեոնը Վասիլին ասաց. Թեև Միքայելի ձեռքերը կտրեցինք, բայց նրան կենդանի ենք թողել։ Եթե նա ողջ մնա, մենք ի՞նչ հաշիվ պիտի տանք։ Եվ ընդառաջելով Վասիլին, նորից ետ դնաց, գտավ մահճակալին փռված ձեռնատ Միքայելին։ Նա Վասիլին էր հայհոյում։ Ասիլեոնը պատյանից քաշեց սուրը և այն մխրճեց կայսեր սիրտը, ապա թափեց նրա փորոտիքը։ Դիմելով Վասիլին նա սկսեց իրեն գովել, որպես թե ինչ-որ մեծ սխրանք էր կատարել։ Սովն ալեկոծվում էր։ Դավադիրները բոլորը միասին իջան պերամա, այնտեղից դիմեցին Եվլոգիոս պարսկի (ամենայն հավանականությամբ՝ պարսկահայի—Հ. Բ.) տունը և նրան ես իրենց հետ վերցնելով, եկան Մարինայի պալատը, որի ցանկապատի (τεῖχος) մուտքը մի քարե սալով (πλάξ) էր փակված։ Վասիլը հենվելով իր մարդկանցից երկուսի վրա, մի աքացի տվեց ու ջարդեց քարը և բոլորը միասին դիմեցին դեպի պալատի դուռը։ Եվլոգիոս պարսիկը իր լեզվով ասաց հետերիարխ Արտավազդին, որ Միքայելը սրախողխող է արված, բաց դուռը [նոր] կայսեր առաջ։ Արտավազդը վազեց պապիասի մոտ, նրա ձեռքից բռնի առավ բանալիները և կայսեր առաջ բացեց դուռը։ Վասիլը մտավ ներս և վերցրեց պալատի բանալիները...։ Նա իսկույն մարդ ուղարկեց սուրբ Մամասի պալատը և մեծ շուքով [Մարինայի] պալատն ընդունեց Ինգերի դուստր Եվդոկիային։ ...Այնուհետև նա Պավլոս կիտոնիտեսին ուղարկեց հողին հանձնելու Միքայելի դին։ Նա Միքայելի դիակը գտավ իր ձիու թամբաշորի մեջ փաթաթված, փորոտիքը թափած։ Նրա մոտ էին Միքայելի մայրն ու քույրերը, որոնք ողբում էին նրան և անիծում [Վասիլին]։ Պավլոսը Միքայելի դին մի նավակի մեջ դնելով, տարավ Խրիսուպոլսի վանքը, որտեղ նրան հողին հանձնեցին» (տե՛ս Georg. Mon. Cont., p. 836—838; Sym. Mag. p. 684—686)։ Հետաքրքրական է և Կոստանդին Մանասսիի հաղորդած փաստը, որի համաձայն Միքայելին սպանողը անձնապես Վասիլն էր (տե՛ս Constantini Manassis Breviarium historiae metricum, Bonnae, 1837, p. 244, տող 5251)։ Ինչպես տեսնում ենք, Միքայելին սպանողները նույն մարդիկ են, ինչ Վարդասին ոչնչացնողները, բոլորն էլ հայ, որոնց, սակայն, տարբեր առիթներով ու պատճառներով Վասիլը հետագայում մեկ-մեկ մաքրագործեց։ Հակորիցեսը որսի ժամանակ «պատահմամբ» է սպանվում, Հովհաննես Խալդը, որ ստացավ Խաղտիքի բանակաթեմի զորավարությունը, մեղադրվեց ապստամբություն բարձրացնելու նախապատրաստության մեջ, որի համար մահապատժի ենթարկվեց, Ասիլեոնին իր ճորտերն սպանեցին, Կոստանդին Տոքսարասը սպանվում է Կիբիրեոտների բանակաթեմում, կայսեր եղբայր Մարինոսը ոտքն է ջարդում և վերքը որդնոտում է, որից

և նա մահանում է և այլն (տե՛ս Sym. Mag., p. 687—688; Georg. Mon. Cont., p. 839—40)։ Վասիլի մահից հետո նրա որդի Լևոն VI-ը կարգադրեց, որ Միքայելի աճյունը Խրիսուպոլիսից բերեն քաղաք և թաղեն Սուրբ Առաքելոց եկեղեցում (տե՛ս Theoph. Cont., p. 353)։

Ծիրանածինն անկասկած հասկանալի պատճառներով Միքայել III-ի կերպարը բավական աղավաղել է։ Բյուզանդագիտության մեջ էլ մինչև վերջերս Միքայելը հայտնի էր «Հարբեցող» (Μέθυσος) մականունով։ Այս դարի 30-ական թվականներից սկսած փորձեր եղան արդարացնելու նրան։ Տե՛ս H. Gregoire, Etudes sur le neuvieme siecle, Byzantion, t. VIII, 1933, p. 515, 534; A. Vasiliev, The emperor Michael III in apocryphal literature, Byzantina-Metabyzantina, I, 1, 1946.

86 Հայ պատմիչները վկայում են, որ Վասիլը դառնալով բյուզանդական կայսր, դիմում է հայոց իշխանաց իշխան Աշոտին թագ խնդրելով։ Իրեն Արշակունի համարելով, Վասիլն ուզում էր թագն ստանալ թագադրից, որպիսին, հայոց դարավոր ավանդության համաձայն, կարող էր միայն Բագրատունի լինել։ Այդ մասին Վարդան պատմիչը գրում է. «Դարձեալ ի նոյն կայսերէ Վասլէ եկն ներքինի մի Նիկիտ կոչեցեալ յերեքհարիւր քսան և հինգ թուին, խնդրել ի յԱշոտոյ թագ, բերեալ շատ պարգևս. քանզի Վահան ոմն եպիսկոպոս Տարօնոյ ասէր նմա թէ Արշակունի իցէ. զի մայրն հայ էր, և կատարիլ թուէր տեսլեանն Սահակայ սրբոյ՝ նստիլ թագաւոր Արշակունի. և կամէր պսակիլ ի Բագրատունւոյն։ Զոր կատարէ Աշոտ, ընդ նմին առաքէ և տասն հազար արծաթ ընծայ նորաշէն եկեղեցւոյն» (տե՛ս Վարդան, էջ 85։ Համտ. Ղ. Ալիշան, Հայապատում, Բ., էջ 263 և հտ.)։ Վասիլ I-ի հայերի հետ հաստատած սերտ հարաբերությունների մասին վկայում է և Հովհաննես Դրասխանակերտցին (տե՛ս Պատմություն հայոց, էջ 140)։

87 Երբ Վասիլը կայսր դառնալուց հետո առաջին անգամ գնաց սուրբ Սոփիայի տաճարը, Փոտ պատրիարքը նրան անարժան համարեց սուրբ հաղորդության, ապա ավազակ և մարդասպան անվանեց։ Վասիլը դայրացած Փոտին հեռացրեց պատրիարքությունից, աթոռը տալով Իգնատիոսին (տե՛ս Sym. Mag. p. 688—689; Georg. Mon. Cont., p. 841)։ Այս դեպքի մասին Ծիրանածինը ոչինչ չի գրում։ Նա նշում է միայն, որ Փոտը «հակադրվել էր կայսեր»։ Փոտի հեռացումը շատ ավելի լուրջ պատճառներ ուներ, քան արձանագրում են վերոհիշյալ աղբյուրները։ Փոտը սլավոնականության թշնամին էր, իսկ Վասիլը աշխատում էր հարթել Կոստանդնուպոլսի և Հռոմի սրված փոխհարաբերությունները, որին խանգարում էր Փոտը (տե՛ս Ադոնց, Վասիլ Հայազն, էջ 479—480։ Vasiliev, Histoire, t. I, p. 437—438)։ Հակառակ այդ բոլորին, Վասիլը խոր հարգանք էր տածում դեպի Փոտը, և երբ 879 թվականին Իգնատիոս պատրիարքը վախճանվեց, Վասիլը աթոռը նորից Փոտին տվեց։ Բացի այդ, Վասիլը իր որդիների դաստիարակության գործը Փոտին էր վստահել։

88 Բնագրում Εἰδικόν։ Կայսեր անձնական գանձարանը, որ կոչվում էր նաև βασιλικὸν ταμεῖον։

89 «Փող է պետք...» դարձվածքը վերցված է Դեմոսթենեսի «Առաջին օլինթիական» ճառից։ Դարձվածքը հանդիպում է նաև Կեդրինոսի մոտ. Cedr., II, p. 419։

90 «Ջեռքերի մաքրության», այսինքն կաշառք չվերցնելու մասին կոչը շարունակ հանդիպում է բյուզանդական կայսրերի հրապարակած օրենքներում և հրովարտակներում։ Այն շատ էր օգտագործում Հուստինիանոս I-ն իր նովելլաներում։

91 Բրիարեոսը (Βριάρεως) հունական դիցաբանության կերպար է, Պոսեյդոնի (կամ Ուրանոսի, կամ էլ Պոնտոսի) և Գեայի որդին, ծովի ալեկոծության մարմնավորումը։

92 Խոսքը Խալկե կոչված պալատի մասին է, բյուզանդական Մեծ պալատի շենքերից մեկի, որն այդպես է կոչվել, որովհետև ծածկը պղնձե թերթերից էր։ Կառուցվել էր Կոստանդին I-ի կողմից։ Շենքը տուժեց 532 թ. «Նիկա»-ի ապստամբության ժամանակ, բայց Հուստինիանոսը վերականգնեց այն։ Վասիլ I-ի ժամանակ շենքը, ըստ երևույթին, վերանորոգման կարիք է ունեցել։ Ուղղանկյուն հատակագիծ ուներ, շենքի չորս մույթերը իրենց վրա էին կրում ութ կամար։ Շենքի պատերին կային բազմաթիվ խճանկարներ, որտեղ պատկերված էին Հուստինիանոս կայսեր հաղթական արշավանքները (տե՛ս Janin, Const. byz., p. *110—112*)։

93 Արիսպագոսն (Ἄρειος Πάγος) և Հելիեյան (Ἡλιαία) հին Աթենքում գործող դատարաններն էին։

94 Գենիկոնը (Γενικόν) պետական գանձատունն էր, որտեղ կենտրոնացված էին հարկերից կուտակված եկամուտները։ XII դարի վերջում Իսահակ Անգելոս կայսրը քանդեց այդ հոյակապ շենքը, նրա տեղում սեփական շինարարություն կատարելու համար (տե՛ս Nicetae Choniatae Historia, Bonnae, *1835*, p. *581*; Համտ. Janin. Const. byz., p. *170—171*)։

95 Պրիտանեյոնը (Πρυτανεῖον) հին Հունաստանի քաղաքներում պետական մի շենք էր, ժամանակակից տերմինով ասած քաղաքապետարանի կամ դիվանատան, որտեղ էին հավաքվում պրիտանները (բուլեի նախագահները) և միասին ճաշում։

96 Խոսքը 869 թ. եկեղեցական ժողովի մասին է, որը նզովեց Փոտին։

97 Տե՛ս ծանոթ. 87։

98 Վասիլ I-ի թագավորության, ինչպես և Մակեդոնական հարստության գոյության ամբողջ ընթացքում, բյուզանդական օրենսդրությունը կարգավորելու ուղղությամբ հսկայական աշխատանք տարվեց։ Վասիլ I-ը նպատակ դրեց ստեղծել հունա-հռոմեական կամ բյուզանդական իրավունքի մի ընդհանուր կոդեքս, որտեղ ժամանակագրական կարգով շարադրված լինեն կայսրերի հրապարակած բոլոր օրենսդրական նշանակություն ունեցող կարգադրությունները, այլ կերպ ասած, վերանայել Հուստինիանոս I կայսեր օրենսդրական գործը, լրացնել այն և համարեցնել ժամանակի ոգուն, օգտագործելով հետագա շրջանում հրապարակված օրենքները։ Հուստինիանոսի օրենսդրությունը (բացի նովելլաներից) շարադրված էր լատիներեն և կայսրության բնակչության համար անմատչելի էր, դրա համար Վասիլ I-ը որոշեց նորը կազմել հուներեն։ Վասիլ I-ը իր նպատակը շատ պարզ կերպով շարադրել է Պրոխիրոս Նոմոս-ի (Πρόχειρος νόμος) առաջաբանում, որտեղ ասվում է, որ նպատակ ունի հին օրինաց մաքրումը (ἀνακάθαρσις τῶν παλαιῶν νόμων)։ Վասիլը և նրան հաջորդող կայսրերը հրապարակում են օրենսդրական առանձին ժողովածուներ, ինչպես վերե-

*վում հիշատակված Պրոխիրոս Նոմոսը (հրապարակվեց 867—879 թթ. միջև), որը բովանդակում էր քաղաքացիական և քրեական օրենսդրությունը և հանդիսանում էր այդ «մաքրման» ենթարկված օրենսդրության ներածությունը։ Պրոխիրոս Նոմոսի հեղինակ է համարվում օրենսդետ Սիմբատիոսը (Սմբատը), որի անունը պարզ վկայում է նրա հայկական ծագման մասին։ Պրոխիրոս Նոմոսը գործեց մինչև Բյուզանդական կայսրության անկումը։*

*879—886 թթ. միջև Վասիլը հրապարակեց էպանագոգե* (Ἐπαναγωγή) *կոչված օրենսդրական ժողովածուն, որը պետք է լրացներ, ավելի հստակ դարձներ Պրոխիրոս Նոմոսը։ Ուսումնասիրողների մի մասը ընդունում է Ցախարիե ֆոն Լինգենթալի կարծիքն այն մասին, որ էպանագոգեն կիրառություն չունեցավ և մնաց որպես օրենսդրական նախագծում։ Հակառակ դրան, մի շարք ուսումնասիրողներ դեմ են այդ մտքին և գտնում են, որ այն, այնուամենայնիվ, գործածություն ունեցավ։ էպանագոգեի հեղինակ է համարվում պատրիարք Փոտը (տե՛ս* J. Scharf, Photios und die Epanagoge, Byzantinische Zeitschrift, Bd. 49 (1956), S. 385—400)։ *էպանագոգեն մեծ տարածում ունեցավ սլավոնական երկրներում. հին ռուսական* Кормчая книга-*ն (X դար) կրել է էպանագոգեի ղգալի ազդեցությունը։*

*Պատրիարք Փոտն սկսեց, իսկ վերոհիշյալ Սմբատն իր ավարտման հասցրեց Մակեդոնական հարստության օրենսդրական գլուխ-գործոցը՝ վաթսուն գրքից բաղկացած* (ἑξηκοντάβιβλος) *դասւաստանագիրքը, որը հայտնի է* Βασιλικά *անունով։*

*Վասիլ I-ի որդի Լևոն VI-ին է վերագրվում այսպես կոչված «էպարքոսի գիրքը»* (Ἐπαρχικὸν βιβλίον), *որը տարբեր ժամանակներում Կոստանդնուպոլսի քաղաքապետերի կողմից հրապարակված օրենսդրական ակտերի մի ժողովածու է, մեծարժեք մի գործ, որ բյուզանդական պետության և արհեստագործական միությունների փոխհարաբերությունները լուսաբանող ամենակարևոր աղբյուրն է (ավելի մանրամասն տե՛ս* **Zachariae von Lingenthal**, Geschichte; **Vogt**, Basile I, p. 87 sqq. 375 sqq; **P. Colinet**, Byzantine Legislation, p. 708 sqq; **Vasiliev**, Histoire, t. I, p. 448—460)։

*Պրոխիրոս Նոմոսի նորագույն հրատարակությունն է.* Prochiron Basilii, Constantini et Leonis, Jus graecoromanum, cura **J. Zepi** et **P. Zepi**, vol. II, Scientia Aalen, 1962, p. 107—228։ *էպանագոգեի նորագույն հրատարակությունն է.* Epanagoge legis Basilii et Leonis et Alexandri, *նույն տեղում,* p. 229—369։

*«էպարքոսի գրքի».* Leonis Sapienti Liber Praefecti, *նույն տեղում, էջ 369—392, նաև* Византийская книга эпарха, вступительная статья, перевод, комментарий М. Я. Сюзюмова, Москва, 1962։ *«Բասիլիկա»-ների նորագույն հրատարակությունն է.* Basilicorum libri LX, ediderunt H. J. Scheltema et N. Van Der Wal, Groningen-Gravenhage, 1955 (*հրատարակությունը դեռ չի ավարտվել։ Մինչև 1964 թ. լույս է տեսել 60 գրքից 32-ը և 42 գրքի մեկնությունները*)։

99 *Միրանածինի մոտ շփոթություն կա. նա մեկ ցույց է տալիս, որ Գևորգ Պե-*

Գանի և Սմբատի ապստամբությունը տեղի է ունեցել Միքայել կայսեր օրոք (§ 19), մեկ էլ Վասիլի թագավորության սկզբում, այն տպավորությունն ստեղծելով, որ իբր տեղի է ունեցել երկու ապստամբություն։ Սիմեոն Մագիստրոսը ցույց է տալիս, որ տեղի է ունեցել մեկ ապստամբություն, Միքայելի և Վասիլի միացյալ թագավորության ժամանակ։ Տե՛ս А. П. Каждан, Из истории византийской хронографии X века, Виз. Временник, т. XIX, 1961, стр. 88.

100 Տե՛ս վերը, ծանոթ. 75։

101 Խոսքը Ստեփանոս պատրիարքի մասին է (886 թ. դեկտեմբերի 18—893 թ. մայիսի 18)։

102 Քրիստոսը Նոր կտակարանում կոչված է փեսա. «Ես Յիսուս առաքեցի զհրեշտակ իմ վկայել զայս ձեզ եկեղեցեացդ. ես արմատ և սեռ ի Դաւթայ, աստղ պայծառ առաւօտին։ Եւ Հոգի, և Փեսայն՝ որ գալոցն եմ»։ Յայտնութիւն Յովհաննու, ԻԲ, 16—17։

103 Բյուզանդական բազմաժանր գրականության մեջ իրենց արժանի տեղն ունեն ռազմական արվեստին նվիրված երկերը։ Առավել կամ պակաս կարևորություն են ներկայացնում Հուստինիանոսի ժամանակաշրջանին վերաբերող «Բյուզանդական Անանուն» անվան տակ հայտնի մի գործ, ինչպես և նույն գրչին վերագրվող «Նետաձգության մասին» աշխատությունը։ Մեծ հետաքրքրություն է ներկայացնում Կեղծ Մավրիկիոսի «Ստրատեգիկոնը», որ ստեղծվել է VI—VII դդ. և շատ լայն տարածում ունեցել Բյուզանդիայում։ Այս գործից հետո մինչև IX դարն ընկած ժամանակաշրջանից ռազմագիտական երկեր մեզ չեն հասել։ IX դարի վերջում հրապարակ եկավ «Լևոնի տակտիկան» (Tactica Leonis) նշանավոր գործը, որ հստակ կերպով արտացոլում է բյուզանդական պետության բանակաթեմային կառուցվածքը։ Լևոն VI-ին է պատկանում և մի այլ արժեքավոր ռազմագիտական աշխատություն (Προβλήματα), որտեղ մանրամասն բացատրվում են մարտի նախապատրաստության, հետախուզության և կռիվ մղելու եղանակները։ Դրանից հետո ևս ստեղծվել են ռազմագիտական բազմաթիվ գործեր, որոնց վրա այստեղ կանգ չենք առնում։ Վերոհիշյալ աղբյուրները և նրանց մասին ուսումնասիրությունները տե՛ս հետևյալ հրատարակությունների մեջ. H. Köchly und W. Rüstow, Die Byzantiner Anonymus Kriegswissenschaft, Griechische Kriegsschriftsteller, 2. Theil, Die Taktiker, Zweite Abteilung, Leipzig, 1855; Ф. И. Успенский, Военное устройство Византийской империи, ИРАИК. VI,1,1900, Ю. Кулаковский, Византийский лагерь конца X века, Виз. Временник, т. X, 1903; А. П. Каждан, Византийская армия в IX-X веках, Ученые записки Великолукского гос. пед. института, 1954, стр. 18—31: В. В. Кучма, Византийские военные трактаты VI—X вв. как источники по истории военного искусства Византийской империи. Ученые записки Уральского гос. университета, № 53, Серия ист., вып. 4, Свердловск, 1966, стр. 31—56.

104 Տեֆրիկե (Տիվրիկ) քաղաքը պավլիկյանների կենտրոնն էր, որտեղ նրանք հավաքվել էին բյուզանդական կայսրերի հալածանքներից։ Այդ հալածանքները, որոնք սկսվել էին դեռևս IX դարի 10-ական թվականներից

Լևոն V և ապա Միքայել I կայսեր ժամանակ, ավելի լայն ծավալ ստացան Թեոփիլոսի և հատկապես նրա կին Թեոդորայի ժամանակ։ Թեոդորայի ստեղծած պատժիչ խմբերը աղբյուրների տվյալների համաձայն կոտորեցին մինչև հարյուր հազար աղանդավորների։ Սկզբնական շրջանում պայքարը Բյուզանդիայի դեմ գլխավորեց Կարբեասը, որի մահից հետո (863) նույն հաջողությամբ այն շարունակեց Կարբեասի փեսան՝ Խրիսոքիրը։ Սկզբում պավլիկյանների հետ միասին հանդես էին գալիս արաբները, բայց հետագայում լքեցին նրանց և աղանդավորները ստիպված պայքարը շարունակեցին միայնակ։ Վասիլի այս արշավանքի (871) և պավլիկյանների հաջողությունների մասին մանրամասնություններ է տալիս Գենեսիոսը, որն այնքան էլ կողմնապահ չէ, ինչպես Ծիրանածինը, որը փաստորեն լռության է մատնում իր պապի անհաջողությունները պավլիկյանների դեմ մղած պայքարում։ Գենեսիոսը, ընդհակառակը ցույց է տալիս, որ Վասիլի այս արշավանքը վերջացավ անհաջող, որ կայսրը հազիվ փրկվեց գերի ընկնելուց և, դառնացած, մտավ Սուրբ Հրեշտակապետաց եկեղեցին Կոստանդնուպոլսում և պաղատագին խնդրեց աստծուն, որ չմահանա, քանի չի տեսել Տեֆրիկեի կործանումը։ Գենեսիոսը պատմում է նաև, որ Տեֆրիկեի բնակչության մի մասը այս պատերազմի ժամանակ սարսափահար թողնում, փախչում է քաղաքից, դիմելով Վասիլին։ Քաղաքի բնակչության մի ուրիշ մասն էլ փախչում է Ասորիք (տե՛ս Genesii Regum, p. 121)։ Խրիսոքիրը 872 թ. իր զորքով հասնում է մինչև Նիկոմիդիա և Նիկիա, մինչև Թրակեսիոն բանակաթեմ, որտեղ Հովհան Աստվածաբանի եկեղեցին ախոռի է վերածում։ Վասիլը ծանր դրության մեջ էր և ստիպված դիմում է Խրիսոքիրին խաղաղություն կնքելու, խոստանալով բազում ոսկի, արծաթ և հանդերձներ, բայց Խրիսոքիրը նրան պատասխանում է. «Եթե ուզում ես, կայսր, մեզ հետ խաղաղություն կրնքել, հրաժարվիր արևելքի վրա ունեցած քո իշխանությունից, և քեզ պահիր արևմուտքը, թե չէ կաշխատենք քեզ ընդհանրապես գահընկեց անել» (տե՛ս Genesii Regum, p. 120—122)։

Պավլիկյանների շրջանում Կարբեասի և Խրիսոքիրի քաջագործությունները երգվել են, և այդ երգերի հիման վրա ստեղծվեց բյուզանդական նշանավոր «Դիգենիս Ակրիտաս» էպոսը, որի գլխավոր հերոսի ծննդաբանության մեջ և՛ Կարբեասը, և՛ Խրիսոքիրը, և՛ Մելիտինեի ամիրա Օմար իբն Աբդալլահ ալ-Ակտան կարևոր տեղ են գրավում (տե՛ս Adontz, Les fonds; Grégoire, Διγενὴς Ἀκρίτας; Բարթիկյան, Բյուզանդական էպոսը։ Նույնի, Заметки)։

105 Ծիրանածինը ցանկանալով արատավորել Խրիսոքիրին դրում է, որ նա գերեվարում էր բոլոր գյուղացիներին, մի բան, որ իրականությանը չի համապատասխանում։ Հենց աշխատավոր գյուղացիությունն էր, որ ցանկանալով ազատվել բյուզանդական ավատատերերի կեղեքումից, հոծ զանգվածներով միանում էր պավլիկյաններին։ Պետրոս Սիկիլիացին իր ճառերից մեկում նշում է, որ հենց գյուղացիները առավել շահախնդրությամբ պաշտպանում էին պավլիկյանների դադափարները։

106 Բնագրում ''Ἄβαρα և Σπάθη, Աբարայի մասին տե՛ս «Կայսրության կառավարման մասին» աշխատության 50-րդ գլխի 57-րդ ծանոթագրությունը։

Սպաթե թարգմանաբար նշանակում է «թուր»։ Հետաքրքրական է նշել, որ Դիգենիս Ակրիտաս էպոսում Դիգենիսի տատը հոր կողմից (այսինքն Խրիսոքիրի կինը) կոչվում էր Սպաթիա (Σπαθία)։

107 Այլ աղբյուրների վկայությամբ այս արշավանքի (871 թ.) ժամանակ Վասիլը պարտություն է կրել պավլիկյաններից և բազմաթիվ զինվորներ կորցրել։ Քիչ էր մնացել, որ կայսրը գերի ընկներ աղանդավորների ձեռքը։ Նրան փրկողը ապագա կայսր Ռոմանոս I Լեկապենոսի հայրն էր՝ Թեոփիլակտոս Ավաստակտոսը (տե՛ս Sym. Mag., p. 690; Georg. Mon. Cont., p. 841)։

108 Իսմայելացիների տակ ենթադրվում են արաբները։

109 Բնագրում Ταραντα. Երկրորդ Հայքում։ Այժմ կոչվում է Դերենդե։ Կեղրինոսի մոտ այդ քաղաքն անվանված է Ταύρας, որտեղ ցույց է տրված, որ այն դաշնակցել էր Տեֆրիկեի հետ (տե՛ս Cedr. II, p. 207)։

110 Կուրտիկ (Քուրդ անվան փաղաքշականը)։ Կեդրինոսի մոտ անունը աղավաղված ձևով է հանդես գալիս—Κουρτέριος (տե՛ս Cedr. II, p. 207)։ Այս անունը հիշատակվում է նաև Բագարատ Վխկացու 1060 թ. արձանագրության մեջ («Մխիթար իպատոսն Կրտիճ որդին»։ Տե՛ս Դիվան հայ վիմագրության, հատ. Ա, Երևան, 1966, էջ 37)։ Հ. Աճառյանը խնդրո առարկա անունը կապում է հայերեն կուրտ (ներքինի) բառի հետ և ենթադրում, որ Կուրտը փուտ անուն է և ոչ անձնանուն (տե՛ս Անձնանունների բառարան, հատ. Բ, էջ 681)։ Բայց այդ Կուրտը որդի ուներ, հետևաբար չէր կարող ներքինի լինել։ Եթե նկատի ունենանք այն հանգամանքը, որ տվյալ անունը մի անգամ չէ որ հանդիպում է, ապա չենք կարող այն փուտ անուն համարել։ Նույն Ծիրանածինը ցույց է տալիս, որ այս արշավանքների ժամանակ Վասիլի ձեռքն անցան բերդեր, որոնց նա անվանում է Κοῦρτοι։ Շատ հավանական է ուրեմն, որ Κουρτίκιος անունը կապվում է հայերի մեջ լայն տարածում գտած Քուրդ անվան հետ, որ մի տասնյակից ավել անգամ հիշատակվում է աղբյուրներում։ Քուրդ անունը հայոց մեջ նույնիսկ իշխաններն էին կրում և հիշվում է սկսած VIII դարից (տե՛ս Աճառյան, Անձնանունների բառարան, հատ. Ե, էջ 223—225)։ Մխիթար Այրիվանեցին տալիս է հենց Քուրդիկ ձևը («Յայնմ ժամանակի վախճան հասանէր երջանիկ եպսապետին Սիւնեաց տռն. Յոհանայ. և եկեալ առ կթղկսն. իշխանքն Սիւնեաց Բաբգեն և Քուրդիկ, խնդրեցին աթոռակալ իւրցն»։ Գ. Յովսեփեանց, Մխիթար Այրիվանեցի։ Նորագյուտ արձանագրություն և երկեր, Երուսաղեմ, 1931, էջ 20), որ միանգամայն համապատասխանում է Ծիրանածինի նշած Κουρτίκιος ձևին։ Մի ոմն Κουρτίκιος 912 թ. մասնակցեց մանկահասակ Կոստանդին Ծիրանածինի դեմ կազմակերպված ապստամբության, որի ժամանակ սպանվեց (տե՛ս Sym. Mag., p. 720; Georg. Mon. Cont., p. 876)։ Թեոփանեսի Շարունակողը ցույց է տալիս, որ մի այլ Կուրտիկիոս սպանվեց Մակեդոնիայում, բուլղարների Սիմեոն ցարի դեմ մղված պատերազմում (տե՛ս Theoph. Cont., p. 358)։

111 Բնագրում Λοχανα։ Գտնվում էր Տիվրիկին մոտիկ։ Տե՛ս Ramsey, HGAM, p. 342։

112 Կոչվում էր նաև Սոզոպետրա։ Քաղաք Մելիտենեից հարավ-արևմուտք։

113 Նշանավոր քաղաք Կոմմագենեում։ Կոչվում էր նաև Շամուշատ, այժմ Սումեյսատ։ Ծիրանածինը Սամոսատի և Մելիտենեի դեմ կատարված արշավանքները թվագրում է 868 թ.։ Սակայն արաբ հեղինակները այդ մասին ոչինչ չեն հաղորդում։ Նրանք ցույց են տալիս, որ բյուզանդացիները Սամոսատը գրավեցին 873 թ.։ Նույն այդ թվականին նրանք պաշարեցին և Մելիտենեն (տե՛ս **Васильев**, Византия и арабы, II, стр. 38 и сл., 42 и сл.; *Հմմտ.* **А. П. Каждан**, Из истории византийской хронографии X века, Виз. Вр., т. XIX, 1961, стр. 89).

114 Բնագրում Ζαρνοῦχ, արաբ. Az-Zarnuk, Եփրատ գետը թափվող Թոքմասու-ի վտակն է։ **Васильев**, Византия и арабы, II, стр. 38—39:

115 Բնագրում Κεσαμίσιον։ Նույնացվում է ժամանակակից Ջիրմիկլըի հետ, Մալաթիային մոտիկ։ Տե՛ս **Васильев**, Византия и арабы, II, стр. 38, прим. 3։

116 Այժմ Մալաթիա։

117 Բնագրում ՝Ραψάκιον։

118 Առածանի գետը։

119 Կուրտիկիոս, Խախոն, Ամեր, Մուրինիքս և Արդելա ամրոցները տեղադրվում են հետևյալ կերպ։ Կուրտիկիոս ամրոցը, ինչպես անունն է վկայում, պատկանում էր հայազգի ոմն Կուրտիկի։ Այդ վայրի անունն անցել է Մուշից հարավ գտնվող Կուրտիկ-դաղին։ Խախոնը համապատասխանում է ժամանակակից Խոխին (Ուշաղը Խող) Խարբերդից հարավ։ Ամեր անունը վկայում է, որ ինչ-որ ամիրայի պատկանող վայր է։ Եփրատի վրա, Մուրադ-սուի գետաբերանից հարավ գտնվում է Օրտ էմիրլեր վայրը, որ հնարավոր է նույնացնել Ամեր վայրի հետ։ Ինչ վերաբերում է Մուրինիքսին (Μουρινιξ). ապա նա ժամանակակից Մուրինիկն է կամ Մորենիկը, Խարբերդին մոտիկ։ Արդելան ժամանակակից Արդուլին կամ Արդալլին է, Փերի-սու գետի գետաբերանում (տե՛ս Honigmann, Die Ostgrenze, S. 59—60)։ Խնդրո առարկա ամրոցները Կեդրինոսի մոտ հանդես են գալիս հետևյալ կերպ. Կարկինիոն, Գլասխոն, Աման, Մուրիքս և Արդիլա (տե՛ս Cedr., II, p. 208)։

120 Արաբական աղբյուրները, որոնք հիշում են Վասիլի հաղթանակը Սամոսատի տակ, միանգամայն պարզ ցույց են տալիս, որ կայսրը Մալաթիայի տակ պարտություն կրեց (տե՛ս **Васильев**, Византия и арабы, II, стр. 40—41)։

121 Բյուզանդական աղբյուրներում պավլիկյանները շատ հաճախ հանդես են գալիս մանիքեցիներ անվան տակ և որպես կանոն այդ երկու աղանդները նույնացվում են։ (Փոտ պատրիարքի պավլիկյաններին նվիրված ուսումնասիրությունը վերնագրված է «Պատմություն մանիքեցիների վերածլման մասին»)։ Մանիքեցիների երկրի տակ Ծիրանածինը նկատի ունի Տիվրիկի շուրջ ընկած երկիրը։

122 Արգաութը, որ Պետրոս Սիկիլիացու մոտ անվանված է Արդաուս, հայկական Արգովանն է։ Այժմ էլ այդպես է կոչվում։

123 Բնագրում τὸ Κουτακίου, καὶ Στεφάνου καὶ Ραγάτ։ Ռախատ ամրոցը Կեդրինոսի մոտ հիշվում է Արարախ ձևով ('Αραράχ Cedr., II, p. 209)։ Արարախի առաջին «Ար»-ը հավանաբար արաբերեն է, ար-Արախ։

124 Ոսկե դարբասի մասին տե՛ս ծանոթ. 26։

125 Խոսքը Կոստանդնուպոլսի քաղաքացիների մասին է, որոնք ունեին իրենց «կուսակցությունները» («կողմերը»—τὰ μέρη)։ Դեմոսը մինչև Հուստինիանոս կայսրը Բյուզանդիայի քաղաքական կյանքում հսկայական դեր է խաղում։ Բայց 532 թ. «Նիկա»-ի ապստամբության ճնշումից հետո, Հուստինիանոսը նրա իրավունքները խիստ սահմանափակեց։ Հետագայում դեմոսը որևէ էական դեր չէր խաղում։

126 Սուրբ Սոփիայի տաճարը։ Տե՛ս վերը, ծանոթ. 57։

127 Պատրիարք Իգնատիոսը, որ իր երկրորդ աթոռակալությունն էր վարում (23 նոյեմբեր 867—23 հոկտեմբեր 877 թթ.)։ Առաջին աթոռակալությունը տևել է 847 թվականի հուլիսի 3-ից մինչև 858 թ. հոկտեմբերի 23-ը (տե՛ս վերը, ծանոթ. 68)։

128 Գլխավոր հրամանատարին, սպարապետին։ Ծիրանածինը նրա անունը չի տալիս, բայց այլ աղբյուրներից գիտենք, որ նա Քրիստափորն էր, Վասիլ I-ի փեսան (տե՛ս Sym. Mag., p. 690)։

129 Բնագրում Βαθυρρύαξ, որ թարգմանաբար նշանակում է «խոր առու»։ Գենեսիոսը ցույց է տալիս, որ այս արշավանքի ժամանակ (872) Խրիսոքիրն հասավ մինչև Անկյուրա, որ սխոլերի գոմեստիկոսը չէր համարձակվում նրա հետ բացեիբաց կռվի բռնվել և հետապնդում էր նրան մեկ մղոն հեռավորության վրա, (տե՛ս Genesii Regum, p. 122)։ Վաթիռիաքսը հավանաբար գտնվում էր Տիվրիկին մոտիկ տեղում։ Ծիրանածինը իր «Արարողությունների մասին» աշխատության մեջ, որտեղ մեկ առ մեկ կանգ է առնում արշավանքի գնացող կայսեր զինվորական կայանների վրա, ցույց է տալիս, որ երբ կայսրը արշավանքի է դուրս գալիս դեպի Տեֆրիկե, ապա Արմենիակների բանակաթեմի զորքերը «պարտավոր են հավաքվել Վաթիռիաքս վայրում» (տե՛ս սույն գրքի 135-րդ էջում)։ Ա. Վասիլևը Վաթիռիաքսը նույնացնում է ժամանակակից Ենիխան-ի հետ, Սեբաստիայից հյուսիս-արևմուտք (տե՛ս Васильев, Византия и арабы, II, стр. 32)։ Վաթիռիաքսի տեղադրության մասին տե՛ս նաև Տաշյան, Արևմտյան սահմանը, էջ 459)։

130 Տաքսիարքոսը (ταξίαρχος) հրամանատարն էր մեկ տաքսիսի (τάξις), որ բաղկացած է երկու τετραρχία-ից, ընդամենը 128 մարդ (տե՛ս Sophocles, Greek Lexicon vol. II, p. 1068)։

131 Լոխագոսը (λοχαγός, լատ. curio կամ centurio) համապատասխանում է հարյուրապետին (տե՛ս Sophocles, Greek Lexicon, vol. II, p. 722)։

132 Բնագրում Πουλάδης։ Թվում է, թե այս անունը հունական չէ, այլ պարսկական՝ Pūlād (պահլ. pōlāpatt, հայերեն պողպատ, պողովատ բառից), որ բավական լայն տարածում ունեի (հմմտ. F. Justi, Iranisches Namenbuch, Marburg, 1895, S. 255)։ Հայերի մեջ այդպիսի անուն՝ Փոլատ (նաև Փուլատ) հիշատակվում է ավելի ուշ ժամանակի աղբյուրներում (տե՛ս Աճառյան, Անձնանունների բառարան, հատ. Ե., էջ 209—210)։ Բացառված չէ, որ տվյալ Պուլադը ծագումով հայ լինի։

133 Այս Դիակոնիցեսը (անվան վերջածանցը -իցես փաղաքշական մասնիկ է։ Տե՛ս նաև ծանոթ. 31։ Տվյալ վերջածանցը հանդիպում է մի ուրիշ հայի անվան վերջում, Հակոբիցես, տե՛ս վերը, ծանոթ. 85) հետագայում մըտ-

նում է բյուզանդական ծառայության և գլխավորում պավլիկյան ռազմագերիներից բաղկացած մի զորամաս, որ կռվում էր Իտալիայում։ Տե՛ս § 71։ Լեոն VI-ի ժամանակ Դիակոնիցեսը ստացավ մենսուրատորի աստիճան (տե՛ս Genesii Regum, p. 125)։ Դիակոնիցես թարգմանաբար նշանակում է Սարկավագիկ։ Հայերի շրջանում կրոնական աստիճանների անձնանուն դառնալը սովորական երևույթ էր։ Մենք ունենք Հայրապետ, Տէրտէր, Տիրացու, Քահանայ, Վարդապետ անձնանունները (տե՛ս Աճառյան, Անձնանունների բառարան, հտ. Դ, էջ 462), որտեղ հիշված է 1129 թ. սկսած 23 «Սարկավագ» անձնանուն։ Մեր Դիակոնիցեսին կարելի է համարել Սարկավագի առաջին հիշատակությունը հայոց մեջ։

134 Ոսկեղջյուրում գտնվող մի թաղամաս, որտեղ կային պալատ, հասարակաց բաղնիք, բազմաթիվ տաճարներ և վանքեր, այդ թվում և սուրբ Եվփեմիայի վանքը, որտեղ միանձնուհի էին դարձել Վասիլի դուստրերը (Հմմտ. Janin. Const. Byz., p. 375—376)։

135 Փոտի երկրորդ աթոռակալությունը (877—886)։

136 Կուրկուասը (Գուրգեն) X դարի առաջին կեսին հանդես եկած նշանավոր դոմեստիկոս Հովհաննես Կուրկուասի պապն էր։ Դավադրությունը թվագրվում է շուրջ 885 թ., Վասիլի թագավորության 19-րդ տարին (տե՛ս Sym. Mag., p. 699)։ Այս Կուրկուասին Գեորգ Վանականի Շարունակողը անվանում է Հովհաննես Կրոկոս (նաև Կորկոաս), հիկանատների դոմեստիկոս (տե՛ս Georg. Mon. Cont., p. 847), իսկ Սիմեոն Մագիստրոսը՝ Հովհաննես Կուրկուաս (տե՛ս Sym. Mag., p. 699. տե՛ս նաև Guilland. Le domestique, p. 30. n. 9)։

137 Այսինքն վանական են ձեռնադրվում։

138 Վասիլի դեմ Հովհաննես Կուրկուասի նյութած դավադրության մասին ավելի մանրամասն խոսում են Սիմեոն Մագիստրոսը և Գեորգ Վանականի Շարունակողը։ Նրանք ցույց են տալիս, որ Վասիլի թագավորության 19-րդ տարում (885) այս Կուրկուասը դավադրություն է կազմակերպում, որին հարում են բազմաթիվ սենատորներ և մեծամեծներ, 66 մարդ, այդ թվում և Միքայել հետերիարխը (օտարերկրացիներից բաղկացած կայսերական թիկնապահ զորքի հրամանատարը), Կատուղարեսը, Միքսիարեսը (սա անուն չէ, այլ ածական, նշանակում է փսլնքոտ), ինչպես և Բարուցիկոսը։ Վերջինիս ծագումը կասկած չի հարուցում, նա հայ էր։ Անունը հայկական է (Բարոց անունը փաղաքշական -իկ վերջածանցով։ Հմմտ. Աճառյան, Անձնանունների բառարան, հատ. Ա, էջ 354)։ Բյուզանդական աղբյուրներից հայտնի են Կոստանդին Բարուցիկը, որ Սոփիայի, Թեոդորա կայսրուհու քրոջ ամուսինն էր և նրա ազգական Թեոդոս Բարուցիկը, որ 839 թ. դեսպանության գնաց Արևմուտք (տե՛ս Ադոնց, Մամիկոնյան իշխանուհին, էջ 359)։ Վերոհիշյալ դավադիրներին ձերբակալում են, դանահարում ձիարշավարանում, գրավում նրանց ունեցվածքը, խուզում և քաղաքում հրապարակայնորեն խայտառակելուց հետո աքսորում (տե՛ս Sym. Mag., p. 699; Georg. Mon. Cont., p. 847—848)։

139 Լուլոն (Λοῦλον) ամրոցը գտնվում էր Լեռնային Կիլիկիայում, Տարսոն տանող ճանապարհի վրա։ Հայկական աղբյուրներում կոչվում է «բերդն Լուլուայ»։ Առաջին անգամ հիշվում է 832 թ.։ Շատ անառիկ ամրոց էր.

«անհպելի ամուրն Լուլուայ» (տե՛ս Վարդան, էջ 79։ Հմմտ. Ղ. Ալիշան. Սիսուան, էջ 114)։ Մելիք-Բեվեքելը համաձայն չէ Ալիշանի տեղադրության հետ։ Տե՛ս Մելիք-Թեվեքել, Ո՞ւր կգտնվեր Լուլուայ բերդը, Հանդես Ամսօրյա, 1914, մարտ, սյունակ. 156—162։

140 Մելուոս (Μελοῦος) ամրոցը նույնպես գտնվում էր Լեռնային Կիլիկիայում։ Ղ. Ալիշանը այն նույնացնում է Մոլևոն ամրոցի հետ (Տե՛ս Սիսուան, էջ 114)։

141 Պավլիկյանների Կատարատալա քաղաքը այլ աղբյուրներից հայտնի չէ։ Կեդրինոսի մոտ համապատասխան տեղում գրված է «մանիքեցիների մայրաքաղաք Կամիա» (Κάμεια), որը ինքը Վասիլը անձամբ գրավեց (տե՛ս Cedr., II, p. 213)։

142 Այժմ Էրչիաս-դաղ, Կեսարիայից մի փոքր հարավ (տե՛ս Ս. Երեմյան. Հայաստանը, էջ 39)։

143 Կապադովկիայի Կեսարիա քաղաքը, այժմ Կայսերի։

144 Բնագրում Φιλοκάστελλον։ Կեդրինոսի մոտ Ξυλόκαστρον։ Կեդրինոսը դրա կողքին հիշատակում է մի բերդ ևս՝ Φυρόκαστρον (տե՛ս Cedr., II, p. 213)։

145 Բնագրում Παραμοκάστελλον։

146 Ֆալակրոն կաստրոնը (ճաղատ բերդը) Ս. Երեմյանը տեղադրում է Արգեոս լեռից հարավ, Սամանդավ գետի աջ ափին, Ֆրակտին (այժմ՝ Ֆրակտին գյուղ) ավանից դեպի հյուսիս-արևմուտք (տե՛ս Հայաստանը, էջ 88)։

147 Ամբրոնը Մելիտենեի (Մալաթիայի) ամիրան էր, լրիվ անունը Օմար իբն Աբդալլահ ալ-Ակտա, որը սպանվեց 863 թ. Պոսոնի հայտնի ճակատամարտում։ Նա հիշվում է նաև բյուզանդական Դիգենիս Ակրիտաս էպոսում, որտեղ հանդես է գալիս որպես Դիգենիսի հոր պապը։ Բյուզանդական աղբյուրներում (Պետրոս Սիկիլիացի) հիշատակվում է միայն իր ավելորդ անունով՝ Մոնոխերարես («Միձեռանի», ալ-Ակտա արաբերեն նշանակում է միձեռանի)։ Նրա արձագանքները գտնում ենք նույնիսկ քրդական Դըմդըմ («Ոսկեձեռնյան խան») էպոսում (Չոլախ խան)։ Այդ մասին մանրամասն տե՛ս Бартикян. Дигенистика: Ամբրոնի [Օմարի] մասին մանրամասն տե՛ս M. Canard, Un personnage de roman arabo-byzantin. Extrait du Deuxieme Congres National des Sciences Historiques, Alger, 1932; Idem,'Les principaux Personnages du roman de Chevalerie arabe Dāt al-Himma Wa-l-Battāl, Arabica, Revue d'Etudes Arabes, t. VIII, fasc. 2, Mat 1961, p. 158—173; Idem, Dhū l-Himma ou Dhāt al-Himma հոդվածը Encyclopedie de l'Islam-ում։

148 «Կայսոս, այն է՝ Կատասամա» ամրոցը Կեդրինոսի մոտ կոչված է Կասամա (տե՛ս Cedr., II, p. 214)։

149 Բնագրում 'Ενδελεγόντ։ Պրոկոպիոս Կեսարացին (Պարսկական պատերազմի մասին գիրք Ա, գլ. 7) հիշատակում է Ամիդից մեկ օր հեռավորության վրա գտնվող 'Ενδιηλων (էնդիելոն) ամրոցը, որը հավանաբար նույնանում է էնդելեխոնի հետ։

150 Անգալի ամրոցը Կեդրինոսի մոտ անվանված է Արդալան (տե՛ս Cedr. II, p. 214)։

151 Բնագրում 'Ερημοσυκαια։ Կեդրինոսի մոտ մեկ ամրոց ավել է, այն կոչված է Կարբան (Καρβαν։ Տե՛ս Cedr., II, p. 214)։

152 Բնագրում Σημας εχεινος ο τοῦ Ταήλ։

153 Սարոս գետը համապատասխանում է Սեյխան գետին՝ Կիլիկիայում (տե՛ս Ղ. Ալիշան, Սիսուան, էջ 11)։ Օնոպնիկտեսը (թարգմանաբար նշանակում է «էշ խեղդող») Անտիոք քաղաքի մոտով հոսող գետակ է, որ հիշատակում է նաև Պրոկոպիոս Կեսարացին (տե՛ս Կառուցումների մասին, գիրք երկրորդ, գլ. 10)։ Կուկուսոսը այժմ կոչվում է Գյոքսուն, Արաբիսոսից հարավ (տե՛ս Ս. Երեմյան, Հայաստանը, էջ 59)։

154 Բնագրում Καλλίπολιν καὶ Παδασίαν։

155 Այժմ Մարաշ, Կիլիկիայում։

156 Բնագրում "Αδαται Կեդրինոսի մոտ (Cedr. II, p. 214) 'Αδάπαν։ Արաբ. al-Hadat (տե՛ս Honigmann, Die Ostgrenze, S. 86)։ Այն գրավել է Վարդաս Փոկասի որդի Լևոնը 947—948 թթ.։ Տե՛ս Васильев, Византия и арабы, II, Приложение, стр. 65։

157 Բնագրում πολιχνιον, όπερ εχάλουν Γεροντα։

158 Այսինքն հագարացիներին։ Հին Կտակարանի համաձայն արաբները սերում են Աբրահամի հարճ [Հ]ագարից և վերջինիս որդի Իսմայելից (այստեղից և իսմայելացիներ)։ Տե՛ս Ծննդ. ԺԶ, 1, 15։ Ա. Մնաց. Ե, 10, 20։

159 Բնագրում πλειστον ὄχλον τῶν Κουρτων։ Նույն բանն է գրված նաև Կեդրինոսի մոտ (Cedr, II, p. 216)։ Մանրամասն տե՛ս Бартикян, Дигенистика:

160 Բնագրում Μηδαίω։

161 Ճիշտ չէ, որ Տեֆրիկեն բնաջնջվեց։ Նույն Ծիրանածինը «Բանակաթեմերի մասին» աշխատության մեջ, որ շարադրված է X դ. 30-ական թթ. Կոլոնիայի բանակաթեմի քաղաքների մասին խոսելիս հիշում է և Տեֆրիկեն։

162 Այս Անդրեասին, որը քիչ հետո հիշվում է որպես սխոլերի, գոմեստիկոս, Թեոդորոս Սանդավարինոսը (սրա մասին Ծիրանածինը հիշում է Վասիլի կենսագրության 100-րդ պարբերությունում) ամբաստանել էր, որ նա կայսեր որդի Լևոնի հետ դավադրություն է նյութում Վասիլի դեմ, որի համար կայսրը նրան պաշտոնանկ արեց և նրա պաշտոնը տվեց Կեստա Ստիպպիոտեսին, (տե՛ս Theoph. Cont. p. 355; Georg. Mon Cont. p. 847)։ Ծիրանածինը Անդրեասի անկման հիմնական պատճառ է համարում Տարսոնի մոտ արաբներից պարտություն կրելը։ Լևոն VI-ի թագավորության օրոք Անդրեասը նորից է պաշտոնի կոչվում։

163 Նկատի ունի Ասորեստանի թագավոր Սենեքերիմին, որ Հին Կտակարանում հանդես է գալիս որպես ամբարտավան։

164 Ժամանակակից Պոդանտըն, Փոքր Կապադովկիայի բանակաթեմում։ Կարևոր բերդ էր՝ Լուլոնից մի փոքր հարավ-արևելք։

165 Նեմեսիսը (Νεμεσις) հին հունական դիցաբանության մի կերպար է, աստվածային ցասման մարմնավորումը։

166 Նրա Ստիպպիոտես մականունը վկայում է, որ նա հավանաբար Ստիպպիոն քաղաքից էր, որն այժմ կոչվում է Իստիպ կամ Ստիպլյե։

167 Գեորգ Վանականի Շարունակողը ցույց է տալիս, որ կայսր Վասիլը Կեստա Ստիպիոտեսին պաշտոնանկ արեց, պարտություն կրելու համար և սպարապետությունը նորից տվեց Անդրեասին (տե՛ս Georg. Mon. Cont., p. 847)։

168 Պանոնիայի մեջ էին մտնում Դանուբից հարավ ընկած ժամանակակից

Հունգարիայի և Ավստրիայի շրջանները, ապա և Բոսնիայի, Խրվաթիայի որոշ մասեր։

169 Ժամանակակից Ռագուզան, սլավոնական Դուբրավան, քաղաք Դալմատիայում, Ադրիատիկ ծովի ափին։ Արաբները այն պաշարել էին 868 թ.։ Քաղաքի մասին մանրամասն տե՛ս B. Krekic, Dubrovnik (Raguse) et le Levant au moyen age, Paris, 1961։

170 Այսինքն Միքայել III կայսեր։

171 Նիկետաս Օորիֆասը Միքայելի սպանությունից անմիջապես հետո փորձեց վրեժ լուծել Վասիլից, բայց հաջողություն չունեցավ։ Հետագայում նոր կայսեր և Օորիֆասի հարաբերությունները այնքան սերտ են դառնում, որ Վասիլը արշավանքի դնալիս Կոստանդնուպոլիսը վստահում էր Օորիֆասին (տե՛ս Sym. Mag., p. 687)։

172 Նահանգ Իտալիայի հարավում։ Կենտրոնն է Բարիս քաղաքը։

173 Այժմ Բարի։ Քաղաք Ադրիատիկ ծովի ափին, Նեապոլսից 230 կմ. հյուսիս-արևելք։ Ծիրանածինի շարադրության մեջ սխալ կա։ Նա ցույց է տալիս, որ արաբները Վասիլի թագավորության սկզբում պաշարեցին Ռաուսիոնը, բայց իմանալով բյուզանդական նավատորմիղի գալստյան մասին, հեռացան և գրավեցին Բարի քաղաքը։ Բայց արևմտյան ժամանակագիրները Բարիի գրավումը թվարկում են ոչ թե 868 թ., ինչպես կարելի է եզրակացնել Վասիլի կենսագրությունից, այլ 841 թ.։ Սխալը բխում է դրանից, որ արաբները երկու անգամ հարձակվեցին Ռաուսիոնի վրա, մեկ անգամ 840 թ., իսկ երկրորդ անգամ 867—868 թթ.։ Այդ մասին տե՛ս Васильев, Византия и арабы, I, Приложение, стр. 82 и сл., т. II стр. 13; հմմտ. А. П. Каждан, Из истории виз. хронографии X в., Виз. Вр., т. XIX, 1961, стр. 88—89։

174 Խոսքը ֆրանսիական թագավոր Լուդովիկոս II-ի (846—879) և Հռոմի պապ Ադրիանոս II-ի (867—872) մասին է։

175 Քաղաք Իտալիայում, Նեապոլսից 28 կմ. հյուսիս։ Հնում կոչվում էր Վուլտուրնում։

176 Քաղաք Իտալիայում, Կապուայից մի փոքր հարավ-արևելք։

177 Առակը լայն տարածում ունի։ Հանդիպում է նաև հայերի մոտ։ Հովհաննես Երզնկացու մի քառյակը սկսվում է հետևյալ բառերով.

«Աշխարհս ի տոլապ նըման՝որ ի վեր՝ւ ի վայր թաւալի,
վերինն այլ ի վայր դառնայ, և վարինն ի վեր ոլորի» (տե՛ս Ա. Սրապյան, Հովհաննես Երզնկացի, Երևան, 1958, էջ 157)։

178 «Պունիկյան», այսինքն կարթագենյան։ Բնագրում Φοινικίων, բայց Փյունիկեի մասին չէ խոսքը։

179 Այսինքն Կարթագենի։

180 Գրեգուարի ենթադրությամբ խոսքը իսլամի խոշորագույն հերոս Yazaman-ի մասին է և ոչ ինչ-որ Օսման անունով մեկի (տե՛ս H. Grégoire La carrière du premier Nicephore Phocas, Προσφορὰ εἰς Στίλπωνα Κυριακίδην. 1953, σελ. 248)։

181 Էվբիա կղզու ամրոցը, որ Խալկիս էր կոչվում։

182 Այսինքն Հելլադա բանակաթեմի զորավարը։ Հելլադա բանակաթեմն իր մեջ

էր ընդգրկում Լարիսայից հարավ ընկած շրջանը՝ Թեսսալիան, Ատտիկան, Էվբիան ու Կիկլադյան կղզիները։

183 «Հեղուկ կրակի» հեղինակ է համարվում Կալլինիկոս անունով մեկը, որ Ասորիքից էր։ Այն կոչվում էր նաև «ծովային կրակ», իսկ հետագայում «հեղուկ կրակ» (ὑγρὸν πῦρ), «մարական կրակ», նաև «հունական կրակ»։ Պատրաստվում էր դյուրավառ նյութերից՝ ծծմբից, կուպրից, նավթից և այլն։ Նրա պատրաստումը Բյուզանդիայում պետական գաղտնիք էր։ «Հեղուկ կրակի» մասին գաղափար ունի դեռ Պրոկոպիոս Կեսարացին։ Նա վկայում է, որ բյուզանդացիները պարսիկների դեմ էին շպրտում «կավե ամաններ՝ լի ծծմբով և կուպրով, և մի հեղուկով, որ մարերը կոչում են նավթ, իսկ հույները՝ Մեդեյայի յուղ»։ Հեղուկ կրակի մասին տե՛ս հետևյալ ուսումնասիրությունները. C. Zenghelis, Le feu grégeois et les armes à feu des byzantins, Byzantion, 7 (1932), p. 265 sqq.; A. Dain, Appellations grecques du feu grégeois, Mélanges A. Ernouf, 1940։

184 Կրետեն առաջին անգամ արաբների ձեռքն ընկավ 824 թ.։ Ապոքապ անունը (արաբերեն Աբու խաֆս) տարածված էր տվյալ ժամանակաշրջանում։ Խնդրո առարկա Ապոքապը Իսպանիայի արաբների առաջնորդն էր, որ Թովմա Գաղիրացու ապստամբության ժամանակ, օգտվելով բյուզանդացիների ներքին խառնակ վիճակից, հարձակվեց և 824 թ. գրավեց Կրետե կղզին (տե՛ս Theoph. Cont., p. 73 sqq.)։ Ապոքապ էր կոչվում նաև Ռոմանոս Լեկապենոսի ժամանակի Մելիտենեի ամիրան, որին Թեոփանեսի Շարունակողը համարում է Ամերի (այսինքն 863 թ. սպանված Օմար իբն Աբդալլահ ալ-Ակտայի) սերնդից։ Նա պարտություն կրեց Հովհաննես Կուրկուասից։ Եվ վերջապես պետք է ասել, որ Ապոքապ անունը տարածված էր նաև քրիստոնյաների մեջ։ Մատթեոս Ուռհայեցու տվյալներով XI դարի կեսերին Եդեսիայի դուքս էր Ապոքապը (տե՛ս Մատթեոս Ուռհայեցի, էջ 57, 64, 153)։

185 «Պենտեկոնտորները» 50 թիերով շարժվող նավեր էին։

186 Խոսքը Իշխանաց կղզիների մասին է, Բոսֆորի մուտքի մոտ։

187 «Տրիերա» էին կոչվում հին հույների նավերը, որովհետև երեք շարք թի ունեին։ Բյուզանդական շրջանում այդ նավերը կոչվում էին դրոմոն։ (Հմմտ. πυρφόρους τε τριήρεις πλείστας ἐπαγόμενος (δρόμωνας ταύτας Ῥωμαῖοι καλοῦσι. Leonis Diaconi Historiae, Bonnae, 1828, p. 7)։

188 Քաղաք Պելոպոնեսում, Մեսսենիայի հարավ-արևմտյան ծայրամասում։

189 Քաղաք Պելոպոնեսում, Աքայայի կենտրոնը։

190 Պելոպոնեսը հնում մայր երկրին էր միացած ցամաքի մի նեղ շերտով, որի վրա հատուկ մի ճանապարհ կար, որով քաշ էին տալիս փոքր նավերը, խուսափելու համար ամբողջ Պելոպոնեսի շուրջը նավարկելուց։ Դեռ անտիկ ժամանակաշրջանում փորձեր են եղել այդ նեղ շերտի վրա ջրանցք փորել, միացնելու համար Կորնթոսի ծոցը Սարոնիկոսի ծոցի հետ, մի բան, որ իրականացավ միայն 1893 թ.։ Այն ունի 6, 3 կմ. երկարություն, և 24,6 մետր լայնություն։

191 Գենեսիոսի տվյալներով այդ 60 նավերից յուրաքանչյուրի տարողությունն էր 200 հոգի (տե՛ս Genesii Regum, p. 118)։

192 Վիգլայի դրունգարը (δρουγγάριος τῆς βίγλας) Կոստանդնուպոլսում գրտ-

նըվող չորս գվարդիաներից մեկի՝ 'Αριθμοί կոչվածների հրամանատարն էր։ Այս գվարդիայի հիմնական պարտականությունն էր արքունիքի անվտանգության ապահովումը։ Վիգլայի դրունգարը զբաղվում էր նաև ռազմագերիների հարցով։ Նրա մասին առաջին հիշատակությունը վերաբերում է 791 թ. (տե՛ս Bury, IAS, p. 60—62)։

193 Պրետորիոնը մի շենք էր, որ պատկանում էր քաղաքի պրետորին։ Կոստանդնուպոլսում կար երկու պրետորիոն, բայց տվյալ դեպքում խոսքը Ավգուստեոնի և Կոստանդինի Ֆորումի միջև գտնվող շենքի մասին է։ Հայտնի չէ երբ է կառուցվել, բայց Հուստինիանոս I-ի ժամանակ կար։ Պրետորիոնի շենքում կար և բանտ (ավելի մանրամասն տե՛ս Janin, Const. Byz., p. 163—166)։

194 Գենեսիոսի մոտ էլ է հանդիպում այս պատմությունը, բայց նա չի ասում, որ խոսքը «մահապարտ ոճրագործների» մասին է, այլ 30 հազարացի (արաբ) ռազմագերիների (տե՛ս Genesii Regum, p. 118)։

195 Էպանագոգե կոչված Դատաստանագրքում գրված է, որ նշանավոր ավազակներին պետք է ցցահան անել այն վայրում, որտեղ որ նրանք ոճիրը գործեցին, որպեսզի սարսափեցնեն նրանց, ովքեր նման արարքներ են գործում, ինչպես և նրա համար, որպեսզի տուժողները մահապատժին ականատես լինելով, ինչ-որ ձևով բավարարություն ստանան։ (Epanag., tit. XL, cap. 19)։

196 Մարդայիտները Տավրոսի փեշերին ապրող լեռնցիներ էին, որոնք Կոստանդին Պոգոնատոս կայսեր օրոք (675) առանձին զորամասեր կազմեցին, հաստատվեցին Լիբանանի լեռներում, որտեղից ասպատակություններ էին գործում Պաղեստինում և Ասորիքում ընդհուպ մինչև Մեռյալ ծովը։ X դարում նրանք գտնվում էին Կիբիրեոտների բանակաթեմում և ունեին իրենց կատեպանը (κατεπάνω τῶν Μαρδαϊτῶν)։ Ծառայում էին նաև Հելլադայի բանակաթեմում։

197 Պրոտովեստիարիոսը սկզբնական շրջանում գլխավորում էր կայսեր հանդերձանոցը և կոչվում էր comes sacrorum largitionum. IX դարում պրոտովեստիարիոսը գլխավորում էր կայսերական գանձարանը և չուներ որևէ առնչություն կայսեր հանդերձանոցի հետ։ Պրոտովեստիարիոսը գրավում էր երկրորդ սեղը՝ ներքինիների 10 աստիճանից բաղկացած դասում (տե՛ս Bury, IAS, p. 145. Brehier, Les Institutions, p. 130—131)։

198 Բնագրում Βαϊανός։ Ի. Դույչեր գտնում է, որ Բայան անունը (մոնղ. Բոյան) Բենիամինն է (տե՛ս REB, t. VII, fasc. I, 1949, p. 129)։

199 Բնագրում κουβικουλάριος. սենեկապան։ V դարում կուբիկուլարիոսները արքունիքի ամենակարևոր ծառայողներն էին և գտնվում էին պրեպոզիտոսի հրամանների ներքո։ Նրանք գլխավորում էին կայսերական հանդերձարանը, ննջասենյակը, և մասնակցում կայսերական թափորներին։ Ննջասենյակում ծառայող անձնավորությունները կոչվում էին կիտոնիտներ և ենթարկվում էին պարակիմոմենոսին, իսկ հանդերձարանի ծառայողները, որոնք ժամանակի ընթացքում կազմում են առանձին գործակալություն, անցնում են պրոտովեստիարիոսի իրավասության ներքո։ IX դարում կուբիկուլարիոսը դադարում է կարևոր դեր խաղալուց (Մանրամասն տե՛ս Bury, IAS, p. 120 sq։ Նաև R. Guilland, Les titres auliques, p. 52—75)։

200 Այս Վարդասի (Վարդի) անունը վկայում է Լևոն Ապոստոլուպեսի հայկական ծագման մասին։ Անվան առաջին Ապո-ն ըստ երևույթին արաբական Աբու-ն է, հմմտ. հուն. Ապոքապես (Աբու խաֆս), և այլն։

201 Բնագրում Βαρ-_α-έων։ Ամենայն հավանականությամբ հայկական անուն է։ Հայերի մոտ տարածված է Վարդապետ անունը։ Տե՛ս Հ. Աճառյան, Անձնանունների բառարան, հատ. Ե, էջ 108։ Իհարկե, անհավանական չէ, որ մենք գործ ունենանք հայերեն Վարձ անվան հետ (Եղիշեն, էջ 193 և Ղազար Փարպեցին (էջ 86) հիշում են Վարձ Կամսարականին), կամ էլ Վաբաղի հետ։

202 Բյուզանդական կայսրերը Կոստանդնուպոլսում ունեին շուրջ քսան պալատ։ Բացի այդ, նրանք բազմաթիվ պալատներ ունեին քաղաքից դուրս՝ և՛ եվրոպական, և՛ ասիական ափին։ Հիերիայի պալատը գտնվում էր Կոստանդնուպոլսի ասիական ափին։ Կառուցել էր Հուստինիանոս I-ի կին Թեոդորան։ Ամառ ժամանակ կայսերական ընտանիքը տեղափոխվում էր Հիերիայի պալատը։ Հենց այս պալատում էր, որ 753 թ. Կոստանդին V կայսրը ժողով հրավիրեց և որոշում ընդունեց ընդդեմ սրբապատկերների պաշտամունքի։ Հիերիայի պալատի ավերակները գտնվում են Կոստանդնուպոլսի ժամանակակից Ֆեներբախչե թաղամասում (տե՛ս Janin, Const. byz., p. 147—148)։

203 Էպանագոգե Դատաստանագրքի համաձայն թշնամու կողմը անցնողներին կարելի է աներկյուղ սպանել (տե՛ս Epanag., tit XL, cap. 3, 22)։

204 Քաղաք Բուլղարիայում։ Այժմ կոչվում է Նեսեմբր։

205 Ծիրանածինը չի պահպանում դեպքերի ժամանակագրական հաջորդականությունը։ Նա նախ շարադրում է Նասարի և Պրոկոպիոսի Իտալիա կատարած արշավանքի պատմությունը և ապա արաբների կողմից Սիրակուսայի գրավումը։ Իրականում Սիրակուսան գրավվեց 878 թ. մայիսի 21-ին, իսկ Նասարի և Պրոկոպիոսի արշավանքը վերաբերում է 879—880 թթ.։ Տե՛ս Васильев, Византия и арабы, II, стр. 65 сл.; А. П. Каждан, Из историн византийской хронографии X века, стр. 89. Գեորգ Վանականի Շարունակողը Սիրակուսայի գրավման պատճառ է համարում այն, որ բյուզանդական նավատորմիղի նավաստիները, զբաղված լինելով «Նեա» տաճարի կառուցմամբ, չկարողացան մասնակցել պատերազմին արաբների դեմ (տե՛ս Georg. Mon. Cont., p. 843)։

206 Ամանտիա, քաղաք և նավահանգիստ հարավային Իտալիայում։

207 Նշանավոր զորավար էր։ Եթե նկատի ունենանք նրա երկու որդիներից մեկի անունը (Վարդաս-Վարդ), ապա նա ծագումով հայ էր։ Վասիլը նրան Կալաբրիա ուղարկեց 885 թ.։ Նրա մասին ավելի մանրամասն տե՛ս Guilland, Le domestique, p. 25—26)։ Նիկեփոր Փոկասի որդիները ևս (Վարդ և Լևոն) աչքի ընկան որպես քաջ պատերազմողներ։

208 Պավլիկյան Դիակոնիցեսի մասին տես վերը, ծան. 133։

209 Մանին (հուն. (Μάνης) III դարի նշանավոր աղանդապետ էր, մանիքեության հիմնադիրը։ Բյուզանդական աղբյուրներում պավլիկյաններին անվանում են նաև մանիքեցիներ։ «Մանիի հավատքը պաշտողների» տակ ենթադրվում են պավլիկյանները։

210 Բյուզանդիայի՝ արաբների դեմ մղած պատերազմների հերթականությունը

*Ծիրանածինի մոտ ճիշտ չէ։ Իրականության մեջ դեպքերն ընթացել են հետևյալ կերպ։ Վասիլը առաջին անգամ արշավեց Տեֆրիկեի դեմ և պարտություն կրեց 871 թ.։ 872 թ. բյուզանդական զորքերը հաղթում են պավլիկյաններին և արաբներին։ Այնուհետև սկսվում է պայքար Արևմուտքի արաբների դեմ։ Նրանց ձեռքում էր գտնվում Սիկիլիայի մեծ մասը և հարավային Իտալիայի կարևոր շրջանները։ Ֆրանկների թագավոր Լուդովիկոս II-ը պայքար սկսեց նրանց դեմ և գրավեց Բարի քաղաքը։ Վասիլ I-ը դաշինք է կնքում այս թագավորի հետ, բայց դա երկարատև չի լինում։ Լուդովիկոսի մահից հետո Բարիի բնակիչները քաղաքը հանձնում են բյուզանդացիներին։ Այս ընթացքում արաբները շարունակում են իրենց արշավանքները և գրավում են Մալտա կղզին, այնուհետև 878 թ. Սիրակուսա քաղաքը։ Սկսվում է երկարատև պատերազմ Իտալիայի արաբների դեմ, որ շարունակվում է Վասիլի մահից հետո էլ, Լևոն VI-ի թագավորության ժամանակ։ Վասիլի թագավորության 11-րդ տարին (878) Վասիլը արշավում է Մելիտենեի արաբների դեմ և մեծ ռազմավարով ու գերիներով վերադառնում։ Թագավորության 13-րդ (880) տարին կայսրը արշավում է Գեռմանիկիայի (Մարաշ) վրա և գերեվարելով վերադառնում։ Իր թագավորության 17-րդ տարին (884 թ.) սարակինոսների նավատորմիղը հարձակվում է Իտալիայի և Սիկիլիայի վրա Սոլդանոսի գլխավորությամբ (տե՛ս* Sym. Mag., p. *690* sqq.; Georg. Mon. Cont., p. *841* sqq.*)։*

211 *Դիոմեդեսի վանքի և պելոպոնեսցի կնոջ՝ Դանելիսի մասին տես վերը, գլուխ 9, 11։*

212 *Մագնավրա։ Աղբյուրներում հանդիպում են գրության տարբեր ձևեր.* Μαγναῦρα, Μανναῦρα, Μαναῦρα*։ Մագնավրան կազմում էր բյուզանդական կայսրերի Մեծ պալատի բաղկացուցիչ մասը։ Նա անմիջական կապ ուներ Մեծ պալատի, ինչպես և սբ. Սոֆիայի տաճարի հետ։ Ավանդության համաձայն այն կառուցել էր Կոստանդին Մեծը։ Այն պատճառով, որ բյուզանդական կայսրերը այստեղ էին ընդունում օտար երկրների պաշտոնական ներկայացուցիչներին, վերջիններիս կայսրության մեծությունն ու հզորությունը ցույց տալու համար այդ պալատին տվել էին արտակարգ շքեղություն և փայլ։ Այստեղ էր գտնվում կայսեր գահը, որ կոչվում էր «Սողոմոնի գահ»։ Բազիլիկ դահլիճ էր։ Միքայել III կայսեր ժամանակ Մագնավրայի պալատը դառնում է նաև Համալսարան, որտեղ աշխատում էին անվանի գիտնականներ Լևոն Փիլիսոփայի ղեկավարության ներքո (տե՛ս* Janin, Const. byz., p. *117—118)։*

213 *Բնագրում* σκιάστρια*։ Ենթադրում են, որ բառը կապ ունի* σκιά*—ստվեր բառի հետ, և որ սկիաստրիաները մեծ հովհարներ բռնած կանայք էին, որ հով էին անում մեկի, գուցե և կայսրուհու վրա, երբ վերջինս թափորով դուրս էր գալիս (տե՛ս* Sophocles, Greek Lexicon, vol. *II*, p. *994)։ Բյուզանդական աղբյուրներում հանդիպում է և* Σκιαστής *(ար. սեռ) բառը արդեն որպեսածական։ Այդպես էր կոչվում հայազգի նշանավոր գիտնական և պատրիարք Հովհաննես Քերականի հայր Բագարատը* (Παγκράτιος σκιαστής, Sym. Mag., p. *606)*, *որին Թեոփանեսը որակում է կեղծ մարգարե և աստղաբաշխ* (Παγκράτιον τὸν ψευδοπροφήτην καὶ ἀστρονόμον. Theoph. Chron., p. *468)։ Կ. Տեր-Սահակյանը* Σκιαστής *մականունը*

*հայերեն Զգաստ բառն է համարում (տե՛ս նրա Հայ կայսրեր Բյուզանդիոնի, հատ. Բ, Վենետիկ, 1905, էջ 180), առանց որևէ մեկնաբանություն տալու: Ն. Ադոնցը գտնում է, որ եթե տվյալ բառը հունարեն է, ապա պետք է կապել Ապոլոնի* Σχιαστής *մակդիրի հետ, որ նշանակում է գուշակ, գուշակության ձիրք ունեցող (տե՛ս* Ադոնց, *Գիտական դեմքեր, էջ 520):*

*Վերոհիշյալ սկիաստրիաների կապակցությամբ ավելի հավանական է Կ. Պապարիգոպուլոսի ենթադրությունը, որ նրանք ձեռագործի ապա և կտորեղեն ներկելու մասնագետ կանայք էին (տե՛ս* Κ. Παπαρρηγοπούλου Ἱστορία τοῦ Ἑλληνικοῦ Ἔθνους. τόμος Γ′. μέρος Β′, Ἀθῆναι. 1932, σελ. 305):

214 *Սիդոնական են կոչվել կտավից կամ բամբակից գործված բարակ կտորները, ապա և այդ կտորից կարված հանդերձները:*

215 *Բնագրում* λινομαλωτάριαι: *Բարդ բառ է,* λίνος *(կտավ) և* μαλλί *(բուրդ): Խոսքը կտավի և բրդի խառնուրդից գործված կտորի մասին է:*

216 *Բնագրում* ἀμάλιαι: *Բարակ թելե գործվածքներ:*

217 *Նկատի ունի դեսպակը, որով ծառաները Դանելիսին տարան Կոստանդնուպոլիս, իսկ նա այժմ նրա վրա վերադարձավ Պելոպոնես:*

218 *«Նոր բազիլիկ եկեղեցու» մասին տե՛ս ծանոթ. 231:*

219 *Բնագրում* ἀπὸ τῆς εὐχῆς:

220 *Այս վանականի մասին տե՛ս վերը, գլ. 11:*

221 *Նավպակտոս բերդը գտնվում էր Կորնթոսի ծոցի հյուսիսային ափում:*

222 *Ագոնոթետ* (ἀγωνοθέτης) *էին կոչվում հին Հունաստանում նրանք, ովքեր իրենց վրա էին վերցնում մարմնամարզական խաղերի կազմակերպման ամբողջ պատասխանատվությունը: Օլիմպիական խաղերի ագոնոթետները կոչվում էին հելլանոդիկներ: Աթենքում նրանք ընտրովի էին, տաս հոգի, չորս տարի ժամանակով: Ծիրանածինը հին բառն օգտագործում է Վասիլի նկատմամբ, կամենալով ընդգծել նրա կազմակերպական ընդունակությունները:*

*Ծիրանածինը* ἀγωνοθέτης *տերմինը հավանաբար վերցրել է էպանագոգե կոչված օրենսգրքից, որտեղ կայսեր մասին ասված է, որ նա ինչպես ագոնոթետ, մրցանակներն է շնորհում.* ἀνάλογος τις ἀγωνοθέτης τὰ βραβεῖα παρεχόμενος: Jus Graecoromanum, Leges imperatorum Isaurorum et Macedonum, vol. II, Epanagoge legis Basilii et Leonis et Alexandri, tit. 2, cap. I, Scientia Aalen, 1962:

223 *Պեգե* (Πηγή) *աղբյուր բառից: Կոստանդնուպոլսում կար և մի ուրիշ պալատ, որ կոչվում էր* Πηγαί *(հոգնակի թվով):*

224 *Սիգմա էր կոչվում կառույցի հատակագծի պատճառով, որ նման էր հունարեն սիգմա* (C) *տառին:*

225 *Բնագրում* Αὐρηλιαναί: *Կոստանդնուպոլսի թաղամասերից մեկն էր, Կոստանդնի պարիսպների հարավային ծայրամասում:*

226 *Բնագրում* Στροβυλιαναί: *Թաղամասը գտնվում էր Ոսկեղջյուրում, Ֆանարի շրջանում:*

227 *Կոստանդնուպոլսի այս թաղամասի* (Μακεδονιαναί) *տեղադրությունը դեռևս որոշ չէ (տե՛ս* Janin, Const. byz., p. *355):*

228 Բյուզանդագետների շրջանում Դևտերոնի տեղադրության շուրջ բազմաթիվ վեճեր են գնացել։ Ենթադրվում է, որ այն գտնվում էր սբ. Առաքելոց եկեղեցուց հյուսիս, ընդ որում իր մեջ էր ներփակում Կոստանդինի և Թեոդոսի պարիսպների միջև գտնվող մի մեծ մաս (տե՛ս Janin, Const. byz., p. 314—317)։

229 Դոմնինոսի սյունաշարքերը (այսինքն պորտիկներ, կամարակապ ճեմասրահներ) գտնվում էին Թեոդոսի և Կոստանդնի հրապարակների (ֆորումների) միջև։

230 Կոստանդնուպոլսի նավամատույցներից մեկը։

231 Այս նշանավոր եկեղեցին հայտնի է «Նոր» (Νεα) անվամբ։ Նա հիշատակվում է հայկական աղբյուրներում ևս։ Իշխանաց իշխան Աշոտը Վասիլ I-ի դեսպան Նիկիտի միջոցով Կոստանդնուպոլիս «առաքէ և տասն հազար արծաթ ընծայ Նոrաշէն եկեղեցւոյն» (տե՛ս Վաrդան, էջ 85)։ Նեա եկեղեցին կառուցվեց սբ. Սոֆիայի տաճարից մի փոքր հարավ, ժամանակակից Բալըկխանե Կապըսը նավամատույցից հյուսիս։ Ինչպես ցույց է տալիս Սիմեոն Մագիստրոսը, տաճարը սկսեց կառուցվել Վասիլի թագավորության 9-րդ տարին, և ավարտվեց նրա թագավորության 14-րդ տարին, մայիսի 1-ին։ Սրբագործողը Փոտ պատրիարքն էր (տե՛ս Sym. Mag., p. 691—692; Georg. Mon. Cont., p. 845)։ Տաճարի սրբագործման արարողության օրը Փոտ պատրիարքը մի շատ գեղեցիկ ճառ արտասանեց, որը հասել է մեզ (տե՛ս Photii Patriarchae Constantinopolitani Novae sanctissimae Dei Genitricis ecclesiae in Palatio a Basilio Macedone exstructae, descriptio, In Georgii Codini excerpta de antiquitatibus Constantinopolitanis, Bonnae, 1843, p. 194—202)։ Վասիլը Նոր տաճարի կառուցման առթիվ բազմաթիվ պղնձե արձաններ հալել տվեց, մետաղն օգտագործելու համար։ Նոր եկեղեցու շինարարության վրա օգտագործելու համար այլ շենքերից և եկեղեցիներից էլ բազմաթիվ մարմարիոններ ու քանդակներ բերեցին, այդ թվում և մի պղնձե սյուն, որը սենատում էր գտնվում և պատկերում էր օձը ձեռքին մի եպիսկոպոսի։ Վասիլը իբրև թե իր մատը դրել է այդ օձի բերանը, բայց ներսում գտնվող մի իսկական օձ խայթել է նրան և հակադեղերով հազիվ են փրկել կայսեր կյանքը (տե՛ս Sym. Mag., p. 691—692; Georg. Mon. Cont., p. 843—844)։

Բյուզանդական արվեստի մեծ գիտակ Շ. Դիլի բնորոշմամբ, Վասիլ 1-ի կառուցած Նոr Եկեղեցին բյուզանդական արվեստի զարգացման երկրորդ շրջանում, որ սկսվեց Վասիլ I-ով, ունեցավ այն նշանակությունը, ինչ սուրբ Սոֆիայի տաճարը VI դարում։ Նոր եկեղեցին նոր էր իր ձևերով, և այն օրինակ հանդիսացավ հետագայում կառուցված բազմաթիվ այլ եկեղեցիների համար (Տե՛ս Ch. Diehl, L'art chrétien primitif et l'art byzantin, Paris-Bruxelles, 1928, p. 33)։

232 Այս հրապարակը (բակը) որտեղ բյուզանդացի մեծամեծները ձիու վրա նստած գնդակ էին խաղում, կոչվում էր Ցուկանիստերիոն (Τζυκανισ-τηριον կամ Τζουκανιστηριον)։ Վասիլ I-ը նրա տեղում կառուցեց իր Նոր Եկեղեցին և նոր Ցուկանիստերիոն կառուցեց մի այլ տեղում։ Կայսերերի և երևելի մարդկանց ձիու վրա գնդակ խաղալը կոչվում էր τζουκανι-

ζειν։ *Խաղը պարսկական էր, որովհետև հենց բառը պարսկական ծագում ունի*—tshu-qan *(տե՛ս* Janin, Const. byz., p. *119*; Sophocles, Greek Lexicon, vol. *II*, p. *1080)։ Խաղը մինչև օրս էլ տարածված է Պարսկաստանում և կոչվում է* չոգան։ *Միջնադարյան հայ հեղինակներից այդ խաղը հիշում է Մատթեոս Ուռհայեցին. «Խաղ գնդին ի մայտանն» ձևով։ Տե՛ս Ժամանակագրություն, Վաղարշապատ, 1898, էջ 32։*

233 *էնկավսիսր* (ἔγκαυσις) *նկարչության մեջ օգտագործվող եղանակ էր, որի էությունն այն էր, որ գույները խառնում էին մեղրամոմի մեջ, որից հետո այդ նյութը քսում այն մակերեսի վրա, որի վրա պետք է նկարեին։*

234 *«Աստված իմ»-ի փոխարեն Ծիրանածինը օգտագործում է հին հույների «Ո՜վ Հերակլես» բացականչությունը։*

235 *Ծիրանածինը իր շարադրանքի մեջ այստեղ օգտագործում է մեկ ներկա ժամանակը, մեկ՝ անցյալ։ Աշխատել ենք հետևել նրան։*

236 *Խիմեվսիս* (χύμευσις) *ձուլածո։*

237 *Եկեղեցու սուրբ խորանը կոչվում էր նաև ադիտոն* (ἄουτον), *որ թարգմանաբար նշանակում է «անմատչելի»։ Աբատոն* (ἄβατον) *նույն իմաստն ունի մոտավորապես ինչ և ադիտոնը։ Ծիրանածինը ուզում է ասել իրականությունը հնարավոր չէ խոսքերով արտահայտել։*

*Աբատոնի մասին տե՛ս* **H. G. Bech,** Kirche und theologische Literatur im Byzantinischen Reich, München, 1959, S. 134։

238 *Ծիրանածինը իր այս նախադասության մեջ դիմել է նմանաձայնության (ալլիտերացիային).* „βασιλείων βασίλεια ἐν αὐτοῖς τοῖς βασιλείοις βασιλεὺς Βασίλειος ἀνεδείματο". *հինգ անգամ տարբեր ձևերով օգտագործելով* βασιλεὺς *բառը։*

239 *Խորեգիան* (χορηγία) *հին Աթենքում գործակալություն էր։ Աթենքի ցեղերից յուրաքանչյուրն ընտրում էր իր հարուստ քաղաքացիներից մեկին որպես խորեգոս, որը հոգում էր Պանաթենական, Թարգելիական կամ Դիոնիսիա տոների ժամանակ տղամարդկանց և պատանիների պարի ծախսերը։ Այդ ծախսը բավական մեծ էր լինում։ Աղբյուրներում հիշվում է խորեգոս, որ մի պարի վրա ծախսել է մինչև 3000 դրախմե։*

240 *Պրոպոնտիսում (Մարմարա) երկու փարոս կար. մեկը կայսերական պալատի մոտ, մյուսը Բոսֆորում։ Խոսքը առաջին փարոսի մասին է։*

241 *Այսինքն հանդերձանոց։*

242 *«Կողմերի» մասին տե՛ս վերը, ծանոթ. 125։*

243 *Կոստանդին Ծիրանածինը ցույց է տալիս, որ Մանգանայի պալատը Վասիլ 1-ն է կառուցել։ Բայց հայտնի է, որ Միքայել I Ռանգաբեն (811—813) ուներ մի շենք հենց Մանգանայում, որ վերջինիս որդի Իգնատիոսը, Կոստանդնուպոլսի պատրիարքը, ապրում էր Մանգանայում իր ընտանեկան բնակարանում։ Հարց է ծագում, Վասիլը վերանորոգեց այդ նույն պալատը, թե՞ այդ անունով մի ուրիշ պալատ կառուցեց, պարզ չէ։ Մանգանա թաղամասը գտնվում էր քաղաքի արևելյան ծայրամասում, ժամանակակից Դեյիրմենկապըի մոտ (տե՛ս* Janin, Const. byz., p. *131—132, 277—278, 355—356)։*

244 *Պեգե* (Πηγαί, *հոգնակի թիվ), չշփոթել Պեգե* (Πηγή) *մյուս պալատի վայրի հետ (տե՛ս ծանոթ. 223)։*

245 Հերակլ կայսրը մեռավ 641 թ. ջրգողությունից (водянка)։

246 Հիերիայի ջրավազանը գտնվում էր ժամանակակից Ֆեներբախչեի թերակղզու հյուսիս-արևելյան մասում, Պրոպոնտիսի (Մարմարա) ասիական ափին, որտեղ մինչև օրս կարելի է տեսնել նրա մնացորդները։ Ջրավազանը կառուցել էր Հուստինիանոս կայսրը, Հիերիայի պալատի կարիքների համար։ Նույն տեղում կար և մի այլ ջրավազան՝ բաց երկնքի տակ։ Սիրանածինը այս վերջինիս մասին է խոսում (տե՛ս Janin, Const. byz., p. 199)։

247 Ֆորոս (լատ. Forum), խոսքը Կոստանդնի հրապարակի մասին է (Forum Constantini)։ Կառուցել էր Կոստանդին Մեծ կայսրը։ Այն շրջապատված էր կառավարական բազմաթիվ շենքերով, տաճարներով և այլն։ Հրապարակի շուրջ կային սյունաշարքեր (պորտիկներ), որոնց բազմաթիվ սյուները մինչև օրս էլ կանգուն են և թուրքերեն անվանվում են Չեմբերլիտաշ (տե՛ս Janin, Const. byz., p. 67—69)։

248 Բառացի նշանակում է պղնձագործարաններ (Χαλκοπρατεῖα)։ Կոստանդնուպոլսում, ինչպես և Արևելքի քաղաքներում, նույն արհեստով զբաղվող արհեստավորները կենտրոնանում էին մի շրջանում և կամ մի փողոցի վրա։ Վերոհիշյալ արհեստանոցները գտնվում էին Ստամբուլի Ջեյնեբ Սուլթանե մզկիթի շրջանում, սուրբ Սոֆիայի տաճարի արևմտյան դռան դիմաց։ Հենց այնտեղ հնագետները գտել են խալկոպրատիայի աստվածածնի տաճարի ավերակները (տե՛ս Janin, Const. byz., p. 97—98)։

249 Բնագրում Τζῖρος (գրվում էր նաև Στῖρος)։ Թաղամասը գտնվում էր Կոստանդնուպոլսի առաջին բլրի հյուսիսային մասում, Կոստանդնուպոլսի թերակղզու հյուսիս-արևելյան կողմում (տե՛ս Janin, Const. byz., p. 395)։

250 Վայրը Պուլքերիանե էր կոչվում Թեոդոս II-ի քույր Պուլքերիայի անունից, որը և այդ տեղում պալատ էր կառուցել։ Պուլքերիանեն գտնվում էր Ոսկեղջյուրի մոտ (տե՛ս Janin. Const. byz., p. 62, 136, 381—382)։

251 Բնագրում Ἕβδομον (նշանակում է յոթերորդ [մղոն])։ Վայրը գտնվում էր Թեոդոսի պարսպից դուրս, Պրոպոնտիսի ափից ոչ հեռու (Մանրամասն տե՛ս Janin, Const. byz., p. 408—410)։ Այդտեղից դեպի Կոստանդնուպոլիս էր ձգվում նշանավոր էգնատիա ճանապարհը, որ Ոսկե դռների միջով ուղղվում էր քաղաք։ Բոլոր ռազմական շքերթները սկիզբ էին առնում հենց Հեբդոմոնում։ Հեբդոմոնի տեղում այժմ գտնվում է Բաքըրքյոյ գյուղը (հնում կոչվում էր Մակրիքյոյ)։ Համտ. նաև Janin, La topographie, p. 213—214։

252 Բնագրում Ῥήγιον։ Կոստանդնուպոլսի թաղամասերից մեկը։

253 Բնագրում Βάθυρσος, որ ուսումնասիրողների կարծիքով գրչական սխալ է և պիտի լինի Βάβυρσος (հանդիպում է նաև Βάρβυσσος գրության ձևը)։ Ոսկեղջյուրի կամուրջներից մեկն էր։

254 Բնագրում Στενόν (բառացի նշանակում է «նեղուց», խոսքը Բոսֆորի մասին է։ Կոչվում էր նաև Ῥεῦμα («հոսանք»)։ Այն միացնում է Սև ծովը Մարմարայի հետ։ Միջին երկարությունն է 31 կիլոմետր, լայնությունը՝ 550—3200 մետր։ Սուրբ Փոկասի տաճարը գտնվում էր Բոսֆորի եվրոպական ափում, ժամանակակից Օրթաքյոյում։

255 *Սոսթենիոսը տեղադրվում է ժամանակակից Իստինյեում, Բոսֆորի եվրոպական ափին, Յենիքյոյից հարավ։*

256 *Միքայել հրեշտակապետի տաճարի կառուցումը հիշատակում են և հայկական աղբյուրները։ «Սա (Վասիլը) շինեաց զսուրբ Զօրավարն» տե՛ս* Կիրակոս Գանձակեցի, *էջ 80)։*

257 *Ծիրանածինը օգտագործում է հին կտակարանի հետևյալ դարձվածքը. «Եթէ հանցես զպատուականն յանարգէ, զբերան․իմ եղիցես»։ Երեմիա, ԺԵ, 19։*

258 *Վասիլը քրիստոնյա դարձնելով հերետիկոսներին և հրեաներին, ըստ երևույթին ուզում էր նրանց զինվորագրել և նրանցով համալրել իր բանակը։ Բյուզանդական օրենքի համաձայն հրեաները, հեթանոսները և հերետիկոսները, զրկված լինելով քաղաքական իրավունքներից, ազատված էին զինծառայությունից։ Տե՛ս* Epanagoge, tit. IX, cap. 13 (Ἕλληνες καὶ Ἰουδαῖοι καὶ αἱρετικοὶ οὔτε στρατεύονται οὔτε πολιτεύονται ἀλλ' ἐσχάτως ἀτιμοῦνται)։

259 *Հմմտ. Բ Թուղթ Պետրոսի, Բ, 20—22. «Զի լաւ է նոցա եթէ բնաւ իսկ չէր ծանուցեալ զարդարութեանն ճանապարհ, քան զի ծանեան և յետս կացին ի սուրբ պատուիրանէն, որ նոցա աւանդեցաւ։ Եկեալ ի դէպ նոցա ճշմարիտ առակին զգօնութեան, եթէ շուն դառնայ անդրէն ի փսխած իւր, և խոզ լուացեալ՝ ընդ տիղմ թաւալեալ»։*

260 *Բնագրում* Αἰθίοψ *(եթովպացի), թարգմանեցինք «հնդիկ», որովհետև խոսքը սևամորթի մասին է (արաբ)։ Ծիրանածինն այստեղ ազդված է Աստվածաշնչից։ Հմմտ. ծանոթ. 73։*

261 *Տե՛ս ծանոթ. 20։*

262 *Պետրոս Սիկիլիացին պավլիկյաններին նվիրած իր ուսումնասիրությունը (գրված 869/870 թթ.) հասցեագրում է Բուլղարիայի արքեպիսկոպոսին։*

263 *«Քրիստոսի ուռկան» դարձվածքը վերցված է նոր կտակարանից. «Մինչ դեռ գնայր Յիսուս ընդ եզր ծովուն Գալիլեացւոց, ետես երկուս եղբարս զՍիմովն զկոչեցեալն Պետրոս եւ զԱնդրէաս, եղբայր նորա՝ արկեալ ուռկան ի ծով. քանզի ձկնորսք էին։ Եւ ասէ ցնոսա։ Եկայք զկնի իմ, եւ արարից զձեզ որսորդս մարդկան» (Մատթէոս, Դ, 18—19)։*

264 *Միքայել III-ի և հատկապես Վասիլ I-ի ժամանակ է, որ քրիստոնեությունն սկսեց ավելի մեծ թափով տարածվել սլավոնական ժողովուրդների մեջ։ Այդ կարևոր գործը Բյուզանդիան վստահել էր Թեսաղոնիկեցի երկու եղբայրներ Կոստանդնին (հոգևորական դառնալուց հետո կոչվեց Կիրիլլ, 827—869) և Մեթոդիոսին (մեռ. 885 թ.)։ Նրանց «Վարքերում» ցույց է տրված, որ Մորավիայի իշխան Ռոստիսլավը դեսպանություն ուղարկեց Միքայել III կայսեր մոտ, խնդրելով, որ իրենց քրիստոնեությունն ամրապնդող քարոզիչներ ուղարկի։ Այդ գործում խոշոր դեր խաղաց և հայազգի Վարդասը, Միքայելի մորեղբայրը, որի մասին արժեքավոր տեղեկություններ են պահպանվել նույնիսկ սլավոնական ավանդություններում* (съ Бардою)։ *Ամբողջ գործի կազմակերպիչն էր պատրիարք Փոտը, որը Կիրիլլի ուսուցիչն էր։ Կիրիլլն ու Մեթոդիոսը ստեղծեցին սլավոնական ժողովուրդների համար այբուբեն, որը հսկայական նշանակություն ունեցավ այդ ժողովուրդների կուլտուրական հետագա զարգացման համար։ Նորագույն աշխատությունները տե՛ս հետևյալ ժողովածուում.* Κυρίλλῳ καὶ

Μεθοδίῳ τόμος ἑόρτιος ἐπὶ τῇ χιλιοστῇ καὶ ἑκατοστῇ ἐτηρίδι, Θεσσαλονίκη, 1966: Լիակատար մատենագիտությունը տե՛ս հետևյալ գործերում. **Г. А. Ильинский**, Опыт систематической кирилло-мефодьевской библиографии, София, 1934; **М. Попруженко-С.Романски**, Кириллометодиевска библиография за 1934—1940 гг., София, 1942: Տե՛ս նաև **Ф. М. Россейкин**, Буржуазная историография о византнно-моравских отношениях в середине IX века, Виз. Временник, т. III, 1950, стр. 245—257: **Д. Ангелов**, Кирил и Методий и византийската култура и политика, Хиляда и сто години славянска писменност (863—1963), Сборник в чест на Кирил и Методий, София, 1963.

265 Համմտ. Գ. Մակարայեցւոց, Չ, 5. «Դու՝ և որ յերկրին Բաբելացւոց երեք մանկունքն ինքնակամ զանձինս ի հուրն մատնեցին՝ զի մի՛ երկիր պագցեն սնոտի պաշտամանց, փրկեցեր, զի ի հերոյ վարսից նոցա ոչ մեղանչէր հուրն»։

266 Տե՛ս Յովհ. ԺԴ, 14, 12։

267 Տե՛ս Երկրորդումն օրինաց, Չ, 16։

268 Վասիլի ավագ որդի Կոստանդինը վախճանվեց 879 թ.։ Տապանաքարերից մեկի վրա գրված է, որ այնտեղ է թաղված «Վարդը, որդին Վասիլի, Ծիրանածինի պապի»։ Ինչպես հայտնի է աղբյուրները հիշատակում են Վասիլ I-ի որդիների հետևյալ անունները. Կոստանդին, Լևոն, Ալեքսանդր, Ստեփանոս։ Վարդաս անունը հիշվում է միայն այս տապանաքարի վրա։ Ն. Ադոնցը ենթադրում է, որ Վարդը կարող է վերոհիշյալ Կոստանդնի հայկական անունը լինել (տե՛ս Ադոնց, Վասիլ Հայազն, էջ 478)։ Ըստ Ադոնցի հաշիվների, Կոստանդինը ծնվել է շուրջ 855 թ.։ Վասիլը ամուսնացավ Եվդոկիա Ինգերինայի հետ շուրջ 865 թ., հետևաբար Կոստանդինը ծնված պետք է լինի Վասիլի առաջին կնոջից՝ Մարիամից (Ադոնց. նույն տեղում, էջ 498)։ Քիչ չեն այն աղբյուրները, որոնք ցույց են տալիս, որ Կոստանդինը իրականում Վասիլի որդին չէր, այլ Միքայել III-ի և ծնվել էր Միքայելի սիրուհուց՝ Եվդոկիա Ինգերինայից, Վասիլի ապագա կնոջից (տե՛ս Sym. Mag., p. 692; Georg. Mon. Cont., p. 844)։

269 Խոսքը պետական գանձապահի մասին է (ὁ ἐπὶ τοῦ γενικοῦ)։ Այս անձնավորության լրիվ տիտղոսն էր ὁ λογοθέτης τοῦ γενικοῦ (վաղ շրջանում կոչվում էր comes sacrorum largitionum)։ Առաջին անգամ հիշատակվում է Հուստինիանոս II-ի թագավորության օրոք։ Հիշյալ անձնավորության պարտականությունն էր հսկել և հավաքել կայսրության հարկերը։ Նա ուներ իրեն ենթակա ճյուղավորված ապարատ։ (Մանրամասն տե՛ս Bury, IAS, p. 86—90)։ Տե՛ս և հաջորդ ծանոթ.։

270 Բնագրում ἐπόπται և ἐξισωταί։ Խոսքը λογοθέτης τοῦ γενικοῦ (պետական հարկերը հավաքողի ու տնօրինողի) ենթակայության մեջ գտնվող անձնավորությունների մասին է։ Կային քաղաքի էպոպտներ, որոնք չորս հոգի էին (տե՛ս Bury, IAS, p. 72), և բանակաթեմերի էպոպտներ (ἐπόπται τῶν θεμάτων), նահանգային հարկահավաքները։ Բյուրին ենթադրում է, որ էպոպտների և էքսիսոտների միջև կար տարբերություն, թեև նրանց հիմնական պարտականությունը կապված էր հարկերի հավաքման գործի հետ (տե՛ս Bury, IAS, p. 87)։ Սրանք ամրացված չէին մի բանակաթե-

մում և Կոստանդնուպոլսից ուղարկվում էին որտեղ որ պետք էր։ Գնալով բանակաթեմ, նրանք ենթարկվում էին բանակաթեմի զորավարին։ Կար և հարկահավաքների մի երրորդ խումբ, որը կոչվում էր οἰοιχηται. Տե՛ս Ahrweiler, Recherches, p. 44)։

271 Պետության երկու մագիստրոսների մասին տե՛ս «Կայսրության կառավարման մասին» աշխատության 43-րդ գլխի 26-րդ ծանոթագրությունը։

272 Սանդավարինոսի լրիվ անունն էր Թեոդորոս Սանգավարինոս։ Նա հաշակվել էր որպես մոգ և նրա հակառակորդները նրան մանիքեցու որդի և մանիքեցի էին անվանում։ Իր գործունեությունն սկսել էր դեռ կեսար Վարդասի ժամանակ, որը նրան մահապատժի պիտի ենթարկեր, եթե նկատի չառներ նրա երիտասարդ հասակը։ Վարդասը նրան Ստուդիոնի վանքն ուղարկեց «ուղղվելու»։ Սանգավարինոսը մերձավորագույն զինակիցն էր Փոտ պատրիարքի, որի առաջին աթոռակալության ժամանակ նշանակվեց այդ Ստուգիոնի վանքի վանահայր և այնտեղից հեռացվեց իր պատրոն Փոտի աթոռազուրկ լինելուց հետո։ Փոտը իր երկրորդ աթոռակալության ժամանակ Սանդավարինոսին նշանակեց Եվխայիտոնի արքեպիսկոպոս։ Լևոն VI կայսեր առաջին գործերից մեկն է լինում Սանդավարինոսին դատի տալը, գանակոծելն ու աքսորելը Աթենք։ Կայսրը դրանով չբավարարվեց և մի քիչ անց նրան կուրացնել տվեց և աքսորեց Արևելք։ Շատ տարիներ հետո Լևոնը թույլ տվեց Սանգավարինոսին գալ Կոստանդնուպոլիս, թոշակ նշանակեց «նեա» եկեղեցուց։ Սանդավարինոսը վախճանվեց Կոստանդին Ծիրանածինի և նրա մայր Զոեի թագավորության ժամանակ (տե՛ս Georg. Mon. Cont., p. 850—852; Sym. Mag., p. 693—694)։

273 Կարմիր կոշիկները կայսերական հանդերձանքի անհրաժեշտ մասն էին կազմում։ Ոչ ոք իրավունք չուներ կարմիր կոշիկ հագնել բացի կայսրից։ Նույն սովորությունը կար և Սասանյան Պարսկաստանում։ Պետք է ասել, որ Բյուզանդիայի կազմի մեջ մտնող հարավային Հայաստանի հինգ նախարարությունների սատրապները, այն է Անձիտի, Բալահովիտի, Հաշտյանքի, Ծոփքի և Անգեղտան, մինչև Հուստինիանոս I կայսեր ժամանակը իրավունք ունեին կարմիր կոշիկներ հագնել։ Այդ մասին հետաքրքրական տեղեկություններ է տալիս Պրոկոպիոս Կեսարացին, (տե՛ս նրա «Կառուցումների մասին» աշխատության 3-րդ գրքի 1-ին գլուխը)։

274 Մարգարիտես կոչված շենքը կառուցել էր Թեոփիլոս կայսրը և կազմում էր բյուզանդական կայսրների Մեծ պալատի բաղկացուցիչ մասը (տե՛ս Janin, Const. byz. p. 109, 115)։

275 Այլ աղբյուրներ նշում են, որ պատրիարք Փոտը և այլ սենատորներ արգելում էին Վասիլին կուրացնելու իր որդուն (տե՛ս Sym. Mag., p. 697)։ Գևորգ Վանականի Շարունակողը ավելացնում է նաև հայազգի Ստիլիանոս Զաուցային, որն այն ժամանակ «փոքր հետերիարխ էր»։ Ստիլիանոս Զաուցան Վասիլի որդիների խնամակալն էր, որ Լևոն VI-ի թագավորության ժամանակ դարձավ պետության երկրորդ մարդը։ Նա իր դուստր Զոեին կնության տվեց Լևոնին և ինքը ստացավ վասիլեոպատոր (կայսերահայր) հորջորջումը։

276 Վասիլի մահվան մասին մանրամասնություններ են տալիս այլ աղբյուրներ։ Սիմեոն Մագիստրոսը ցույց է տալիս, որ Վասիլը գնացել էր որսի,

որտեղ մի մեծ եղջերու հարձակվում է ձի հեծած Վասիլի վրա, իր եղջյուրները անցկացնում կայսեր գոտու մեջ և նրան ցած գլորում։ Կայսեր ուղեկիցներից մեկը մոտենում, թրով կտրում է կայսեր գոտին և ազատում նրան։ Վասիլը վերադառնալով պալատ հրամայում է գլխատել իր ազատարարին, որպես կայսեր դեմ թուրը մերկացրած։ Ենթադրում են, որ մահվան դատապարտվածը պարզապես մի ահաբեկիչ է եղել, որի նպատակն էր Վասիլին սպանել (Տե՛ս A. Vogt, La jeunesse de Léon VI le Sage, p. 427)։ Ահա այս անկումից հետո ունեցած բարդություններից է վախճանվում Վասիլը (տե՛ս Sym. Mag., p. 699; Georg. Mon. Cont., p. 848)։ Նույն պատմությանն ենք հանդիպում «Պսամաթիական ժամանակագրության» մեջ, որտեղ ավելացված է, որ եղջերուն հարված էր հասցրել Վասիլի փորին, կայսրը ունեցել է արյունահոսություն և ինն օր հետո վախճանվել (տե՛ս Псамафийская хроника, стр. 28)։

277 Հոմերոս, Իլիական, Գ, 179։ Հոմերոսի այս տողերը, որոնք օգտագործել է Փիլոն Եբրայեցին իր՝ Ծննդոց Գրքի համար գրած մեկնաբանությունների մեջ, ունեն հին հայերեն թարգմանություն. «Ըստ Քերթողին (իմա՝ Հոմերոսի—Հ. Բ.), երկոցունց իրաց թագաւոր՝ քաջ բարի, և արդնաւոր կռուող»։ Փիլոնի Եբրայեցւոյ Մնացորդք ի Հայս, աշխատասիրությամբ Մ. Ավգերյանի, Վենետիկ, 1826, էջ 384։

# ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ԱՐՔՈՒՆԻՔԻ ԱՐԱՐՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

## ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ

1 *Կոստանդին Ծիրանածինի «Արարողությունների մասին» սույն աշխատության անավարտ մնացած նոր հրատարակությանը ձեռնարկող* A. Vogt-*ը ենթադրում է, որ մեզ չեն հասել առաջին 9 գլուխները։ Դրա համար 3. Ռայսկեի հրատարակության 1-ին գլուխը նա համարում է 10-րդ և դրանով սկսում գլուխների թվահամարը։ Այդպիսով սույն 24-րդ գլուխը նա համարում է 33-րդ և այդպես շարունակում։ «Արարողությունների մասին» աշխատության մեջ չ՚ասած գլուխների հարցի վրա կանգ է առել նաև Ն. Ադոնցը (տե՛ս նրա* Notes *II,* p. *319* sqq.*)։*

2 *Բնագրում* Βῆλον *(լատ.* velum*)։ Բառը հանդիպում է և Մխիթար Գոշի «Դատաստանագրքում» «բեղար» ձևով (էջ 267)։* Βῆλον-*ը ունի բազմաթիվ նշանակություններ. «առագաստ», «վարագույր», «դրոշ»։ Տվյալ դեպքում օգտագործված է «բարձ», «գահ» իմաստով, այսինքն հիերարխիկ աստիճանը, որի համապատասխան բարձրաստիճան ազնվականությունը մուտք էր գործում կայսեր մոտ (տե՛ս* Vogt. Commentaire, p. *71)։ Հայկական աղբյուրներում ևս «դրոշ» բառը ունի և այդ նշանակությունը։*

*Կայսեր թագադրմանը մասնակցում էին 12 վելոն (բարձ), ընդ որում 1) մագիստրոսներ, 2) պատրիկներ և զորավարներ, 3) պրոտոսպաթարներ և այլն (տե՛ս* De Cer. *I,* p. *193)։*

3 *Պրեպոզիտոսը* (πραιπόσιτος, *լատ.* praepositus*), կայսեր ներքինապետը։*

4 *Կուբուկլիոն* (κουβούκλιον, *լատ.* cubiculum*) կայսեր ննջասենյակը։ Այստեղ նշանակում է կուբուկլիոնի ծառայող անձնակազմը, այսինքն կուբիկուլարիոսները, սենեկապետն ու սենեկապանները։*

5 *Օստիարիոս (լատ.* ostiarius*) դռնապան։ Նրանք չորս հոգի էին և կրում էին թանկագին քարերով ագուցված ոսկե գավազաններ, (տե՛ս* De Cer., *I,* p. *10)։*

6 *Ծիրանածինը չի տալիս Տարոնի իշխանի անունը։* A. Vogt-*ը գտնում է, որ այս նախադասությունը բնագրում հետագա շրջանի ընդմիջարկություն է, որ 3-րդ ինդիկտիոնը (ինդիկտիոնը 15-ամյա շրջան է) համապատասխանում է 944/945 թթ., երբ նրա կարծիքով այդ ընդմիջարկությունը կատարվել է։* A. Vogt-*ը միաժամանակ նշում է, որ «բարեկամ բուլղարների» հիշատակությունը մի ապացույց է այն բանի, որ դեպքը պետք է կատարված լինի 927 թվականից հետո, Սիմեոն ցարի մահից հետո, Պետրոս ցարի ժամանակ, որովհետև այն ժամանակ միայն բյուզանդա-բուլղարական հարաբերությունները բարելավվեցին (թեև այս էլ փաստ չէ, որովհետև «բարեկամ բուլղարները» կարող էին լինել նաև բյուզանդա-բուլղարական հարաբերությունների սրման ժամանակ ևս։ Այդ մասին տես*

ներքևում ծանոթ. 9)։ Նա ցույց է տալիս, որ Տարոնի իշխաններից միայն Գրիգորն էր ստացել մագիստրոսի բարձր պատվաստիճանը, հետևաբար նա է Բյուզանդիոն գնացողը, և քանի որ, A. Vogt-ի ասելով, Գրիգորը մահացավ 930 թ. (այս բանը հաստատող և ոչ մի փաստ չունենք, տե՛ս N. Adontz, Notes *II*, p. *337*), ապա մնում է ենթադրել, որ դեպքը տեղի է ունեցել 927—930 թվականների միջև (տե՛ս Vogt, Commentaire, p. *152—154*)։

Ն. Ադոնցը թեև իր Les Taronites աշխատության մեջ 900 թվականն է համարում Գրիգորի Պոլիս գնալու տարեթիվը, հետագայում զանազան պատճառներով փոխեց իր միտքը։ Նա ցույց տվեց, որ Գրիգորը իշխանության՝ գլուխ անցավ 898 թվականին, և ինչպես Ծիրանածինն է գրում, նա, երկու լարի վրա էր խաղում, Բյուզանդիայի և խալիֆայության, (տե՛ս վերը, էջ 4), բայց իրականում ավելի հակված էր դեպի խալիֆաթը։ Նա Լևոն VI-ի ժամանակ գնում է Կոստանդնուպոլիս, դառնում մագիստրոս, այսինքն 180 աստիճանով փոխում իր քաղաքական կողմնորոշումը։ Ն. Ադոնցի ասելով, դա չէր կարող 900 թվականին կատարված լինել, Գրիգորի իշխանության երկրորդ տարին, որ դա կողմնորոշումը փոխելու համար շատ կարճ ժամանակամիջոց է։ Ն. Ադոնցը մի հարց ևս է առաջ քաշում։ Գրիգորին Կոստանդնուպոլիս ուղեկցեց Կոստանդին Լիպսը, որը հենց այն ժամանակ իր աղջկան ամուսնացրել էր Գրիգորի եղբոր հետ։ Արդ, եթե այդ դեպքը կատարված լիներ 900 թվականին, ապա հետևում է, որ Կոստանդինը պետք է առնվազն 30 տարեկան լիներ (որ ունենար ամուսնացնելու աղջիկ)։ Կոստանդին Ծիրանածինը ցույց է տալիս, որ այս Կոստանդին Լիպսը դեռևս 951/952 թվականներին դեռ կենդանի էր և վարում էր հետերիարխի պաշտոնը, այսինքն ստացվում է, որ Կոստանդինը շուրջ 80 տարեկան հասակում դեռ հետերիարխ էր։ Ն. Ադոնցի կարծիքով դա պատկառելի մի տարիք է նման պաշտոնը վարելու համար (Ադոնցն այստեղ մոռանում է այն, ինչ գրել էր 1934 թվականին, որ Ծիրանածինի մոտ շփոթվել են և նույնացվել երկու տարբեր Կոստանդին Լիպսեր, որ առաջինը՝ հայրը սպանվեց 917 թ., իսկ երկրորդը առաջին Կոստանդին Լիպսի որդին էր։ Տե՛ս Les Taronites, p. *223—224*)։ Այդ իսկ պատճառով Ադոնցը ճանապարհներ է որոնում Գրիգորի Կոստանդնուպոլիս գնալու ժամանակը ավելի առաջ տանելու և հարցը լուծում է այսպես. 3-րդ ինդիկտիոնը ուղղում է 13-րդի (փոխանակ ἰνδικτιῶνι γ', ἰνδικτιῶνι <ι>γ') և ստացվում է 910 թ., երբ, նրա կարծիքով, Գրիգորը գնաց Կոստանդնուպոլիս և ստացավ մագիստրոսի աստիճանը (տե՛ս N. Adontz, Notes, *II*, p. *331—338*)։ Բոլոր դեպքերում հարցը չի կարելի համարել սպառված, և նրա լուծումը շատ կարևոր է իմանալու համար Տարոնի իշխանության կողմնորոշման փոխվելու կոնկրետ տարեթիվը։

7 Բնագրում κατεπάνω τῶν βασιλικῶν. Նույն է ինչ πρωτοσπαθάριος τῶν βασιλικῶν։ Արքունիքի զինվորական պաշտոնյա էր։ Նրա մասին ավելի մանրամասն տե՛ս Bury, IAS, p. *111—112*։

8 Բնագրում πρωτονοτάριος τοῦ δρόμου։ Դրոմոսի առաջին նոտարը (լատ. notarius)։ Նշանակում է դպիր, գրագիր, սղագրող, արձանագրող և այլն։

Բառն անցել է և հայոց լեզվին՝ նոտար, որ նշանակում է «նշանագիր, գրիչ, դպիր»։ ՆԲՀԼ, հտ. Բ, էջ 456։

9 Այս բուլղարների մասին տե՛ս նաև վերը, ծանոթ. 6, նաև էջ 44։ «Բարեկամ բուլղարների» մասնակցությունը բյուզանդական արքունիքի արարողություններին ուսումնասիրողները հնարավոր են համարում միայն 927 թ. հետո, Սիմեոն ցարի մահից հետո, որ դրանից առաջ, երբ ծայրահեղ սրված էին բյուզանդա-բուլղարական հարաբերությունները, դա անհնարին էր։ Բայց, ամենայն հավանականությամբ, այդ ենթադրությունը ճիշտ չէ։ Դեռևս VI-րդ դարում Բյուզանդիայի համար կար «բարեկամ արաբների» և «թշնամի արաբների» հասկացողությունը, որի տակ ենթադրվում էր Գասանիդ և Լախմիդ արաբները։ Առաջինները Բյուզանդիային էին հպատակ և դաշնակից ընդդեմ Պարսկաստանի։ Լախմիդները Պարսկաստանին էին հպատակ և դաշնակից ընդդեմ Բյուզանդիայի, այդ թվում և նրանց հպատակ արաբների։ Արդ, շատ հավանական է, որ «բարեկամ բուլղարներ» հասկացողությունը վերաբերում է այն բուլղար ավագանուն, որը բյուզանդական կողմնորոշում ունենալով, ստիպված էր Սիմեոնից փախչել և քաղաքական ապաստարան խնդրել կայսրությունից, իսկ վերջինս, հասկանալի է, պետք էր իր շահերի համար հովանավորեր նրանց։

10 Բնագրում τοὺς προκρίτους ἀνθρώπους τοῦ μαγίστρου καὶ ἄρχοντος τοῦ Ταρῶ։

11 Ծիրանածինն այստեղ Տարոնի մագիստրոսին անվանում է պարզապես Տարոնացի՝ Ταρωνίτης։ Նույն ձևով մի քանի անգամ նա Տարոնացի է անվանում առանց անունը հիշատակելու Տարոնի իշխան Գրիգորին (Կրիկորիկին)։ (Տե՛ս «Կայսրության կառավարման մասին» աշխատության 43-րդ գլուխը)։ Սա ևս կարող է հաստատել այն ենթադրությունը, որ սբ. Բարսեղի տոնին մասնակցող մագիստրոսը՝ Տարոնի իշխանը ոչ այլ ոք է, քան Գրիգորը։

12 Ծիրանածինի ժամանակ, հասկանալի է, Բյուզանդիա պարսից դեսպան չէր գնում։ Պարսկաստանը որպես պետություն դադարել էր գոյություն ունենալուց դեռևս VII դարի 30-ական թթ.։ Ծիրանածինը այստեղ մեջ է բերել Պետրոս պատրիկիոսի մի գործը։ Դեսպանությունները լինում էին երկու տեսակի՝ մեծ և փոքր։ Մեծ դեսպանները միայն լիազորված էին կարևոր նշանակություն ունեցող (օրինակ հաշտություն կնքելու) հարցերը քննարկելու և լուծելու։

13 Իլլյուստրիոս (լատ. illustrius)։ Բառը պահպանված է հայկական աղբյուրներում ևս։ Հմմտ. Ալամանի արձանագրությունը. «Քսան և եւթն ամուոյ Հեբակլի բարեպաշտ թագաւորի Ներսեհի Շիրակայ և Արշարունեաց տեառն և Թէոփիլոսի [Ա]շարունեաց եպիսկոպոսի[ի] ես Գրիգոր եղուստր և Մարիամ իմ կին շինեցաք զսուրբ եկեղեցիս վասն մեր հոգւոցս»։ Կ. Կոստանյանց, Վիմական տարեգիր, էջ 1։

14 Բնագրում σιλεντιάριος։ Նրանք նախապես պատկանում էին կուբիկուլարիոսների դասին, որը կայսեր սենեկապետությունն էր ներկայացնում։ Գտնվում էին պրեպոզիտոսի ենթակայության մեջ։ Զորս սիլենտիարիոս ծառայում էին կայսրուհուն։ Կայսերական ընդունելությունների ժամանակ արարողապետության պաշտոնն էին վարում։ Մանրամասն տե՛ս Bury,

IAS, p. 24—25։ Սիլենտիարիոսներին հիշատակում է և Մխիթար Գոշը. «Առաջին դաս պաղատին, որ է դարպասն եղեն Դիարք (սխալ ընթերցում, պիտի լինի [ս]իղենտիարք—Հ. Բ.), որք են պահապանք ոսկե վաղարին. զգեստ է նոցա դիպակ ոսկեթելով կաղմաւ և ունին գաւազանս ոսկիս և գործ է նոցա տանել յառաջ ղագուորոզսն և զայլս, զոր խնդրէ արքայն»։ Դատաստանագիրք, էջ 261—262։

15 Տրիբունոս (լատ. tribunus), δομέστικος τῶν νουμέρων-ի ենթակայության տակ գտնվող սպաներ, որ հիերարխիկ աստիճանում գալիս էին տոպոտերետեսից և խարտուլարից հետո։ Տե՛ս Bury, IAS, p. 65—66։ Որպես կանոն հիշվում են վիկարիոսների (vicarius) հետ միասին։

16 Բնագրում μαγιστριανοί։ Զբաղվում էին դիվանագիտությամբ ու ներքին անվտանգությամբ։ Ենթարկվում էին magister officiorum-ին և կոչվում էին agentes in rebus։ Պաշտոնը հարատևեց մինչև VIII դարը, երբ նրանց անունը անհետանում է աղբյուրներում և նրանց տեղը գրավում են «վասիլիկոս»-ները։ Տե՛ս և «Կայսրության կառավարման մասին» աշխատության 45-րդ գլխի 28-րդ ծանոթագրությունը։

17 Այսինքն Մծբին։ Մծբինը պարսկա-բյուզանդական սահմանի վրա պարսկական հզոր քաղաք-ամրոց էր։

18 Դարան բյուզանդական քաղաք-ամրոց էր պարսկա-բյուզանդական սահմանի վրա։ Կառուցվել էր Անաստասիոս կայսեր ժամանակ, 507 թ. ի խախտումն պարսկա-բյուզանդական հաշտության պայմանագրի, որի համաձայն սահմանամերձ գոտում ամրության շինարարությունը երկու կողմի համար էլ արգելված էր։ Անաստասիոսը, օգտվելով պարսիկների՝ հոների դեմ պատերազմով զբաղված լինելու հանգամանքից, հիմնադրեց այն։ Անաստասիոսը քաղաքին տվեց իր անունը՝ Անաստասիուպոլիս։ Պարսիկները շատ աշխատեցին այն կործանելու, բայց միշտ անհաջողության մատնվեցին։ Դարա քաղաքում նստում էր բյուզանդական զորահրամանատարը, որ ուներ դուքսի աստիճան։ Քաղաքի կառուցման և նրա պատմության մասին արժեքավոր տեղեկություններ է տալիս Պրոկոպիոս Կեսարացին (Պարսկական պատերազմի մասին, Գիրք Ա, գլ. 10)։

19 Հուստինիանոս կայսեր ժամանակ պարսից դեսպան Իսդիգունասը (Յազդվշնասպը) այդպիսի մի փորձ կատարեց։ Նա իբրև թե դեսպանությամբ եկավ Դարա։ Նրա նպատակն էր 500 սպառազինված մարդ, որպես իր շքախմբի անդամների, մտցնել քաղաք և գիշերով կրակի տալ քաղաքը։ Երբ բյուզանդացիները զբաղված էին լինելու հրդեհն հանգցնելու գործով, մոտիկ թաքնված պարսից զորքը պիտի հարձակվեր և գրավեր քաղաքը։ Բայց բյուզանդացիները գործեցին Կոստանդին Ծիրանածինի մոտ պահպանված հրահանգի համաձայն։ Նրանք Յազդվշնասպի ամբողջ «շքախմբին» թույլ չտվեցին մուտք գործել քաղաք և պարսից խորամանկությունը ապարդյուն անցավ։ Մանրամասն տե՛ս Պրոկոպիոս Կեսարացու Պարսկական պատերազմի մասին աշխատության Երկրորդ գրքի 28-րդ գլխում։

20 «Բարբարոսաց դիվան» (σκρίνιον τῶν βαρβάρων), այսինքն այն գիվանը, որտեղ պահվում էին Բյուզանդական կայսրության՝ օտար պետությունների

հետ ունեցած փոխհարաբերություններին վերաբերող փաստաթղթեր, ժամանակակից տերմինով «Արտաքին գործոց մինիստրության դիվանը»։

21 Պրետորների էպարքոս (ἔπαρχος πραιτωρίων), լատ. praetorius-ից։ Հին Հռոմում praetor էին կոչվում ամեն տեսակի կառավարիչները, քաղաքապետերը, գլխավոր դորահրամանատարները, գլխավոր դատավորը։

22 Բարբարոսների օպտիոն (ὀπτίων τῶν βαρβάρων)։ Օպտիոնին հիշատակում է Պրոկոպիոս Կեսարացին (Պատերազմների մասին, Գ, գլ. 17), նրա տակ ենթադրելով տնտեսին։

23 Պրիվատների կոմես (κόμης τῶν πριβάτων. լատ. comes privatorum), կամ, ինչպես բացատրում է Ծիրանածինը, կայսեր սակելլարիոսը։ Խոսքը կայսեր գանձապահի մասին է, որ տնօրինում էր կայսեր անձնական գրամն ու կալվածները։

24 Բնագրում σακελλάριος τοῦ βασιλέως։ Կայսեր գանձապետը։

25 Քաղաքի էպարքոս (ἔπαρχος τῆς πόλεως) քաղաքապետը։

Էպանագոգե օրենսգրքի համաձայն էպարքոսը քաղաքում կայսրից հետո ամենաբարձր տեղում էր գտնվում, բայց քաղաքից դուրս իշխանություն չուներ։ (ὁ τῆς πόλεως ἔπαρχος ἐν τῇ πόλει μείζων πάντων ἐστὶ μετὰ τὸν βασιλέα. ἐξελθὼν δὲ τοὺς ὅρους τῆς πόλεως ἐξουσίαν οὐκ ἔχει Epanagoge, tit. IV, cap. II)։

26 Ֆաբրիկիաների [պրեֆեկտները] (οἱ τῶν φαβρίκων), այսինքն [զինա]գործարանների։

27 Դեկուրիոն (δεκουρίων, կամ δηκουρίων. լատ. decurio)։ Տասնապետ։

28 Սուբադիուվաս (σουβαδιούβας, լատ. subadjuva) օգնական, ծառայող։

29 Ադմիսսիոնալիոս (ἀδμισσιονάλιος. լատ. admissionalis)։ Սիլենտիարիոսների պետ, ղեկավարը։

30 Լաբարեսիոս (λαβαρήσιοι)։ Հավանաբար լաբարոն կրողները։ Լաբարոն էր կոչվում Կոստանդին I կայսեր դրոշակը, քրիստոնեության խորհրդանշանը։

31 Հոեգիա դարպասը Թեոդոս II-ի պարիսպների վրա գտնվող դարպասներից մեկն էր, գտնվում էր պարիսպների կենտրոնում։ Այժմ կոչվում է Յենիմեվլեվիխանեկապը (Տե՛ս Janin, Const. byz., p. 259)։ Դարպասի վրա կա հյուպարքոս Կոստանդինի 447 թ. արձանագրությունը։ Հնարավոր է, որ այս Կոստանդինը և Ծիրանածինի մոտ մի փոքր առաջ հիշատա՛կված էպարքոս Կոստանդինը նույն անձնավորությունը լինի։

32 Կոնսիստորիոն (κονσιστώριον, գրության ավելի ճիշտ ձևն է κωνσιστώριον, լատ. consistorium)։ Ժողովասրահ։

33 «Բարբարոսաց խարտուլար» (χαρτουλάριος τῶν βαρβάρων) ժամանակակից տերմինով արտաքին գործոց մինիստրության գիվանապետը։

34 Անտիկոնսիստորիոն (ἀντικωνσιστώριον). Կոնսիստորիոնի դիմաց գտնվող սրահը։

35 Սիլենցիում (հուն. σιλέντιον. լատ. silentium) նշանակում է աուդիենցիա, հանդիպում կայսեր հետ, ընդունելություն վերջինիս մոտ։

36 Կանդիդատները (κανδιδάτοι) մտնում էին բյուզանդական արքունիքի պաշտոնեության («թագավորական մարդիկ»—„βασιλικοὶ ἄνθρωποι") կազմում, գտնվելով «թագավորական պրոտոսպաթարի» հրամանների ներքո։ Խնդրո առարկա պաշտոնեության մեջ էին մտնում՝ բացի կանդիդատներից,

(որոնք սկիզբ են առնում Գորդիանոս III-ի ժամանակից—238—244 թթ.), նաև սպաթարոկանդիդատները, սպաթարները, ստրատորները և մանդատորները։ Կանդիդատներից էր բաղկացած կայսերական շքերթին մասնակցող զորախումբը։ Կանդիդատների մասին տե՛ս Bury, IAS, p. 111—112։ Bréhier, Les Institutions, p. p. 123, 125, 127, 132—133։

37 Բնագրում πούερας εὐσχήμους։ Բառը հունարեն չէ, այլ լատիներեն pueros.

38 Բնագրում τερτιοκήριος. լատ. tertiocerius (tertius—երրորդ)։ Հազվագյուտ են հանդիպում։ Ավելի հաճախ են հանդիպում Primicerius (primus—առաջին) և Secundicerius (secundus—երկրորդ)-ները։ Դիվանատան աշխատող է (տե՛ս De Cer. II, p. 403—404)։

39 Լեվա (բնագրում λεβά)։ Լատիներեն բառ է։

40 Վեստոսակրա (βεστοσάκρα. լատ. vestis sacra)։ Կայսեր «սրբազան» հանդերձարանը։

41 Վեստոսակրայի ծառայողները։

42 Բնագրում STRANFER։ Լատիներեն Transfer-ի աղավաղումը։

43 Ավգուստեոնը Սեպտիմիոս Սևերոսի կառուցած Տետրաստոոնն էր, որը գեղեցկացրեց և ընդարձակեց Կոստանդին I կայսրը, վերանվանելով Ավգուստեոն, իր մայր՝ Ավգուստա Հելենեի պատվին։ Ավգուստեոնի չորս կողմում պորտիկներ (ստոա)-սյունաշարքեր էին և գտնվում էր սուրբ Սոֆիայի տաճարի շատ մոտիկ տեղում։ Ավգուստեոնի շուրջը կային բազմաթիվ կարևոր շենքեր, ինչպես օրինակ Խալկեն, ամառային Մագնավրա պալատը, Սենատը և այլն։ Ավգուստեոնի ավերակները այժմ գտնվում են Այասոֆյամեյդանը հրապարակում (տե՛ս Janin. Const. byz., p. 65—67)։

44 Դեմոսների և կողմերի մասին տե՛ս. Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, Գիրք 5, Պրոկոպիոս Կեսարացի, էջ 329, ծանոթ. 172։

45 Նիկեփոր II Փոկաս, կայսր հռչակվեց 963 թ. հուլիսի 3-ին, թագավորեց 963 թ. օգոստոսի 10-ից 969 թ. դեկտեմբերի 10-ը։

46 Կոստանդին Մակեդոնացի, այսինքն Կոստանդին VII Ծիրանածինը։

47 Ռոմանոս II-ը, որ միահեծան թագավորեց 959 թ. նոյեմբերի 10-ից մինչև 963 թ. մարտի 15-ը։ Նրա թագավորության ժամանակ կայսերակից էին հայտարարված նրա դեռահաս որդիներ Վասիլը (Վասիլ II-ը) 960 թ. ապրիլի 22-ից և Կոստանդինը (Կոստանդին VIII) 961 թ. սկսած։

48 Կայսր բառի հոմանիշն էր Ավգուստոս (Օգոստոս), իսկ կայսրուհի բառի Ավգուստա։

49 Բնագրում τάγματα։ Բյուզանդական բանակը բաղկացած էր երկու մասից θέματα-ներից և τάγματα-ներից։ Առաջինները ներկայացնում էին նահանգների, բանակաթեմերի զորքերը, իսկ տագմաները այն զորքերն էին, որոնք կենտրոնացած էին մայրաքաղաքում կամ նրան մոտիկ նահանգներում՝ Թրակիայում, Մակեդոնիայում և այսպես կոչված Պերատիկա շրջանում՝ Բոսպորի ասիական կողմում։ Բանակաթեմերի զորքերը գլխավորում էին բանակաթեմերի զորավարները, իսկ տագմաները՝ դոմեստիկոսները և ունեին տարբեր կազմակերպություն։ Տագմաները հաճախ է հիշատակում Թեոփանեսը VIII դարի դեպքերի կապակցությամբ։ IX դարում հիշվում են չորս տագմա, այն է 1. Սխոլարիոսներ, 2. Էքսկուբիտոս-

*ներ կամ էքսկուբիտի, 3. Արիթմոսներ և 4. Հիկանատոսներ (տե՛ս* Bury. IAS, p. *47—48)։*

*Տագմաների մասին մանրամասն տեղեկություններ են տալիս արաբական աղբյուրները։ Կուդաման իր «Քիթաբ ալ խարաջ» աշխատության մեջ գրում է հետևյալը. «Կոստանդնուպոլիս, արքայանիստ քաղաքի կեցող զորաց թիվը 24.000 կհաշվվի, որոնց 16.000-ը ձիավոր և 8000-ը հետևակ են։ Ձիավորները չորս գնդի կբաժանվին։ Առաջինը 4000 հոգով կկացուցանե Սկոլարյան գունդը, մեծ Դոմեստիկի հրամանատարության տակ, միևնույն ժամանակ նաև ընդհ. հրամանատար է բովանդակ բանակին և կարգադիր զորաժողովներու։ Երկրորդ գունդը նույնպես 4000 հոգով, կկոչվի—Տակսիս։ Դրունգարի մը հրամանին տակ գտնվող՝ նմանապես 4000-է բաղկացած, երրորդ—եկսկուբիտք* (ἐξκούβιτοι) *գունդը կներկայացնե անձնապահաց դասը։ Չորրորդը Սկուտարյանք՝ 4000 հոգվով, որոնք թագավորին ճամբորդությանցը միշտ կընկերանային։ Հետևակազորն երկուքի կբաժանվի, մին կկոչվի՝ Ոպտիմատես, մյուսը՝ Նումերա յուրաքանչյուրը 4000 հոգվով» (տե՛ս* Դեյցեր, *Սկզբնավորությունք, էջ 50, ծանոթ. 1)։*

50 *Նիկեփոր Փոկասի հոր անունը՝* Վարդաս *վկայում է Նիկեփորի հայկական ծագման մասին։*

51 *Խրիսուպոլիսը Կոստանդնուպոլսի մի արվարձանն էր, այժմ կոչվում է Ուսկյուդար։*

52 *Բնագրում* Μαριανὸς ὁ Ἀπαμβᾶς։ *Մականունը հունական չէ։*

53 *Բնագրում* ὁ Τορνίκης Νικόλαος։ *Հասկանալի է, որ նա պատկանում է Թոռնիկյանների նշանավոր ընտանիքին։*

54 *Պատրիարքն այն ժամանակ Պոլիեկտոսն էր (956 թ. ապրիլի 3-ից մինչև 970 թ. փետրվարի 5-ը)։*

55 *Հունարեն* Μίλιον, *լատ.* Milium։ *Աղբյուրների տվյալների համաձայն դա հաղթական մի կամար էր, զարդարված արձաններով ու բարձրաքանդակներով։ Տեղադրվում է սուրբ Սոֆիայի հրապարակի հյուսիս-արևմտյան կողմում (տե՛ս* Janin, Const. byz., p. *104—105)։*

56 *Բնագրում* Χρυσῆ πόρτα *(նաև* Χρυσῆ πύλη)։ *Տե՛ս վերը, Վասիլ կայսեր կենսագրության 26-րդ ծանոթագրությունը։*

57 *Սկարամանգիոնը* (σκαραμάγγιον) *մի տեսակ քաֆթան էր, կաստորե սկարամանգիոնը կուղբի* (καστώρ) *մորթուց պատրաստված սկարամանգիոն։ Հնարավոր է, որ և այդ կենդանու մորթից եղած չլինի, այլ լինի փափուկ, ինչպես կուղբի մորթին։ Սկարամանգիոնի և Բյուզանդիայում գործածության մեջ եղած արևելյան հանդերձանքի մասին տե՛ս* N. P. Kondakov, Les Costumes orientaux à la Cour Byzantine, Byzantion, t. I, 1924.

58 *Սեբաստոս* (Σεβαστός *բարեպաշտ) կոչումը տրվում էր կայսրերին։ Կայսրուհին կոչվում էր նաև* Σεβαστὴ Αὐγοῦστα։ *Ալեքսիոս Կոմնենոս կայսրը (1081—1118) «սեբաստոսների» ազնվականական հատուկ դաս հիմնադրեց։*

*Սեբաստոսների մասին տե՛ս* H. Ahrweiler, Le Sebaste, chef des groupes ethniques, „Polychronion", Festschrift f. F. Dölger, München, 1966, p. 34—38։

59 *Մեսե* (Μέση, *այսինքն Միջին, Կենտրոնական)։ Կոստանդնուպոլսի գլխավոր պողոտան, որ միացնում էր Ավգուստեոնը Կոստանդնի Ֆորումի (Հրապարակի) հետ։*

60 *Ֆորոսի աստվածածնի եկեղեցին կառուցել էր Վասիլ 1-ը (տե՛ս վերը, էջ 112)։*

61 *Բնագրում* διβητήσιον καὶ καμπάγια καὶ καμπότουβα։ *Դիբետեսիոնը Սոֆոկլեսի ենթադրությամբ պարսկական բառ է և նշանակում է հանդերձանքի մի տեսակ։* Sophocles, Greek Lexicon, vol. *I*, p. *376։ Կամպագիան մի տեսակ կոշիկ է (լատիներեն* campagus)։ *Իսկ ի՞նչ է նշանակում կամպոտուբան, հայտնի չէ։*

62 *Բնագրում* ʽΩρολόγια։ *Բառացի նշանակում է ժամացույց։ Բացի արևի ժամացույցներից, Կոստանդնուպոլսում կային նաև իսկական ժամացույցներ, որոնց կառուցման տեխնիկան դեռևս հայտնի չէ։ Աղբյուրներից կարելի է եզրակացնել, որ Կոստանդնուպոլսում կային յոթից ոչ պակաս «ժամացույցներ»։ Գլխավորը գտնվում էր սուրբ Սոֆիայի տաճարի հարավային կողմում (հմմտ.* De Cer., *I*, p. *63)։*

63 *Երկու կողմերից, այսինքն դեմոսների «երկու կողմերից»։ Հմմտ. ծանոթ. 44։*

64 *Բնագրում* ʽΩραῖα πύλη։ *Իսկական անունն է* πόρτα τοῦ Νεωρίου։ *Ժամանակակից Բախչեքապըն, Ոսկեղջյուրի մուտքի մոտ եվրոպական ափին։ Կոստանդնուպոլսի անկումից հետո այն կոչվում էր նաև Չիֆութքապը (հրեաների դուռ)։ Տե՛ս* Janin, Const. byz., p. *274—275։*

65 *Բնագրում* τζιτζάκιον։ *Համարվում էր խաղարական հանդերձանք։ Ենթադրում են, որ թուրքերեն չիչեք (ծաղիկ) բառն է։ Խնդրո առարկա հանդերձանքը զարդարված էր ծաղիկների նկարներով։ Տե՛ս* Sophocles, Greek Lexicon, vol. II, p. 1080; **G. Moravscik,** Происхождение слова τζιτζάκιον, Seminarium Kondakovianum, t. 4, (Praha, 1931), p. 69—76; Idem, Byzantinoturcica, Bd. II, S. 313։ *Չիչակը հանդիպում է և Վարդան Արևելցու մոտ (էջ 103) «ոսկիակուռ նկարս ծաղկոցի»։*

66 *Բնագրում* σολαία (*գրության ճիշտ ձևը* σολέα, *լատ.* solea)։ *Բյուզանդական եկեղեցիներում բեմի և իկոնոստասի միջև գտնվող տարածությունը, որը որպես կանոն փակված էր լինում ցանկապատով։*

67 *Բնագրում* lacuna։

68 *«Ջինվորական կայան» ենք թարգմանում բնագրի* ἄπληκτα (*ավելի ճիշտ գրության ձևն է* ἄπλικτα *լատ.* applicatus)։ *Կարելի է թարգմանել նաև բանակատեղի»։*

69 *Բնագրում* Μαλάγινα։ *Գտնվում էր Օպտիմատոն բանակաթեմում, որի կենտրոնն էր Նիկոմիդիան։*

70 *Բնագրում* Δορύλαιον, *ժամանակակից էսկիշեհիր քաղաքը Թուրքիայում։*

71 *Բնագրում* Καβόρκιν։ *Գտնվում էր նախկին Փռյուգիա Սալուտարիայի, ապա Անատոլիկոն բանակաթեմի կազմում։*

72 *Այժմ Դազմանա։ Հենց Դազիմոնում էր կենտրոնացրել իր ուժերը Մելիտենեի ամիրա Օմար իբն Աբդալլահ ալ-Ակտան, երբ պետք էր արշավեր Թեոփիլոս կայսեր վրա։ Նրա հետ էր նաև իշխանաց իշխանը հայերից բաղկացած զորքով (տե՛ս* Theoph. Cont., p. *126—127)։*

73 *Թրակեսիոն բանակաթեմը չշփոթել Թրակիայի բանակաթեմի հետ։ Թրակե-*

սիոնը գտնվում էր Փոքր Ասիայի արևմտյան ծայրում, Էգեական ծովի ափին։

74 Կոլոնիա, Արմենիակների, Անատոլիկոն, Սելևկիա, Կապադովկիա, Խարսիանոն, Բուկելլարների, Սեբաստիա և մյուս բանակաթեմերի մասին ավելի մանրամասն տե՛ս «Բանակաթեմերի մասին» աշխատության մեջ և նրանց վերաբերյալ ծանոթագրություններում։

75 Իմա՛ Տիվրիկի (այժմ Դիվրիգի)։

76 Ծիրանածինի բնագրի հրատարակության մեջ այստեղ շփոթություն կա։ Այնտեղ տպված է. ὅτε τὰ Ἀρμενιακὰ θέματα ὀφείλουσιν ἀποσωρεύεσθαι εἰς τὸν Βαθὺν Ῥύακα։ Ընդունում ենք Հ. Գելցերի ուղղումը. Ὅτε εἰς Τεφρικήν, τὰ Ἀρμενιακὰ θέματα ὀφείλουσιν ἀποσωρεύεσθαι εἰς τὸν Βαθὺ-Ῥύακα (Գելցեր, Սկզբնավորությունը, էջ 64)։

Ռամզեյը գտնում է, որ չորրորդ ἄπληκτα-ն գտնվում էր ոչ թե Կոլոնիայում, այլ Սանիանայում, որ Ծիրանածինի այս ամբողջ հատվածն է աղավաղված։ Նա առաջարկում է հետևյալ վերականգնումը. «Պետք է գիտենալ, որ Օպտիմատոնի զորավարը պարտավոր է կայսեր դիմավորել Մալագինայում, Օպսիկիոնի զորավարը, Թրակեսիոնի զորավարը՝ Դորիլեոնում, սխոլերի դոմեստիկոսը, Անատոլիկոնի զորավարը և Սելևկիայի զորավարը՝ Կաբորկիոնում։ Եթե [կայսեր] արշավանքը դեպի Տարսոն է, մնացած բանակաթեմերի [զորքերը] պարտավոր են կենտրոնանալ Սանիանայում, իսկ եթե դեպի Արևելք՝ պետք է կայսեր դիմավորեն. Կապադովկիայի, Խարսիանոնի, Բուկելլարների և Պաֆլագոնիայի [զորավարները] Սանիանայում, իսկ Արմենիակների, Սեբաստիայի [զորավարները՝] Կեսարիայում, իսկ եթե [արշավանքը] դեպի Տեֆրիկե է Արմենիակների բանակաթեմի [զորքերը] պարտավոր են կենտրոնանալ Վաթիռիաքսում (տե՛ս Ramsey, HGAM, p. 202—203)։

Վաթիրիաքս վայրը գտնվում էր Տիվրիկին մոտիկ, այնտեղ էր, որ Վասիլ I-ի զորքերը 872 թ. գլխովին ջարդ տվեցին պավլիկյաններին և սպանեցին նրանց զորավար Խրիսոքիրին։ Մանրամասն տե՛ս Վասիլ I-ի կենսագրության մեջ, սույն աշխատության 71-րդ էջում։

77 Խոսքը Ռոմանոս II-ի մասին է, որին Կոստանդին Ծիրանածինը իրեն կայսերակից հռչակեց դեռևս 948 թ.։

78 Հնարավոր է, որ խոսքը Օպսիկիոն բանակաթեմի զորավարի մասին է, որը գործել է Միքայել III-ի օրոք (տե՛ս Theoph. Cont., p. 53)։

79 Խոսքը Միքայել III-ի մասին է։

80 Լևոն III-ը Իսավրական հարստության հիմնադիրն էր։ Նա և նրա որդի Կոստանդին V-ը սրբապատկերների պաշտամունքի և վանականների դեմ խիստ պայքար ծավալեցին և սկիզբ դրին մի շարժման, որ պատմության մեջ հայտնի է պատկերամարտություն անունով։

81 Կոստանդին I Մեծ (324—337), Կոստանդին II (337—361), Հուլիանոս Ուրացող (361—363), Թեոդոս Մեծ (379—395)։

82 Բնագրում λογοθέτης τῶν ἀγελῶν։ Ֆիլոթեոսի ցուցակում նա գտնվում էր στρατάρχαι-ների շարքում։ Նրա պարտականությունները անմիջականորեն կապված էին բանակի հետ։ Նա հսկում էր արևմտյան Փոքր Ասիայի արո-

*տավայրերի վրա, որտեղ բանակին մատակարարելու ձիեր էին բուծվում։* Bury, IAS, p. *111*; *Հմմտ. և* Vogt, Basile Ie, p. *358*։

83 *Բնագրում* μητάτον *(լատ.* metatus*)։ Բյուզանդիայում մետատոն էր կոչվում օտարերկրացիներին և շրջող պետական պաշտոնյաներին, զինվորականներին օթևան տալու պարտականությունը։ Տվյալ դեպքում մետատոնը նշանակում է պետական ձիաբուծարան։ Տե՛ս* J. B. Bury, IAS, p. *111*։

84 *Հետաքրքրական է նշել, որ Ծիրանածինն այստեղ Արմենիական բանակաթեմեր է ասում և ոչ բանակաթեմ* (τῶν δὲ 'Αρμενιακῶν θεμάτων), *որոնք հակադրվում են Հռոմեական բանակաթեմերին* (Ῥωμαϊκὰ θέματα)*։ Հմմտ.* Glykatzi, Recherches, p. *47*։ *«Արմենիական բանակաթեմերի» տակ ն.ս, իհարկե, նկատի ունի ոչ միայն Արմենիակների բանակաթեմը, այլ հայերով բնակեցված, այն է Արմենիակների հիման վրա ստեղծված Սեբաստիայի, Կոլոնիայի, Խաղտիքի ապա և Միջագետքի և Լիկանդոսի բանակաթեմերը։*

85 *Բնագրում* διβλάτιον։ Βλάτιον*-ը (գրության ճիշտ ձևն է* βλάττιον. *լատ.* blatta*) ծիրանագույն մետաքսե հանդերձանք էր։* Διβλάττιον*-ը ըստ երևույթին նույն* βλάττιον*-ն է զույգ գործված։ Հմմտ.* N. P. Kondakov, Les Costumes orientaux à la Cour Byzantine, Byzantion, t. *I*, *1924*, p. *13*։

86 *«Արծիվ»* (ἀετός)*։ Մանրամասն նկարագրությունը գտնում ենք Թեոփանեսի Շարունակողի մոտ։ Դա կարմիր գույնի, առանց գոտիի զինվորական հանդերձանք էր։*

87 *Բնագրում* βασιλίκιον*։ Հասկանալի է, ծագում է* βασιλικός *բառից, արքայական, թագավորական։ Սակայն հայտնի չէ, թե ինչ է նշանակում (տե՛ս* Sophocles, Greek Lexicon, vol. *I*, p. *302*)։

88 *Դեկալիոն բառի սկզբի դեկան* (δέκα) *նշանակում է տաս։ Բայց ամբողջ բառի նշանակությունը պարզ չէ (տե՛ս* Sophocles, Greek Lexicon, vol. *I*, p. *349*)։

89 *Այն է Ֆորում։ Ֆորումը հիշատակում է նաև Մովսես Խորենացին «Փորոն» ձևով։ Հայոց Պատմություն, Բ, 88, էջ 238։*

90 *Խոսքը, հասկանալի է, ոչ թե Թեսալիայի Օլիմպոս լեռան մասին է, այլ Պրուսայից հարավ գտնվողի։*

91 *Բյուզանդիոնում, Պրոպոնտիսում կար երկու Փարոս, մեկը կայսերական պալատին կից, մյուսը՝ Բոսպորում։ Հելիակոն* (ἡλιακόν) *նշանակում է բակ կամ փոքր հրապարակ, առանց ծածկի, որոնցից Կոստանդնուպոլսում կար երկու հատ՝ Փարոսի Հելիակոն և Խրիսոտրիկլինի Հելիակոն (տե՛ս* **Беляев**, Byzantina, кн. I, стр. 17, 20—21, 27)։

92 *Դիետարիոս (ծագում է* δίαιτα *բառից, լատ.* atriensis) *նշանակում է կայսերական պալատի սպասավոր։*

93 *Ժամանակակից Մարաշը Կիլիկիայում։*

94 *Վասիլ I Մակեդոնացին։ Ինչպես հայտնի է, Վասիլ I-ը Տեֆրիկեում 871 թ. պարտություն կրեց և հազիվ փրկվեց գերի ընկնելուց։ Հաղթանակը տարան 872 թ. նրա զորավարները։ Այդ արշավանքին Վասիլ I-ը անձնապես չէր մասնակցում։*

*Ծիրանածինն, ըստ երևույթին, նկատի ունի երկու տարբեր արշա-*

վանքներ՝ Տեֆրիկեի և Գերմանիկայի։ Վերջինս տեղի ունեցավ 882 թ.։ Քանի որ 882 թ. շքերթը կատարվել էր նախկին՝ Տեֆրիկեի առման կապակցությամբ կազմակերպված շքերթի ծրագրով, Ծիրանածինը այդ երկուսը մի գլխի տակ է հիշատակում (տե՛ս **Васильев**, Византия и арабы, II, стр. 34, прим. 3)։

95 Ամբողջ սենեկապետությունը։

96 Բնագրում Βαἀνης։ Հասկանալի է, խնդրո առարկա պրեպոզիտոսը հայ էր, Վահան։ Նա ուներ նաև սակելլարիոս՝ կայսեր գանձապահի պաշտոնը։

## ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ԱՐՔՈՒՆԻՔԻ ԱՐԱՐՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

### ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ

1 Բյուզանդական կայսրերի դամբարանների վերաբերյալ կա հատուկ ուսումնասիրություն։ Տե՛ս **Ph. Grierson**, The tombs and obits of the byzantine emperors (337—1042), Dumbarton Oaks Papers, No 16, 1962, p. 1—60։ Հերոոնը (Ἡρῷον) հնում կառույց էր, ձոնված հերոսի, որ հաճախ կանգնեցվում էր հերոսի գերեզմանի վրա։ Միջնադարում ուներ դամբարանի իմաստ։ Սուրբ Առաքելոց եկեղեցին կառուցված էր Կոստանդին Մեծի գերեզմանի վրա, այդ պատճառով էլ կոչվում էր Կոստանդնի Հերոոն։ Հետագայում սուրբ առաքելոց եկեղեցում սկսեցին թաղել բյուզանդական կայսրերին։ Նույն եկեղեցում էր գտնվում նաև Հուստինիանոս կայսեր Հերոոնը։

2 Միքայել III կայսեր սպանությունից հետո, դավադիրները նրա մարմինը դնելով նավի մեջ, անց կացրին դիմացի ափը և թաղեցին քաղաքից դուրս գտնվող սբ. Թովմայի տաճարում։ Վասիլ I-ի մահից հետո վերջինիս որդի Լևոն VI-ը նրա աճյունը տեղափոխեց և ամփոփեց ս. Առաքելոց եկեղեցում։

3 Խոսքը Վասիլ I Մակեդոնացու, նրա երկրորդ կնոջ՝ Եվդոկիա Ինգերինայի և նրանց վաղամեռիկ որդի Ալեքսանդրի մասին է։

4 Բնագրում Σαγαρινός։

5 Բնագրում Πνευμονούσιος։

6 Լևոն VI-ը և Կոստանդին Ծիրանածինը։ Վերջինիս շիրմի հիշատակությունը վկայում է, որ «Արարողությունների մասին» աշխատությունը Ծիրանածինի մահից հետո լրացվել է։

7 Բնագրում βασιλίκιον։ Ծագում է βασιλικός—արքայական, թագավորական բառից։

8 Վասիլ I-ի։

9 Լևոն VI-ի։

10 Բնագրում Βιθυνός։

11 Լևոն VI-ի երկրորդ կին Զոեն, հայազգի Ստիլիանոս Զաուցայի դուստրն էր։ Նրանց ամուսնությունից հետո էր, որ Լևոնը Ստիլիանոսին վասիլեոպատոր (կայսերահայր) հռչակեց։

12 Վասիլ I-ի Վարդաս անունով որդի ունենալու մասին սա միակ հիշատակու-

թյունն է։ Բոլոր աղբյուրները ցույց են տալիս, որ Վասիլի որդիները կոչվել են Կոստանդին, Լևոն, Ալեքսանդր և Ստեփանոս։ Ն. Ադոնցը այս առթիվ գրում է. Եթե միայն Վարդը Վասիլի որդիներից մեկի՝ Կոստանդնի հայկական անունը չէ, պետք է կարծել, որ խոսքը Վասիլի եղբոր Վարդի մասին է» (տե՛ս Վասիլ Հայազն, էջ 478)։ Ն. Ադոնցի ենթադրությունն անկասկած սխալ է։ Նախ «Արարողությունների մասին» գրքում հստակ գրված է. καὶ Βάρδας ὁ υἱὸς Βασιλείου τοῦ πάππου αὐτοῦ (i. e. τοῦ Κωνσταντίνου τοῦ Πορφυρογεννήτου)։ Եվ երկրորդ, Վարդը չի կարող Կոստանդինը լինել այն պարզ պատճառաբանությամբ, որ վերոհիշյալ հիշատակությունից մի քանի տող առաջ Վասիլի որդի Կոստանդինն առանձին հիշված է, Κωνσταντῖνος ὁ υἱὸς Βασιλείου, ընդ որում ցույց է տրրված, որ Կոստանդնի դամբանաքարը սպիտակ մարմարից էր, իսկ Վարդասինը՝ սադարոսյան։

13 Լևոն III Իսավրացի (717—741) պատկերամարտ կայսեր։

14 Կոստանդին V (741—775) պատկերամարտ կայսրը։ Պատկերապաշտ հեղինակները ամեն կերպ աշխատում են անվանարկել նրան, թեև Կոստանդին V-ը բյուզանդական նշանավոր կայսրերից մեկն է եղել։ Նույն հեղինակները նրան տվել են և Կավալլինոս ածականը (հունարեն կավալլինա բառից, որ նշանակում է թրիք, իբրև թե մկրտության ավազանում կեղտոտելու համար)։ Նրա մասին մի հետաքրքրական ավանդություն է պահպանել Սամվել Անեցին. «ՉԽՁ (746 թ.) Կ. Պօլսի՝ Կոստանդին՝ ամս լէ. Կոստանդին որդի Լևոնի կոչեցաւ Կաւալինոս՝ այսինքն թրքաժողով, զի զօրքս տաճկաց բանակեալք էին առ ափն Ալիս գետոյ, իսկ նա հրամայեաց թրիք ժողովել և արգանել ի գետն՝ և նոցա տեսեալ՝ ահաբեկ եղեն, կարծեցեալ անթիւ լինել զօրացն՝ և փախեան ի նմանէ։ Պատմի՝ ի միում աւուր զկնի միմեանց Ե. առիծ սպանել սորանս»։ Սամուէլի քահանայի Անեցւոյ Հաւաքմունք ի գրոց պատմագրաց, Վաղարշապատ, 1893, էջ 87—88։

15 Միքայել II-ը, Թեոփիլոսի հայրը, Լևոն V Հայկազնին սպանողը և նրանից գահը խլողը, Ամորիական հարստության հիմնադիրը (820—829)։

16 Ստոա (Στοά), պորտիկ, սյունաշարք։

17 Գաստրիայի վանքի կառուցումը ավանդությունը վերագրում է սուրբ Հելենեին, բայց իրականում որպես վանք կառուցվել է սուրբ Հելենեից կես դար հետո (տե՛ս Janin, Const. byz., p. 328—329)։

18 Բնագրում στατaραία.

19 Հայազգի Թեոդորա Ավգուստան, Միքայել III-ի մայրը, կեսար Վարդասի և սպարապետ Պետրոնասի քույրը։

20 Պետրոնասը (տե՛ս և նախորդ ծանոթագրությունը) բյուզանդական նշանավոր զորավար էր։ Իր զինվորական գործունեությունն սկսեց դեռ Թեոփիլոս կայսեր ժամանակ որպես սպաթարոկանդիդատ։ Նրա օրոք դարձավ պրոտոսպաթար (Theoph. Cont., p. 123)։ Միքայել III-ի ժամանակ նա սխոլերի դոմեստիկոս էր (սպարապետ)։ Աչքի ընկավ 863 թ. ճակատամարտում, փայլուն հաղթանակ տանելով Մելիտենեի արաբ ամիրա Օմար իբն Աբդալլահ ալ-Ակտային դեմ (Theoph. Cont., p. 179—184)։ Այդ ճակատամարտից մի փոքր անց հիվանդացավ ու մահացավ։

21 Բնագրում Προικονήσιος։

22 Բնագրում Πικριμαῖος։

23 Ինչպես հայտնի է, կեսարդ Վարդասին սրախողխող արեցին, իսկ մարմինը՝ կտոր-կտոր։

24 Սա Վասիլ I-ի մոր անվան միակ հիշատակությունն է։ Բյուզանդական մյուս աղբյուրները չեն հիշատակում նրա անունը։

25 Զոե Կարբոնոպսիան, Լևոն VI-ի վերջին՝ չորրորդ կինը, որից ծնվեց Կոստանդին Ծիրանածինը։

26 Կոստանդնուպոլսում կար երկու թաղամաս, որ կոչվում էին Պրոմուտոս։ Մեկը գտնվում էր քաղաքի սահմաններում, իսկ մյուսը՝ եվրոպական ափին, ժամանակակից Արնավուտքյոյում։ Խոսքը քաղաքից դուրս գտնվող՝ Արնավուտքյոյի Պրոմուտոսի մասին է (տե՛ս Janin, Const. byz., p. 435)։

27 Լևոն VI-ի։

28 Բնագրում ῾Ημέριος (նաև ῾Ιμεριος )։ Արաբների դեմ մղած նրա պայքարի մասին տե՛ս Theoph. Cont., p. 372, 376—377։ Վերջին անհաջողության կապակցությամբ Լևոն VI-ի եղբայր, Ալեքսանդր կայսրը նրան վանք աքսորեց, ուր և նա վեց ամիս անց վախճանվեց (տե՛ս Theoph. Cont,, p. 379—380)։

29 Սխոլարիոսների մասին տե՛ս «Արարողությունների մասին» աշխատության I գրքի 49-րդ ծանոթագրությունը։ Սխոլարիոսներին հիշատակում է և Մխիթար Գոշը. «Եօթերորդ դաս պաղատին Սքողարքըն. և զգեստ է նոցա գրատք կտաւիք և թէզն է բերանն դիպակաւ. ունին նիզակս, որ է ռումբ, և սեաւ ասպարս. և ի սոցանէ լինին որք ղդրոշն, այսինքն՝ զնշանակն և զվիշապագլուխսն կրեն և կոչին Սիգնայք»։ (Դատաստանագիրք, էջ 266)։

30 Բնագրում Πλατάνιον։ Ծիրանածինի մոտ գրության ձևը հաստատուն չէ։ Հանդիպում է նաև Πλατίνον ձևը։ Ինչպես պարզվում է շարադրանքի շարունակությունից, Պլատանիոն վայրը գտնվում էր Անատոլիկոն բանակաթեմում։

31 Բնագրում Πρίνη (ճիշտը՝ Πριήνη)։ Հնագույն քաղաք Հոնիայում, Եփեսոսի և Միլետոսի մեջտեղում, Միկալե լեռան ստորոտում (տե՛ս Ahrweiler, L' Histoire, p. 30, n. 6)։

32 Թեև գումարը կազմում է 4037 հոգի, բայց Ծիրանածինի մոտ ցույց է տրրված 6037։ Սխալը ուղղվում է, եթե նկատի ունենանք շարունակությունը։ Ծիրանածինը ցույց է տալիս նույն այդ հեծելազորի ստացած ռոճիկի գումարը, որտեղ Թրակեսիոն բանակաթեմի հեծյալների թիվը ցույց է տրված ոչ թե հազար հոգի, ինչպես այստեղ, այլ՝ երեք հազար։ Հետևաբար 6037 գումարը ճիշտ է։

33 Մեկ կենտինարը հավասար է 100 լիտրի, մեկ լիտրը՝ 72 ոսկեդրամի դահեկանի (նոմիզմա)։ Հետևաբար Թրակացի և մակեդոնացի 1037 սխոլարիոսները ստանում էին 9456 դահեկան։

34 Այն է 180 լիտր և 24 դահեկան, այսինքն 12.984 դահեկան։ Զինվորները ռոճիկ էին ստանում չորս տարին մեկ անգամ։

35 Այսինքն 8160 դահեկան։

36 Վերևում Պրինեի հայերի թիվը Ծիրանածինը ցույց է տվել 500 հոգի։

37 127 լիտր և 56 դահեկան, այսինքն՝ 9144 դահեկան։

38 Բյուզանդիայում բացի ցամաքային բանակաթեմերից կային նաև ծովային բանակաթեմեր, որոնք կառավարվում էին դրունգարների կողմից։ Այդպիսի բանակաթեմեր էին Կիբիրեոտների բանակաթեմը (սրա դրունգարին Լևոն III-ը բարձրացրեց ստրատեգոսի (զորավարի) աստիճանին), Դոդեկանեզի կամ Էգեական ծովի բանակաթեմը և Սամոսի բանակաթեմը, որը հավանաբար ստեղծվել է Միքայել III-ի, Վասիլ I-ի կամ Լևոն VI-ի ժամանակ։ Բոլոր ծովային ուժերը ենթարկվում էին գերագույն ծովակալին, որը կոչվում էր στρατηγὸς τῶν Καραβισιάνων։ (Վերջերս մի բյուզանդագետ հանդես եկավ մի ուսումնասիրությամբ, որտեղ ցույց է տալիս, որ Կարավիսիանների բանակաթեմ գոյություն չի ունեցել, որ ենթադրյալ բանակաթեմի տերիտորիան մաս էր կազմում Թրակեսիոն և Անատոլիկոն բանակաթեմերի։ Տե՛ս H. Antoniadis-Bibicou, Études d'histoire maritime de Byzance. A propos du „thème des Caravisiens", Paris, 1966)։

39 Մարդայիտների մասին տե՛ս վերը, Վասիլի կենսագրության 196-րդ ծանոթագրությունը։

40 Բնագրում οὐσία, որի մասին տե՛ս «Կայսրության կառավարման մասին» աշխատության 51 գլխի առաջին ծանոթագրությունը։

41 Խելանդիոնի մասին տե՛ս «Կայսրության կառավարման մասին» աշխատության, 51-րդ գլխի առաջին ծանոթագրությունը։

42 Բնագրում γαλαία (ճիշտ ձևը՝ γαλέα), ռազմական փոքր առագաստանավ, կամ թիակներով շարժվող նավ։ Նա մտնում էր դրոմոններից բաղկացած նավատորմիղի մեջ և օգտագործվում էր հետախուզական նպատակներով։

43 Բնագրում Στόμια։

44 Τρίπολις, քաղաք Լիբանանում, Կիպրոսի արևելյան ափի դիմաց։ Այժմ կոչվում է Տրիպոլի։

45 Ռոմանոս I Լեկապենոսի ժամանակ։

46 Բնագրում χαράβια, թեթև նավի տեսակ։

47 Վասիլ I-ի և Լևոն VI-ի ժամանակ Բյուզանդիայում ծառայող օտարերկրացի զինվորները մտնում էին այսպես կոչված հետերիայի (ἑταιρεία) մեջ, որի գլխին էր կանգնած հետերիարխը (ἑταιριάρχης), որը կոչվում էր նաև Մեծ հետերիարխ և գլխավորում էր βασιλικὴ ἑταιρεία-ն, այսինքն գլխավորապես օտարերկրացիներից բաղկացած պալատական գվարդիան։ Նա անմիջականորեն կայսեր էր ենթարկվում։ Առաջին անգամ հիշատակվում է 867 թվականի դեպքերի կապակցությամբ Գեորգ Վանականի Շարունակողի կողմից (Georg. Mon. Cont., p. 817) ոմն Անդրեաս հետերիարխ և ոմն Արտավազդ (նույն տեղում, էջ 838), ամենայն հավանականությամբ հայ (սրան Բյուրին սխալմամբ պարսիկ է անվանում)։ Ինչպես երևում է Սիրանածինի համապատասխան վկայությունից, այդ հետերիարխները լինում էին Մեծ, Միջին, հավանաբար և Փոքր Հետերիայի պարագլուխներ (տե՛ս Bury, IAS, p. 106—108)։

48 Ֆարգանացիներ (բնագրում Φαργάνοι)։ Կա ենթադրություն, որ այստեղ խոսքը ոչ թե ֆերգանացիների մասին է, այլ վարյագների (варяги)։ Այդ մասին մանրամասն տե՛ս Псамафийская хроника, стр. 86: Վարյագների մասին ընդհանրապես տե՛ս M. Δενδίας, Οἱ Βάραγγοι καὶ τὸ Βυζ-

τιον, Δελτίον τῆς Ἱστορικῆς καὶ Ἐθνολογικῆς Ἑταιρείας τῆς Ἑλλάδος. IX, 1926, σελ. 217—218։

49 *Տե՛ս «Արարողությունների մասին» աշխատության I գրքի 49-րդ ծանոթագրությունը։*

50 *Բնագրում* Μουσουλινοι *(մուսուլմա՛ն)։ Մուսուլմաններին Ծիրանածինը հիշատակում է* Μουσουλημῖται *ձևով (տե՛ս* De Cer., *I,* p. *689)։*

51 *Այսինքն հունգարացիներ։*

52 *Բնագրում* μαγγανάριος*։ ժամանակակից տերմինով՝ ինժեներ։ Գլխավորապես զբաղված էին պատերազմական մեքենաներով, բաբաններով։ Տերմինը հանդիպում է և հայկական աղբյուրներում. «ելից քարաւ մանգանային, մինչև կարի վիրեալ նոցին»։ ՆԲՀԼ, հատ. Բ, էջ 203։*

53 *Իտալիայի ռեքսի (*rex*) տակ ենթադրվում է Հուգոն Պրովանսացին, Թեոբալդի (Թիբոյի) որդին։ Իտալիայի թագն ստացավ 926 թ.։ Վախճանվեց 947 թ.։*

54 *Լանդուլֆոսն ու Ատենուլֆոսը Կապուայի և Բենեվենտոսի տերերն էին։*

55 *Բնագրում* Γοήμαριν καὶ Γοηφεριν, *այն է* Waimarius *և* Waiferius*։ Սրանք Սալերնոյի տերերն էին։*

56 *Լանգոբարդիայի մասին խոսքն ավարտելուց հետո, Ծիրանածինը խոսում է Կրետեի արշավանքին մասնակցողների և նրանց ստացած ռոճիկների մասին։*

57 *Բնագրում* κόμητες τῆς κόρτης*։ (*Κόρτη*, լատիներեն* Cohors*-ն է,* когорта*, թեև այլ ուսումնասիրողներ գտնում են, որ* κόρτη *բառն է, որ նշանակում է «վրան»։ Հետևաբար վրանապահ, մասնավորապես կայսեր, ապա և զորավարի։ Տե՛ս* **Bury**, IAS, p. *43)։ Բանակաթեմի զորավարին էին ենթարկվում հետևյալ աստիճանները. 1. Տուրմարխները, 2. Մերարխները, 3.* κόρτη*-ի կոմեսը, 4. Խարտուլարը, 5. Դոմեստիկոսը, 6. Բանդոնների դրունգարները, 7. Բանդոնների կոմեսները, 8. Սպաթարների կենտարխոսները, 9. Հետերիայի կոմեսը, 10. Պրոտոկանդելլարիոսը, 11. Պրոտոմանդատորը։ Ծովային բանակաթեմերի զորավարներին նաև 12. Պրոտոկարավները և 13. Կենտարխոսները։*

*Կորտեի կոմեսի պարտականությունների մասին գլխավոր աղբյուրը Ծիրանածինն է. Նրա տվյալներով այդ աստիճանը կրող զինվորականների պարտականությունն էր կայսեր վրանը պատրաստի վիճակում ունենալը։ Նրանք հետևում էին նաև, որպեսզի պահակատեղիները և զորակայանները կազմ ու պատրաստ լինեն (տե՛ս* De Cer. *I,* p. *489—490)։ Խնդրո առարկա կոմեսներն ունենում էին սպաթարի և կանդիդատի աստիճան (տե՛ս* Bury, IAS, p. *43)։*

58 *Բնագրում* χαρτουλάριοι τῶν θεμάτων*։ Բանակաթեմի խարտուլարը (քարտուղարը) զորավարի գրասենյակի պետն էր։ Ավելի մանրամասն տե՛ս* **Vogt**, Basile Ie, p. 343, **Bury**, IAS, p. 44։ *Նաև* **Ahrweiler**, Recherches, p. 43։

59 *Բնագրում* δομέστικοι τῶν θεμάτων*։ Բանակաթեմի դոմեստիկոսը բանակաթեմի զորավարի շտաբի անդամն էր (տե՛ս* **Bury**, IAS, p. *43)։ Հիերարխիկ աստիճանում գտնվում էր 14-րդ տեղում։ Նա զբաղվում էր նաև բա-*

նակի նյութական ապահովության հարցով, ինչպես և բանակաթեմի ֆինանսների (տե՛ս Vogt, Basile I-e, p. 344)։

60 Բնագրում θέμα τοῦ Χαρπεζικίου։ Արշամաշատը և Ձմշկածագի արևելյան կողմում ընկած շրջանները 934 թվականից հետո կազմեցին երկու բանակաթեմ՝ Ասմոսատոնը և Խարպեզիկիոնը։ Վերջինս 949 թվականից մի փոքր անց վերակազմվեց և նրա հիման վրա կազմվեց Խոզանի բանակաթեմը։ Խարպեզիկիոնի մասին տե՛ս **Honigmann,** Die Ostgrenze. S. 75—77։ Խոզանի մասին **Honigmann,** Die Ostgrenze, S. 77—78; **Canard,** Histoire, p. 762, n. 99։

61 Բնագրում ὁ τουρμάρχης τῶν Θεοδοσιακῶν։ Վաղ շրջանում հռոմեական զորքերի առանձին զորամասեր կրում էին կայսեր անունը։ Վաղ շրջանի հիշատակությունն վերապրուկ է (տե՛ս De Cer. II, p. 787)։

62 Բնագրում οἱ τουρμάρχαι τῶν Βικτόρων։ Սա ևս հռոմեական շրջանի վերապրուկ է և նույնացվում է հռոմեական շրջանի Legi Victrix-ի (Հաղթող լեգեոնի) հետ։ De Cer. II, p. 787։

63 Բնագրում πρωτομανδάτωρ։ Առաջին մանդատորը։ Մանդատոր բառը լատիներեն է (mandator), և նշանակում է սուրհանդակ։ Բոլոր զորահրամանատարները ունենում էին մանդատորներ։ Պրոտոմանդատորը համապատասխանում է սխոլերի պրոեքսիմոսին (տե՛ս **Bury,** IAS, p. 45, 57)։ Պավլիկյան նշանավոր զորահրամանատար Կարբեասը պրոտոմանդատորի աստիճան ուներ (տե՛ս Theoph. Cont., p. 166)։ Լևոն Զ-ին վերագրվող «Տակտիկա»-ում ասված է, որ «մանդատոր» են կոչվում հրամանատարների կարգադրությունները շտապ կարգով զինվորներին հասցնողները։ Տե՛ս Leonis imperatoris Tactica sive de Re militari liber, col. 704։

64 Բնագրում πρωτοκαγκελλάριος։ Առաջին կանգելլարիոսը։ Կանգելլարիոս (լատ. cancellarius, կանցլեր) համապատասխանում է հունարեն λογοθέτης-ին։ Տե՛ս «լոգոթետի» տակ։ Կանցլեր տերմինը լայն տարածում ուներ Կիլիկյան Հայաստանում։ Աղբյուրներում հանդես է գալիս «Ջանցլեր» ձևով. տե՛ս **Г. Микаелян,** История киликийского армянского государства, Ереван, 1952, стр. 242։

65 Բնագրում πρωτοβανδοφόρος։ Առաջին վանդոֆորոսը։ Պրոկոպիոս Կեսարացին վերջինիս պարտականությունների մասին խոսելիս, ասում է. «նա, ով սովորաբար զորաշարքում (կամ մարտում) կրում է զորավարի դրոշը»։ (Պատերազմների մասին, Գիրք Դ, 10)։ Վանդոֆորները ծառայում էին չորս տագմաներից երկուսում՝ Արիթմոսների և Հիկանատների (տե՛ս **Bury,** IAS, p. 56)։

66 Բնագրում πρωτοδομέστικος։ Առաջին դոմեստիկոսը։ Տե՛ս «դոմեստիկոսի» տակ։

67 Բնագրում πρωτοκένταρχος։ Առաջին կենտարխոսը. հարյուրապետը (լատ. centurio հուն. ἑκατόνταρχος)։

68 Բնագրում προελευσιμαῖοι (լատ. viator)։ Որպես հոմանիշ հանդես է գալիս նաև βασιλικοί բառը։ Սրանք սենատորական դասին չէին պատկանում և իրենց կազմում ունեին հետևյալ աստիճանները. մանդատոր, կանդիդատ, ստրատոր, սպաթար, սպաթարոկանդիդատ, պրոտոսպաթար,

պատրիկ, անթիպատ պատրիկ, մագիստրոս, զոստե պատրիկիա, կուրապաղատ, նոբելիսիմոս, կեսար (տե՛ս Bury, IAS, p. 22—23)։

69 Այս արշավանքը Կրետեի դեմ տեղի ունեցավ 949 թ.։

70 Բնագրում Τουλμάτζοι, ենթադրվում են դալմատացիք։

71 Բնագրում τοποτηρητής, (տեղակալ, տեղապահ)։ Վարչական պաշտոնեության երկրորդ դասի՝ դոմեստիկոսների ըյուրոյում առաջին տեղում էր գտնվում տոպոտերետեսը, որն համապատասխանում է լատ. vicarius-ին և ենթարկվում էր դոմեստիկոսին։ Կային նաև բանակաթեմերի տոպոտերետեսներ, ովքեր, հասկանալի է, ենթարկվում էին բանակաթեմերի զորավարներին։ Նրանց պարտականությունն էր գավառների և ամրոցների պահպանությունը։ Տոպոտերետեսը առաջին անգամ հիշատակված է Հուստինիանոս I-ի մի օրենքում։ Ծիրանածինի մոտ հիշատակված տոպոտերետեսների պարտականությունների մասին հստակ գաղափար կազմելն անհնարին է (տե՛ս Bury IAS, p. 51—52)։

72 Բնագրում ἀπὸ τῶν περατικῶν ταγμάτων։ Խոսքը Περατικὰ θέματα «Բանակաթեմք յայնկոյս Բոսպորի» գորքերի մասին է, որոնց տակ ենթադրվում են նախալևոնյան հին՝ Օպսիկիոն, Անատոլիկոն և Արմենիակների բանակաթեմերը, որոնց վրա գումարվեցին Լևոն Իսավրացու ժամանակ կազմակերպված Թրակեսիոն և Բուկելլարների զորաբաժինները (տե՛ս Գեյցեր, Ակզբնավորությունք, էջ 34)։

73 Բնագրում ἐξκουβίτωρ (նաև ἐξκούβιτος), տե՛ս ծանոթ. 49-րդ «Արարողությունների մասին» աշխատության I գրքի։ Էքսկուբիտորներին հիշատակում է և Մխիթար Գոշն իր «Դատաստանագրքում, էջ 263—264, որտեղ կարդում ենք. «Եսկոպոտիրայն, որք լինին մեծահասակք և ունին վահանս կմրքաւորս և ասպարս փոքրս. և զգեստ է նոցա կտաւ նուրբ (աղճատված բառ է—Հ. Բ.) բոլորկ և վարշամակս, որ է փակեղն, և գաւղեր յոտսն և գոտի ոսկի կրկին և ի սոցանէ լինին որք սկրբունք և սանտատորքս»։

74 Հիկանատների զորամասը (հմմտ. և «Արարողությունների մասին» աշխատության I գրքի 49-րդ ծանոթագրությունը) մինչև IX դարը չի հիշատակվում աղբյուրներում։ Նրանց զորամասը կոչվել է Ἱκανάτοι, թեև այդ բառի տակ կարող է ենթադրվել նաև Հիկանատների դոմեստիկոսը, ինչպես տվյալ դեպքում է Ծիրանածինի մոտ։ Հիկանատների հրամանատարը ունենում էր սպաթարի աստիճան (տե՛ս Bury, IAS, p. 63—64)։

75 Ինչպես մեկ անգամ առիթ ունեցանք նշելու, Կրինիտների ընտանիքը հայկական ծագում ուներ։ Ավելի մանրամասն տե՛ս վերը, «Կայսրության կառավարման մասին» աշխատության 43-րդ գլխի 44-րդ ծանոթագրությունը։ Հմմտ. գլուխ 50, ծանոթ. 7։

76 Բնագրում πρωτοσύμβουλος, «առաջին խորհրդական»։ Իմաստից ելնելով թարգմանում ենք «խալիֆա»։

77 «Առաջնորդ» ենք թարգմանում բնագրի διατάκτωρ բառը։

78 Բնագրում μεγάλη Ἀρμενία։

79 Բյուզանդացիները «Իշխանաց իշխան» (ἄρχων τῶν ἀρχόντων) էին անվանում Հայոց թագավորին, որպես կանոն՝ Բագրատունյաց։ Ծիրանածինը իշխանաց իշխան է անվանում նաև Վասպուրականի Գագիկ Արծրունուն։ Կեդրինոսը Հայոց թագավորին անվանում է նաև ἐξουσιάρχης, մոտավո-

րապես այնպես, ինչպես Ափխազաց թագավորին (տե՛ս Cedr. II, p. 498։ Հմմտ. ստորև, ծանոթ. 81, 95։

80 Բնագրում Ἀσπουρακᾶν, ἤγουν τοῦ Βασπαρακᾶν։

81 Այսինքն Վասպուրականի թագավորի կոչում է ստացել, խոսքը Գագիկ Արծրունու մասին է, որ 908 թվականին թագավոր հռչակվեց։ Ծիրանածինը գրում է, որ Վասպուրականի «իշխանը» այժմ «իշխանաց իշխանի» պատվին է արժանացել։ Այգ «այժմ»-ը չէր կարող ասված լինել 908 թ. շատ անց։ Սրանից, գուցե հարցականի տակ, ենթադրենք, որ Ծիրանածինն այս «ձևերը» կազմելիս ձեռքի տակ է ունեցել գրավոր աղբյուր, որտեղ Վասպուրականի կապակցությամբ տրված էր նման բացատրություն։

82 Բնագրում Κοκοβίτ։

83 Բնագրում Ταρῶ։

84 Բնագրում Μῶεξ։

85 Բնագրում Αὔζαν. ուղղելի՝ Ἀνζαυ. խոսքը Անձևացիքի մասին է։

86 Բնագրում Συνῆς։ Սյունիքի իշխանությունը շուրջ 970 թ. վերածվեց թագավորության։ Տե՛ս Հ. Մ. Ուքմազյան, Սյունիքը IX—X դդ., Երևան, 1958, էջ 132; Թ. Հակոբյան, Սյունիքի թագավորությունը, Երևան, 1966, էջ 58։

87 Բնագրում Βαϊτζώρ։

88 Բնագրում Χατζιένης։

89 Բնագրում τῶν Σερβοτιῶν (ճիշտը՝ Σεβορτιῶν՝ ուղղումը Մարկվարտի) τῶν λεγομένων Μαῦρα παιδία։ Ծիրանածինը տալիս է բառի ճշգրիտ թարգմանությունը։ Ինչպես ցույց է տալիս Հովհաննես Դրասխանակերտցին, Բուղան 852—855 թթ. Հայաստանում գործած ասպատակությունների ժամանակ, գրավում է և Գարդմանը, գերի վերցնում նրա իշխանին «և անտի ևս չուեալ յՈւտի գաւառ՝ ձերբակալ ի Տուս գիւղ առնէ զՍտեփաննոս որում և Կոն անուանէին զնա, որ ի նախնւոյ իւրմէ Սեկոյ՝ Սեւորդին ազգն անուանէին» (Դրասխանակերտցի, էջ 127, հմմտ. Ասողիկ, էջ 107։ Վերջինս Հազրատն ու Սանահինը ևս դնում է Սևորդյաց իշխանության կազմում, էջ 181)։ Հասկանալի է, Սևորդյաց իշխանության տակ ենթադրվում է Ուտիքի իշխանությունը։ Սևորդիներին հիշատակում է նաև Գրիգոր Մագիստրոսը (տե՛ս Թղթեր, էջ 133)։

Սևորդիներին հիշատակում է արաբ պատմիչ Յակուտ ալ-Համավին Սիավարդ ձևով (Հ. Թ. Նալբանդյան, Արաբական աղբյուրները, էջ 208), իսկ Մասուդին նրանց երկիրը՝ Սիյավուրդիյա ձևով (հմմտ. **Минорский**, История, стр. 214), որոնց նա համարում է «հայոց մի ճյուղը»։ Նրանք քաջ են և հզոր։ Աչքի են ընկնում տապարների արտադրությամբ, որոնք «սիյավուրդի» են կոչվում։ Կոստանդին Ծիրանածինն իր «Կայսրության կառավարման մասին» աշխատության 38-րդ գլխում գրում է, որ Թուրքերի (իմա՛ հունգարացիների) հին անունը Սաքարտի ասֆալի (Σαβάρτοι ἄσφαλοι) էր, «Սպիտակ սաքարտներ» (VIII—IX դդ.)։ Պեչենեգների ճնշման տակ այս հունգարացիների մի մասը, ըստ Ծիրանածինի «բնակվեց Պարսից մի վայրում»։ Ուսումնասիրողները գտնում են, որ նրանք քրիստոնեություն ընդունեցին, հայացան և նրանց հետնորդներն են «Սևորդիքը»։ Թեև Սևորդիների մասին կա բավական ստվար գրականություն, այնուամենայնիվ այդ ենթադրությունը մնում է սոսկ ենթադրություն

և Հարցը դեռևս լուծված չէ։ Մանրամասն գրականությունը տե՛ս Gy. Moravcsik, Byzantinoturcica, Bd. II, S. 261—262; նաև J. Marquart, Streifzuge, S. 36, 38; H. Grégoire, L'Habitat "primitif" des Magyars et les Σαβαρτοιάσφαλοι, Byzantion, t. XIII (1938), fasc. 1, p. 266—278. Minorsky, Studies, p. 26, 74; Idem, История, стр. 214. прим. 115։ М. И. Артамонов, История Хазар, Ленинград, 1962, стр. 127, прим. 59, 349։

90 Բնագրում Βεριασάχ։ Խոսքը «Վերին աշխարհ վրաց»-ի մասին է, որի մայրաքաղաքն էր Մցխեթան։ Մանրամասն տե՛ս Երեմյան, Հայաստանը, էջ 83։ Նաև C. Toumanoff, Studies, p. 949։ Ծիրանածինը «վերին» ասելով նկատի ունի տվյալ շրջանի հարավային մասը, իսկ ստորին ասելով՝ հյուսիսայինը։ Օրինակի համար Կապադովկիայի բանակաթեմի մասին ասում է. «Ստորին՝ ծովահայաց շրջանը հայերին մերձակից լինելու պատճառով կոչվեց Արմենիակների, իսկ վերին շրջանը՝ լիկաոնացիներին և Տավրոսին սահմանակից եղողը կոչվեց Փոքր Կապադովկիա»։ Տե՛ս վերը, էջ 168։

91 Բնագրում εις τὸν ἄρχοντα τοῦ Καρνατάης։ Խոսքը Տայքի մասին է (վրաց. Տաո), որ վրացիները կոչում են նաև Տաոս-Կառ[ն]ի։ Հունարենում տեղի է ունեցել մետաթեսիս և դարձել Կառնի-Տայս (հունարենը տալիս է Տայքի հայերեն արտասանությունը)։ Համտ. C. Toumanoff, Studies, p. 493—494։

92 Բնագրում εις τὸν ἄρχοντα τοῦ Κουελ։ Համապատասխանում է Ջավախքին, որի կենտրոնն էր վրացական Քվելի, կամ Քվելիս-ցիխե ամրոցը։ Վրացերեն Քվելի նշանակում է «պանիր», իսկ Քվելիս-ցիխե՝ «պանրի բերդ»։ Ծիրանածինը իր «Կայսրության կառավարման մասին» աշխատության 46-րդ գլխում հիշատակում է այս Քվելիս-ցիխե՝ «Պանրաբերդը», անունը հունացնելով Τυρόκαστρον։ Համտ. վերոհիշյալ աշխատության 46-րդ գլխի 7-րդ ծանոթագրությունը։ Կեդրինոսը հիշում է Τυροποιὸν κάστρον որ հավանաբար նույնանում է վերոհիշյալ Տյուրոկաստրոնի հետ։ Տե՛ս Cedr., II, p. 390։

Ստեփանոս Տարոնացին (էջ 164) հիշատակում է խնդրո առարկա բերդը։ Նրա տվյալներով, Յուսուֆ ոստիկանը «հետամուտ լինի (Սմբատ թագավորին—Հ. Բ.) մինչև ցամուրն և մարտուցեալ ընդ Կուեկայ բերդին՝ առնու զնա։ Եւ յետ այնորիկ ի Տփղիս անցանէ»։

93 Բնագրում εις τὸν ἄρχοντα τοῦ 'Ατζαρᾶ։ Աջարայի մասին տե՛ս «Կայսրության կառավարման մասին» աշխատության 46-րդ գլխում։ Համտ. C. Toumanoff, Studies, p. 495։

94 Բնագրում ἐξουσιοκράτωρ (ἐξουσία— իշխանություն + κρατέω — կալնուլ) իշխանակալ։

95 Բնագրում ἐξουσιαστής։ Նախորդի իմաստն ունի։ Պարզապես ձևն է փոխված տարբերվելու համար նախորդից։ Արագացիայի տակ ենթադրվում է Ափխազիան, իսկ էքսուսիաստեսի տակ՝ Ափխազիայի թագավորը։ Բյուզանդական աղբյուրներում մոտավորապես նույն տերմինով կոչված է նաև Հայոց Բագրատունի թագավորը (τῆς μεγάλης 'Αρμενίας ἐξουσιάρχης)։

96 Այն է Աղվանքի։

97 Բնագրում εἰς τὸν ἄρχοντα τῶν Κρεβατάδων։

98 Բնագրում εἰς τὸν ἄρχοντα Κηδωνίας։

99 Բնագրում εἰς τοὺς ἄρχοντας Τζαναρίας։ Հայկական աղբյուրների Ծանարքը։ Մասուդին այն տեղադրում է Թիֆլիսի նահանգի և Ալանաց դռների (Դարյալի կիրճ) միջև և այն անվանում «թագավորություն»։ Մինորսկին ծանարներին համարում է չեչենական ցեղ (տե՛ս Минорский, История стр. 210, ծանոթ. 100)։

Ծանարներին հիշատակում է Հովհաննես Դրասխանակերտցին։ Նրա տվյալներով վրաց կուրապաղատ Ատրներսեհը իր պետության սահմանները հասցրեց «մինչև ցստորոտ մեծի լերինն Կովկասու, զԳուգարացիս և զԾանարս մինչև ցԴուռն Ալանաց» (Դրասխանակերտցի, էջ 161)։ Ծանարները քրիստոնյաներ էին և ենթարկվում էին «մեծ քորեպիսկոպոսին» (Նույն տեղում, էջ 303)։

100 Բնագրում εἰς τὸν ἄρχοντα Σαρβᾶν։ Խոսքը Շիրվանի մասին է։ Իսկական անունը հենց Շարվան է։ Շիրվան ձևը առաջին անգամ հանդես է գալիս XVI դարում, սեֆևյանների ժամանակ։ Արաբական բոլոր աղբյուրները տալիս են Շարվան ձևը։ Շարվանը առաջին անգամ հիշատակվում է սասանյանների ժամանակ։ Ծիրանածինի ժամանակ Շարվանի կառավարիչն էր Մուհամմադ իբն Յազիդը (տե՛ս Минорский, История, стр. 34)։

101 Բնագրում εἰς τοὺς ἄρχοντας Ἀζίας։

102 Բնագրում εἰς τὸν ἄρχοντα Χρυσᾶ։ Պետք է ուղղել Χύρσα։ Χρυσᾶ գրելով հույն հեղինակը կամ գրիչը ցանկացել է իմաստավորել տեղանունը, χρυσος ոսկի բառից։ Խոսքը հավանաբար Խուրսան նահանգի մասին է, Շիրվանից մի փոքր հյուսիս, որի կառավարչին արաբ հեղինակները «շահ» են անվանում (տե՛ս Минорский, История, стр. 97, 114—115)։

103 Բնագրում εἰς τὸν ἄρχοντα Βρεζᾶν (գուցե Βερζᾶν)։ Նախորդ՝ Խուրսան նահանգի հետ աղբյուրները հիշատակում են և Վարդան գավառը (տե՛ս Минорский, История, стр. 114—115)։ Գուցե այդ Վարդանը նույնանում է Ծիրանածինի Βρεζᾶν-ի հետ։ Վարդանը հիշատակվում է նաև Մովսես Կաղանկատվացու Պատմության մեջ։

Կարելի է անել մի շարք այլ ենթադրություններ ևս, որ Ծիրանածինի Վրեզանի տակ թաքնված է X դարի անանուն տաջիկ աշխարհագրի «Հուդուդ ալ-ալամ» աշխատության մեջ հիշվող Բարզանդը, որ տեղադրվում է Մուկանից հարավ։ Տե՛ս Հ. Փափազյան, Անանուն տաջիկ աշխարհագիրը Հայաստանի, Ադրբեջանի և Արևելյան Վրաստանի աշխարհագրության և տնտեսական հարաբերությունների մասին (X դար), ՀՍՍՌ ԳԱ Տեղեկագիր, № 5, 1952, էջ 78։ Եթե Ծիրանածինի Βρεζᾶν գրությունը համարել Βερζαυ-ի աղավաղում, ապա հնարավոր է քաղաքը նույնացնել նաև Պարտավի (Բերդա, Բերդավ) հետ։

104 Բնագրում εἰς τὸν ἄρχοντα Μωκᾶν։ Հավանաբար Մուխանք գավառը նկատի ունի, որ հիշվում է դեռ VII դարի «Աշխարհացույց»-ում որպես Արցախի 7-րդ գավառ (տե՛ս Երեմյան, Հայաստանը, էջ 109)։ Հաճախ է հանդիպում և արաբական աղբյուրներում (նաև Մուկան ձևով) Շարվանի հետ միասին։ Տե՛ս Минорский, История, стр. 68, 96, 100։

105 Ինչպես տեսանք 48-րդ գլխի սկզբում ևս հիշվում է Հռոմի պապին ուղարկվող նամակի ձևը, այն տարբերությամբ, որ այնտեղ ոսկեկնիքը մեկ սո-

լիդանոց էր։ Ըստ երևույթին, տարբեր ժամանակներում ուղարկված նամակներում կցված կնիքներն էն արտահայտված։

106 Հեքսագիոնը (լատ. sextula) ունցիայի 6-րդ մասն էր, ուրեմն Եգիպտոսի ամիրային ուղարկված նամակի ոսկեկնիքը կշռում էր 3 ունցիա։ Մեկ ունցիան ֆունտի 1/12 մասն էր կազմում։

107 Իմա՛ հունգարացիների։

108 Այսինքն Լևոն VI-ի ժամանակ։

109 Բնագրում κουμέρκιον (ճիշտը՝ κομμέρκιον լատ. commercium), նշանակում է առևտուր, առուծախ, նաև մաքսատուն և մաքս։ Տե՛ս նաև «Կայսրության կառավարման մասին» աշխատության 43-րդ գլխի 47-րդ ծանոթագրությունը։

110 Բնագրում συνήθειαι (սովորություններ)։ Խոսքը նատուրալ հասույթի մասին է, որից օգտվելու իրավունք ունեին բոլոր զորավարները (տե՛ս Vogt, Basile I-e, p. 193)։ Նրանց մասին խոսվում է դեռ 726 թ. կազմված «Էկլոգա»-ում՝ Իսավրացիների օրենսգրքում, որտեղ ցույց է տրված, որ այն վճարվում էր վարչական ցածր պաշտոնեությանը։ Տե՛ս История Византии, том II, Москва, 1967, стр. 51: Այդ «սովորությունների» մասին տե՛ս նաև D. Rouillard, Δόσις. συνήθεια. ἀποσχιδευμός. Annuaire de l'Institut de philologie et d'histoire orientales et slaves, t. VI, 1938։

111 Խոսքը Փոքր Ասիայի Նիկոպոլիս քաղաքի մասին չէ, այլ Էպիրոսի։

112 Ալբանիայի Դուրոս քաղաքի։

113 Ֆիլոթեոսի սույն «Կլետորոլոգիոնը» (Գահնամակ), որ ամբողջությամբ տեղ է գտել Ծիրանածինի «Արարողությունների մասին» աշխատության մեջ որպես II գրքի 52—53-րդ գլուխներ, կազմվել է 900 թ.։ «Կլետորոլոգիոնի» ուղղված բնագիրը արժեքավոր ուսումնասիրությամբ լույս է տեսել J. B. Bury-ի կողմից։ Տե՛ս J. B. Bury, The Imperial Administrative System in the Ninth Century with a revised text of the Kletorologion of Philotheos, London, 1911։ Կլետորոլոգիոնի մասին տե՛ս նաև R. Guilland, Etudes sur l'histoire administrative de Byzance. Observations sur le Cletorologe de Philothee, Revue des Études Byzantines, t. 20 (1962), p. 156—170։

Ատրիկլին (ἀτρικλίνης. լատ. atriclinio) էր կոչվում բյուզանդական արքունիքի սեղանապետը։

114 Վասիլեոպատորի (կայսրահոր) աստիճանն առաջին անգամ ստացավ Լևոն VI-ի հայազգի աներ Ստիլիանոս Զաուցան։

115 Ռեկտոր (ῥέκτωρ. կամ ῥαίκτωρ. լատ. rector)։ Ռազմական աստիճան էր։ Ռեկտորը մտնում էր 8-րդ դասի մեջ, որ կոչվում էր «հատուկ աստիճաններ» (ἀξίαι εἰδικαί)։ Այդ դասում առաջին տեղում էր գտնվում կայսրահայրը, երկրորդ տեղում ռեկտորը։ Աստիճանը առաջին անգամ հիշատակում է Ֆիլոթեոսը։ Ռեկտորի իշխանությունը տարածվում էր կայսերական տնտեսության վրա և հանդես է գալիս պրեպոզիտոսի և կուբուկլիոնի անդամների հետ միասին։ Ռեկտորը մասնակցում էր նաև ռազմական արշավանքներին (տե՛ս Bury, IAS, p. 115—116)։ Ռեկտորին հիշում է և Գրիգոր Մագիստրոսը, «ռեքտաւր»։ Տե՛ս Գրիգոր Մագիստրոսի թղթերը, էջ 104։

116 *Սինկելլոս* (σύγκελλος, *լատ.* syncellus)։ *Բառացի նշանակում է «խցակից» նույն խցում (κελλίον) ապրող։ Սինկելլոսը պատրիարքից հետո եկեղեցական առաջին անձնավորությունն էր։ Տե՛ս* Vogt, Basile I-e, p. *262*։ *Նա կայսերական պաշտոնյա էր, կայսեր կողմից նշանակվող։ Նրա հիմնական պարտականությունն էր պատրիարքի և կայսեր միջև կապ պահպանելը։ Տե՛ս* Bury, IAS, p. 116—117։ *Սինկելլոսի մասին տե՛ս նաև* H. G. Bech, Kirche und theologische Literatur im Byzantinischen Reich, München, 1959, S. 68—69։

117 Դատավորների (Κριταί) *մեջ էին մտնում քաղաքապետը* (ἔπαρχος τῆς πόλεως), *Քվեստորը* (Κυαίστωρ, *լատ.* Quaestor sacri palatii) և ὁ ἐπὶ τῶν δεήσεων *կոչված պաշտոնյան, որի պարտականությունն էր նախապատրաստել և կայսեր ներկայացնել դիմումները։* Սեկրետիկոսների *մեջ էին մտնում 11 բարձրաստիճան պաշտոնյաներ և նրանց պաշտոնեությունը, որոնք առնչություն ունեին ֆինանսական վարչության, այն է սակելլարիոսը, գենիկոնի լոգոթետը, ստրատիոտիկոնի լոգոթետը, սակելլիոնի խարտուլարը, վեստիարիոնի խարտուլարը, իդիկոնի գլխավոր պաշտոնյան, մեծ կուրատորը, Մանգանոնի կուրատորը և Օրֆանոտրոֆոսը։ Սեկրետիկոսների մեջ էին մտնում և դրոմոսի լոգոթետն ու պրոտոասեկրետիսը, որոնք սակայն ֆինանսների հետ առնչություն չունեին։* Դեմոկրատների *մեջ էին մտնում Կոստանդնուպոլսի դեմոսի երկու գլխավոր կուսակցությունների («կողմերի») կապույտների և կանաչների պարագլուխները, որոնք կոչվում էին դեմարխոսներ և աստիճանով անթիպատներ էին։ Նրանք ևս ունեին իրենց ենթակա պաշտոնեություն։ Եվ վերջապես* Ստրատարխների *մեջ էին մտնում հետերիարխը (Նրա մասին ավելի մանրամասն տե՛ս վերը, ծանոթ. 47), նավատորմիղի դրունգարը* (δρουγγάριος τοῦ πλωΐμου), *անասնահոտերի լոգոթետը* (λογοθέτης τῶν ἀγελῶν), *վասիլիկոնի պրոտոսպաթարը* (πρωτοσπαθάριος τῶν βασιλικῶν) *և ախոռապետը* (κόμης τοῦ σταύλου), *իրենց ենթակա պաշտոնեությամբ։ Մանրամասն տե՛ս* Bury, IAS, p. *69—114*։

118 *Ինքնագլուխ ենք թարգմանում բնագրի ավտոկեֆալ* (αὐτοκεφάλων) *բառը, ինչպես որ այն թարգմանված է միջնադարյան հայ աղբյուրներում։ Հմմտ.* Մ. Գոշ, *Դատաստանագիրք, էջ 249*։

119 *Բնագրում* βασιλικῶν Θεμάτων։

## ԲԱՆԱԿԱԹԵՄԵՐԻ ՄԱՍԻՆ

1 *Բանակաթեմերի մասին կա բավական ստվար գրականություն։ Տե՛ս Գ. Մորավչիկի մանրամասն մատենագիտությունը* (Byzantinoturcica. Bd. I, S. 385—386). *Նորագույններից են հետևյալ գործերը.* **J. Karayannopulos,** Die Entstehung der Byz. Themenordung, München, 1959; **A. Pertusi,** La formation des themes byzantins, Berichte zum XI Internat. Byzant. Kongress, I (1958), *նաև Գ. Օստրոգորսկու զեկուցումը, նույն տեղում,* VII, p. 1—8։ *Նորագույն գործերից է նաև* **Е. И. Дочанашвили,** Материалы к вопросу о византийской фемной организации в «Истории» армянского историка VII века Себеоса, Труды Тбилисского гос. университета, 99, серия востоковедения, III, Тбилиси, 1962, стр. 221—230 *(վրացերեն, ինձ անմատչելի)։*

2 *Դուքս (լատ.* dux*), առաջնորդ, իշխան, զորահրամանատար։ Հանդիպում է և հայկական սկզբնաղբյուրներում։ Կիլիկյան շրջանում հանդիպում են «դուկ» և «տուկ» ձևերը։ Այդ տիտղոսի, ինչպես և կատապանի և պրոնոետեսի մասին տե՛ս* **T. Wasiliewski.** Les titres de duc, de catepan et de pronoetes dans l'Empire Byzantin du IXe jusqu'au XII siecle, Actes du XIIe Congres International d'Etudes Byzantines, t. II, Beograd 1964, p. 233—239։

3 *Հեգեմոն (հուն.* ἡγεμών*)։ Բառացի նշանակում է առաջնորդ։ Համապատասխանում է լատիներեն պրեֆեկտին։*

4 *Տաքսիարխոս (հուն.* ταξίαρχος*)։ Մեկ տաքսիսի* (τάξις) *հրամանատարը, հարյուրապետ* (=ἑκατόνταρχος)։ *Մանրամասն տե՛ս* **В. Вальденберг,** Ταξίαρχος. Виз. Временник, том XXIV, 1923—1926, стр. 134—137:

5 *Խոսքը Հերակլ կայսեր մասին է (610—641), որի թագավորության ժամանակ սկսած և լայն ծավալ ստացած արաբական արշավանքները վտանգի տակ դրին Բյուզանդական կայսրության ամբողջականությունը։*

6 *Հունարենում* θέμα։ *Ծիրանածինը ճիշտ է ստուգաբանում բառը, բխեցնելով* θέσις*-ից* (τίθημι *բայից, որ նշանակում է դնել, հաստատել)։ Բյուզանդական սկզբնաղբյուրներում, ինչպես մեկ անգամ առիթ ենք ունեցել նշելու,* θέματ*-ն ունի մի քանի նշանակություն։ Դա և՛ վարչական և՛ աշխարհագրական հասկացողություն է, և՛ վերջինիս կազմում գտնվող զինված ուժերի անվանում։ Մանրամասն տե՛ս* Ahrweiler. Recherches, p. 2։

7 *Հունարենում* Ἀνατολικόν (ἀνατολή *բառից, որ նշանակում է արևելք։ Բառը հարատևել է մինչև օրս Անադոլու անվան տակ, թեև թուրք կեղծարարները ճգնում են ստուգաբանել թուրքերեն. անա (մայր) և դոլու (լի) բառերով)։ Անատոլիկոնը Բյուզանդական կայսրության ամենամեծ բանակաթեմն էր։ Նրա կազմի մեջ էին մտնում Դիոկլետիանոս կայսեր սահմա-*

նազծած Ասիա և Լիդիա նահանգները, Կարիայի որոշ մասեր, Պակատյան Փոյուդիան, Փրկավետ (Սալուտարիա) Փոյուգիան, Լիկաոնիան, Երկրորդ Կապադովկիան և Իսավրիան (տե՛ս Գելցեր, Սկզբնավորությունք, էջ 10)։

Անատոլիկոն բանակաթեմը առաջին անգամ հիշատակվում է Թեոփանեսի ժամանակադրության մեջ 669 թ. դեպքերի կապակցությամբ։ Երբ Կոստանդին Պոգոնատոս կայսեր դեմ խռովություն բարձրացավ, խռովարարների թվում էին և οἱ τοῦ θέματος τῶν ἀνατολικῶν (Theoph., p. 352)։

Անատոլիկոն բանակաթեմի զորավարը առաջին անգամ հիշատակվում է նույն Թեոփանեսի ժամանակագրության մեջ 690 թ. դեպքերի կապակցությամբ։ Նա Լեոնտիոսն էր, որ հետագայում կայսր հռչակվեց (695—698)։

Անատոլիկոն բանակաթեմի զորավարի նստոցը նախապես Ամորիոն քաղաքն էր, իսկ ավելի ուշ շրջանում Մարգ ալ-Շահմը (ենթադրաբար ժամանակակից Հասաքյոյր)։ Ֆիլոթեոսի «Գահնամակում» 60 դասից բաղկացած հիերարքիկ աստիճանում Անատոլիկոն բանակաթեմի զորավարը գտնվում էր չորրորդ տեղում (վասիլեոպատորից, ռեկտորից և սինկելոսից հետո) և բոլոր բանակաթեմերի զորավարներից առաջ (տե՛ս Bury. IAS, p. 136)։

Անատոլիկոն բանակաթեմի մասին մանրամասն տեղեկություններ են տալիս նաև արաբական աղբյուրները, առաջին հերթին Իբն Խորդադբեն, որի «Քիթաբ ալ Մասալիկ վ'ալ Մամալիկ» աշխատությունը բյուզանդական բանակաթեմերի պատմության ուսումնասիրության համար շատ վստահելի մի աղբյուր է։ Մասնագետների ենթադրությամբ, այդ աշխատությունը գրվել է 840—845 թվականների միջև և ներկայացնում է Լևոն V Հայկազնի (813—820), Միքայել Թլվատի (820—829) և Թեոփիլոսի (829—842 թթ.) իշխանության ժամանակաշրջանի բյուզանդական կայսրության կառուցվածքը։ Իբն Խորդադբեն այս բանակաթեմի մասին գրում է. «Ան-Նակոլուսը, այսինքն Արևելքը. այս նահանգը հռոմեական պետության ամենամեծ նահանգն է. ունի Ամուրիա քաղաքը 44 աշտարակներով և Ալ-Ալամայն, Մարդ-աշ Շահմ, Բորզուտ, ալ-Միսկանին և երեսուն այլ ամրոցներ։ Նրա ենթակայության մեջ են գտնվում նաև ալ-Բիտինը և ալ-Մոսբաթալինը (տե՛ս Pertusi, p. 114)։ Արաբ մի այլ հեղինակ, Իբն ալ Ֆակիհը, ցույց է տալիս, որ Թրակեսիոն բանակաթեմից սկիզբ է առնում «ալ-Նատուլիկոս նահանգը, որի անվանումը նշանակում է արևելք։ Սա հռոմայեցիների ամենամեծ նահանգն է։ Նրա առաջին սահմանը Օպսիկիոնն է և Բրակիսիսը (Թրակեսիոն), երկրորդը Բուկելարին նահանգը։ Իմտրատիգուսի (ստրատեգոսի) նստոցը գտնվում է Մարգ ալ-Շահմում։ Նրա զորքը բաղկացած է 15 հազար հոգուց։ Նրա [զորավարի] հետ են նաև երեք տուրմուխ (տուրմարխ)։ Այս նահանգում է գտնվում Ամմուրիյան (Ամորիոն), որը ներկայումս ավերակ է, Բալիսը (Բարբալիսոս), Մանրիջը (Հիերապոլիս), Մարաշը (Գերմանիկիա), որը Բուրղութի ամրոցն է» (տե՛ս Brooks, Arabic Lists, p. 74)։

8 Բնագրում ἔθνη։ Բյուզանդական աղբյուրներում «ազգությունների» (ἔθνη) տակ ենթադրվում են ոչ միայն հեթանոսները (հայերեն հեթանոս բառը ծագում է հունարեն ἔθνος, ἐθνικός -ից), այլև Բյուզանդական կայսրու-

թյան մեջ ապրող ոչ հույն բնակչությունը, որը որպես կանոն քրիստոնյա էր։ Այսպես, հարավային Հայաստանում բնակվող հայերը դեռ VI դարում կոչվելիս են եղել ἔθνη (լատ. gentes)։ Այստեղ ἔθνη բառը գործածված է աշխարհագրական իմաստով, առանձին նահանգի իմաստով, որի մեջ սակայն ենթադրվում է առանձին «ազգության» առկայությունը։

9 Միրոս գյուղաքաղաքը (բնագրում Μηρός) գտնվում էր Փռյուգիայում։ Այժմ կոչվում է Քումբեթ։ Տե՛ս Ramsey, HGAM, p. 144, 212։

10 Բնագրում Ψυχροῦ ὄρη.

11 Օպսիկիոն (Ὀψίκιον) բանակաթեմը գտնվում էր Բյուզանդական կայսրության փոքրասիական շրջանների արևմուտքում և իր մեջ էր բովանդակում Բյութանիան, Հոնորիասը, Պափլագոնիան, Հելլեսպոնտոսի մեծ մասը և Առաջին Փռյուգիան (տե՛ս Գելցեր, Սկզբնավորությունք, էջ 11)։

12 Բուկելլարների (Βουκελλαρίων) բանակաթեմը ստեղծվեց Օպսիկիոնի արևելյան կեսից։ Գլխավոր քաղաքն էր Անկյուրան։ Բուկելլարների զորավարը առաջին անգամ հիշատակվում է 767 թ. դեպքերի կապակցությամբ (տե՛ս Գելցեր, Սկզբնավորությունք, էջ 33)։

13 Կիբիրեոտների (Κιβυρραιωτῶν) բանակաթեմը կազմվել էր նախկին Կարավիսիանի բանակաթեմի երկու մասի բաժանվելուց հետո։ Տարածվում էր Փոքր Ասիայի թերակղզու հարավային ափում, Կիլիկիայում։

14 Բնագրում ἔξαρχος։ Համապատասխանում է նախահուստինիանոսյան ժամանակաշրջանի magister militum-ին, զորահրամանատարին (տե՛ս Pertusi, p. 116)։

15 Ծիրանածինի հիշատակած այս Պուպլիոսի արձանագրության գոյության մասին ժամանակակից ուսումնասիրողները կասկած են հայտնում (տե՛ս P. de Rohden, H. Dessau, Prosopographia Imperii Romani, III, Berolini, 1898, p. 108։

16 Բելիսարիոսի պաշտոնական տիտղոսն էր Magister militum per Orientem։

17 Սկրինիարիոսները (Σκρινιάριοι, հունարեն χαρτοφύλαξ — թղթապահ), դիվանի աշխատողներ էին։

18 Պրետորյան և քաղաքի հյուպարքոսները համապատասխանում են Praefectus praetorio և Praefectus Urbis-ին։ Notitia dignitatum, V դարի սկզբի մի հուշարձան ցույց է տալիս, որ ամբողջ Հռոմեական կայսրությունը քաղաքական տեսակետից բաժանված էր 4 մասի, որոնք գլխավորում էին Praefecti praetorio-ները։ Քաղաքի պրեֆեկտները համապատասխանում են քաղաքապետներին։

19 Հովհաննես Լյուդոսի գործը պահպանվել է. Joannis Lydi, De magistratibus populi Romani libri tres, ed. R. Wuensch, Lipsiae, 1903։

20 Արմենիակների հորջորջումը հանդիպում է և հայկական սկզբնաղբյուրներում։ Օրինակ, Հովհաննես Դրասխանակերտցին գրում է, «որ շուրջ զմեօք են ազգք՝ Արմանեակս զմեզ անուանեն» (Դրասխանակերտցի, էջ 17—18), իսկ Ուխտանեսը գրում է «Արմենեակք» (տե՛ս Կ. Տաշյան, Արևմտյան սահմանը, էջ 84, ծան. 7)։

Պերտուզին կասկածելի է համարում Ծիրանածինի վկայությունը, թե Արմենիակների բանակաթեմն ստեղծվել է Հերակլ կայսեր ժամանակ, հակառակ որ Թեոփանեսն իր ժամանակագրության մեջ 626/627 թվականների տակ հիշատակում է ոմն Γεώργιος τουρμάρχης τῶν Ἀρμενιακῶν։

Պերտուզիի կարծիքով դա վկայությունն է այն բանի, որ այն ժամանակ այդ անունը կրող ինչ-որ զորամաս է եղել։ Կուլակովսկու կարծիքով, Հերակլ կայսեր հետ միասին Հայաստան արշավող զորավար Միժիժիոսը (Մժեժ Գնունի) Արմենիակների բանակաթեմի առաջին զորավարն էր (տե՛ս **Ю. Кулаковский,** История, том III, стр. 396—398: Հմմտ. **Pertusi,** p. 118)։ Առաջին անգամ հանվանե Արմենիակների զորավար է հիշատակվում 667 թ. դեպքերի կապակցությամբ։ Այդ թվականին Կոստանդ կայսեր դեմ ապստամբություն էր բարձրացրել ὁ τῶν 'Αρμενιακῶν στρατηγὸς Σαβώριος Περσογενής։ Արմենիակոնը որպես բանակաթեմ, այսինքն վարչական և ռազմական շրջանի հասկացողություն, հիշվում է միայն 742 թ. դեպքերի կապակցությամբ՝ Թեոփանեսի ժամանակագրության մեջ։

Բանակաթեմի զորավարի պաշտոնական անվանումն էր «Արմենիակների անթիպատ պատրիկ և ստրատեգոս» կամ «Արմենիակների պատրիկ և ստրատեգոս»։ Թեոփիլոս կայսեր ժամանակ Արմենիակների բանակաթեմը բաժանվեց երեք մասի՝ Արմենիակների, Խարսիանոն և Կապադովկիա, ընդ որում Արմենիակների մեջ մտան Հելենոպոնտոս, Պողեմոնյան Պոնտոսը և Առաջին ու Երկրորդ Հայքերը։ X դարում նրա կազմի մեջ մնաց միայն Հելենոպոնտոսը, որովհետև Պողեմոնյան Պոնտոսի մեծ մասից կազմակերպվել էր Խաղտիք բանակաթեմը, Առաջին Հայքի մեծ մասից՝ Կոլոնիայի բանակաթեմը, իսկ Երկրորդ Հայքի մեծ մասից՝ Սեբաստիայի բանակաթեմը (տե՛ս **Pertusi,** p. 118)։ Ծիրանածինը Արմենիակոնի կազմում ցույց է տալիս 7 քաղաք՝ Ամասիա, Իբորա (այժմ Թուրհալ), Զալիքոս (այժմ Ալաչամ), Անդրապա (այժմ Վեզիր-Քյոփրու), Ամիսոս (Սամսոն), Նեոկեսարիա (Նիկսար) և Սինոպե, որով միանգամայն համապատասխանում է Հելենոպոնտոս նահանգին, որ նույն քաղաքներն ուներ՝ գումարած Զելան (տե՛ս Տաշյան, Արևմտյան սահմանը, էջ 450։ Տաշյանը խնդրո առարկա բանակաթեմի մասին արժեքավոր դիտողություններ ունի նույն աշխատության մեջ, տե՛ս էջ 82 և հտ.)։

Արմենիակների բանակաթեմի մասին տեղեկություններ են տալիս նաև արաբական աղբյուրները։ Իբն Խորդադբեն գրում է. «ալ-Արմինիակ ունի Կոլոնիա և տասնվեց ամրոց» (տե՛ս Գելցեր, Սկզբնավորությունք, էջ 38)։ Իբն ալ-Ֆակիհը գրում է. «Այնուհետև նրան սահմանակից է Արմենիակոն նահանգը. Նրա առաջին սահմանն է Աֆլագունիայի (Պաֆլագոնիա) նահանգը, երկրորդ [սահմանը]՝ Բուկելլարիոն նահանգը, երրորդը՝ Խարսանան, իսկ չորրորդը՝ Գալդիյան (Խաղտիք) և խազարների ծովը։ Իմտրատիղուսի (ստրատեգոսի) նստոցն է Ամասիա ամրոցը։ Նրա զորքը բաղկացած է 9000 հոգուց, որի հետ են երեք տուրմուխ (տուրմարխ)։ Այդ [նահանգում] կան բազմաթիվ գավառներ և ամրոցներ» (տե՛ս Brooks, Arabic Lists, p. 76)։

Կուդամայի տվյալներով բանակաթեմն ուներ 4000-անոց զորք, մի բան, որ Գելցերն համարում է գրչական սխալ և ուղղում 10.000-ի (տե՛ս Գելցեր, Սկզբնավորությունք, էջ 47, 48)։

21 Μένιππος. Նկատի ունի հայտնի աշխարհագիր Մենիպոս Պերգամացուն, որ գրել է երեք մայր ցամաքների—Ասիայի, Եվրոպայի և Լիբիայի աշխարհագրությունը։ Նրա մասին մանրամասն տե՛ս Գիզինգերի Մենիպոս հոդ-

վածը. Paulys, Real-Encyclopädie der Classischen Altertumswissenschaft-ի 29-րդ հատորում, Stuttgart, 1931, col. 862—888։

22 Σκύλαξ Καρυανδεύς, Այդ անունով հայտնի են երկու հեղինակ։ Մեկն ապրել է Դարեհ Վշտասպյանի ժամանակ։ Գրել է „Περίπλους", որը IV դարում մ. թ. ա. վերամշակվել է և հայտնի է „Γῆς περίοδος" և „Περὶ Ἰνδῶν" անվան տակ։ Երկրորդ Սկյուլաքս Կարյուանդենացին ապրել է Դարեհ Հարձորդու ժամանակ։ Նա ևս եղել է ճանապարհորդ և գրել Περίπλους— Հերակլյան սյուներից այն և այս կողմ և Περίπλους Օկյումենեի, որոնցից հատվածներ են մեզ հասել։ Ծիրանածինը ամենայն հավանականությամբ նկատի ունի երկրորդ Սկյուլաքսին։

23 Պավսանիասը (Παυσανίας) II դարի հույն ճանապարհորդ է։ Հադրիանոսի և Անտոնինների ժամանակ շրջեց Հունաստանը, Փոքր Ասիան, Ասորիքը, Եգիպտոսը, Լիբիան, Իտալիան և իր տպավորությունները 160—180 թվականների ընթացքում շարադրեց առանձին գրքերով։ Նրա գործը հասել է մեզ։

24 Պրոկոպիոս Կեսարացին (Προκόπιος Καισαρεύς) բյուզանդական խոշորագույն պատմիչը (VI դար)։ Գրել է «Պատերազմների մասին», «Գաղտնի պատմություն» և «Կառուցումների մասին» կարևոր աշխատությունները, որոնք բոլորն էլ հասել են մեզ։ Նրա գործերի Հայաստանին և հայերին վերաբերող նյութը տե՛ս սույն մատենաշարի 5-րդ գրքում (Բյուզանդական աղբյուրների Առաջին գիրքը), Երևան, 1967 թ.։

25 Ագաթիաս Միրենացին (Ἀγαθίας Μυριναῖος) ծնվել է շուրջ 536 թ. և մահացել շուրջ 582 թ.։ Բյուզանդական պատմիչ է և բանաստեղծ։ Գրել է «Հուստինիանոսի թագավորության մասին» գործը, որ վերաբերում է 552—558 թթ. գոթերի, վանդալների, ֆրանկների և պարսիկների դեմ հայազգի զորավար Նարսեսի մղած պատերազմներին և շարունակությունն է Պրոկոպիոս Կեսարացու «Պատերազմների մասին» գործի։ Այն պահպանվել է։ Տե՛ս Agathias, Historiarum libri quinque, Bonnae, 1828։ Կա նույնի ռուսերեն թարգմանությունը. Агафий, О царствовании Юстиниана, Перевод, статья и примечания М. В. Левченко, Москва-Ленинград, 1953։ Բնագրի նորագույն հրատարակությունը կազմել է բյուզանդական պատմիչների նոր մատենաշարի երկրորդ հատորը։ Տե՛ս Corpus Fontium Historiae Byzantinae, Volumen II, Agathiae Myrinaii Historiarum libri quinque, recensuit R. Keydell, Berolini, 1967։

26 Մենանդրոսը (Μένανδρος Προτίκτωρ) ծնվել է VI դարի կեսերին Կոստանդնուպոլսում։ Նրա պատմական երկը շարունակությունն է Ագաթիասի գործի և բովանդակում է 558—582 թթ. պատմությունը։ Նրա աշխատության առանձին հատվածներ են միայն հասել մեզ։ Տե՛ս Fragmenta Historicorum graecorum, t. IV. p. 220 և հտ.։ Այդ հատվածների ռուսերեն թարգմանությունը տե՛ս հետևյալ գրքում. Византийские историки Дексипп, Эвнапий, Олимпиодор, Малх, Петр Патрикий, Менандр, Кандид, Ноннос и Феофан Византиец, перевод С. Десгуниса, С. Петербург, 1860, стр. 313—470։

27 Հեսիքիոս Միլետացին (Ἡσύχιος Μιλήσιος) ապրել է Անաստասիոս կայսեր (491—518) ժամանակ։ Նրա պատմական երկը կոչվում էր Σύνοψις κοσμικῆς

ἱστορίας» կամ «Χρονικὴ ἱστορία», որն սկսվում էր Ասորեստանի թագավոր Բելից և հասցվում մինչև Անաստասիոս կայսեր մահը։ Այդ գործի մեծ մասը մեզ հասել է։ Անավարտ մնաց նրա պատմական երկրորդ գործը, որ բովանդակում էր Հուստինոսի, ապա նաև Հուստինիանոսի թագավորության մի քանի տարվա պատմությունը։ Այս վերջինը կորել է։

28 Պոլիբիոսը (Πολύβιος) հին Հունաստանի ամենաերևելի պատմագիրներից մեկն է (201—120 թ. մ. թ. ա.)։ 167 թ. որպես պատանդ ուղարկվեց Հռոմ, որտեղ սերտ կապեր հաստատեց հռոմայեցի մեծամեծների հետ։ Ճանապարհորդեց Իտալիա, Գալատիա և Իսպանիա։ Սկիպիոն էմիլիանոսի հետ մասնակցեց III Պունիկյան պատերազմին և ծանոթացավ հյուսիսային և արևմտյան Աֆրիկային։ Նրա ամենակարևոր գործն է «Ἱστορίαι» 40 գրքից բաղկացած երկասիրությունը, որտեղ քննության է առնում հռոմայեցիների, հույների և Արևելքի պատմությունը 220—146 թթ.։ Այդ գործից մեզ հասել են առաջին 5 գրքերը, վեցերորդ գրքի մի մասը և առանձին հատվածներ մյուսներից։

29 Բնագրում Δαζιμών, հիշատակում է դեռևս Ստրաբոնը «Դազիմոնիտիս հարթավայր» ձևով (ԺԲ, 3, 15)։ Այժմ կոչվում է Դազմանա (տե՛ս Honigmann, Die Ostgrenze, S. 60)։ Անդերսընը Դազիմոնիտիսը նույնացնում է Կազ-Օվայի հետ (տե՛ս Անդերսըն, Ուղևորություն, էջ 83)։ Տաշյանը Դազիմոնը նույնացնում է Եվդոկիայի (Թոքատ) հետ (տե՛ս Տաշյան, Արևմտյան սահմանը, էջ 458)։

30 Բնագրում թեև Հերոդոտոս է գրված, բայց հրատարակիչ Պերտուզին ուղղում է «Ստրաբոն», որովհետև նրանց Ստրաբոնն է հիշատակում։ Ստրաբոնը գրում է (տե՛ս Աշխարհագրություն, ԺԲ, 3, 4), որ «Լևկոսիրոսներին մենք անվանում ենք կապադովկացիներ»։ Ստրաբոնը տարբերություն է դնում Լևկոսիրոսների, որոնք բնակվում են Կապադովկիայում և մյուս «ասորինեբի» միջև, որոնց «մաշկը արևից վառված է» (նկատի ունի Մելանոսիրոսներին)։ Վերջիններիս նա տեղադրում է Տավրոսից այն կողմ (ԺԲ, 3, 9)։

31 Հռոդենդոսի (Արդանդուն), Լուլոնի և Պոդանդոսի (այժմ Բողանտը) մասին տե՛ս Honigmann, Die Ostgrenze, S. 45։

31ա Բնագրում τὸ μὲν μεσόγαιον։ Բառը թարգմանում ենք ինչպես մեր միջնադարյան աղբյուրներում. «Միսիգիոն, որ թարգմանի Միջերկրեայ»։ Տե՛ս Ղևոնդ, Պատմություն, էջ 103։

32 Խարսիանոնի առաջին հիշատակությունը (որպես կլեյսուր) հանդիպում է Իբն Խորդադբեի մոտ։ «9. Խարսիոն Մալաթիո ճամբուն վրա. բացի Խարշանա գլխավոր քաղքեն ուրիշ դեռ չորս ամրոց ալ ունի» (տե՛ս Գեյգեր, Սկզբնավորությունք, էջ 38)։ Մի ուրիշ արաբ հեղինակ, Իբն ալ-Ֆակիհը Խարսիանոնի մասին գրում է. «Նրան սահմանակից է Խարշանայի նահանգը. Նրա առաջին սահմանն է Ալ-Կույարի (Կապադովկիայի) նահանգը, երկրորդ՝ Մալաթիայի հովիտը, երրորդը՝ Արմենիակների նահանգը, չորրորդը՝ Բուկելլարների նահանգը։ Նրա խիսլիյուգի (կլեյսուրարխի) նստոցն է Խարշանայի ամրոցը։ Նրա զորքը բաղկացած է չորս հազար հոգուց։ Նրա ամրոցների թվում են Խարշանան, Դարիգան (Սարիխա), Ռամհասու (?), Բարուկտա (Բադուկտա (?)... և Մախաթիրի (?)» (տե՛ս Brooks, Arabic Lists, p. 75—76)։

*Բյուզանդական աղբյուրներում 863 թ. դեպքերի կապակցությամբ հիշատակվում է Խարսիանոնի կլեյսուրարխը, որով պարզվում է, որ այն ժամանակ Խարսիանոնը դեռ չէր բարձրացել բանակաթեմի աստիճանին։ 873 թ. է, որ առաջին անգամ հիշատակվում է Խարսիանոնի մի զորավար. վկայությունն այն բանի, որ Խարսիանոնն արդեն վերածվել էր բանակաթեմի, ըստ երևույթին, 863 թ. ձեռք բերած հաջողությունների կապակցությամբ։ (Վասիլի կենսագրության մեջ ևս արձանագրված է (տե՛ս վերը, էջ 71), որ Խարսիանոնը բանակաթեմ էր և ուներ զորավար)։ Ինչպես ցույց է տալիս Ծիրանածինը իր «Կայսրության կառավարման մասին» աշխատության մեջ (գլ. 50), Խարսիանոնը կազմում էր Արմենիակների բանակաթեմի մի «զորավորություն»։*

*Տասներորդ դարում Խարսիանոն բանակաթեմի կազմում էին գրեթե ամբողջությամբ Առաջին Կապադովկիան և Երկրորդ Հայքի հարավային կեսը։ Խարսիանոն բանակաթեմի կենտրոնը հայտնի չէ։ X դարում Կեսարիան էր նրա կենտրոնը, որ միաժամանակ եկեղեցական կենտրոն էր (տե՛ս* Pertusi, p. *124)։*

*Ծիրանածինը Խարսիանոն բանակաթեմի անունը կապում է ինչ-որ առասպելական Խարսիոս պարսկի անվան հետ։ Ն. Ադոնցը Խարսիանոն անունը բխեցնում է Փոքր Հայքի հինգ գավառներից մեկի՝ Օրսեննեի անունից, որի կենտրոնն էր Օրսա քաղաքը։ Դեռևս XIX դարի վերջում Ավազի և Կեմիսի միջև, Ալիս գետի ձախ ափին գտնվում էր հայերով բնակեցված Խորսանա գյուղը, որ Խարսիանոն բերդն է, նույնանուն բանակաթեմի կենտրոնը (տե՛ս* **Н. Адонц,** Армения, стр. 83)։ *Ռամզեյը Խարսիանոն բանակաթեմի կենտրոնը (Խարշանան ըստ արաբների, և Խարսիանոն բերդը՝ ըստ բյուզանդացիների) տեսնում է ժամանակակից Կալե-Հիսարի մեջ, թեև այլ ուսումնասիրողներ չեն համաձայնվում այդ կարծիքի հետ (տե՛ս* Տաշյան. *Արևմտյան սահմանը, էջ 450)։*

33 *Հռոմեական տիրապետության վաղ շրջանում Փոքր Հայքը կազմեց Կապադովկիա պրովինցիայի մի մասը։ III դարի վերջում, Դիոկլետիանոսի ժամանակ Փոքր Հայքը կազմեց առանձին պրովինցիա։ Թեոդոս Մեծի ժամանակ Փոքր Հայքը բաժանվեց երկու մասի, Առաջին և Երկրորդ Հայքերի։ Հուստինիանոսի ժամանակ Փոքր Հայքի շրջանները նոր բաժանման ենթարկվեցին։ Փոքր Հայքի վարչական սահմաններն անկայուն էին և հաճախ իրենց մեջ էին ընդգրկում հարևան շրջանները, կամ, ընդհակառակը, Փոքր Հայքի առանձին շրջաններ համարվում էին հարևան նահանգների բաղկացուցիչ մասեր (տե՛ս* **Адонц,** Армения, стр. 48 и сл.)։

*Եթե «Բանակաթեմերի մասին» աշխատության մեջ Կապադովկիան ցույց է տրված Արմենիակների բանակաթեմի կազմում, ապա «Կայսրության կառավարման մասին» աշխատության մեջ (գլ. 50) Կապադովկիան համարվում է «Անատոլիկոն բանակաթեմի մի տուրման»։ Պերտուզիի կարծիքով հնարավոր է, որ մի ինչ որ ժամանակաշրջանում Կապադովկիան ռազմական տեսակետից կապված լիներ Անատոլիկոնի հետ (տե՛ս* Pertusi, p. *118)։ Բայց թվացող հակասությունը վերանում է, եթե նկատի ունենանք, որ Արմենիակների բանակաթեմի մեջ մտնում էր միայն Երրորդ Կապադովկիան, երբ Երկրորդ Կապադովկիան մտնում էր Անատոլիկոն բա-*

նակաթեմի կազմում (տե՛ս Տաշյան, Արևմտյան սահմանը, էջ 450, 453)։ Այդպիսով Ծիրանածինը սխալած չէր լինում երբ և՛ Անատոլիկոն, և՛ Արմենիակների բանակաթեմերի մեջ կապադովկական հողեր էր տեսնում։

Կապադովկիա բանակաթեմի սահմաններում էին գտնվում Երկրորդ Կապադովկիան և Առաջին Կապադովկիայի մի մասը, հնարավոր է նաև Երկրորդ Հայքի, որովհետև, ըստ Ծիրանածինի, նրա սահմաններում էին գտնվում Մոկիսոս քաղաքը, ինչպես և Հոռդենդոս և Լուլոն ամրոցները։ 863 թ. դեպքերի կապակցությամբ հիշատակվում է Կապադովկիայի զորավարը, որն ապացույց է այն բանի, որ նշված ժամանակ Կապադովկիան արդեն կլեյսուրից բարձրացել էր բանակաթեմի աստիճանին։ Այդ բանը հաստատվում է և Ֆիլոթեոսի «Գահնամակով», որտեղ Կապադովկիան հանդես է գալիս որպես առանձին բանակաթեմ, որովհետև հիշատակում է «Կապադովկայի անթիպատ պատրիկ և զորավարին»։

Կապադովկիան որպես բանակաթեմ (սկզբում որպես կլեյսուր) հիշատակում է Իբն Խորդադբեն, որի տվյալը վերաբերում է 717/829 թթ. միջև ընկած ժամանակաշրջանին. «14. Ալ-Կաբադոք, որուն սահմաններն են՝ Տարսոսի, Ադանայի և ալ-Մասիսայի լեռները։ Այս նահանգին ամրոցներուն կարգին են՝ Կոռա, Հասին, Անթիգավա, ալ-Աճրաբ և Դուլ Կիլա։ Այս վերջինը ամրոցներով շրջապատված լեռ մըն է։ Արաբացիք ասոր Դուլ Կիլա (Դշխո ամրոցներու) անունը տվին, սակայն իսկական անունն է Ջուսասթրուն, որ կնշանակե «աստղերու մերձեցող»։ Բացի այս վերոհիշյալ ամրոցներեն, դեռ անոնցմե տասնուչորս ուրիշ ալ կա։ Մաթամիր երկրին մեջ կգտնվեն՝ Մաջիդա, Բալանսա, Մալանդասա, Կունիա, Մալակուբիա, Բադալա, Բարբավա և Սալամուն դղյակները» (տե՛ս Գելցեր, Սկզբնավորությունք, էջ 38—39)։ Կապադովկիա բանակաթեմի մասին խոսում է նաև Իբն ալ-Ֆակիհը. «Հաջորդ սահմանը,—գրում է նա,—Ալ-Կուբադակ նահանգն է. Նրա առաջին սահմանն է Տարսոսի լեռները, Ադանան և Ալ-Մասիսան (Մոպսուեստիան), երկրորդ [սահմանն] է Սելևկիայի նահանգը, երրորդը՝ Տուլիգուսի (Անատոլիկոն) նահանգը, չորրորդը՝ Ալ-Սամալարի (Բուկելլարիոն), Խարսանայի (Խարսիանոն) նահանգը։ Խիսլիյուգի (կլեյսուրարխի) նստոցը Կուրայի (Կորոն) ամրոցն է։ Զորքը բաղկացած է չորս հազար հոգուց։ Այստեղ կան բազմաթիվ անառիկ ամրոցներ։ Նրա սահմաններում են գտնվում Կուրիյան կամ Կունիյան (Իկոնիոն ?) (Պերտուզիի կարծիքով դա Կարբալան է և ոչ Իկոնիոնը, նույն տեղում, էջ 121), Մալակունիյան (Մալակոպեան), Գարդիլիյան (?) և ուրիշներ» (տե՛ս Brooks, Arabic Lists, p. 75)։ Հոնիգմանը հետևյալ կերպ է ճշտում արաբական աղբյուրներում հիշատակված տեղանունները. Ալ-Մասիսա= Մոպսուեստիա, Կոռա=«Բանակաթեմերի մասին» աշխատության Կորոնը, Հասին-Հասաքյոյ (?), Անթիգավա=հնարավոր է Նիգդե, Գոգաստրում (Ջուսասթրուն)=Կիբիստրա, Բալանսա=Վալիսա, Մալանգասա=Մելանդըզ, Բադալա=Անդաբալիս=Անդանալ, Բարբավա=Էսքի Արավան, Սալամուն= Տալ Սելմե (տե՛ս Honigmann, Die Ostgrenze, S. 40, 45, 46—47։ Հմմտ. Pertusi, p. 121)։

34 Խոսքը հավանաբար Արիարաթ II-ի մասին է, Կապադովկիայի թագավորու-

թյան հիմնադրի (270 կամ 260 թ. մ. թ. ա.)։ (Տե՛ս Pertusi, p. 119; նաև Հ. Մանանդյան. Քննական տեսություն, հտ. Ա, էջ 98, 99, 139)։

35 Աղաբեր Արիարաթիա լիճն այժմ կոչվում է Տուզլու Գյոլ։ Այն հիշատակվում է դեռ Ստրաբոնի կողմից «Տատտա լիճ» ձևով։ Նրա ասելով, Տատտան գտնվում է Մեծ Կապադովկիայի մոտ և բնական աղահանք է (տե՛ս Ստրաբոն. ԺԲ, 5, 4)։

36 Բնագրում Μάζακα. Մովսես Խորենացին մանրամասն գրում է այդ քաղաքի կառուցման մասին, որ վերագրում է հայերի նախահայր Արամի դինվորականներից մեկի՝ Մշակին, որ ծագումով հայ էր («յազգէ իւրմէ»)։ Այդ շրջանի նվաճումից հետո Արամը հրաման էր տվել տեղի հույն բնակչության «ուսանել գխօսս և զլեզուս հայկական... եւ դաստակերտն զոր շինեաց յանուն իւր Մշակ կողմնապետն Արամայ, փոքրագունիւք պարսպեալ որմովք, անուանէին հինք աշխարհին՝ Մաժաք, որպէս ոչ կարելով ուղղախօսել» (Խորենացի, Ա, 14)։ Խորենացին ընդգծելով հույների «ուղղախօսել» չկարողանալու փաստը, նկատի ունի այն, որ նրանք չէին կարողանում Մաժաք (կամ Մշակ) ասել, որովհետև հունարենում չկան «ժ» և «շ» հնչյունները։ Այդ իմաստով ոչ թե «Մաժաք» այլ «Մազաք» պետք է որ հույները ասած լինեին (ինչպես որ գրում է Ծիրանածինը), և Խորենացու «Մաժաքը» պիտի ուղղել «Մազաք»։ Թերման (Θέρμα) նույնանում է Βασιλικὰ Θέρμαι (տե՛ս Արարողությունների մասին, գիրք Բ, ծանոթ. 119), Թագավորական Ջերմուկների հետ։ Հոնգեպողանդոսը նույն Պոդանդոսն է։

37 Այն պատճառով, որ պատմական Փոքր Հայքը վարչական իմաստով գտնվում էր Կապադովկիայի սահմաններում, սկզբնաղբյուրներում հաճախ հայ և կապադովկացի հասկացությունները նույնացվել են։ Հայ ասելով ենթադրել են կապադովկացուն, կամ կապադովկացի ասելով՝ հային։ Բյուզանդագետ Գուբերը այդպես է բացատրում Մավրիկիոս կայսեր «հայկական» ծագումը։ Լինելով Կապադովկիայի Արաբիսոս քաղաքից, Մավրիկիոսը համարվել է հայ։ Տե՛ս և հաջորդ ծանոթագրությունը։

38 Այս քառյակը հանդիպում է նաև IX դարում, կին հեղինակ Կասիայի մոտ, այն տարբերությամբ, որ ուր որ «կապադովկացի» է գրված, Կասիայի մոտ «հայ» է (հմմտ. նախորդ ծանոթագրությունը)։ «Հայոց ղարհուրելի ազգը,—գրում է Կասիան,—պատիր է և չարաբարո վերին աստիճանի. այլ և խելացնոր, փոփոխամիտ և նախանձոտ, խիստ փքված և լի նենգությամբ. շատ տեղն է ասել սոցա մասին մի իմաստասեր, թե՝ «Հայերը չար են, քանի որ հռչակ չունին, ավելի վատ են դառնում, երբ մեծության են հասնում. հարստանալուց, հիմնովին չար, իսկ երբ և՛ մեծ հարստություն, և՛ պատիվներ են ձեռք բերում, չարից ամենաչար են հանդիսանում» (թրգմ. Ն. Ադոնցի։ Տե՛ս նրա Կասիա միանձնուհին, Հանդես Ամսօրյա, 1901, էջ 130)։ Կասիայի «Հայկական» քառյակների մասին տե՛ս նաև **Липшиц,** Очерки, стр. 331։ Նաև **K. Krumbacher,** Kasia, In Sitzungsberichte d. b. k. Akademie d. Wissenschaften, philos.-philol. Classe, 1897, S. 305—399։

Կապադովկացիների մասին վերոհիշյալ բանաստեղծությունը հանդիպում է նաև VI դարում Հովհաննես Լյուդոսի մոտ։ Տե՛ս Joann. Ly-

dus, de Magistratibus, ed. Bonn., p. 250։ Հովհաննես Լյուդոսն այն գրել է Հուստինիանոս I կայսեր արատավոր գործիչ Հովհաննես Կապադովկացու կապակցությամբ։

39 Ուսումնասիրողները գտնում են, որ այս «բարեպաշտ և քրիստոսասեր Կոստանդին կայսրը» Միրանածինը չէ, նախ որովհետև նա հանդես է գալիս երրորդ դեմքով, բացի այդ, վերոհիշյալ ածականները մեկն իրեն վերագրել չէր կարող։ Կոստանդին Մեծի մասին էլ խոսք լինել չի կարող, քանի որ նա վախճանվել էր Գրիգոր Աստվածաբանից կես դար առաջ (տե՛ս F. Halkin, Études byzantines et hagiographie, Analecta Bollandiana, t. LXX, fasc. 3—4, Bruxelles, 1952, p. 363)։ Բայց բացառված չէ, որ այս նախադասությունը հետագա շրջանի ընդմիջարկություն լինի և վերաբերի իսկապես Միրանածինին։

40 Խաղտիք բանակաթեմը կազմակերպվել է Արմենիակների բանակաթեմի մասնատվելուց։ Բյուրին ենթադրում է, որ այն ստեղծվել է Թեոփիլոս կայսեր արշավանքի կապակցությամբ, 837 թ.։ Սկզբում դա Արմենիակների բանակաթեմի մի տուրման էր։ Խաղտիքի մեջ էին մտնում Պողեմոնյան Պոնտոսի մի մասը և հավանաբար Առաջին Հայքի մի մասը (Եկեղյաց գավառը)։ Նրա սահմաններն էին հյուսիսում Սև ծովը, արևելքում արաբական տիրապետությունը, հարավում Կոլոնիայի և Մրջագետքի բանակաթեմերը, իսկ արևմուտքում՝ Արմենիակոնը։ Մայրաքաղաքն էր Տրապիզոնը, որ միաժամանակ եկեղեցական կենտրոն էր։

Խաղտիք բանակաթեմը առաջին անգամ հիշատակվում է արաբ հեղինակների կողմից։ Իբն Խորդադբեն այդ մասին գրում է. «12. Խալդիա, որ Հայաստանի (Արմինիա) սահմանակից է և վեց ամրոց ունի»։ (տե՛ս Գելցեր, Սկզբնավորությունը, էջ 38)։ Հիշատակում է և Իբն ալ-Ֆակիհը. «Հաջորդ սահմանը նրա Գալդիյայի նահանգն է. սրա առաջին սահմանն է Հայաստանի շրջանը (և նրա բնակիչները հռոմայեցիների հետ թշնամության մեջ են և ավելի մոտ են Հայաստանին). երկրորդ [սահմանն] է խազարների ծովը (Սև ծովը), երրորդը՝ Արմենիակոն նահանգը, չորրորդը նմանապես Արմենիակոն նահանգը։ Իմտրատիղուսի (ստրատեգոսի) նրստոցն է Իկրիտան (?)։ Նրա զորքը բաղկացած է տաս հազար հոգուց, և նրա հետ են երկու տուրմարխ։ Այստեղ կան շրջաններ և ամրոցներ» (տե՛ս Brooks, Arabic Lists, p. 76)։ Հոնիգմանն ենթադրում է, որ Իկրիտաս տեղանունը աղավաղումն է ἀκρῖται-ի, որ նշանակում է սահմանապահներ (տե՛ս Honigmann, Die Ostgrenze, S. 53)։ Ըստ Կուդամայի (Գելցեր, Սկզբնավորությունը, էջ 47) Խաղտիքի զորքը բաղկացած էր չորս հազար հոգուց, իսկ Իբն Խորդադբեի՝ տաս հազար։

Ֆ. Ուսպենսկու հրատարակած Ταχτιχον-ում հանդիպում են Խաղտիքի ղեկավարության մասին երեք տարբեր հիշատակություններ. «Խաղտիքի պատրիկն ու զորավարը»։ Երկրորդ վկայության համաձայն Խաղտիքն ուներ դուքս, իսկ երրորդ՝ արխոնտ։ Բյուրին, հակառակ Գելցերի, որը կարծում է, թե Խաղտիքն սկզբում կլեյսուր էր, ենթադրում է, որ նախքան զորավարություն դառնալը, Խաղտիքը դքսություն էր (տե՛ս Bury. IAS. p. 43, ծանոթ. 2 և էջ 13։ Համմտ. Pertusi, p. 138)։ 863 թ. դեպքերի կապակցությամբ հիշվում է Խաղտիքի զորավարը։

Վրաց գիտնականները անհիմն կերպով աշխատում են ցույց տալ, որ Խաղտիք բանակաթեմը բնակեցված էր գլխավորապես վրացական ցեղերով՝ լազերով և ճաներով, թեև չեն ժխտում հայ և հույն բնակչության առկայությունը (տե՛ս **И. М. Нодия**, Халдийская фема, Седьмая Всесоюзная конференция византиноведов в Тбилиси, Тезисы докладов Тбилиси, 1965, стр. 29)։ Խաղտիք բանակաթեմի հողերը Հուստինիանոս I կայսեր ժամանակ կազմում էին Առաջին կամ Ներքնագույն Հայք նահանգը, որոնք հետագայում մտան Արմենիակների բանակաթեմի կազմում, որից և բաժանվելով կազմեցին առանձին բանակաթեմ։ Ինչպես Ծիրանածինն է ցույց տալիս, Խաղտիք բանակաթեմի մեջ էին մտնում Եկեղյաց գավառը և Սպերը, որոնք զուտ հայկական շրջաններ էին։

41 Տե՛ս Քսենոփոն, «Անաբասիս», Գիրք Դ, գլ. 8, 22։

42 Խոսքը Սպերի մասին է, Բարձր Հայքի 7-րդ գավառի։ Այժմ Իսպիր, որ գրավում է Ճորոխ գետի վերին հոսանքը (տե՛ս Երեմյան. Հայաստանը, էջ 81)։ Կելցենեն Եկեղյաց գավառն է։

43 Բնագրում Γοιζάνον։ Գրության ճիշտ ձևն է Γυζάνον և համապատասխանում է Վժանին, Դերջան գավառում, Տրապիզոնից 155 կիլոմետր հարավ, հարավ-արևելք, Երզնկայից 60 կիլոմետր արևելք (տե՛ս Honigmann. Die Ostgrenze, S. 53. ծանոթ. 6)։ Հ. Տաշյանը հարցականի տակ այդ վայրը նույնացնում է Խորձյանի կամ Խոզանի հետ (տե՛ս նրա Հին Հայաստանի արևմտյան սահմանը, էջ 452)։ Ծիրանածինը գրության ձևն ուղղելով Γοιζάνον-ի, ուզում է կապ տեսնել Աստվածաշնչում հիշատակված գետի անվան հետ։ Այնտեղ ասված է. «Առ արքայ Ասորեստանեայց զՍամարիա և խաղացոյց զԻսրայէլ յԱսորեստանեայցս, և բնակեցոյց զնոսա յԱղաթ և յԱբովր՝ զգետովն Գովզանայ և զլեռամբքն Մարաց» (Թագաւորութեանց Դ, 17. 6, Դ, 18, 11)։ Ծիրանածինի սխալ ստուգաբանության մասին տե՛ս Գ. Գարանֆիլյանի ծանոթագրությունը Գելցերի «Սկզբնավորությունք բյուզանդական բանակաթեմերու դրության» աշխատության 56-րդ էջում։ Գելցերը ևս Գոյզանոնը սխալմամբ նույնացնում է Խոզանի հետ (տե՛ս նույն տեղում)։

44 Հոնիգմանն ենթադրում է, որ Խաղտիք անունը առնչություն չունի հին Խալիդա անվան հետ, այլ՝ աղբյուրներում հիշատակվող սահմանամերձ մի ամրոցի, Խաղդոհառիճի հետ (տե՛ս Honigmann, Die Ostgrenze S. 54)։

45 Միջագետք բանակաթեմը հիշատակում է Կոստանդին Ծիրանածինը «Արարողությունների մասին» աշխատության մեջ (տե՛ս վերը, էջ 154)։ Շրջանի բնակչությունը հիմնականում հայեր և արաբներ էին։ Նա հյուսիսից սահմանակից էր Կոլոնիայի և Խաղտիքի բանակաթեմերին, արևելքից արաբական տիրապետության, հարավում Լիկանդոսի նորաստեղծ բանակաթեմին, իսկ արևմուտքում՝ Սեբաստիայի։ Զորավարի նստոցի մասին կոնկրետ հիշատակություն չկա աղբյուրներում։

46 Կլեյսուր բառը (հունարեն κλεισοῦρα, լեռան կապան, կիրճ և այնտեղ շինված բերդ, տե՛ս Աճառյան, Արմատական բառարան, հտ. Գ, էջ 1233), հանդիպում է դեռևս Պրոկոպիոս Կեսարացու «Կառուցումների մասին» աշխատության մեջ (գիրք Երրորդ, գլ. 3)։ Բայց Պրոկոպիոսից առաջ հիշա-

տակում է Մովսես Խորենացին. «...գլխաւոնն Տաւրոս, որ և Սիմ, ղԿղեսուրն ամենայն» (Բ, 8)։ Հիշատակում են նաև Ասողիկը, Սամվել Անեցին և ուրիշներ։ Տե՛ս Աճառյան. Նույն տեղում։

47 Ծիրանածինը մի այլ տեղում (տե՛ս վերը, էջ 26) ցույց է տալիս, որ նրանք չորսն էին. Պանգրատուկաս, Յախնուկաս, Մուղաֆար և Հովհաննես, ընդ որում հիշատակում է նաև նրանց հորը՝ Մանվելին։ Հոնիգմանը Տավտուկասին նույնացնում է Մուղաֆարի հետ, իսկ Հովհաննեսի կապակցությամբ գրում, որ Ծիրանածինը «Բանակաթեմերի մասին» աշխատության մեջ պարզապես մոռացել է նրան հիշատակել (տե՛ս Honigmann, Die Ostgrenze. S. 78, հմմտ. Pertusi, p. 140)։ Փուքրիկասը հայերեն փոքրիկն է, իսկ Ταυτούκας-ը Դավիթ անունն է -ուկ (իկ) վերջածանցով, կամ ավելի ճիշտ Դավթակ անունը (տե՛ս Աճառյան, Անձնանունների բառարան, հտ. Բ, էջ 22)։ Նույնը կարելի է ասել նաև Պանգրատուկասի կապակցությամբ։ Աճառյան. Նույն տեղում, հատ. Ա, էջ 359։ Թեոփանեսի Շարունակողը ցույց է տալիս, որ 914 թվականի սեպտեմբեր ամսին «Պանգրատուկաս հայը» (Παγκρατούκας ὁ 'Αρμένης) Ագրիանուպոլիս քաղաքը հանձնեց բուլղարների ցար Սիմեոնին (Theoph. Cont., p. 387. հմմտ. Sym. Mag., p. 723, Georg. Mon. Cont., p.880)։ Խոսքը հավանաբար Մանվելի որդի Պանգրատուկասի մասին է։

Գտնվել է մի արճիճե կնիք, որ կրում է հետևյալ մակագրությունը.

K(ύριε) βοήθ(ει) Ταυτούκα προέδρῳ καὶ κατεπάνω Σαμοσάτω(ν)

(Տեր օգնեա՛ Տավտուկասին, Սամուսատի պրոեդրոսին և կատապանին)։ Ենթադրում են, որ խոսքը Մանվելի որդի Տավտուկասի մասին է (տե՛ս Honigmann, Die Ostgrenze, S. 78)։

48 Կոլոնիա բանակաթեմը աղբյուրներում առաջին անգամ հիշատակվում է 863 թ. դեպքերի կապակցությամբ, երբ հանգես է գալիս նրա զորավարը։ Ենթադրվում է, որ կազմակերպվել է Խաղտիք բանակաթեմի հետ միասին՝ Թեոփիլոս կայսեր թագավորության ժամանակ։ Նրանից առաջ Կոլոնիան հավանաբար արխոնտություն էր, տրովհետև մեզ է հասել IX—X դդ. արճիճե մի կնիք, որտեղ հիշատակվում է ոմն Գրիգոր «Կոլոնիայի արխոնտ» (տե՛ս Панченко, Каталог моливдовуллов, էջ 367, ծանոթ. 211)։

Կոլոնիա բանակաթեմի կազմի մեջ էին մտնում Առաջին Հայքի հարավային կեսը, Պողեմոնյան Պոնտոսի մի մասը։ Հյուսիսում սահմանակից էր Խաղտիք բանակաթեմին, արևելքում՝ Միջագետք, հարավում՝ Սեբաստիա, իսկ արևմուտքում հավանաբար Խարսիանոն և Արմենիակների բանակաթեմերին։ Կոլոնիա բանակաթեմն այսպիսով իր մեջ էր ընդգրկում ամբողջ հարազատ Փոքր Հայքը՝ իր իրական սահմաններով, որի մայրաքաղաքն էր Նիկոպոլիսը (տե՛ս Տաշյան, Արևմտյան սահմանը, էջ 45, 463)։ Բանակաթեմի զորավարի նստոցն էր Նիկոպոլիս քաղաքը։ Լևոն VI-ը Կոլոնիայի զորավար նշանակեց հայազգի Մանվելի որդիներից Յահնուկասին։ Այդ մասին Ծիրանածինն հիշատակում է «Կայսրության կառավարման մասին» աշխատության մեջ (գլ. 50)։ Կոլոնիան (վայրն իհարկե, և ոչ բանակաթեմը) հիշատակում է և Մովսես Խորենացին. «առ բարձրաւանդակի միոջ բլրով քարագագաթնիւ, որ այժմ ասի Կողոնիայ» (Բ, 4)։

49 Կոլոնիա բառին Տիրանածինի տված բացատրությունը սխալ է։ Ավելի ճիշտ է այն բխեցնել լատ. colonia — գաղութ բառից, քանի որ II—III դարում այստեղ հռոմեական զորքերը գաղութ էին հիմնադրել։ Պրոկոպիոս Կեսարացին իր «Կառուցումների մասին» աշխատության մեջ (Գ, 4) քաղաքի հիմնադրումը կապում է Պոմպեյոսի անվան հետ, բայց նա շփոթում է տվյալ դեպքում Կոլոնիան Նիկոպոլիս քաղաքի հետ (տե՛ս Jones, The Cities, էջ 428, ծանոթ. 46 և էջ 172։ Հմմտ. Pertusi, p. 142)։

50 Բնագրում Φαλακρὸν ὄρος։ Տեղադրությունն անհայտ։ Ռամզեյը կապ է տեսնում Ֆալակրոն լեռան և Ֆալակրոն բերդի միջև (տե՛ս «Վասիլի կենսագրության» մեջ, էջ 75, և ենթադրում, որ պետք է գտնվեր Կոլոնիա բանակաթեմի հյուսիս կամ հյուսիս-արևմտյան սահմաններում (Ramsey, HGAM, p. 276, ծանոթ. 2)։ Պերտուզին նույնպես կապ է տեսնում այդ լեռան և Φαλακροῦ κάστρον— (Ճաղատ բերդ) միջև, որը Հոնիգմանը (Die Ostgrenze, S. 62) նույնացնում է Ֆրակտինի հետ՝ Ազիզյեյից 70 կիլոմետր հարավ, հարավ-արևմուտք, Կապադովկիայի բանակաթեմում (հմմտ. նաև Երեմյան, Հայաստանը, էջ 88)։ Պերտուզին ենթադրում է, քանի որ այդ լեռը և Նեոկեսարիան հիշյալ բանակաթեմի արևմտյան սահմանն է, ապա այն պետք է փնտրել այդ քաղաքից հարավ, հավանաբար ժամանակակից Կարսչամ Դաղը-ում (տե՛ս Pertusi, p. 142)։

51 Բնագրում πόλις Ἀραβρακηνῶν։ Ռամզեյը այն տեղադրում է Սատալայից (Սատաղ) 45 մղոն հարավ (տե՛ս Ramsey, HGAM, p. 275, 276։ Հոնիգմանի կարծիքով գտնվում է Երզնկայից 30 կմ. արևմուտք, ժամանակակից Մելիք-Շերիֆի շրջակայքում (տե՛ս Honigmann, 'Die Ostgrenze S. 70)։

52 Սուրբ Եվստրատիոսի վարքը հասել է մեզ և հրատարակված է Մինյի «Հայրաբանության» մեջ. Migne, Patrologia Graeca, t. 116, col. 468—505։

53 Պետրոս Սիկիլիացու մոտ՝ Τιβρική. հայոց Տիվրիկը (այժմ Դիվրիգի)։ Երբ IX դարի 30-ական թվականներից Բյուզանդիայում սկսվեցին պավլիկյան աղանդավորների հալածանքները, վերջիններս սկզբում աղանդապետ Սերգիոսի, ապա ռազմական գործիչ Կարբեասի գլխավորությամբ անցան արաբական տիրապետության տակ և հիմնադրեցին մի քանի ամրոցներ ու քաղաքներ։ Ամենակարևորը Տիվրիկն էր, որ դարձավ աղանդավորների մայրաքաղաքը։ Այն կործանվեց 872 թ. բյուզանդական զորքերի կողմից։ Ավելի մանրամասն տե՛ս Бартикян, Источники:

54 Մանիքեցիների տակ տվյալ ժամանակաշրջանում բյուզանդական հեղինակները ենթադրում են պավլիկյաններին, որոնց նույնացնում են մանիքեցիների հետ, ելնելով նրանց գաղափարախոսության ընդհանրությունից։ Պավլիկյաններին նվիրած ուսումնասիրությունը պատրիարք Փոտր վերնագրել է «Մանիքեցիների վերածնման մասին»։

55 Խրիսոքիրը (Χρυσόχειρ. թարգմանաբար նշանակում է «Ոսկեձեռնյան») Կարբեասի փեսան էր և պավլիկյանների զինված ուժերի ամենից աչքի ընկնող զորավարը։ Նա իր զորքերով ասպատակում է ոչ միայն Բյուզանդական կայսրության սահմանամերձ շրջանները, այլ և հաջող մարտեր մղելով հասնում է մինչև Նիկիա և Նիկոմեդիա։ Վասիլ I կայսրը դիմեց նրան

հաշտություն կնքելու կոչով, որը սակայն մերժվեց Խրիսոքիրի կողմից։ Խրիսոքիրը մի արշավանքից վերադառնալիս, 872 թ., Տիվրիկից ոչ հեռու գտնվող Վաթիրիաքս վայրում ընկնում է բյուզանդացիների դարանը և սպանվում։ Նրա գլուխը կտրում և ուղարկում են Վասիլ I կայսեր, որը երեք նետ է գամում նրա վրա։ Այդ ամբողջ պատմությունը տե՛ս վերը, Վասիլ կայսեր կենսագրության մեջ ինչպես և պատմիչ Գենեսիոսի (Genesii Regum, p. 121—126)։ Խրիսոքիրը ևս իր արտացոլումն է գտել բյուզանդական Դիգենիս Ակրիտաս էպոսում, հանդես գալով որպես գլխավոր հերոսի՝ Դիգենիսի պապը՝ հոր կողմից։ Ամենայն հավանականությամբ, նա իր արտացոլումն է գտել նաև քրդական «Ոսկեձեռնյան խան» էպոսում (տե՛ս Бартикян, Дигенистика, стр. 48—54)։

56 Կարբեասը (Καρβέας) հայկական Կարպիս (Կարապետ) անունն է։ Կարբեասր զինվորական գործիչ էր, սկզբում ծառայում էր Կոլոնիայի բանակաթեմում որպես պրոտոմանդատոր. հայացքներով հարում էր պավլիկյաններին։ IX դարի 30-ական թվականներին, երբ աղանդավորների կրած հալածանքների զոհ դարձավ և Կարբեասի հայրը, վերջինս 5000 աղանդավորների գլուխն անցած, դիմեց արաբներին, դաշինք կնքեց խալիֆայի հետ և արաբական զորքերի հետ դաշնակցած սկսեց ասպատակել Բյուզանդական կայսրության սահմանամերձ շրջանները։ Վասիլևը (տե՛ս նրա Византия и арабы, II, стр. 202), ելնելով այն բանից, որ արաբական աղբյուրների տվյալների համաձայն Կարբեասը վախճանվել է 863 թ., Պոսոնի ճակատամարտի տարին, ենթադրում է, որ Կարբեասը պետք է սպանված լինի այդ մարտում։ Բայց պատրիարք Փոտր ցույց է տալիս, որ Կարբեասը վախճանվեց հիվանդանալով, և ոչ թե սպանվեց ճակատամարտում։ (Այդ մասին տե՛ս Бартикян, Источники, էջ 166, ծանոթ. 147)։ Կարբեասը երգվել է բյուզանդական Դիգենիս Ակրիտաս էպոսում (այնտեղ հանդես է գալիս Կարո-ես անվան տակ), որպես Դիգենիսի հոր մորեղբայրը։

Ծիրանածինը սխալվում է, երբ ցույց է տալիս, որ Կարբեասին սպանել է Վասիլ I-ը։ Ինչպես հայտնի է, Կարբեասը մահացել է 863 թ., երբ Վասիլը ո՛չ կայսր էր, ո՛չ էլ կայսերակից։

57 Ինչպես ցույց է տալիս ինքը Ծիրանածինը Սեբաստիան նախապես կլեյսուր էր (տե՛ս վերը, էջ 154)։ Բանակաթեմի աստիճանին բարձրացավ 913 թ. ոչ շուտ։ Նրա սահմանների մեջ էր մտնում Առաջին Հայքը, այսինքն Փոքր Հայքը և Երկրորդ Հայքի մի մասը։ 930—960 թվականների ընթացքում նրա կազմի մեջ էին գտնվում Եփրատեսիայի որոշ շրջաններ, որովհետև սահմանը ձգվում էր մինչև Սամոսատ։ Սեբաստիայի բանակաթեմը հյուսիսից սահմանակից էր Կոլոնիային, հյուսիս-արևելքում՝ Միջագետքին, արևելքում՝ արաբական տիրապետություններին և Լիկանդոսին, իսկ արևմուտքում՝ Խարսիանոնին։

58 Սեբաստիա անվան ծագման մասին վկայություն ունի Ստրաբոնը և Ստեփանոս Բյուզանդացին։ Ստրաբոնը գրում է, որ «Կաբիրան Պոմպեյոսը դարձրեց քաղաք և վերանվանեց Դիոսպոլիս, իսկ Պիթոդորիսը ավելի շքեղացրեց այն և անվանեց Սեբաստա» (ԺԲ, 3, 31)։ Սեբաստիան Հուստինիանոս I կայսեր բարենորոգումների ժամանակ դարձավ Երկրորդ Հայքի կենտրոնը։ Դրանից առաջ նա Առաջին Հայքի մայրաքաղաքն էր։

59 Ինչպես Ծիրանածինն է վկայում (տե՛ս վերը, էջ 154) Լիկանդոսը նախապես կլեյսուր էր և կառավարվում էր կլեյսուրարխի կողմից։ Զորավարության աստիճանին բարձրացավ (այսինքն բանակաթեմ դարձավ) Կոստանդին Ծիրանածինի թագավորության սկզբում, Զոեյի խնամակալության տարիներին (913/914) և նրա առաջին զորավարը նշանավոր Մելիասն (Մլեհ) էր։ Նրա առաջացումը կապվում է Վասիլ I կայսեր ռազմական հաջողությունների հետ, երբ նա գրավելով Տավրոսի և Անտիտավրոսի բոլոր անցումները, արշավեց դեպի Մելիտենե, Տիվրիկ, Զապետրա և Սամոսատ, տիրանալով լայնատարած շրջաններին։

60 Բնագրում Τζαμανδός։ Համապատասխանում է ժամանակակից Զամանտըսուին։ Հայկական աղբյուրների Ծամնդավը։ Տե՛ս նաև վերը, «Կայսրության կառավարման մասին» աշխատության, 50-րդ գլխի 55-րդ ծանոթագրությունը։

61 Բնագրում Ἄζωτον (Աշոտ, թե՞ Աղատ)։ Ուսումնասիրողները վերծանում են «Աշոտ» և նրան նույնացնում Թեոփանեսի Շարունակողի ժամանակագրության մեջ հիշատակված (էջ 387, 722, 878) Աշոտի հետ։ Պերտուզին ենթադրում է, որ այս Աշոտը Դավիթ-Արքայիկի որդին էր (տե՛ս Pertusi, p. 146)։

62 Խոսքը նշանավոր Մլեհի մասին է, հայազգի զորավարի։ Նրա կերպարը իր արտացոլումն է գտել նաև բյուզանդական Դիգենիս Ակրիտաս էպոսում (նա այնտեղ կոչվում է Մելեմենձիս (Մլեհ մե[ն]ծ)։ Բացի Ադոնցի հոդվածից, նվիրված բյուզանդական էպոսին, որտեղ խոսվում է Մլեհի մասին ևս, տե՛ս նաև հետևյալ ուսումնասիրությունները. Κυριακίδης, Βυζαντιναὶ μελέται. I, էջ 320—326։ Grégoire, Mélias le Magistre, էջ 78—88։ Մելիասի մասին Ծիրանածինը խոսում է նաև «Կայսրության կառավարման մասին» աշխատության 50-րդ գլխում։

63 Խոսքը 917 թ. Ախելոոսի տակ բյուզանդացիների կրած մեծ պարտության մասին է։ Բյուզանդա-բուլղարական բոլոր պատերազմների մասին մանրամասն տե՛ս հետևյալ արժեքավոր աշխատության մեջ. Българското военно изкуство през феодализма, София, 1958։

64 Լևոն VI-ի պրոտովեստիարիոս Թեոդոսին հիշատակում է Գևորգ Վանականի Շարունակողը (տե՛ս Georg. Mon. Cont., p. 855)։

65 Այսինքն ապագա կայսր Հուստինիանոս I-ը (527—565)։

66 Հուստինոս I կայսրը (518—527), Հուստինիանոսի հորեղբայրը։

67 Այս Թովմայի ինքնության մասին կա երկու ենթադրություն։ Մեկը, որ նրա տակ թաքնված է Հուստինիանոս կայսեր զորավարներից մեկը՝ հայազգի Թովման, որ ըստ վերոհիշյալ կայսեր 31-րդ Նովելլայի (536) նշանակվեց Երրորդ Հայքի կառավարիչ, և մյուսը, որին հաճախ է հիշատակում Պրոկոպիոս Կեսարացին որպես հայազգի Հովհաննես Գուզեսի հայր Թովմա (տե՛ս «Պարսկական պատերազմի մասին», գիրք Բ, 30, նաև «Գոթական պատերազմի մասին», գիրք Դ, 8, և 9)։ (Տե՛ս Pertusi, p. 146)։ Ն. Ադոնցը սակայն այդ երկու Թովմաներին նույնացնում է (տե՛ս Адонц, Армения, стр. 178)։

68 Խոսքը Մուհամեդ մարգարեի փեսա Աբու Բաքրի մասին է, որ 632 թ. հարձակվեց Կիպրոսի վրա, ավարառեց այն, բայց արաբական տիրապետու-

թյունը չտարածեց։ Արաբները 647 թ. երկրորդ անգամ հարձակվեցին կղզու վրա Մուավիայի գլխավորությամբ։ Մուավիայի և բյուզանդական կայսր Կոստանդին Պոգոնատոսի մահից հետո, Հուստինիանոս Բ-ը և ամիրապետ Աբդալմելիքը 686 թ. տաս տարով վերականգնեցին իրենց նախորդների կողմից կնքված պայմանագիրը, ըստ որի ամիրապետն համաձայնվեց բյուզանդացիներին վճարել օրական հազար դահեկան, մեկ ստրուկ և մեկ ձի, հավասար կերպով բաժանել Կիպրոսից, Հայաստանից և Վրաստանից գանձվող հարկերը։ Տե՛ս Theophanis Chronographia, p. 355, 361, 365։ Կիպրոսը հետագայում էլ բազմիցս ձեռքից ձեռք անցավ։ 744 թ. այն գրավեց Կոստանդին Ե Կոպրոնիմոսը։ 805 թ. նրան տիրացավ Հարուն ար-Ռաշիդը։ Բյուզանդացիները վերջնականապես տիրեցին կղզուն միայն Նիկեփոր Բ Փոկասի օրոք (964)։

69 Նշանավոր Ալեքսիոսի տակ հավանաբար ենթադրվում է իսկապես մեծ հռչակ ստացած Ալեքսիոս Մուսելեն, Կրինիտեսների ընտանիքից, անթիպատ պատրիկը, ապա և մագիստրոսն ու կեսարը, որը սակայն աչքի ընկավ Թեոփիլոս կայսեր ժամանակ, որի փեսան էր։ Տե՛ս Theoph. Cont., p. 108—109։ Վասիլի ժամանակ Կիպրոսի գրավման մասին այլ աղբյուրներում խոսք չկա։

## ՔՐԻՍՏՈՍԻ՝ ԵԴԵՍԻԱՅԻ ԱԲԳԱՐ ԹԱԳԱՎՈՐԻՆ ՈՒՂԱՐԿՎԱԾ ԹՂԹԻ ԵՎ ԱՆՁԵՌԱԳՈՐԾ ՊԱՏԿԵՐԻ ՄԱՍԻՆ

1 Թարգմանությունը կատարված է Մինյի հայտնի «Հունական հայրաբանության» մեջ հրատարակված բնագրից։ Տե՛ս Migne. Patrologia graeca. t. 113, col. 423—454.

2 Խոսքը 944 թ. Եդեսիայից վարշամակի հետ ժամանած մարդկանց մասին է։

3 Այսինքն հռոմայեցվոց (բյուզանդացիների) կայսեր։

4 Բնագրում՝ [illegible]։ Հայկական միջնադարյան բնագրերում այս բառը թարգմանվում է «իշխան աշխարհի»։

5 Խորենացու մոտ՝ «Աբգար Արշամայ»։

6 Քանի որ Խորենացու «Պատմության» մեջ հանդիպող այս նամակի թարգմանությունը տառացի համընկնում է Ծիրանածինի բնագրում մեջբերվածին, նպատակահարմար գտանք տալ Խորենացու տեքստը։ Վերջին երեք բառերը միայն («խաղաղությամբ բնակվելու այնտեղ») թարգմանեցինք, քանի որ Խորենացու բնագրում բացակայում էին։

7 Թովմա առաքյալի։

8 Այս բառերը Խորենացու բնագրում բացակայում են։

9 Հունարեն բնագրում՝ «հայր»։

10 Հայերենը սրանից հետո ունի. «և կեանս քեզ և որոց ընդ քեզ են շնորհեսցէ»։

11 Բնագրում՝ [illegible]։

12 Տե՛ս Ավետարան ըստ Ղուկասու, ԻԲ, 44։

13 Թադեոս առաքյալի, Քրիստոսի 72 աշակերտներից մեկի։

14 Գուցե Ամդու։

15 Նկատի ունի Քրիստոսի այլակերպությունը։ Տե՛ս Մատթէոս, ԺԷ, 2, Մարկոս, Թ, 1, Ղուկաս, Թ, 29։

16 Խոսքը պարսից արքա Խոսրով Անուշիրվանի մասին է (531—579)։ Եդեսիայի պաշարման մանրամասն նկարագրությունը տալիս է Պրոկոպիոս Կեսարացին իր «Պատերազմների մասին» աշխատության Բ գրքի 26—27-րդ գլուխներում։

17 Պատկերի առջև եղած ճրագի մասին Ծիրանածինը նախապես ոչինչ չի ասել։

18 Թեոփիլոս կայսեր ժամանակ Ալեքսանդրիայի պատրիարքն էր Քրիստափորը (817—848 թթ., մելքիտ), Անտիոքի պատրիարք՝ Հոբը (813—844 թթ., մելքիտ), իսկ Երուսաղեմի պատրիարքն էր Բարսեղը (821—839)։ Ծիրանածինի մոտ պարզապես շփոթություն կա։

19 Խոսքը ծայրահեղ պատկերամարտ Թեոփիլոս կայսեր մասին է (829—842 թթ.)։

20 Այսինքն Կոստանդնուպոլսի։

21 Խոսքը Ռոմանոս Լեկապենոս կայսեր մասին է (920—944 թթ.)։

22 Մ. թ. 944 թ.։

23 Հայերեն Ուռհա։

24 Այսինքն Կոստանդնուպոլսում։

25 Բնագրում ὁς ἀπὸ Ῥώμης κατωνομάζετο։ Սույն երկի լատիներեն թարգմանողը խնդրո առարկա բառերը թարգմանել է «cognomento a Roma»։ Իհարկե, սխալ է։ Հունարեն ἀπὸ-ն այստեղ նախդիր չէ, այլ արաբերեն «Աբու»-ն (հայր, համեմատիր Ապոկապես-Աբու Խաֆս, Ապոտաղե-Աբու Տաղլիբ և այլն)։ Հաջորդ՝ Ῥώμης-ը, եթե արաբական որևէ անվան աղավաղումը չէ, ապա պիտի ենթադրել, որ խոսքը «Հռոմի հոր» մասին է (հայտնի է, օրինակ, արաբ գրող «Իբն Ռումի»-ն)։

26 Օպտիմատոն բանակաթեմի կենտրոնն էր Նիկոմիդիա քաղաքը։

27 Այս «մարգարեական» խոսքերը վկայում են այն մասին, որ սույն երկը գրվել է Ռոմանոս Լեկապենոս կայսեր տապալումից (944 թ. դեկտեմբերի 16) անմիջապես հետո։

28 Վլախերնայի շրջանը գրավում էր հին Կոստանդնուպոլսի հյուսիս-արևմտյան մասը։

29 Նավի տեսակ է։

30 Խոսքը Ռոմանոս Լեկապենոս կայսեր որդիներ Ստեփանոսի և Կոստանդնի մասին է, ովքեր Ռոմանոսի կայսերակիցներ էին հռչակված։

31 Այն է Ռոմանոս Լեկապենոսը։

32 Ոսկե Դուռը բյուզանդական կայսրերի՝ ռազմական արշավանքներից հետո քաղաք մտնելու պաշտոնական դարպասն էր։

33 Ավգուստեոնը Կոստանդնուպոլսի հրապարակներից մեկն էր, որտեղ է գտնվում սբ. Սոֆիայի տաճարը, որի պատճառով էլ այն այսօր կոչվում է Այասոֆյամեյդանը։

34 Սբ. Սոֆիայի։

35 Աղիտոնը եկեղեցու այն մասն է, որտեղ հասարակ մահկանացուն մուտք գործելու իրավունք չուներ։

36 Խրիսոտրիկլին (թարգմանաբար նշանակում է Ոսկե սեղան), տոնախմբությունների ամենանշանավոր դահլիճներից մեկը Կոստանդնուպոլսի Մեծ պալատում, որը գտնվում էր սբ. Սոֆիայի մոտ։ Հիշված է և Անանիա Շիրակացու կողմից «Մարկիանու տրիկլին» ձևով։

37 Ռոմանոս Բ-ին (959—963)։

# ՀԱՎԵԼՎԱԾ

1 *Բնագիրը տե՛ս* Basilicorum libri LX, ed. **C. G. E. Heimbach**, t. V, Lipsiae, *1850*, p. *164*։

2 *Բյուզանդական տարին սկսվում էր սեպտեմբեր ամսին, հետևաբար տարեվերջը օգոստոս ամիսն էր։*

3 *Բնագրում* Ἀρμενιακὰ δημόσια *կամ* Ἀρμενιακὰ τελέσματα։

4 *«Վասիլիկա» օրենսգիրքը հսկայածավալ մի գործ է, որը օգտագործման համար լինելով շատ անհարմար, անհրաժեշտություն առաջացավ, որ գործածության մեջ դրվեն նրա* համառոտ *տարբերակները, այսպես կոչված սինոպսիսները (Մեծ և Փոքր), որտեղ օրենքները շարադրված են այբուբենական կարգով։ Խնդրո առարկա օրենքի բնագիրը տե՛ս* Synopsis Basilicorum, In Jus graecoromanum, vol. V, cura **J. Zepi** et **P. Zepi**, Scientia Aalen, *1962*, p. *598*։

5 *Բնագրում* Περὶ ὡρειαρίων τῶν (καὶ) ὑποδεκτῶν։ *Խոսքը, հասկանալի է, հարկահավաքների մասին է։*

6 *«Սինոպսիսը» յուրաքանչյուր հոդվածի համար հղում է տալիս բնագրին՝ «Վասիլիկաններին»։ Հղում տված 56-րդ գրքի, 9-րդ տիտղոսի 1-ին, 2-րդ և 3-րդ գլուխները «Վասիլիկանների» Հեյմբախի հրատարակության մեջ բացակայում են։ 11-րդ տիտղոսի յոթերորդ գլուխը նույնությամբ կա։ Տե՛ս* Basilicorum libri LX, ed. **C. G. E. Heimbach**, t. V, Lipsiae, *1850*, p. *171*։

7 *Բնագիրը տե՛ս* Liber juridicus alphabeticus sive Synopsis Minor ex editione **C. E. Zachariae a Lingenthal**, In Jus graecoromanum, cura **J. Zepi** et **P. Zepi**, vol. VI, Scientia Aalen, 1962, lit. A, c. 33, p. 333—334։

8 *Այս բառերը պատկանում են Հուստինիանոս Ա-ի 21-րդ նովելլայի վերնագրին, որից «Վասիլիկանների» Փոքր Սինոպսիսի հեղինակները հանգել են եզրակացությունների։*

9 *Բնագրում* Περὶ παραδρομῆς πολέμου։

10 *Բնագիրը տե՛ս* De velitatione bellica domini Nicephori Augusti, In Leonis Diaconis Historiae, Bonnae, 1828, p. 183—189, 196—197։

11 *Իմա արաբների։*

12 *Այն է Համդունը, Հալեպի նշանավոր ամիրան։ Կոստանդին Ծիրանածինի օրոք դեռևս Արևելից սպարապետ Նիկեփոր Փոկասը նրան, ինչպես և նրա դաշնակից Տարսոնի և Տրիպոլսի ամիրաններին պարտության մատնեց, որից հետո ձեռնարկեց Կրետեի նշանավոր արշավանքը, որի ընթացքում նշված ամիրաների դեմ պայքարը հաջողությամբ շարունակեց Նիկեփոր Փոկասի եղբայր Լևոն Փոկասը։ Տե՛ս* Cedr., *II*, p. *340, 341*։

13 Թեոդորա կայսրուհու եղբայրը։ Նրա մասին մանրամասն տե՛ս վերը, Վասիլ Ա-ի կենսագրության 30-րդ ծանոթագրությունը։

14 Տարսոնը արաբների ձեռքում էր և բյուզանդական սահմանին մոտիկ գտնվող ամուր բերդերից ու հենակետերից մեկը։

15 Մալեինոսները բյուզանդական հայտնի ընտանիք էին, ծագումով խարսիանոնից, որ աչքի ընկավ հատկապես X—XI դարերում։ Նրանք ազգակցական կապերի մեջ էին Նիկեփոր Փոկասի հետ։

16 Խոսքը Նիկեփոր Բ Փոկասի մասին է։

17 Այստեղ առաջին դեմքով խոսում է գրիչը։

18 Բյուզանդական աղբյուրներում վիգլա (լատ. vigilia) են կոչվում պահակատեղիները։

19 Վիգլայում ծառայողը։

20 Կամինովիգլիա էին կոչվում այն վիգլաները, որտեղ խարույկների օգնությամբ տեղեկացնում էին թշնամու շարժումների մասին։ Ծիրանածինի «Բյուզանդական արքունիքի արարողությունների մասին» աշխատության մեջ թվարկվում են այն կամինովիդլիաները, որոնք ընկած էին Տարսոնի դիմացից մինչև Կոստանդնուպոլիս։

21 Բնագրում ἐξπιλάτωρ (լատ. expilator). որ ավազակ, դիակապուտ է նշանակում, բայց մեր կոնտեքստում այդ իմաստը չի արդարացվում։

22 Բնագրում τραπεζῖται։ Բառը հունարեն է (τράπεζα նշանակում է սեղան, τραπεζίτης — սեղանավոր, ժամանակակից տերմինով բանկիր), որ հասկանալի է, ձևված է օտար բառի հիման վրա, վերոհիշյալ հունարեն բառին համահնչուն։ Դեռևս Ա. Գրեգուարը կարծիք էր հայտնել, որ դա պարսկերեն «դարբանդ» բառն է, բայց դարբանդը փակ լեռնանցքն է, այնինչ բյուզանդա-արաբական սահմանի վրա որպես կանոն խոսք է լինում կլեյսուրների, բաց կիրճերի մասին, որոնք պարսկերեն դարբանդ չեն կոչվում, այլ «դարվազ» (տես Դոկտոր Ալի-Աքբար Նաֆիսի, Պարսկերեն բացատրական բառարան, Թեհրան, 1318—1334 (1940—1956)։ Բացի այդ «դարբանդ»-ը պահպանող հատուկ զորքի պարսկերեն անվանում հայտնի չէ։ Տրապեզիտես բառի վերջածանցը —ίτης, որ հատուկ զորամասի առկայության մասին է վկայում, չի արդարացնում Գրեգուարի ենթադրությունը։ Բյուզանդական աղբյուրների տրապեզիտեսը —τραπεζίτης անկասկած պարսկերեն «դարվազբան» կամ «գարվազեբան» բառն է (պահպանվել է նույնիսկ հայկական աղբյուրներում դարպասպան ձևով, տե՛ս Նոր Բառգիրք Հայկազյան լեզվի, հատ. Ա, էջ 606), որ հենց լեռնանցքի պահապանն է։ Պարսկերենի -բան վերջածանցը միանգամայն համապատասխանում է հունարեն -իտեսին —ίτης։

23 Բնագրում τασιναρίους։ Հ. Գելցերը (տե՛ս Սկզբնավորությունք, էջ 62, ծանոթ. 1) տասինարիոս-տասինակիայի մասին գրում է. «Այս՝ հայերեն բառագրոց մեջ չգտնվող անծանոթ բառը տասնարf կամ տասնարիf ըլլալու է. եթե վերջինը ճիշտ է, կարելի է թերևս նաև տասնակիս ընթեռնուլ, որ իմաստին շատ լավ կհարմարի։ Ի չգոյե ուրիշ լավագույն մեկնության, զայս իբր լոկ ենթադրություն հոս հառաջ կբերեմ»։

Ն. Ադոնցը մերժում է այս ենթադրությունը։ Նրա կարծիքով տասինա-

րիոս-տասինակիա բառը բխում է հայերեն «տեսանել» բայից, որի վրա է։ Նա ձևում է «տեսունակ»—«տեսնակ» բառը։ Տե՛ս Aux confins militaires de l'Orient byzantin, Hussards, trabans, tasnaks. Byzantion, t. XIII (1938), fasc. I, p. 282։

24 Այն է Բյուզանդական կայսրության։

25 Բնագիրը տե՛ս Nov. XVIII imp. Nicephori Phocae de fundis militum Armenicorum et homicidarum. In Jus graecoromanum, cura J. Zepi et P. Zepi, Novellae et aurae bullae imperatorum post Justinianum, ex editione C. E. Zachariae a Lingenthal, vol. I, Scientia Aalen, 1962, p. 247- -248։

26 Լակապեն գտնվում էր հայերի ստեղծած Լիկանդոս բանակաթեմում։ Լակապեից էր բյուզանդական կայսր Ռոմանոս Ա Լակապենոսը։

27 Պետական հիմնարկության։

28 Այսինքն վերահսկիչների գրություններ, հուշագրություններ։

29 Ասորիք ասելով բյուզանդական հեղինակները հաճախ նկատի ունեն արաբական խալիֆայությունը, ինչպես և այս դեպքում։

Ադոնց, *Բագրատունյաց փառքը*—Ն. Ադոնց. *Բագրատունյաց փառքը, Պատմական ուսումնասիրություններ, Պարիս. 1948։*

Ադոնց. *Գիտական դեմքեր*—Ն. Ադոնց, *Հայ գիտական դեմքեր Բյուզանդիայում, Պատմական ուսումնասիրություններ, Պարիս, 1948։*

Ադոնց, *Վասիլ Հայազն*—Ն. Ադոնց, *Վասիլ Հայազն (Մեծագործ կայսր, 867—886), Պատմական ուսումնասիրություններ, Պարիս, 1948։*

Ադոնց, *Վարդ Մամիկոնյան* —Ն. Ադոնց, *Վարդ Մամիկոնյան (856—866), Պատմական ուսումնասիրություններ, Պարիս, 1948։*

Ակինյան, *Մատ. հետ.*—Ն. Ակինյան, *Մատենագրական հետազոտություններ, հատ. Դ, Վիեննա, 1938։*

Աճառյան, *Անձնանունների բառարան*—Հ. Աճառյան, *Հայոց անձնանունների բառարան, հատ. Ա—Ե, Երևան, 1942—1962։*

Աճառյան, *Արմատական բառարան*—Հ. Աճառյան, *Հայերեն արմատական բառարան, հատ. Ա—Է, Երևան, 1926—1935։*

Անդերսըն, *Ուղևորություն*—Յ. Կ. Կ. Անդերսըն. *Հետազոտական ուղևորություն ի Պոնտոս, թարգմ. Հ. Տաշյանի, Վիեննա, 1919։*

Ասողիկ—Ստեփանոսի Տարոնեցւոյ Ասողկան *Պատմութիւն Տիեզերական, Ս. Պետերբուրգ, 1885։*

Բարթիկյան, *Բյուզանդական վիպերգությունը*—Հ. Բարթիկյան, *Բյուզանդական «Դիգենիս Ակրիտաս» վիպերգությունը և նրա նշանակությունը հայագիտության համար, «Պատմա-բանասիրական Հանդես», 1963, № 1։*

Գրիգոր Մագիստրոս—Գրիգոր Մագիստրոսի *Թղթերը, Բնագիրն առաջաբանով և ծանոթություններով առաջին անգամ ի լույս ընծայեց Կ. Կոստանյանց. Ալեքսանդրապոլ, 1910։*

Գելցեր. *Սկզբնավորությունք*—Հ. Գելցեր, *Սկզբնավորությունք բյուզանդական բանակաթեմերու դրության, թարգմ. Գ. Գարանֆիլյանի, Վիեննա, 1903։*

*Գիրք Թղթոց—Գիրք Թղթոց, Թիֆլիս, 1901։*

*Դիվան հայ վիմագրության—Դիվան հայ վիմագրության, Պրակ 1, Անի քաղաք, Կազմեց Հ. Ա. Օրբելի, Երևան, 1966։*

Դրասխանակերտցի—Յովհաննու կաթողիկոսի Դրասխանակերտցւոյ *Պատմութիւն Հայոց, Թիֆլիս, 1912։*

Երեմյան, *Հայաստանը*— Ս. Տ. Երեմյան. *Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի. (Փորձ VII դարի հայկական քարտեզի վերակազմության ժամանակակից քարտեզագրական հիմքի վրա), Երևան, 1963։*

---

*Այստեղ նշված են ծանոթագրություններում հաճախ հանդիպող աշխատությունների վերնագրերը։ Հազվադեպ հանդիպող աշխատությունների վերնագրերը ծանոթագրությունների մեջ բերված են լրիվ։*

Թովմա Արծրունի—Թովմայի վարդապետի Արծրունւոյ *Պատմութիւն Տանն Արծրունեաց, ի լոյս էած Ք. Պ[ատկանյան], Ս. Պետերբուրգ, 1887։*

Հյուբշման, *Տեղվո անունները*—*Հ. Հյուբշման, Հին հայոց տեղվո անունները, Հայոց աշխարհին պատմական տեղագրության մասին ուսումնասիրություններով, թարգմ. Հ. Բ. Պիլեզիկճյան, Վիեննա, 1907։*

Հովհաննիսյան. *Դրվագներ*—Ա. Հովհաննիսյան, *Դրվագներ հայ ազատագրական մտքի պատմության, գիրք Ա, Երևան, 1957։*

Ղևոնդ—*Պատմութիւն* Ղևոնդեայ Մեծի վարդապետի Հայոց, *Ս. Պետերբուրգ, 1887*

Մատթեոս Ուռհայեցի—Մատթէոսի Ուռհայեցւոյ *Ժամանակագրութիւն, Վաղարշապատ, 1898։*

Մարկվարտ, *Վրական Բագրատունյաց ծագումը*—Հ. Մարկվարտ *Բագրատունյաց ծագումը. Ա. Հայ Բագրատունյաց ճյուղագրությունը։ Բ. Վրական Բագրատունյաց ծագումը, գերմ. թարգմ. Հ. Մ. Հապոզյան, Վիեննա, 1913։*

Միխիթար Գոշ—Մխիթարայ Գօշի *Դատաստանագիրք հայոց, Իրաւաբանական հետազօտութիւնք հանդերձ ծանօթութեամբ Վահան Ծ. վրդ. Բաստամեանց. Վաղարշապատ, 1880։*

Մովսես Խորենացի—Մովսէսի Խորենացւոյ *Պատմութիւն Հայոց, Տփխիս, 1913։*

*Ն. Բ. Հ. Լ.—Նոր Բառգիրք Հայկազեան Լեզուի, հատ. Ա—Բ, Վենետիկ, 1836—1837։*

Վարդան—*Հաւաքումն պատմութեան* Վարդանայ վարդապետի *լուսաբանեալ, Վենետիկ, 1862։*

Տաշյան, *Արևմտյան սահմանը*—Հ. Տաշյան, *Հին Հայաստանի արևմտյան սահմանը, Վիեննա, 1948։*

Տեր-Ղևոնդյան. *Ամիրայությունները*—Ա. Տեր-Ղևոնդյան, *Արաբական ամիրայությունները Բագրատունյաց Հայաստանում, Երևան, 1965։*

Սամվել Անեցի—Սամուէլի քահանայի Անեցւոյ *Հաւաքմունք ի գրոց պատմագրաց, Վաղարշապատ, 1893։*

*Адонц,* Армения—*Н. Адонц,* Армения в эпоху Юстиниана, С.-Петербург, 1908.

*Анчабадзе,* Из истории—*З. Анчабадзе,* Из истории средневековой Абхазии (VI—XVII вв.) Сухуми, 1959.

*Бартикян,* Дигенистика—*Р. М. Бартикян,* Дигенистика в курдском эпосе о Златоруком хане? Вестник Общественных наук АН Арм. ССР. 1967 г., № 1.

*Бартикян,* Заметки—*Р. М. Бартикян,* Заметки о византийском эпосе о Дигенисе Акрите, Византийский Временник, том XXV, 1964.

*Бартикян,* Источники—*Р. М. Бартикян,* Источники для изучения истории павликианского движения. Ереван, 1961.

*Беляев,* Byzantina—*Д. Б. Беляев,* Byzantina, Очерки, материалы и заметки по византийским древностям, т. I—II (=Записки Русского Археологического Общества, V—VI, С.-Петербург, 1891—1893); т. III (=Записки Классического Отдела Русского Археологического Общества, IV, 1907).

*Васильев,* Византия и арабы, т. I—*А. А. Васильев,* Византия и арабы,

том I, Политические отношения Византии и арабов за время Аморийской династии, С.-Петербург, 1900.

*Васильев*, Византия и арабы, т. II—*А. А. Васильев*, Византия и арабы, том II. Политические отношения Византии и арабов за время Македонской династии, С.-Петербург, 1902.

*Кулаковский*, История—*Ю. Кулаковский*, История Византии, том III, Киев. 1915.

*Липшиц*, Очерки—*Е. Э. Липшиц*, Очерки по истории византийского общества и культуры в VIII—первой половине IX века, М., 1961.

*Минорский*, История—*В. Минорский*, История Ширвана и Дербенда, М., 1963.

*Псамафийская хроника—Псамафийская хроника*, Предисловие, перевод, комментарий А. П. Каждана. В кн. Две византийские хроники X века, М., 1959.

*Adontz*, Asot Erkat$^{c}$—*N. Adontz*, Asot Erkat$^{c}$ ou de fer, roi d'Armenie de 913 a 929. Études Arméno-Byzantines, Lisbonne, 1965.

*Adontz*, L'âge—*N. Adontz*, L'âge et l'origine de l'empereur Basile I (867—886). Études Arméno-Byzantines, Lisbonne, 1965.

*Adontz*, Les fonds—*N. Adontz*, Les fonds historiques de l'epopee byzantine Digenis Akritas, Études Arméno-Byzantines, Lisbonne, 1965.

*Adontz*, Les Taronites—*N. Adontz*, Les Taronites en Armenie et a Byzance, Études Arméno-Byzantines, Lisbonne, 1965.

*Adontz*, Notes I—*N. Adontz*, Notes Arméno-Byzantines, Etudes Armeno-Byzantines, Lisbonne, 1965.

*Adontz*, Notes II—*N. Adontz*, Notes sur le livre des Cerémonies, Etudes Arméno-Byzantines, Lisbonne, 1965.

*Ahrweiler*, Byzance et la mer—*H. Ahrweiler*, Byzance et la mer. La marine de guerre, la politique et les institutions maritimes de Byzance aux VIIe—XVe siècles, Paris, 1966.

*Ahrweiler*, Recherches—*H. Glykatzi-Ahrweiler*, Recherches sur l'administration de l'Empire Byzantin aux IX—XI siecles, Ecole Française d'Athènes, Paris, 1960.

*Ahrweiler*, Histoire—*H. Ahrweiler*, Histoire et la geographie de la region de Smyrne, Centre de Recherche d'Histoire et Civilisation Byzantines, Travaux et Memoires, I, Paris, 1965.

*Bartikian*, La genéalogie—*H. Bartikian*, La genealogie du Magistros Bagarat, Catepan de l'Orient, et des Kekaumenos, Revue des Etudes Arméniennes, Nouvelle serie, tome II, Paris, 1965.

*Bréhier*, La Civilisation—*L. Brehier*, La Civilisation byzantine, Paris, 1950.

*Bréhier*, Les Institutions—*L. Brehier*, Les Institutions de l'Empire Byzantin, Paris, 1949.

*Bréhier*, Vie et mort—*L. Bréhier*, Vie et mort de Byzance, Paris, 1947.

*Brooks*, Arabic lists—*E. W. Brooks*, Arabic lists of the byzantine Themes, Journal of Hellenic Studies, vol. XXI, 1901.

*Brosset*, Additions—*M. Brosset*, Additions et Eclaircissements à l'Histoire de la Géorgie, depuis l'antiquité jusqu'en 1469, St.-Petersbourg, 1851.

*Bury*, IAS—*J. B. Bury*, The Imperial Administrative System in the ninth century with a revised text of the Kletorologion of Philotheos, London, 1911.

*Canard*, Histoire—*M. Canard*, Histoire de la dynastie des Hamdanides de Jazira et de Syrie, I. Paris, 1953.

*Canard*, Les Hamdanides—*M. Canard*, Les Hamdanides et l'Arménie, Annales de l'Institut d'Études Orientales t. VII, 1948.

*Cedr.* II—*Georgius Cedrenus-Ioannis Scylitzae* ope ab Immanuele Bekkero supletus et emendatus, tomus alter, Bonnae, 1839.

*Charanis*, The Armenians—*P. Charanis*, The Armenians in the Byzantine Empire, Lisboa, 1963.

*DAI* I—*Constantine Porphyrogenitus* De Administrando Imperio, Greek, text edited by *Gy. Moravcsik*. English translation by *R. J. H. Jenkins*, Budapest, 1949.

*DAI* II—*Constantine Porphyrogenitus* De Administrando Imperio, vol. II Commentary by *F. Dvornik*, *R. J. H. Jenkins*, *B. Lewis*..., edited by *R. J. H. Jenkins*, London, 1962.

*De Cer.* I—*Constantini Porphyrogeniti* imperatoris De Cerimoniis aulae byzantinae libri duo graece et latine e recensione *Io. Iac. Reiskii*, vol. I, Bonnae, 1829.

*De Cer.* II—*Io. Iac. Reiskii* Commentarii ad Constantinum Porphyrogenitum de Cerimoniis aulae byzantinae, Bonnae, 1830.

*Epanagoge*—Epanagoge legis Basilii et Leonis et Alexandri, In Jus graecoromanum, cura *J. Zepi* et *P. Zepi*, vol. II, Scientia Aalen, 1962.

*Genesii Regum*—*Genesii* Regum ex recognitione Caroli Lachmani, Bonnae, 1834.

*Georg. Mon. Cont.*—*Georgii Monachi* Vitae Imperatorum recentiorum, In „Theophanes Continuatus...", ex recognitione Immanuelis Bekkeri, Bonnae, 1838.

*Grégoire*, Διγενής Ἀκρίτας—*H. Grégoire*, Ὁ Διγενής Ἀκρίτας. Ἡ Βυζαντινή ἐποποιία στὴν ἱστορία καὶ στὴ ποίηση, New York, 1942.

*Grégoire*, Mélias le Magistre—*H. Grégoire*, Notes epigraphiques VII, Mélias le Magistre, Byzantion, t. VIII, 1933.

*Guilland*, Le domestique—*R. Guilland*, Études sur l'histoire administrative de Byzance, Le domestique des scholes, Revue des Études Byzantines, t. VIII, 1950.

*Guilland*, Les titres auliques—*R. Guilland*, Études sur l'histoire administrative de l'Empire Byzantin, Les titres auliques des eunuques. Le protospathaire. Byzantion, t. XXV—XXVI—XXVII (1955—1956—1957), fasc. 2.

*Guilland*, Proconsul—*R. Guilland*, Études sur l'histoire administrative de

l'Empire Byzantin, Proconsul-'Ανθύπατος. Revue des Études Byzantines, t. XV, 1957.

*Honigmann*, Die Ostgrenze—*E. Honigmann*, Die Ostgrenze des Byzantinischen Reiches von 363 bis 1071 nach griechischen, arabischen, syrischen und armenischen Quellen, Bruxelles, 1935.

*Honigmann*, Une „Scala" geographique—*E. Honigmann*, Une „Scala" géographique copte-arabe et l'emplacement de Romanopolis en Arménie, In Trois Mémoires posthumes d'Histoire et de Géographie de l'Orient Chrétien, „Subsidia Hagiographica", No 35, Bruxelles, 1961.

*Janin*, Const. byz.—*R. Janin*, Constantinople byzantine, Paris, 1950.

*Janin*, La topographie—*R. Janin*, La topographie de Constantinople byzantine, Revue des Études Byzantines, t. VIII, 1950.

*Markwart*, Streifzüge—*J. Markwart*, Osteuropäische und ostasiatische Streifzuge, Leipzig, 1903.

*Markwart*, Sudarmenien—*J. Markwart*, Südarmenien und die Tigrisquellen nach griechischen und arabischen Geographen, Wien, 1930.

*Minorsky*, Studies—*V. Minorsky*, Studies in Caucasian History, London, 1953.

*Moravscik*, Byzantinoturcica, Bd. I—*Gy. Moravscik*, Byzantinoturcica, Bd. I, Die byzantinische Quellen der Geschichte der Türkvölker. Bd. II, Sprachreste der Türkvolker in den byzantinischen Quellen, Zweite durchgearbeitete Auflage, Berlin, 1958.

*Pertusi*—Constantino Porfirogenito De Thematibus. Introduzione, testo critico, commento a cura di *A. Pertusi* (Studi e Testi 160), Città del Vaticano, 1952.

*Ramsey*, HGAM—*W. M. Ramsey*, The Historical Geography of Asia Minor, London, 1890.

*Sophocles*, Greek Lexicon—*E. A. Sophocles*, Greek Lexicon of the Roman and Byzantine Periods (From B. C. 146 to A. D. 1100), vol. I—II, New York.

*Sym. Mag.*—*Symeonis Magistri* ac *Logothetae* Annales, In „Theophanes Continuatus...", Bonnae, 1838.

*Theoph. Chron.*—*Theophanis* Chronographia, ed. C. de Boor, t. I—II, Lipsiae, 1883.

*Theoph. Cont.*—*Theophanes Continuatus* Chronographia, ex recognitione *Immanuelis Bekkeri*, Bonnae, 1838.

*Toumanoff*, Studies—*C. Toumanoff*, Studies in Christian Caucasian History, Georgetown, 1963.

*Toumanoff*, The Bagratids—*C. Toumanoff*, The Bagratids of Iberia from the Eighth to the Eleventh Century, Le Muşeon, t. LXXIV, Louvain, 1961.

*Vasiliev*, Histoire—*A. Vasiliev*, Histoire de l'Empire Byzantin, t. I, Paris, 1932.

*Vita Ignatii*—*S. P. N. Ignatii* archiepiscopi Constantinopolitani Vita sive certamen, Auctore Niceta servo Christi cognomento Davide Paphlagone, Migne, Patrologia Graeca, t. 105.

*Vogt*, Basile I—*A. Vogt*, Basile I, empereur de Byzance et la civilization byzantine à la fin du IXe siecle, Paris, 1908.

*Vogt*, Commentaire—Constantin VII Porphyrogénete, Le Livre des Ceremonies, t. I, Livre I, Chapitres 1—46 (37), Texte etabli et traduite par *Albert Vogt*, Paris, 1935, Commentaire.

*Zachariae von Lingenthal*. Geschichte—*Zachariae von Lingenthal*, Geschichte des griechische-römischen Rechts, Berlin, 1892.

# ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐԻ ՑԱՆԿ

# ՑԵՂԱՆՈՒՆՆԵՐԻ ՑԱՆԿ

# ՏԵՂԱՆՈՒՆՆԵՐԻ ՑԱՆԿ

# ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅԱՆ ՄԵՋ ՀԱՆԴԻՊՈՂ ԲՅՈՒԶԱՆԴԱԿԱՆ ՏԵՐՄԻՆՆԵՐԻ ՑԱՆԿ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

*Աշխարհագրական քարտեզներ*

I *Փոքրասիական բանակաթեմերի տեղադրությունը VII—IX դդ.։* **H. Gelzer-ի** Die Genesis der byzantinischen Themenverfassung, Leipzig, 1899, *աշխատության հիման վրա քարտեզը կազմել է* G. **Ostrogorsky-ն։** *Տե՛ս նրա* Histoire de l'État Byzantin, Paris, 1956, *աշխատության 136-րդ էջում)։*

II *Բյուզանդական կայսրության արևելյան սահմանները շուրջ 960 թ.։ (Քարտեզի հեղինակ* **E. Honigmann:** *Տե՛ս նրա* Die Ostgrenze des Byzantinischen Reiches von 363 bis 1071 nach griechischen, arabischen, syrischen und armenischen Quellen, Bruxelles, 1935, *աշխատության մեջ)։*




FINES ORIENTALES IMPERII BYZANTINI C ANNUM 960.

Տպագրվում է ՀՍՍՀ ԳԱ պատմության
ինստիտուտի գիտական խորհրդի որոշմամբ

Հրատ. խմբագիր՝
Ա. Հ. ՇԱՂԳԱՄՅԱՆ
Նկարչ. ձևավորումը՝
Կ. Կ. ՂԱՑԱԴԱՐՅԱՆԻ
Տեխ. խմբագիր՝
Մ. Ա. ԿԱՓԼԱՆՅԱՆ
Սրբագրիչ՝
Փ. Հ. ՄԱԴԱՆՅԱՆ

*ՎՖ 03323 ԽՀԽ 1167 Հրատ. 3072 Պատվեր 648 Տպաքանակ 3100*

*Հանձնված է արտադրության 9/VII 1969 թ., ստորագրված է տպագրության 23/II 1970 թ., տպագր. 27,37 մամուլ + 4 ներդիր, հրատ. 24,13 մամուլ, թուղթ № 1, 60 × 90¹/₁₆։ Գինը 1 ռ. 95 կ.։*

*Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի հրատարակչության էջմիածնի տպարան։*

## ՆԿԱՏՎԱԾ ՎՐԻՊԱԿՆԵՐ

| | Էջ | Տող | Տպված է | Պետք է լինի |
|---|---|---|---|---|
| | 13 | 15 ն. | սիրում | սերում |
| | 197 | 7 ն. | ՍԿԻԶԲԸ Ձ | ՍԿԻԶԲԸ Ձ ՏԱՌԻ |
| | 237 | 24 ն. | Le | La |
| Ներդիր | XXXII | | Վասիլ I և Կոստանդին | Ռոմանոս I Լեկապենոս և Կոստանդին VII Ծիրանածին |
| Ներդիր | XXXIII | | Ռոմանոս I Լեկապենոս և Կոստանդին VII Ծիրանածին | Վասիլ I և Կոստանդին |